ՀԱՄԱՌՕՏ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԴՊՐՈՑԱՑ ՀԱՄԱՐ

## ՀԻՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԿԱՐԹԵԴՈՆԱՑՒՈՑ, ՅՈՒՆԱՑ, ՀՌՈՎՄԱՅԵՑՒՈՑ
ԵՒ ՀԱՅՈՑ

ՄԱՍՆ Բ.

ՀԱՏՈՐ Ա.

ՅՕՐԻՆԵՑ

Մ. ՄԱՄՈՒՐԵԱՆ





Զմիւռնիա

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ ՏԷՏԷԵԱՆ

1877

ՀԱՄԱՌՕՏ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ԿԱՐՔԵԴՈՆԱՑԻՔ

### ԳԼՈՒԽ Ա.

Կարքեդոնի հզօրութիւնը մինչեւ Սիկիլեան պատերազմները.

(880—416 Ք. Ա.)

ԿԱՐՔԵԴՈՆ. — Ափրիկէի հիւսիսային եզերքը՝ թերակղզիի մը վրայ շինուած էր Կարքեդոն որ խիստ ընտիր դիրք մ'ունէր։ Լայն ծովածոցի մը վրայ կ'նայէր (Թունուզի) և այս ծովածոցն երկու հրուանդանէ կ'ձեւանայ (այժմ Պօն ու Զէբիդ), թերակղզին գրեթէ Ուտիկէի և Թունուզի միջեւ կ'գտնուէր։ Ծովուն կողմէն քաղաքը լոկ պարիսպ մ'ունէր, իսկ թերակղզին ցամաքին կապող պարանոցին վրայ Բիւրսա բերդը կար։

Դիդէ․ Փիւնիկեանց թագուհի․ — Այլ և այլ աւանդութիւններ կ'պատմեն Կարքեդոնի հիմնարկութեան վրայ։ Ոմանք, Յուստինոս և Վիրգիլիոս, կ'ըսեն թէ այս քաղաքն Էլիսա կամ Դիդէ* (սիրեցեալն) Պիգմալիոնի քոյրը հիմնեց․ այլք կը պնդեն թէ՝ Կարքեդոն անուն փիւնիկեցին շինեց։ Բայց բաւական է գիտնալ որ Կարքեդոն փիւնիկեցի գաղթականութիւն մ'էր և մեծ համբաւ ու զօրութիւն ստացաւ երբոր Ասորեստանցիք ու Պարսիկք Տիւրոսի ու Սիդոնի տիրեցին։ Ի սկզբան Կարքեդոնացիք ստիպուեցան հարկ

* Կ'պատմուի թէ Տիւրոսի մէջ՝ Պիգմալիոն թագաւորին օրովը՝ իր քեռայրն Մելքարթի (Տիւրացի Հերակլէս, Մոլոք կամ Բաաղ) քրմապետը (Սիկէ) սպաննուելով՝ սորա կինն Էլիսա շատ գանձերով և ազնուականաց ուղեկցութեամբ Ափրիկէ անցեր և Միջերկրականի ափունքը՝ Բիւրսա բերդաքաղաքը շիներ էր, որ եզան մորթ կ'նշանակէ՝ յունարէն լեզուաւ։ Այս բառէն աւանդել մը հիւսեր են՝ որպէս թէ Դիդէ եզան մորթի չափ տեղ խնդրեր է բնիկ ժողովրդէն և ստանալէ ետև՝ այն մորթին մազերէն առասան մը շիներ և սորա երկայնութեամբ հող առեր և Կարթէդոնը (Նոր քաղաք) հիմներ է շրջակայ ազգաց տուրք տալ խոստանալով։ Սակայն Գետուլիոյ թագաւորն Արբաս կ'ուզէր որ Դիդէն իրեն կին առնու, և որովհետև Դիդէ իր երկան անդրժելի հաւատարմութիւն խոստացեր էր, առ երեսս միայն կ'հաւանի Արբասի առաջարկութեան և իր երկանը հոգւոյն հետ հաշտուելու պատրուակաւ ձայն կ'հանէ թէ զոհ մատուցանել կ'ուզէ դից։ Ուստի փայտակոյտ մը պատրաստել տալով՝ վրան կ'ելնէ և իր հագուստին ներքև պահած դաշունով ինքզինք կ'սպաննէ։ Ժողովուրդը դից կարգը կ'անցընէ Դիդէն, թէև արդէն Դիդէ Փիւնիկեցւոց դիցուհի մ'էր։

վճարել․ դրացի բարբարոսիկ իշխանաց․ բայց երբ թուով ու հարստութեամբ զօրացան իրենց լուծը թօթափեցին և սկսան հետզհետէ մօտակայ ցեղերուն, Մաւրիտանիացւոց և Նումիդացւոց վրայ տիրել ու Միջերկրականի եզերքը նոր նոր քաղաքներ շինել։ Փիւնիկեցի հին գաղթականներ՝ որ Ուտիկէ ու Լեպտիս կ'բնակէին՝ Կարքեդոնի նիզակակից եղան առանց հակառակութեան, մինչդեռ Կիւրենէ բնակող յոյն գաղթականներ որ առևտուրով մեծցեր ու զօրացեր էին, սկսան անհաշտ աչքով նայիլ նորաշէն Կարքեդոնի, և քիչ ատենէն այս երկու վաճառաշահ քաղաքաց մէջ բուռն պատերազմ բացուեցաւ։ Այս պատերազմին պատճառը սահմանագլխի խնդիր մ'էր։ Կիւրենէի և Կարքեդոնի սահմաններն աւազուտ անապատներու մէջ գտնուելուն՝ կարելի չէր բնական նշանով մ'որոշել և այս աթիւ երկու ժողովրդոց մէջ կռիւն անպակաս էր։ Ի վերջէ կ'համաձայնին այս պայմանաւ որ մի և նոյն օրն երկու քաղքէն դեսպաններ ճամբայ ելնեն և իրենց հանդիպած վայրն երկու տէրութեանց սահմանագիծը համարուի։ Կարքեդոնացիք կ'ընտրեն երկու եղբարք Փիլենեան և դեսպանութեան պաշտօնը նոցա կ'յանձնեն. սոքա այնպէս արագ կ'ընթանան որ Կիւրենացիք տեսնելով թէ թշնամի Կարքեդոնացիք պիտի անցնին՝ ըստ պայմանի՝ վէճի տակ եղող հողին 3/4 մասը, չեն ուզեր դաշինքը պահել այլ և այլ պատճառանօք, մինչև որ երկու եղբարք Փիլենեանք ողջ ողջ չթաղուին նոյն տեղը՝ ճշմարտութիւնը հաստատելու համար։ Փիլենեանք

յօժարակամ յանձն կ՚առնուն իրենց կեանքը զոհել՝ հայրենեաց մեծութեան համար։ Կարքեդոնացիք ՚ի յիշատակ այս արիասիրտ երիտասարդաց երկու բագին կանգնել տուին, Բագինք Փիլենեանց անունով։ Այս բագինները երկար ժամանակ սահմանագլխի տեղ ծառայեց Կիւրենէի և Կարքեդոնի մէջ։

**Առաջին նաւային պատերազմ.** — Մինչդեռ Պարսից տէրութիւնն երթալով կ՚զօրանար Արեւելք, Կարքեդոն ալ Արեւմուտքի մէջ հետզհետէ իր իշխանութիւնը կ՚ատարածէր ու Միջերկրական կղզիները նուաճելու եռալէ էր. Մագոն անուն երեւելի ցեղին շնորհիւ։ Այս ցեղն՝ որմէ շատ նշանաւոր զօրապետներ և քաղաքագէտներ ելան, դարէ մ՚աւելի Կարքեդոնի տէրութիւնը վարեց։ Սակայն յանկարծ վտանգաւոր թշնամեաց հանդիպեցան Միջերկրականի արեւմտեան կողմը, և պատմութեան մէջ առաջին անգամ յիշուած նաւային պատերազմը մղեցին նոցա դէմ։ Աւասիկ այն պատերազմին պարագաներն այսպէս կ՚պատմեն.

Կիւրոս՝ Լիւդացւոց Կրեսոս թագաւորը գերի ընելէն ետեւ՝ իր Արպակ զօրապետին հրամայեց որ Փոքր Ասիոյ բոլոր յոյն գաղթականութիւնները նուաճէ, և ինք Բաբելոն գնաց։ Արպակ՝ ամենէն առաջ՝ Յոնիոյ Փոկէա (Ֆոչա) քաղաքը զարկաւ։ Այս քաղքին բնակիներն առեւտուրի և նաւային պատերազմի մէջ շատ յաջողակ էին։ Ստէպ մինչեւ Սպանիոյ ծովեզերքն ու Հերակլեան կոթողները նաւարկած էին։ Բայց Պար-

ոից անհամար զօրաց դիմադրելու բաւական ոյժ չունէին։ Ուստի երբոր Արբակ Փոկէացիքը նեղը ձգելով՝ հրամայեց որ անձնատուր լինին, սաքա պայմանաժամ մը խնդրեցին որ խորհին։ Նոյն միջոցին իրենց կանայքը, տղայքը, և շարժական բոլոր ինչքը նաւերը փոխադրեցին և Թափուր ու ամայի քաղաքը Պարսից թողուցին։

Նախ Փոկէացիք Քիոս կղզին գացին մօտակայ մի քանի կղզիներ գնելու և անդ հաստատուելու յուսով. բայց իրենց յոյսը պարապ ելնելով Միջերկրականի արևմտեան կողմերը նաւարկեցին։ Այս ուղևորութեան ժամանակ՝ վերստին իրենց հին հայրենի ափանց առջևէն անցան։ Կ՚ըսեն թէ նոցա ցանկալի տեսքն այնքան գրգռեց իրենց զայրոյթն որ անակնկալս ցամաքն ելնելով՝ Պարսից պահապան զօրաց վրայ ընկան և սաստիկ ջարդ մը տուին։ Այս վրէժխնդրութեան գործը կատարելէն ետև՝ նորէն նաւերը մտան, ծովը նետեցին հրաշէկ երկաթէ գնդակ մը և երդում ըրին չվերադառնալ մինչև որ այն գնդակն ջրին երեսն անշէջ չելնէ։ Այնուհետև Քօրսիքա կղզին հասան, որու մէկ մասն արդէն Կարքեդոնացւոց ձեռքն էր, և նորա եզերքը բնակելու համար պատրաստուեցան։ Սակայն Կարքեդոնացիք և Թիւրէնիացիք կամ Թուսքանները Փոկէացւոց այս յանդուգն ժողովրդեան մը դրացիութենէ երկնչելով՝ միացան և հարիւր քսան հատ նաւ ղրկեցին որ նորեկ գաղթականները Քօրսիքայէն վանեն։ Փոկէացիք՝ թէև նոցա կիսուն չափ նաւ ունէին, մեծ յաղթութիւն մը տարին։ Միայն

տեսնելով որ Կարքեդոնացիք նորէն ոտքի յար-
ձակին իրենց վրայ՝ Քօրսիքա կղզիէն ելան և
Գալլիա դիմելով՝ այն տեղ Մարսիլիա քաղաքը
հիմնեցին։

Առևտրական դաշնադրութիւն. — Սակայն
Կարքեդոնացւոց ծովային ոսոխները միայն Փո-
կէացիք չէին։ Արդէն Իտալիոյ Եդրուրացիք (550
-530) և Յոյնք սկսեր էին նոյա հետ մրցիլ
առևտուրի համար, և Սիկիլիոյ, Սարդէնիոյ,
Քօրսիքայի և Միջերկրականի ուրիշ կղզիներուն
վաճառականութիւնը գրաւելու ջանալ։ Ուստի
հարկ եղեր էր առևտրական դաշինք հաստա-
տել իրենց մէջ՝ որպէս զի իրենց շահերն ու
պահանջումները կանոնաւորեն։ Միւս կողմէ՝
Հռոմայեցիք ևս Իտալիոյ ազգաց մէջ կարևոր դիրք
մը ստանալու սկսելով՝ Տիբերիս գետին բերանը
Օստիա վաճառաշահ քաղաքը հիմներ էին և հին
աշխարհի առևտրին կ'մասնակցէին։

Կարքեդոնացիք իրենց վաճառականութեան օ-
գուտները չկորուսելու համար՝ Հռոմայեցւոց
հետ առևտրական դաշնադրութիւն մը հաստա-
տեցին։ Այս դաշինքն՝ որ վերջին Տարկէնի գահ-
ընկեց լինելէն տարի մ'ետք, 509ին տեղի ու-
նեցաւ, երկու կողման առևտրական յարաբե-
րութիւնները սահմանեց, և անկից կ'երևի թէ
Կարքեդոնացիք Ափրիկէի հիւսիսային ծովեզերեայ
երկիրներուն և Սարդէնիոյ տէր էին, նոյնպէս ի-
րենց իշխանութեան ներքև կ'գտնուէր Բալէա-
ռեան կղզիք և Սիկիլիոյ ու Սպանիոյ մեծ մա-
սը։ Այս նշանաւոր դաշինքն Հռոմի մէկ կոթո-

ղին պատուանդանին վրայ արձանագրուեցաւ և գեռ այս արձանագիրը կ՚մնայ ։

---

## ԳԼՈՒԽ Բ.

### Սիկիլեան պատերազմէն մինչև Փիւնիկեան պատերազմունք։

### (480—265)

Հիմերայի պաշարումը. — Առաջին ծովամարտէն 'ի վեր՝ Կարքեդոնացիք խեթիւ կ՚նայէին Յունաց, որ օրէ օր Սիկիլիոյ և Հարաւային Իտալիոյ մէջ կ՚զօրանային ։ Ուստի երբ Պարսից Քսերքսէս թագաւորը Յունաստան արշաւելու կ՚պատրաստուէր, Կարքեդոնացիք յօժարակամ յանձն առին Պարսից հետ դաշնակցիլ և յոյն գաղթականաց վրայ յարձակիլ ։ Հետևապէս մի մեծ բանակ և նաւատորմ հանեցին, որու համար կ՚ըսեն թէ երկու հազար նաւէ կ՚բաղկանար և ցամաքային զօրքն ալ երեք հարիւր հազար հոգի էր ։ Այս բանակին զօրապետ կարգեցաւ Ամիլքար՝ որ այն ատեն Մագոն անուանի գերդաստանին գլուխն էր ։

Այս բանակը ցամաքն ելաւ անմիջաս 'ի Պանորմոս (արդի Բալէրմօն) և Հիմերա քաղաքը պաշարեց ։ Այս քաղաքը դիմակալելու պատրաստութիւն չունէր . Թէրոն կառավարիչն քիչ մը

ատեն պաշտպանեց և Սիրակուսա մարդ ղրկելով օգնութիւն խնդրեց։ Գելոն՝ Սիրակուսայի թագաւորը՝ այս արշաւանքն իմանալով՝ իսկոյն զօրաժողով ըրեր, բայց հազիւ տասն հինգ հազար հետեւակ և հինգ հազար այրուձի գումարելու յաջողեր էր։ Այս փոքր զօրագունդն առած՝ Կարքեդոնացւոց դէմ գնաց բաղդին վստահելով։ Ճամբան գրատար մը բռնեց, որ Սելինացւոց կողմէ Ամիլքարի գիր մը կ'տանէր։ Սելինացիք այս գրով կ'խոստանային Կարքեդոնացի զօրապետին խնդրած հեծելազօրը քիչ օրէն հասցընել անոր օգնութեան։ Գելոն նամակն Ամիլքարի ուղարկեց, և ինք ընտիր զօրաց գունդ մ'արձակեց Ամիլքարի բանակն՝ որպէս թէ Սելինացւոց կողմէ կ'ղրկուէր։ Սիրակուսացիք անարգել մտան Ամիլքարի բանակատեղին. յանկարծ նորա վրանը վազեցին և զինքն իր գլխաւոր սպայից հետ սպաննեցին. ապա նաւահանգիստը շտապելով՝ նաւատորմը կրակի տուին։ Միւս կողմէ Գելոն իր զօրքով Կարքեդոնացւոց վրայ յարձակելով՝ մեծ մասամբ կոտորեց ու փառաւոր յաղթութիւն մը տարաւ։

Ճիշդ նոյն օրն էր որ Պարսից զօրքն 'ի Թէրմոպիլէ (Յունաստան) և նաւատորմիղն յԱրտեմիզ (Եւբէա կղզի) կ'յաղթուէին Յունաց կողմէ (480)։

Այս պարտութենէ ետք՝ Ամիլքարի որդին Գիսկոն ցիր ու ցան զօրքը ժողվեց, բայց անկարելի գտնելով կռիւը շարունակել, ստիպուեցաւ անձնատուր լինիլ։ Կարքեդոնի Ծերակոյտը յանձն առաւ Գելոնի հետ խաղաղութիւն կնքել.

մեծագումար տուգանք վճարել և այնուհետև Սիկիլիան չնեղել։

**Սելինոն և Հիմերա քաղաքաց առումը.** — Այնուհետև Կարքեդոնացիք դրեթէ եօթանասուն տարի Սիկիլիոյ դէմ յարձակում մը չըրին, այլ ջանացին միայն իրենց առուտուրն ընդարձակել և Ափրիկէի բնիկ ցեղերու վրայ իրենց իշխանութիւնը տարածել։

Սակայն նոր դէպք մը նոցա փառասիրութիւնն ու հին ոխը զրգռեց։ Նոյն միջոցին Սիրակուսայի և Աթենքի մէջ մեծ պատերազմ սկսեր էր, վասն զի Սեգեստայի և Սելինոնի (Սիկիլիա) բնակչաց մէջ կռիւ մը ծագելով Սեգեստացիք յունաց օգնութիւնը խնդրեր էին, մինչդեռ Սիրակուսացիք Սելինոնի կողմը բռներ էին։ Աթենացիք կ'յաղթուին (416) և իրենց դաշնակից Սեգեստացիք Սիրակուսացւոց բարկութենէ վախնալով՝ դեսպան կ'ղրկեն Կարքեդոն և նորա օգնութիւնը կ'հայցեն։

Կարքեդոնացիք յօժարակամ կ'ընդունին այս հրաւէրը և Գիսգոնի որդին Աննիբալը շատ զօրքով Սիկիլիա կ'առաքեն։ Աննիբալ Սելինոն և Հիմերա քաղաքները պաշարմամբ կ'առնէ կը կործանէ, բնակիչներն՝ որոց մէջ կանայք և տղայք անգամ մեծ արիութեամբ պատերազմեր էին, սրէ անցընել կ'տայ, և կ'հրամայէ որ երեք հազար գերի իր հաւուն՝ Ամիլկարի սպանուած տեղը սպաննեն։ Այս սոսկալի հրամանը կ'կատարուի։ Սիկիլիացիք կ'ստիպուին զինադուլ մը խնդրել ծանր պայմաններով։

Աննիբալ հայրենիքը դառնալուն՝ մեծ պատուով ընդունուեցաւ։ Այս արշաւանքին յաջողութենէ սիրտ առնլով Կարքեդոնացիք բոլոր Սիկիլիոյ տիրելու խորհուրդ ըրին։

**Ակրագանդի և Գելայի առումը.** — Այս խորհուրդն 'ի կատար հանելու համար՝ Աննիբալ հզօր բանակի մը գլուխն անցած՝ Սիկիլիոյ Լիլիբէոն քաղաքն ելաւ և անկից գնաց Ակրագանդը պաշարելու, որ Սիրակուսայէն ետք՝ կղզւոյն ամենէն նշանաւոր քաղաքն էր։ Այս պաշարումը ութ ամիս տևեց. մէկ կողմէ բերդականները սովէ կ'տառապէին, միւս կողմէ պաշարողները ժանտախտէ։ Կարքեդոնացիք մի շատ շիրիմներ քանդեր և նոցա քարերով այլ և այլ մարտկոցներ շիներ էին. ուստի ժանտախտը դիակներու ժահահոտ բուրումէն յառաջ եկած էր։ Բայց նոքա կարծելով թէ այս պատուհասը դիք ղրկեր էին՝ Պոսիդոնի տոհմիկ տղայ մը զոհ ըրին, որպէս զի դից բարկութիւնը մեղմեն։ Իսկ Ակրագանդի բնակիչներն համբերութեամբ ամեն նեղութիւն քաշելէն ետև՝ գիշերով թշնամեաց բանակէն անցան և Գելա քաղաքը քաշուեցան, Ակրագանդի մէջ թողլով ծերերը, հիւանդներն ու վիրաւորները։ Իմիլկոն՝ որ զօրաց հրամանատար եղեր էր իր հօրը Աննիբալի մահուանէ ետև՝ այս անզէն ու աղեկար մարդիկը ջարդել տուաւ։ Յետոյ գնաց Գելա քաղաքն ալ պաշարեց ու առաւ։

(Առ հասարակ՝ բոլոր Սիկիլիոյ քաղաքներն, որ դորիացի ու յոնիացի գաղթականաց ձեռօք հաստատուեր էին, հանրապետական կառավարութիւն ունէին։ Նոյնպէս կը կառավարուէր և Սիրակուսա՝ երբ Գելայի բռնաւորը Գելօն այս քաղքին տիրեց և իշխանութիւնը հաստատեց՝ Կարքեդոնացի Ամիլկարին դէմ մեծ յաղթութիւն մը տանելով։ Գելոն՝ թէև թագաւոր՝ իբրև երկրագործ կ'ապրէր և այսպէս բնակչաց սիրելի եղեր էր։ Գելոնի յաջորդաց ժամանակ նորէն հաստատուած հանրապետութիւնը՝ Դիոնեսիոս կործանեց։ Այս բռնաւորն անիշխան մարդու ղաւակ և պարզ զինուոր մ'էր։ Իր արիական գործերով մեծ անուն և ազդեցութիւն ստացաւ։ Երբ Կարքեդոնացիք Սելինոն և Հիմերա քաղաքներն առին, Դիոնեսիոս՝ այս ձախորդութեան իբրև պատճառ՝ հանրապետութեան զօրավարներն ամբաստանեց և բանակը շահելով ինքզինքը թագաւոր անուանել տուաւ։ Բայց վերջէն ժողովուրդն իրեն դէմ ապստամբեցան և զանի գահէն վար առնել ուզեցին։ Դիոնեսիոս այս ապստամբութիւնը զսպեց, և այնուհետև կասկածոտ, անգութ դառնալով՝ իր հպատակացն ատելի եղաւ։ Ամեն կողմը թշնամիներ կարծէր տեսնել. նոյն իսկ ընտանիքը չէին կրնար համարձակ սենեակը մտնել։ Իր ննջարանն խորունկ փոսով մը շրջապատուած էր և շարժուն կամուրջով վեր կ'ելլուէր։ Իր սափրիչը սպաննել տուաւ՝ որովհետև ըսեր էր թէ բռնաւորին կոկորդն իր ձեռքն էր։ Եւ որպէս զի իր գլուխն օտարի ձեռք չյանձնէ, իր աղջկանց սորվեցուցեր էր իր մօրուքն ածիլելու եղանակը, որ էր՝ բոցավառ ընկոյզի կեղևներով զայն այրել։ Դուրս չէր ելներ առանց զրահ մը դնելու պատմուճանին ներքև։ Իր բանտարկած մարդոց լացն իր վրայ լսելու համար՝ գետնափոր զնդանին վերի կողմն ականջի ձևով (Դիոնեսիոսի ականջ ըսուած) շինել տուեր էր։ Թէև բռնաւոր՝ Դիոնեսիոս լաւ յատկութիւններ ալ ունէր. Դամոկլէսի ցցուց պէտք նշանով թագաւորական գահի մը ծանր հոգերը։ Հետզհետէ իրեն յաջորդեցին որդին Դիոնեսիոս կրտսեր՝ և Ագաթոկլ։)

*Իմիլկոն կ՚յաղթուի*. — Նոյն միջոցին՝ Սիրակուսայի վրայ կ՚տիրէր Դիոնեսիոս Երէց, որ Սիկիլիացւոց բանակը կ՚վարէր։ Թէև այս բռնաւորը մեծ վնաս հասուց Կարքեդոնացւոց, բայց տեսնելով որ անկարելի է նոցա յաղթել, առերեւս հաշտութիւն հաստատեց (405), որ թշնամին հեռանայ։ Հազիւ թէ Իմիլկոն Կարքեդոն դարձաւ՝ Դիոնեսիոս բոլոր յունաց դեսպաններ ղրկեց յորդորելով որ Կարքեդոնացիքը կոտորեն, կղզիէն վռնտելու ջանան՝ որպէս զի կարող լինին իրենց անկախութեան տիրանալ։ Այս հրամաններն գրեթէ ամեն տեղ կատարուեցան, Կարքեդոնացի վաճառականներն անխնայ ջարդուեցան և իրենց ինչքն աւարի տուին։ Իսկ Դիոնեսիոս Կարքեդոնայւոց գլխաւոր բերդերն առաւ։ Այս բաւական չէր. Կարքեդոն դեսպան ղրկելով պահանջեց նա որ Սիկիլիոյ բոլոր քաղաքներին ազատ թողուն և պատերազմ սպառնաց՝ եթէ չհաւանին։

Կարքեդոնացիք այս կոտորածն ու սպառնալիքն իմանալով սաստիկ կ՚զայրանան, իսկոյն Իմիլկոնի հրամանատարութեամբ Սիկիլիա բանակ մը կ՚ուղարկեն, որպէս զի բոլոր կղզին նուաճէ և Դիոնեսիոս բռնաւորը պատժէ։ Իմիլկոն ծովէն ու ցամաքէն Սիրակուսան կ՚պաշարէ և արդէն Ակրադանդ քաղաքն առնլու վրայ էր, երբ այնպիսի սոսկալի ժանտախտ մը կ՚սկսի իր բանակին մէջ հարուածել որ կենդանի մարդիկ մեռելները թաղելու անգամ անկարող կ՚լինին։ Նոյնպէս հրդեհ մը ծագելով Ամիլկոնի նաւատորմը կ՚այրի։ Նոյն պահուն Դիոնեսիոս ալ

թշնամեաց վրայ կ՚յարձակի և Իմիլկոն անձնատուր լինելու կ՚ստիպուի, պայման դնելով որ ինքն իւրեններով միայն քաշուի՝ օղնական զօրքը Սիրակուսացւոց կատաղութեան թողլով։ Իմիլկոն այս պարտութենէ ետև՝ իր հայրենակցաց առջև չուզեց ելնել, և ինքզինք սպաննեց։

**Մագոն. Տիմոլէոն.** — Նոյն միջոցին Դիոնեսիոս մեռնելով՝ իրեն յաջորդեց իր համանուն որդին **Կրտսերն Դիոնեսիոս**, որ հօրը խորագիտութիւնն ու գործունէութիւնը չունէր և զբօսասէր կեանք մը կ՚վարէր։ Կարքեդոն այս թագաւորին դանդաղութիւնն յարմար առիթ սեպեց վրէժ լուծելու և Մագոն զօրավարին հրամանատարութեամբ նաւատորմիղ մը գնաց Սիրակուսայի նաւահանգիստը պաշարեց։ Կղզեցիք նեղը մտնելով Կորնթացւոց դիմեցին։ Տիմոլէոն՝ Կորնթացի անուանի և հայրենասէր զօրավարը՝ Սիկիլիա հասաւ և Մագոնն ՚ի փախուստ դարձոյց։ Մագոն՝ իր հայրենակցաց բարկութենէ ազատելու համար ինքզինք սպաննեց։ Կարքեդոն ուրիշ երկու զօրավարներ, Աննիբալ և Ամիլկար, նոր զօրօք ուղարկեց Սիկիլիա. բայց նոքա ևս Տիմոլէօնի զինուց փորձն առին և Կարքեդոնի ծերակոյտը ստիպուեցաւ խաղաղութիւն կնքելու։

**Աննոն.** — Մինչդեռ Կարքեդոն այսպէս դրսէն անբաղդ էր, ներսէն մեծ վտանգ մը կ՚անցնէր։ Աննոն՝ տէրութեան զօրապետներէն մին՝ միտքը դրաւ իւր հայրենեաց տիրանալ՝ հանրապետու-

թիւնը կործանելով։ Այս նպատակին դիւրաւ հասնելու համար՝ ծերակոյտը կոչունքի մը հրաւիրել ուզեց որ նորա անդամները թունաւորէ։ Այս դաւադրութիւնն երեւան գալով՝ Աննոն բացէ ՚ի բաց գլուխ քաշեց, քսան հազար գերի ժողվելով զինեց և Ափրիկէի բնիկ ցեղերն ալ գրգռեց որ իրեն գործակցին։ Բայց չկրցաւ իր փառասիրութեան հասնիլ։ Կարքեդոնացիք Աննոնին բանակը ցրուելով՝ զինք գերի բռնեցին, խաչը հանեցին՝ սոսկալի տանջանօք և իր ցեղն ալ բնաջինջ ըրին։

Ագաթոկլ. — Սակայն Սիրակուսա նորանոր երկպառակութեանց թատր դարձեր էր։ Կարքեդոն նորէն փորձ փորձեց կղզւոյն բոլորովին տիրելու։ Նոյն միջոցին Ագաթոկլ Սիրակուսացին, որ խառնակիչ մարդ մ՚էր, մեծ ազդեցութիւն ստացեր և Կարքեդոնացւոց օգնութեամբ կառավարութեան գլուխն անցեր էր։ Սակայն նա շուտով մոռցաւ իր պաշտպաններն և համարձակ յայտնեց որ իր միտքը զանոնք լիովին կղզիէն վանել էր։ Կարքեդոնի ծերակոյտն այս նոր և ապաշնորհ թշնամւոյն դէմ Ամիլկարը ղրկեց հզօր բանակով մը։ Ագաթոկլ բոլորովին յաղթուելով Սիրակուսայի բերդը քաշուեցաւ։ Կարքեդոնացի զօրապետը քաղաքը պաշարեց և քիչ ատենէն զայն նուաճելու կը յուսար՝ երբ Ագաթոկլ իր յոյսը գերև հանեց խիստ յանդուգն խորհուրդ մը կատարելու ելնելով։

Շատ մ՚ազատագիր գերիներէ փոքրիկ բա-

նակ մը և նաւատորմիղ մը կազմեց. գաղտնաւպէս և թշնամեաց նաւերէն անտես անցնելով Ափրիկէ իջաւ (309)։ Յանկարծ արկը խռովեցաւ, զօրքը մեծ սարսափ զգաց և ետ դառնալ ուզեց, բայց Ագաթոկլ համոզեց որ միան՝ խաւարումն իբրև նպաստաւոր նշան ցոյց տալով։ Նա որպէս զի իր բանակին վերադառնալու յոյսը բոլորովին կտրէ, և յաղթելու կամ մեռնելու եռանդով պատերազմի, Ագաթոկլ նաւատորմիղը այրեց Տունս և այլ և այլ քաղաքներ յարձակմամբ առաւ, կողոպուտն իր զօրաց մէջ բաժնելով։ Յետոյ Ափրիկէի իշխանները գրգռեց որ Կարքեդոնի լուծը թօթուեն։ Աննոն և Բոմիլկար կարքեդոնացի զօրապետներն Ագաթոկլի դէմ ելան և բոլորովին յաղթուեցան։

Երբ այս գոյժը Կարքեդոն հասաւ, բոլոր բնակիչները սարսափի մէջ ընկան։ Գուշակներ ելան ըսին թէ աստուածները բարկացեր են, որովհետև՝ հին ատենուան պէս՝ ազնուական մարդազոհներ չեն մատուցուիր։ Ուստի շատ տոհմիկ պատանիներ անգթաբար զոհուեցան Մոլոքի կամ Սատուռնոսի բագիններուն մէջ։ Երբ այսպէս անգութ աւելորդապաշտութեամբ Կարքեդոնացւոց աղէտքը կ'ծանրանար, Տիւրոսէն նաւեր հասան՝ որոց մէջ արք, կանայք և մանկունք կային և խոյս տուեր էին այս քաղքէն Մեծն Աղեքսանդրի գալը լսելով։ Թէև վտանգաւոր վիճակի մէջ էին՝ Կարքեդոնացիք այս անօգնական գաղթականները սիրով ընդունեցան և նոցա տառապանքը թեթևցընելու հոգ տարին։

Ամիլկար Սիրակուսայի պաշարումը տատկա-

ցընելու վրայ էր՝ երբ յանկարծ Հռոմայն եկան իրեն որ Հայրենիք դառնայ զայն պաշտպանելու համար ։ Մեկնելէն առաջ՝ յետին ձիգ մ՚ըրաւ որ քաղաքն առնէ . և որպէս զի Սիրակուսացիք վհատին , ձայն տարածեց թէ Ագաթոկլ մեռած է , բայց օգուտ մը չքաղեց և ինք իր մահը գտաւ նոյն կռուին մէջ ։

Ագաթոկլ կարծելով որ ամէն բան իրեն յաջող է , իր որդին Ափրիկէի զօրաց հրամանատար կարգեց և ինք Սիկիլիա դարձաւ ։ Բայց իր տարած բոլոր յաղթութեանց պտուղը կորոյս ։ Իր անփորձ որդւոյն ներքև զօրքն անկարգութեան մէջ ընկաւ , ափրիկեցի իշխաններ վերստին Կարքեդոնի հնազանդեցան ։ Ագաթոկլ այս ձախորդութիւնները լսելով՝ Ափրիկէ փութաց որ նորա դարման բերէ , բայց իր բոլոր ձիգն ապարդիւն ելնելուն՝ իր զօրքն ու որդիքը թողուց և Սիկիլիա փախաւ ։ Բանակն ալ այս վատութեան վրայ կատղած՝ իր զօրապետները սպաննեց և Կարքեդոնացւոց անձնատուր եղաւ ։ Իսկ Ագաթոկլ քիչ մ՚ետք մեռաւ՝ ցաւէն կամ թոյնէ ։

Պիւռոս , Եպիրոսի Թագաւորը . — Կարքեդոնացիք նորէն իրենց կորսուած քաղաքներն առին Սիկիլիոյ մէջ ։ Յոյները՝ Եպիրոսի Պիւռոս Թագաւորն , որ Ագաթոկլի մէկ աղջկան հետ կարգուեր էր , իրենց օգնութեան կոչեցին ։ Նոյն միջոցին Պիւռոս Իտալիոյ մէջ՝ Մեծն Յունաստանի գաղթականները Հռոմայեցւոց դէմ պաշտպանելու եկեր էր (277) . ուստի շուտ մը Սի-

կիլիա անցաւ և Կարքեդոնացւոց ձեռքը գտնուած քաղաքներն առաւ, բաց 'ի Լիլիբէօն քաղքէն։ Բայց քիչ ատենէն Իտալիա դառնալու ստիպուելով՝ Կարքեդոնացիք դարձեալ կղզւոյն մեծ մասին տիրացան, թէև Սիրակուսայի Հիերոն թագաւորն դիւցազնաբար պատերազմեցաւ։

---

## ԳԼՈՒԽ Գ.

### Փիւնիկեան պատերազմներէն մինչև Կարթագենի կործանումը.

### (264—146)

**Փիւնիկեան պատերազմաց պատճառը.** — Երբոր Պիւռոս Սիկիլիայէն կ'հեռանար՝ իր զօրականներուն ըսաւ. «Ի՛նչ աղւոր պատերազմի ասպարէզ կ'թողունք Կարքեդոնացւոց և Հռոմայեցւոց համար»։ Քիչ ատենէն այս գուշակութիւնը կատարուեցաւ, Հռոմ և Կարքեդոն իրարու զարնուեցան՝ Մամերտացւոց օգնելու համար, թէև բուն պատճառն իրենց իրարու դէմ ունեցած նախանձն էր։

Ագաթոկլ Կամպանիոյ վարձկան զինուորներ ունէր։ Իր մահուանէ ետք, ասոնք Մեսսինայի քաղաքին տիրեր և բոլոր բնակիչները սրէ անցընելով՝ անոր բնակիչ էին՝ Մամերտացի կոչուելով։ Սիրակուսայի Հիերոն թագաւորը նոցա դէմ ելաւ և զարկեց։ Այն ատեն Մամերտացիք երկու հետ դառնալով՝ մէկ մասը Կարքեդոնա-

ցւոց օգնութիւնը խնդրեց և միւս մասը Հռոմայեցւոց։

Հռոմ Ապպիոս Կլօդիոս զօրավարը ղրկեց, որ Մեսսանա բերդաքաղաքն առաւ, մինչդեռ Կարքեդոնացիք՝ Հիէրոն Թագաւորին օգնութեամբը զայն ձեռք ձգելու կ՚ջանային, բայց մեծ կոտորած կրելով ՚ի փախուստ դարձան՝ ուրիշ քաղաքներն ալ թշնամւոյն թողլով։ Հիէրոն Հռոմայեցւոց կողմն անցաւ։ Այսպէս սկսան Փիւնիկեան պատերազմունքը, որոց աւելի մանր պարագաներն Հռոմայեցւոց պատմութեան մէջ պիտի տեսնենք։

**Ռեգուլոս. Քսանթիպպոս.** — Պատմութեան մէջ՝ այն պատերազմներն որ Կարքեդոն և Հռոմ իրարու դէմ մղեցին Փիւնիկեան կ՚ըսուին, և երեք են. առաջինն 23 տարի տևեց։ Կարքեդոն արդէն Միջերկրականի կղզեաց կ՚տիրէր, և Իտալիոյ ծովերը բռներ էր, մինչդեռ Հռոմ Իտալիոյ հարաւային երկիրները նուաճելով Կարքեդոնի ծովային զօրութիւնը կոտրելու կը փափաքէր, բայց նաւեր չունէր։ Արդէն Սիկիլիոյ մէկ մասը նուաճեր և միայն Լիլիբէոն քաղաքը Կարքեդոնացւոց ձեռքը մնացեր էր, այլ ասով գոհ չէր։ Ուստի քանի մ՚ամիսուան մէջ մեծ նաւատորմ մը պատրաստեց և **Դուիլիոս Նեպոս** հիւպատոսին տալով Կարքեդոնացի **Աննիբալ Բարկաս*** ծովակալին դէմ արձակեց։

* Բարկաս կ՚նշանակէ շանթ փիւնիկեցի, նոյնպէս եբրայերէն լեզուաւ, որ իրարու յարակից են։

Ցուիլիոս նշանաւոր յաղթութիւն մը տարաւ Միլէի մօտ եւ 'ի դարձին Հռոմ՝ մեծ պատիւներու արժանացաւ ։

Այս յաղթութենէ սիրտ առած՝ Հռոմ՝ Ռեգուլոս հիւպատոսը շատ զօրքով Ափրիկէ ղրկեց որ Կարքեդոնի տիրէ ։ Ռեգուլոս շատ քաղաքներ առնելէն ետեւ՝ գնաց մայրաքաղքէն քանի մը մղոն հեռու իր բանակը դրաւ ։ Կարքեդոնացիք խաղաղութիւն կ'առաջարկեն, Հռոմայեցի զօրապետը ծանր ծանր պայմաններ կ'դնէ, որ անընդունելի լինելով՝ վերստին կռիւը կ'սկսի ։ Այս անգամ՝ սպարտացի Քսանթիպպոս արիասիրտ զօրապետը՝ կարքեդոնացի զօրաց կ'հրամայէր ։ Ռեգուլոսի բանակը կ'յաղթուի եւ ինքն ալ գերի կ'բռնուի ։ Քանի մը տարի անցնելէն ետեւ՝ երբեմն այս երբեմն միւս կողմը յաղթական կ'ելնէ եւ երբ Պոլէրմոի նաւային պատերազմը կ'կորսնցնեն Կարքեդոնացիք՝ հաշտութիւն ընել եւ երկուստեք գերիները փոխել կ'առաջարկեն ։ Ուստի Ռեգուլոսը Հռոմ կ'ղրկեն որ հաշտութեան համար խօսի եւ եթէ իր ջանքն անօգուտ մնայ վերստին Կարքեդոն դառնայ ։ Ռեգուլոս իր հայրենեաց շահն անձնական ազատութենէ վեր դասելով կ'յորդորէ Հռոմայեցիքն որ պատերազմը շարունակեն, եւ ինք՝ իր խոստման համեմատ՝ Ափրիկէ կ'դառնայ եւ սոսկալի տանջանօք կ'սպաննուի ։ Այն ատեն կռիւը կ'շարունակեն երկու կողմէն Լիլիբէոնի պաշարմանը ։ Ի վերջէ Եգատեան կղզեաց մօտ՝ Կարքեդոնացիք կ'յաղթուին բոլորովին եւ Սիկիլիան Հռոմայեցւոց կ'թողուն (241) ։

Ասդրուպաղ՝ իր փեսան Կարքեդոնի իշխանու-
թեան հնազանդեցուց Սպանիոյ հարաւային կող-
մերը և մինչև Իբերոս գետը հասաւ և Նոր Քա-
ղաք մը հիմնեց Կարթագենի անուն։ Հռոմայեցիք
այս յաջողութիւններն չտանելով՝ Սագունդոն քաղ-
քին յոյն գաղթականաց հետ դաշնակից եղան՝
որպէս զի Ասդրուպալի ընթացքն արգիլեն։ Ի-
բերոս գետն իր յաղթութեանց սահման դրին։
Այս զօրապետն սպաննուելով՝ նորա տեղն ան-
ցաւ Աննիբալ՝ Մեծն Ամիլկարի որդին։

Աննիբալ հին ազգաց մէջ ամենէն համբաւա-
ւոր և հռչակաւոր զօրապետներէն մին եղաւ։
Դեռ փոքր տղայ էր՝ երբ իր հօրը քով պա-
տերազմական արուեստին և ամեն տեսակ չար-
քաշութեան կ'վարժուէր, և հայրն իրեն երդում
ընել տուեր էր խորանին առջև որ հռոմայե-
ցւոց դէմ անհաշտ ատելութիւն տածէ։ Եւ ի-
րօք անդրդուելի մնաց իր ատելութեան մէջ։
Քսան հինգ տարու էր՝ երբ Սպանիոյ կառա-
վարութիւնը ձեռք ձգեց և զօրաց գլուխն անց-
նելով մեծ խորհուրդ մը յղացաւ՝ այն է եր-
թալ զարնել Հռոմայեցիքը Հռոմի մէջ։ Այս
ոգւով՝ իր պատրաստութիւններն ըրաւ՝ թէ և իր
ոսոխն Աննոն՝ որ խաղաղութեան կուսակից մար-
դոց գլուխն էր Կարքեդոնի մէջ՝ այլ և այլ
դժուարութիւններ կ'հանէր նորա առջև։ Աննի-
բալ՝ Հռոմայեցւոց հետ դրուած դաշինքն աւրե-
լով՝ կ'երթայ Սագունդոն քաղաքը կ'պաշա-
րէ և ութ ամիսէն զայն կ'առնէ կ'կործանէ։
Հռոմ դեսպաններ ղրկեց Կարքեդոն քաղաքէն
և հատուցում պահանջելու, բայց անօգուտ

տեղը ։ Աննիբալ իր խորհուրդն յառաջ կ՚առնէ անվեհեր ։

**Աննիբալի արշաւանքը** . — Ահա այն ատեն կ՚սկսի Երկրորդ Փիւնիկեան պատերազմն որ 17 տարի կ՚տեւէ ։ Աննիբալ 60,000 զօրքով և 37 փիղով Պիրենեան լեռներէն կ՚անցնի՝ և անհնարին դժուարութեանց յաղթելով՝ մինչև Ալպեան լերանց ստորոտը կ՚հասնի ։ Եւ երբ նորա գագաթը կ՚ելնէ իր զօրաց ցոյց կ՚տայ Իտալիոյ դաշտերն և նոցա մարտական եռանդը կ՚գրգռէ ։ Սակայն Աննիբալ իր զօրաց կէսը կորուսեր էր այս արշաւանքին ատեն՝ երբ Հռոմ հետզհետէ նորա դէմ զօրք կ՚ուղարկէր ։

Աննիբալ բոլոր հռոմայեցի զօրապետաց (Սկիպիոն, Սեմպրոնիոս, Փլամինիոս) զօրութիւնք կ՚կոտրէ, նշանաւոր յաղթութիւններ կ՚տանի, և Իտալիոյ մեծ մասին կ՚տիրէ Վարոն հիւպատոսին դէմ Կաննէի հռչակաւոր ճակատամարտը շահելով ։ Եթէ այնուհետև Աննիբալ շիտակ Հռոմ քալէր թերևս այս քաղաքն առնէր . բայց իր դիրքէն օգուտ չքաղեց, Կապուա գնաց ձմերեց և անկից Իտալիոյ ժողովուրդները Հռոմի դէմ գրգռելու փորձ փորձեց ։

**Աննիբալի ձախորդութիւնք** . — Թէև Հռոմ Կաննէի ճակատամարտին կորուստն առնելուն կ՚սարսափի, սակայն իր բնիկ արիութիւնն անձկուն կը մնայ, նոր զօրք գումարելով Կարքեդոնացի ահարկու զօրապետին դէմ դնելու կ՚պատրաստուի, և հետզհետէ բոլոր առած երկիրները

ձեռք կ'ձգէ։ Միւս կողմէ Աննիբալ Կարքեդո-նէն օգնութիւն կ'խնդրէ, բայց օգնական զօրք չեն հասնիր, Մակեդոնիոյ Փիլիպպոս Գ թագաւո-րին հետ կ'դաշնակցի բայց օգուտ չտեսներ։ Հռոմայեցիք նորա դէմ կ'ուղարկեն Պուբլիոս և Կնէոս հիւպատոսները, Կապուան կ'պաշարեն ու կ'գրաւեն։ Թէև Աննիբալ առանց վհատե-լու կ'շարունակէր իր պայքարը, սակայն երբ կ'իմանայ որ Հռոմայեցիք իր Ասդրուպալ եղ-բայրը սպաններ և նորա բերած զօրքը կոտորեր են, որ Կոռնելիոս Սկիպիոն Սպանիան կ'նուաճէր և Ափրիկէ արշաւելով Կարքեդոնի վրայ պիտի յարձակէր, որ Նումիդացւոց իշխանն Մասինիսա Հռոմայեցի զօրավարին միացեր էր, Իտալիայէն ակամայ կ'հեռանայ և իր հայրենիքը վտանգէ ազատելու կ'փութայ։

Զամայի ճակատամարտը։ — Երբ Աննիբալ Ափ-րիկէ կ'հասնի Սկիպիոնի հետ՝ կ'տեսնուի խա-ղաղութիւն հաստատելու միտօք՝ բայց չյաջողիր։ Այն ատեն Զամայի մօտակայի ճակատամարտը տեղի կ'ունենայ և Աննիբալ յաղթուելով Կար-քեդոն կ'քաշուի։ Ծերակոյտը հաշտութիւն կ'առաջարկէ և խիստ ծանր պայմաններու գլուխ կ'ծռէ։ Կարքեդոնացիք պարտաւորեցան Սպա-նիան թողուլ, իրենց պատերազմական նաւերը հրոյ տալ, նորա տարեկան տուրք մը վճա-րել և Մասինիսայի իրենց երկրէն մաս մը հա-նել։ Այսպէս վերջացաւ փիւնիկեան երկրորդ պատերազմը։

Աննիբալի մահը. — Զամայի ճակատամարտէն ետև՝ Կարքեդոն իր նախկին մեծութիւնը կորոյս իրաւ, բայց Աննիբալ ամեն ճիգը թափեց որ կառավարութեան մէջ կարգ կանոն դնէ, և քանի մը տարուան մէջ իր հայրենեաց ներքին վիճակը ծաղկեցուց։ Հռոմայեցիք տեսնելով որ Կարքեդոն քիչ քիչ կ՚զարգանայ ու կ՚զօրանայ՝ վախցան ու պահանջեցին որ Աննիբալն իրենց յանձնուի, այնքան ահ ու սարսափ ազդեր էր այս մեծ մարդուն հնարագիտութիւնն ու հանճարը։ Որպէս զի իր հայրենակիցները չստիպուին այդ վատ հրամանը կատարելու Աննիբալ կամովին ու ծածուկ խոյս տուաւ և Սիրիոյ Անտիոքոս Գ. թագաւորին արքունիքն ապաւէն մը փնտռեց։ Նոյն միջոցին այս թագաւորն Հռոմի դէմ պատերազմ կ՚մղէր և կարքեդոնացի զօրապետին խորհուրդներէն կրնար մեծ օգուտ քաղել։ Բայց բանսարկու մարդիկ Աննիբալը նորա աչքէն հանեցին, հետևապէս Անտիոքոս ինքն իր գլխուն կարգադրեց ամեն պատերազմական գործերն ու յաղթուեցաւ։ Այն ատեն Աննիբալ հարկ սեպեց ուրիշ տեղ մը փնտռել. Նախ Կրետէ կղզին գնաց, ապա Պիւթինիա անցաւ Պրուսիաս թագաւորին մօտ։ Բայց հռոմայեցիք զինք հանգիստ չթողին։ Ֆլամինինոս զօրապետը զանի պահանջեց։ Օրին մէկն Աննիբալ տեսաւ որ իր տունը պաշարեր են. խոյս տալու հնար չկար, ուստի թոյն առաւ ըսելով. «Ազատենք Հռոմ իր սարսափէն»։ Պրուսիաս թագաւորը զինք մատներ էր։ Բայց ինքն ևս Հռոմի առջև յանցաւոր դատուելով գլուխն ածիլած և ստրուկի

հաղուստ ու զգակ դրած գնաց Հռոմ ծերակոյտին առջև երկիր պագելու։ Երկար ատենէ 'ի վեր՝ Աննիբալ «Պատրաստ կ'զանուէր, կ'ըսէ Հռոմայեցի մը, քաջ ճանչելով Հռոմն և Թագաւորաց խոստումը»։ (183)

Կարքեդոնի կործանումը. — Մասինիսա՝ Հռոմի դաշնակիցն՝ անդադար Կարքեդոնացւոց սահմանները կ'արշաւէր՝ դաշնադրութեանց հակառակ։ Կարքեդոն կ'բողոքէր, բայց Հռոմ՝ որ նորա դէմ ունեցած անհաշտ ատելութիւնը կ'պահէր միշտ, այս բողոքները չէր լսեր։ Այն ատեն Կարքեդոնացիք զէնուք վանելու կ'ելնեն Մասինիսան, և յանցաւոր կ'դատուին Հռոմի ծերակոյտին առջև որ բանակ մը կ'ղրկէ Ափրիկէ և Երրորդ Փիւնիկեան պատերազմը կ'սկսի, որ 4 տարի տևեց (149).

Հիւպատոսներն ծանր ծանր պահանջումներ ըրին։ Նախ ազնուական դասէն 300 պատանդ պահանջեցին, ապա բոլոր պատերազմական զէնքերը. Կարքեդոնացիք հնազանդեցան։ Այսպէս զինաթափ ընելէն ետև՝ հիւպատոսներն հրաման տուին որ Կարքեդոնի բնակիչները քաղքէն ելնեն և ներսերը քաշուին։ Կարքեդոնացիք չկրցան հանդուրժել այս անագորուն հրամանին և յուսահատութեամբ դիմադրելու պատրաստուեցան։ Շուտ մը զէնքեր շինեցին, արք և կանայք կ'աշխատէին և շարունակ Հռոմայեցւոց յարձակումները վանեցին և նոցա նաւատորմին մէկ մասն այրեցին։ Սակայն Սկիպիոն Էմիլիանոս միտքը դրաւ Կարքեդոնն սովով նեղը ձգել ու

յաղթահարել։ Քաղաքը պաշարեց և ահագին թմբով մը նաւահանգիստը գոցեց։ Կարքեդոնացիք ապառաժը փորելով դէպ ՚ի ծով անցք մը բացին և իրենց տանց բեկորներով նոր նաւատորմ մը շինեցին, բայց ՚ի զուր։ Սով ընկաւ իրենց մէջ և թշնամիք քաղաքը մտան պարիսպը փլելով, և զայն կրակի տուին. Բիւրսա բերդաքաղաքն ալ առին, ուր Ասդրուպալ զօրավարն քանի մ՚օր ևս դէմ կեցաւ։ Սկիպիոն խօսք տուաւ որ եթէ անձնատուր լինի իր զօրօք պիտի խնայէ իրենց կեանքն. Ասդրուպալ զէնքը վար դրաւ։ Բայց իր կինն՝ իր էրկանը վատութեան վրայ սրտմտելով իր երկու զաւակները սպաննեց և բոցերուն մէջ նետուեցաւ տարաբաղդ քաղքին վերջին պաշտպաններուն հետ։ 700,000 բնակիչներէն միայն 50,000 հոգի ապրեցան, Կարքեդոն կոյտ մը մոխիր դարձաւ։ Նոյն ինք Սկիպիոն այս ողորմելի քաղքին վրայ արտասուք թափեց, կ՚ըսեն, մտածելով որ թերևս օրին մէկն Հռոմ ևս օրհասը պիտի հասնի (146)։

## ԾՐԱԳԻՐ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

**ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԱՓՐԻԿԷ.** — Աֆրիկէի հիւսիսային եզերքն՝ Միջերկրականին վրայ, յոյն և փիւնիկեցի գաղթականներ բնակելով ծաղկեցուցին և հարաւային Եւրոպայի ու Նեղոսին վայրենի ցեղերու հետ առուտուր ընել-

լով հարստացան։ Այս ընդարձակ երկիրն բնական երեք մաս կ'բաժնուէր. ա) Ծովեզերեայ մասը, Նէապօլիս, Մաւրիտանիա (այժմ Պէրպէրիստան). բ) Վայրագ և լեռնոտ մասն, ուր կ'գտնուէր Ատլասի շղթան (Պէտուլ—իւլ—Ճէրիտ, արմաւենեաց երկիր). գ) Աւազուտ մասը, Սահարա։

Առաջին մասերուն սահմանն արևմուտքէն կ'հասնէր մինչև Հերակլեան յօնոյզը, և արևելքէն մինչև Փիլէնեանց բագինները։ Գլխաւոր քաղաքներն են, Կարքեդոն, Բիւրսա, Ուտիկէ, Հիպպոն, Կիրտա, Զամա և այլն։

ՍԻԿԻԼԻԱ. — Գլ. ք. Սիրաքուսա, Կատանէ, Գելա, Ակրագանդ, Սելինոն, Լիլիբէոն, Մէսինա, Սեգեստա, Պանորմոս, Մոտիա և այլն։



Կառավարութիւն. — Կարքեդոնի կառավարութեան ձևն՝ ըստ պարագայից՝ փոփոխութիւններ կրեց. 'ի սկըզբան՝ Տիւրոսի պէս՝ միապետական էր, բայց քիչ ատենէն հասարակապետական եղաւ, որու մէջ ազնուականները մեծ դեր ունէին, թէև ժողովրդեան իշխանութիւնը բոլորովին աննշան չէր։ Ազնուականաց պաշտօնավարութիւնը ժառանգական չէր, ոչ ցեղական իրաւանց այլ հարստութեան վրայ կ'կայանար։ Գործադիր իշխանութիւնն երկու թագաւորաց ձեռքն էր, որ Սուֆէտ կ'ըսուէին; (շօֆէտին կամ երբայեցւոց դատաւորներ) որ ըստ երևոյթին՝ ծերակոյտին կողմէ կ'ընտրուէին, և ապա ժողովրդեան ընդհանուր ժողովին կ'ներկայանային հաստատութեան համար։

Երկու ծերակոյտ կար. մին Սէնքլէտոս կ'կոչուէր, և միւսը Գերուսիա, որ Սինկլիտոսի մէջէն առնուած հարիւր գլխաւոր անդամներէ կ'բաղկանար, և դատաւորական բարձրագոյն ատեանը կ'կազմէր, ուր ամենէն կարևոր խնդիրները կ'լուծուէին։ Ատենակալք մ'ընտրութեան եր

ղանակը յայտնի չէ։ Ծերակոյտն օրէնսդրական իշխանութիւն կ'վարէր, մինչդեռ Գերուսիան կամ տասնչին խորհուրդը՝ գործադրին կ'մասնակցէր։ Եթէ սուփէտներուն և ծերակոյտին մէջ տարաձայնութիւն ծագէր՝ այն ատեն միայն ընդհանուր ժողովին որոշման կ'դիմէին, որ վճռական էր. ուրիշ պարագայի մէջ ընդհանուր ժողովը ձայն չունէր։ Քաղաքային իշխանութիւնը զինուորականէն բաժնուած լինելուն՝ Կարքեդոն հին հասարակապետութեանց յատուկ եղող ներքին վրդովմունքէ ազատ մնաց։ Գերուսիան կ'ընտրէր զօրավարները, բայց ծերակոյտը միշտ մասնախորհուրդ մը կ'կազմէր նոցա ընթացքը քննելու և հսկելու համար։ Մագոնի, Աննոնի, Բարկասի զերդաստանները շատ երկար ատեն՝ նշանաւոր քաղաքագէտ և զինուորական մարդիկ տուին Կարքեդոնի։

Կարքեդոնի կառավարութիւնը բանական էր ներքին հպատակ ժողովրդոց և գաղթականաց համար, զորս երբեք եկամտից աղբիւր կ'նկատէր, և նոցա ոչ իրաւունք, ոչ արտօնութիւն կ'շնորհէր։ Իր միակ փափաքն էր նոցա ձեռօք հարստանալ. ուստի ծանր հարկեր կ'դնէր և կուսակալներն ալ կ'ջանային կեղեքել և ահագին գումարներ ուղարկել տէրութեան գանձը։ Այս է պատճառն որ երբ թշնամին Աֆրիկէի հողը ոտք կոխէր՝ քաղաքներ ու գիւղեր կ'ընդվզէին և նորա կողմը կ'անցնէին, ինչպէս որ տեսանք երբոր Ագաթոկլ և Հռոմայեցիք Աֆրիկէ մտան։

Կարքեդոն հզօր նաւատորմիղ և մեծ բանակներ կ'պահհէր։ Իր զօրաց մեծ մասը վարձկաններէ և ստրուկներէ կ'բաղկանար. իսկ քաղաքացիք տուտուրի կ'պարապէին և պատերազմի նեղութիւններն ու վտանգները չէին տաներ։ Իրաւ է որ միշտ զօրագունդ մը կար բուն կարքեդոնական որ նուիրական կ'ըսուէր։ Լիբիացիք հետեւակ ու ձիաւոր զօրաց մեծ մասը կ'կազմէին. նոյնպէս գալլիացի, սպանիացի, յոյն և իտալացի վարձուոր զինուորներ ունէին. Բալէարեան կղզիներէն պարսաւորներ և թեթեւազէն այրուձի Աֆրիկէի հիւսիսային ցեղերէն։ Սակայն այս բանակը տէրութեան հաւատարիմ չէր մնար միշտ, այն-

պէս որ երբ իր բարձր թոշակը չընդունէր իր ծառայութիւնն աւելի սուղ գին տուողին կ'ծախէր։

Կրօն. — Կարքեդոնացւոց կրօնն իրենց փիւնիկեցի նախնեաց կրօնն էր՝ որ վերջէն փոխուեցաւ օտարաց հաղորդակցութեամբ։ Արիւնաուշտ արարողութիւններ ունէր այս կրօնն և մարդազոհը սովորական էր, թէև Դարեհ, Սիկիլիացիք և Յոյնք ուզեցին այս սոսկալի սովորութիւնը ջնջել տալ՝ եղած դաշանց մէջ այդ պայմանը դնելով։

Իրենց գլխաւոր աստուածներն էին, Բաալ կամ Մոլոք (զոր լատինք իրենց Սատուռնոսի նմանցուցին), Աստարդէ կամ Աստղիկ, Մելքարթ, Տիւրոսի Հերակլէս։ Օտար աստուածներ ալ ընդունեցան, ինչպէս Դեմետր և Պերսեփոնէ, որոց պաշտօնն Սիկիլիայէն մտաւ Ափրիկէ։

Ինչպէս յԱսիա՝ Ափրիկէի մէջ՝ կրօնական դաս, քուրմեր չկային։ Տէրութեան գլխաւոր պաշտօնատարները կը վարէին կրօնական պաշտօնը, և տաճարներն միայն դից յատկացած չէին, այլ կառավարութեան դիւանադիրներն և կարևոր գրոց յիշատակարանները պահելու կ'գործածուէին։

Վաճառականութիւն. — Կարքեդոնացիք գլխաւորապէս վաճառական ժողովուրդ մ'էին, իրենց գաղթականութիւններն, որ միանգամայն վաճառանոցներ էին, Ափրիկէի հիւսիսային եզերքն և Միջերկրականի կղզեաց մէջ կ'տարածուէին։ Երկու կերպ տուրևառ ունէին — ցամաքային ու ծովային։ Իրենց ցամաքային առևտուրն Լիբիացւոց, Եթովպացւոց, Կիւրենէի յունաց և Եգիպտացւոց հետ էր։ Լիբիայէն ու Ափրիկէի ներսերէն կ'ստանային ցորեն, արջառ, ձի, ոսկի, փղոսկր և գերիներ, և փոխարէն աղ, խեցեղէն, զէնք, խաղալիկ կ'տային և այս խափշիկ ժողովրդոց յարմար ապրանք։ Իրենց ծովային վաճառականութիւնն աւելի ընդարձակ էր և շահաւէտ։ Փիւնիկէէն ամեն տեսակ արևելեան վաճառք Կարքեդոն կ'հանէին. Արաբիա զմուռս, թանկագին քարեր

կ՚մատակարարէր․ Ասորեստան՝ գորգ և ազնիւ կտաւ․ Հայաստան՝ ձիեր․ Հնդկաստան, համեմներ, բամբակ, լեղակ, ոսկի, մետաքս և այլն։ Յունաստանէն, Իտալիայէն՝ գինի, ձէթ կ՚բերէին, փոխարէն ցորեն, տարազ, թուզ, արմաւ և ուրիշ մրգեր տալով․ Սարտենիայէն տեսակ տեսակ մետաղներ և այլն։ Կարքեդոնական նաւերն մինչև Բրիտանիա, Պալթիկ ծովը կ՚երթային և Ափրիկէի արևմտեան եզերքն ալ կ՚նաւարկէին։

Կարքեդոնացիք հողագործութեան և ճարտարութեան ալ վարժ էին․ իրենց մէջ արուեստները ծաղկած էին։ Արևելեան ճոխութեամբ կ՚ապրէին, և հարուստ վաճառականները քաղաքը հոյակապ ապարանքներ և գիւղերը զարդարուն ամարանոցներ ունէին, ուր կենաց ամեն հանգստութիւնները կ՚վայելէին, մինչդեռ ժողովրդեան ստորին դասն չքաւորութեան և թշուառութեան մէջ կ՚տառապէր։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՅՈՒՆԱՑ

---

## ԳԼՈՒԽ Գ.

Պելասգեանք — Մինչև Տրովադայ պատերազմը.

**(2000—1190 Ք. Ա.)**

Պելասգեանք. — Յունաստանի առաջին բնակիչներն Պելասգեանք եղան, որ ինքզինքնին երկրածին կ'անուանէին, որպէս թէ իրենց բնակած երկրէն ծնած են. Չգիտցուիր թէ Պելասգեանք ովքը և ո՞ր ճամբով Յունաստան եկան։ Բայց այն ստոյգ է որ Ասիայէն եկան և Քրիստոսէ 2000 տարի առաջ Եւրոպա բնակեցան. Արեաց կամ Հնդիկ-գերմանական ժողովրդոց ընտանիքէն էին. Պելասգեանք փոքր առ փոքր իրենց վայրենի վիճակէն ելան, երկիրը մշակեցին, քաղաքներ շինեցին և մեծ շէնքեր կանգնեցին, Կիկլոպեան անուամբ. վասն զի կ'կարծուէր թէ Կիկլոպ անուն հսկայից ցեղի գործեր են այն շէնքերը, որ ժայռի ահագին հատորներ էին. երբեմն անտաշ երբեմն տաշուած և իրարու վրայ դրուած էին առանց շաղախի։ Այս շէնքերուն մնացորդքը Յունաստանի մի շատ քաղաքաց մէջ դեռ կ'տեսնուին։

Գաղթականք. — Պելասգեանք Արեւելքի հետ յարաբերութիւն ունէին. անտարակոյս Արեւելքէն բազմաթիւ գաղթականներ գալով Յունաստան բերին քաղաքակրթութեան առաջին սերմերը: Կ'ըսուի թէ Եգիպտացի մը Կեկրոպս անուն, Աթէնք քաղաքը հիմնեց. ուրիշ մը, Դանաոս՝ Արգոսի իշխանութիւնը սկսաւ. Կադմոս փիւնիկեցին՝ Բէովտիոյ մէջ՝ Թեբէի միջնաբերդը կառուց, որ իր անուամբ Կադմէա կոչուեցաւ. Պելոպս փռիւգացին՝ իր անունը Պելոպոնեսի տուաւ: Այս օտարականներն իրենց հետ քանի մ'արուեստներ բերին: Կեկրոպս վարուցան ընել սորվեցուց եւ մանաւանդ ձիթենի մշակել յԱտտիկէ եւ Աթենասայ պաշտօնը հաստատեց, որ Աթենքի պաշտպան դիցուհին էր. կ'ըսեն թէ իր յաջորդներէն մին՝ Տրիպտողեմ՝ հնձոց եւ դաշտաց դիցուհի Դեմետրէէն հրահանգ առնլով արօրը կատարելագործեց եւ այսպէս հողագործութիւնը զարգացուց: Կադմոս փիւնիկեան այբուբէնը բերաւ եւ Յոյները զայն ընդունեցան: Քիչ քիչ մարդկային ընկերութիւններ կազմեցան, թագաւորութիւններ հիմնեցան, որոց մէջ երեւելի են Աթենքի, Թեբէի եւ Արգոսի թագաւորութիւնները. տաճարներ հաստատուեցան. նշանաւոր է մանաւանդ Արեոպագոսի տաճարը՝ զոր Կեկրոպս Աթենքի մէջ հաստատեց. այս տաճարը քրէական յանցանքներ կ'դատէր. քուէ տալու համար դատաւորներն երկու սափոր կը գործածէին, որոց մին մահուան սափոր եւ միւսը փրկութեան սափոր կ'կոչուէր. եթէ քուէները հաւասար գային, ամբաստանեալը կ'արձակուէր.

այսպիսի պարագայի մէջ կ'ըսէին թէ Աթենաս իր քուէն գթութեան սափորին մէջ կ'նետէր։

ՀԵԼԼԵՆՔ. — Գրեթէ 1500 տարի Քրիստոսէ առաջ՝ Հելլէնք կոչուած ժողովուրդ մը Յունաստան արշաւեց։ Այս ժողովուրդը Յունաստանի հիւսիսային կողմերը (Թեսալիա) կը բնակէր և հաւանական է որ Պելասգեանց ցեղէն էր։ Հելլենք՝ որ պատերազմասէր և քաջասիրտ էին՝ նուաճեցին Պելասգեան ցեղերն. սակայն այս երկու ժողովուրդներն իրարու հետ խառնուեցան, և այս խառնուրդէն յառաջ պիտի գար Յոյն ազգը։ Հելլենաց անուամբ այն երկիրն ալ Հելլադա կոչուեցաւ։

Հելլենական չորս ցեղերը. — Հելլենք չորս ցեղ բաժնուած էին. Աքայեցիք, Եոլիացիք, Յոնիացիք և Դորիացիք։ Ասոնց մէջ ամենէն զօրաւոր ցեղն եղաւ Աքայեցւոցը՝ որ Պելոպոնեսի արեւելեան մասին կէսը բռնեցին (Արգոլիս և Լակոնիա)։ Եոլիացիք՝ երկրորդ կարգն էին. Հելլադայի և Պելոպոնէսի արեւմտեան մասը շէնցուցին (Բէովտիա, Փոկիդէ, Լոկրիս, Եթոլիա, Մեսենիա)։ Յոնիացիք՝ Պելոպոնէսի հիւսիսակողմը բնակեցան (Աքայիա և Ատտիկէ)։ Իսկ Դորիացիք երկար ժամանակ Յունաստանի հիւսիսային լեռները մնացին։

ԴԻՒՑԱԶՆԱԿԱՆ ԺԱՄԱՆԱԿ. — Հելլենաց արշաւանքը բոլորովին վրդովեց Պելասգեան ցեղերն և մեծ խառնակութիւն պատճառեց Յունաստա-

նի մէջ։ Այն ատեն երեւան եկան յանդուգն աւանդականներ, անզգութ թունաւորներ, վայրագ կենդանիներ, մէկ խօսքով ամեն տեսակ պատուհասներ և հանդարտ բնակիչները կողոպտելով ամեն տեղ աւերմունք և սարսափ ձգեցին։ Քաջասիրտ մարդիկ այս աղէտից վերջ տալու և իրենց հայրենիքէն հեռացածները ազատելու համար ամեն ճիգ թափեցին, և անոնք այնպիսի քաջութեան գործեր ըրին որ բոլոր ժողովրդոց երախտագիտութեան արժանի ըլլալով դիւցազունք կամ կիսաստուածք կոչուեցան և պաշտուեցան նոցա կողմէ։ Ամեն գաւառ, ամեն քաղաք իր դիւցազունն ունէր։ Ամենէն երեւելիներն են Մինոս, Կրետէի թագաւորը, Թեզէոս, Աթենքի թագաւորը, Հերակլէս, Պերսէոս, Կաստոր և Պոլլուքս։ Այս դիւցազանց վրայ այնպիսի բաներ կ'պատմուին որ ըստ մեծի մասին առասպելներ են և աւելի դիւցաբանութեան կ'վերաբերին քան թէ պատմութեան։

Արգոնաւորդաց արշաւանքը. — Շատ անգամ դիւցազունք երկարատև ուղևորութիւններ կ'ընէին։ Այս ժամանակի անստոյգ պատմութեան գլխաւոր դէպքերէն մին ալ Արգոնաւորդաց արշաւանքն է։ Բոլորովին յայտնի չէ թէ այս արշաւանքին բուն նպատակն ինչ էր։ Այս միայն ստոյգ կ'երևի որ գրեթէ 14դ դարուն (Ք. Ա.) Թեսաալիոյ իշխան մը Յասոն Յունաստանի քաջերը ժողվեց, կէս մ'առուտուրի և կէս մը ասպատակութեան համար, Ճամբայ ելաւ ծովով դէպ 'ի Կողքիս (Պոնտոսի հարաւ-արև-

մոտեան կողմը)։ Կ'ըսէին թէ այս երկրին թագաւորն (Այետաս) ոսկեթել բուրդն կամ ոսկեգեղմն ունէր։ Այս ծովային արշաւանքն Արգոնաւորդաց անուամբ կ'յիշուի, վասն զի Ճամբորդ դիւցազանց նաւն Արգօն կ'կոչուէր։

Եօթն իշխան Թեբէի առջև. — Այն ժամանակ այլ և այլ պատերազմներ տեղի ունեցան։ Ետէոկլ ու Պոլինիկէ երկու եղբարք էին։ Իրենց հայրը Եդիպոս՝ Թեբէի թագաւորը՝ մեռնելով որդիքը նորա գահը կ'ժառանգեն և կ'որոշուի որ ամեն մէկն յաջորդաբար տարի մը թագաւորէ։ Բայց Ետէոկլ այս որոշումը մերժեց և ուզեց ինքնագլուխ իշխել։ Ուստի Յոնաստանի գլխաւոր իշխաններէն վեց հոգի իրեն օգնութեան կոչեց։ Սոցա օգնութեամբը Պոլինիկէ Թեբէն պաշարեց։ Պաշարումն երկար ատեն տևեց։ Ի վերջէ երկու անհաշտ եղբարք մենամարտելով միասին սպաննուեցան։ Միւս բոլոր իշխաններն այս կռուին մէջ ընկան։ Բաւական ատեն անցնելէն ետև՝ եօթն իշխանաց որդիքը վերստին Թեբէի դէմ ելան։ Այս երկրորդ պատերազմն՝ որ 10 տարի տևեց՝ Եպիգոնեան կ'ըսուի։ Այնուհետև Թեբէ քաղաքն աւրին և Պոլինիկէի մէկ որդին թագաւոր դրին։

Տրոյիոյ պատերազմը. — Դիւցազնական ժամանակը Տրոյիոյ պատերազմով կ'վերջանայ։ Քրիստոսէ 1280 տարի առաջ՝ Փոքր Ասիոյ մէջ՝ Եգէեան ծովուն եզերքն զօրաւոր տէրութիւն մը կար։ Մայրաքաղաքն էր Իլիոն կամ Տրոյիա՝ որ

իր հոյակապ պարիսպներուն կողմէ շատ նշանաւոր էր։ Տրովիոյ թագաւորութիւնն Յունաստանի դիմացը կ՚ընկնէր. բայց այս երկու երկիրներուն ժողովուրդներն իրարու դէմ սաստիկ ատելութեամբ վառուած էին։ Այս ատելութեան պատճառն երկու կողմէն փոխադարձ թշնամանք էին։ Վերջապէս Տրովիոյ իշխանի մը ըրած նախատինքը պատերազմի առիթ տուաւ։

Բարիզ՝ Տրովիոյ Պրիամոս թագաւորին որդին՝ իբրև դեսպան Պելոպոնէս գացեր էր՝ թերևս հաշտութիւն խօսելու համար։ Բարիզ Սպարտայի Մենելաոս թագաւորին պալատը հիւր իջեր և նորա կինը հրապուրելով յափշտակեր տարեր էր։ Այն ատեն Մենելաւոս այս նախատինաց չկրնալով հանդուրժել՝ բոլոր Յունաստանի իշխաններն 'ի զէն կոչեց վրէժ լուծելու համար։ Անմիջապէս 1000 նաւ և 100,000 զօրք Ագամեմնոնի հրամանատարութեան ներքև գումարուեցան և Տրովիա գնալու ճամբայ ելան։ Ագամեմնոնէն զատ՝ որ Մենելաւոսի եղբայրն և Միկենէի (Արգոլիս) թագաւորն էր՝ նոյն բանակին մէջ Յունաստանի ուրիշ երևելի իշխաններ ալ կային, ինչպէս՝ Աքիլլէս և իր Պատրոկլ բարեկամը, Դիոմէդ, Արգոսի թագաւորը, երկու Այաքս, իմաստունն Նեստոր և խորամանկ Ոդիսևս՝ Իթակէի թագաւորը, Փիլոկտետ։

Յունաց բանակը Փոքր Ասիա իջաւ և Տրովիա քաղաքը պաշարեց։ Այս պաշարումը 10 տարի տևեց։ Տրովացիք՝ որ շրջակայ ազգերէն և մանաւանդ Հայաստանէն օգնութիւն առեր էին, ընդ երկար դիմացան։ Իրենց հրամանա-

տարիներն էին Ենէաս, Անտենոր և մանաւանդ Պրիամու մէկ ուրիշ որդին վեհանձն և արիասիրտ Հեկտոր։ Յունաց մէջ ամէն կռիւ ու երկպառակութիւն կ'ծագէին, և ասով Տրոյացիք աւելի դիւրաւ կ'յաղթէին։ Իսկ երբ Աքիլլէսի և Ագամեմնոնի մէջ վէճ ելաւ և առաջինը բարկանալով իր վրանը քաշուեցաւ՝ Տրոյացիք աւելի սիրտ առին, Հեկտոր յունաց բանակն ու նաւերը կրակ ձգեց և Պատրոկլը սպաննեց։ Այն ատեն Աքիլլէս իր մտերիմ բարեկամին վրէժը հանելու համար՝ զէնքն առնելով ասպարէզ իջաւ, Տրոյիոյ դիւցազնն սպաննեց և նորա դիակն իր կառքին կապելով՝ եօթն անգամ քաղքին շուրջանն ըրաւ։ Սակայն քիչ մ'ետքն՝ ինքն ալ Պարիզի ձեռօք նետահար մեռաւ։ Վերջապէս՝ Ոդիսեսի մէկ հնարքով Յոյնք Տրոյիան առին։ Ահագին փայտէ ձի մ'որու կողերը մարտիկներ կային լցուած՝ քաղաքը մտցուցին իբրև դից նուէր։ Այս յոյն մարտիկները գիշերային ձիուն մէջէն ելան, դուները բացին որ յոյն զօրքը ներս մտնէ և քաղաքը կրակի տուին։ Պրիամ և իր որդիքը սպաննուեցան։ Իսկ ազատող Տրոյացիք Ենէասի հետ նաւեր մտան և Իտալիա ու Սիկիլիա գաղթեցին։

Յունաց իշխաններն իրենց յաղթութիւնը չվայելեցին. ոմանք՝ իրենց հայրենիքը դառնալու ատեն կորան, ոմանք՝ 'ի դարձին տեսան որ իրենց գահը բռնակալներ գրաւեր են և հետեւապէս ստիպուեցան Իտալիա և Սիկիլիա երթալ հաստատուիլ։



ցիք, որ՝ մինչև այն ժամանակ՝ Արգոլիսն ու Լակոնիան կ'բնակէին, Դորիացւոց հպատակե-ցան։ Սակայն հին ժողովրդեան մէկ մասը գաղ-թեց, Կորնթոսի ծովածոցին երկայնքը բնակող Յոնիացիքը. վանեց և նոցա տեղը բռնեց։ Պե-ղոպոնէսի հիւսիսային կողմն այս աքայեցի ա-պստակայ անուամբ Աքայիա կոչուեցաւ։

Յոնիացիք՝ այս վերջին երկրէն վռնտուելով Ատտիկէ գացին՝ որու բնակիչներն ալ յոնիական ցեղէն էին (երես 35)։ Այս երկիրը կերպով մը բոլոր Պեղոպոնէսի փախստականաց ապաւէ-նը դարձաւ։ Դորիացիք ուզեցին նոյա նաև էն հալածել։ Կորնթոսի պարանոցէն անցան, Մե-գարայի տիրեցին և Աթէնքի վրայ քալեցին։ Տել-փիսէն պատգամ ելեր էր թէ երկու ժողովրդէն այն յաղթական պիտի ըլլայ որու թագաւորը պատերազմի դաշտին վրայ պիտի մեռնի։ Այս պատգամն իմանալով Դորիացիք պատուէր տուին իրենց զօրաց որ Աթէնացւոց թագաւորին չսպա-ննեն։ Բայց այս թագաւորն՝ որ Կոդրոս կ'կոչուէր՝ իր արքունական զգեստը հանեց, փայտահատի հագուստ հագաւ, գաղտնի մտաւ թշնամեաց բանակին և զինուորի մը հետ կռուելով կամո-վին սպաննուեցաւ։ Դորիացիք Աթէնքի թագա-ւորին մարմինը ճանչելով վախցան որ պատ-գամը չկատարուի և իրենց տեղը դարձան։

Ներքին վէճով. — Դորիական արշաւանքը նաև Հե-րակլեանց վերադարձը կ'կոչուի, վասն զի Հերակլէսի յա-ջորդներն՝ Պեղոպոնէսէն վռնտուելով՝ Դորիացւոց մօտ ապաւիներ և այս ժողովուրդը յորդորեր էին իրենց հայ-րենիքն արշաւելու։

Այս դորիական ապստամբութիւնն՝ ոչ միայն Հելլէն ժողովուրդները շարժեց, այլ նաև յունական ընկերութիւնը փոխեց և ընկերական յեղափոխութեան բաւական պատճառ եղաւ։ Գրեթէ ամեն տեղ հին բնիկները նորերուն հնազանդեցան և ստորին վիճակի մը մէջ ընկան։ Այսպէս Յունաստանի մէջ մարդոց երկու դաս կար. յաղթողները՝ որ բարձր կամ ազնուական մասը կ'կազմէին, և յաղթեալները՝ որ ազնուապետութեան հպատակ մասէն կ'բաղկանային։ Լակոնիոյ մէջ՝ Աքայեցիք հարկատու դառնալով՝ արտերը մնացին և Պերիէկէնոյք անուանեցան, մինչդեռ Դորիացիք՝ որ Սպարտա կ'բնակէին, և բոլոր երկիրը կ'կառավարէին, Սպարտացի կ'կոչուէին։ Այս երկու դասէն զատ՝ Յունաստան շատ գերիներ կային, որ իրենց տէարց բացարձակ ստացուածքն էին։ Լակոնիա՝ ստրուկներն Հէլոտ կ'կոչուէին։

Վերջապէս դորիական արշաւանքը ուրիշ արդիւնք մ'ալ ունեցաւ. յունական ամենէն կարեւոր գաղթականութիւնները հաստատելու պատճառ եղաւ։

ՅՈՒՆԱԿԱՆ ԳԱՂԹԱԿԱՆՈՒԹԻՒՆՔ. — Յոյնք ժիր և յանդուգն ժողովուրդ մ'էին։ Ատեն ատեն իրենց բնիկ երկրէն ելնելով՝ տար աշխարհներ կ'երթային պնդեհեր և տեղ տեղ գաղթականներ կ'հաստատէին։ Չկայ ժողովուրդ մ'ալ յոյն ազգին չափ գաղթականութիւններ հաստատած ըլլի, վասն զի գրեթէ բոլոր Միջերկրականի և Պոնտոսի եզերքն յոյն գաղթականներ բնակեցուց։ Արդէն Քրիստոսէ մօտ 600 տարի առաջ 230 յոյն գաղթականութիւններ կային։

Գաղթականութեան նպատակ և պատճառներ. — Ինչպէս Փիւնիկեան նոյնպէս Յունաց գաղթականներն նպատակ ունէին թէ առեւտրական յա-

բարեկամութիւն հաստատել օտարներու հետ, թէ պարբերաբար աշխատութեան ու գործունէութեան նոր նոր տեղեր փնտռել։ Այլ և այլ պատճառներ կային գաղթելու։ Երբոր քաղաք մը կործանէր բնակիչներն ուրիշ հայրենիք մը փնտռելու կ'ստիպուէին. երբեմն ժանտախտ, գետնաշարժ կ'պատահէր և այն ատեն մարդիկ ուրիշ երկիր խոյս կ'տային. շատ մարդիկ ալ ատելով որ իրենց երկիրը թշուառ կ'տեսնէին, կամ բազմամարդ լինելուն գործ չեն գտներ՝ բաղդ փնտռելու համար կ'հեռանային։ Վերջապէս՝ ուրիշներ ալ քաղաքական պայմաններէ ստիպուելով կ'գաղթէին և մի շատ յունական գաղթականութիւններ ներքին երկպառակութեանց արդիւնքն եղած են։

Այսպէս Դորիացւոց արշաւանքը մեծ պանդխտութեան մը գրգիռ եղաւ, և Փոքր Ասիոյ արևմտեան կողմերը, Եգէեան ծովուն եզերքն ու մօտակայ կղզիները շատ նշանաւոր գաղթականութիւններ հաստատուեցան։ Յոյն ցեղերէն երեքը՝ Եոլիացիք, Յոնիացիք և Դորիացիք այս տարագրութեան մասնակից եղան ու Եոլիական, Յոնիական և Դորիական անուանի գաղթականութիւնները կազմեցին։

Դորիական արշաւանքէն ետք՝ յոյներն այնքան բազմութեամբ գաղթեցին որ Յունաստան գրեթէ անշէն մնաց. այնուհետև՝ շատ դարեր գաղթողները քիչցան և հետզհետէ ժողովուրդն աւելցաւ. Նա մանաւանդ Քրիստոսէ 700 տարի առաջ՝ Յունաստանի քաղաքներուն սկսան ծաղկիլ խաղաղութեան շնորհիւ և ժողովուրդները

բազմանալ. այնպէս որ նորէն մարդիկ գաղթելու ելան և այս անգամ դէպ 'ի հիւսիս և արեւմուտ դիմեցին, այսինքն Թրակիոյ հարաւային կողմերը, Սիկիլիա և հարաւային Իտալիա: Յոյներն այնքան լեցուեցան Իտալիոյ կողմերն որ նորա ստորին մասը Մեծն Յունաստան կոչուեցաւ: Այն ժամանակ՝ իրենց նաւերն արեւմտեան Միջերկրականը կ'շրջէին, և Գալլիոյ ու Սպանիոյ եզերքը յոյն գաղթականներ կ'հաստատուէին.

Այսպէս յունական գաղթականութիւնները Միջերկրականի բոլոր ափանց վրայ տարածեցին հելլենական ցեղին բարքը վարքը, լեզուն և քաղաքակրթութիւնը: Ոմանք այնքան ծաղկեցան որ մինչև իրենց հայրենի երկրէն գեր 'ի վեր փայլեցան: Միլէտ 100 գաղթականութիւն հիմնեց, մեծ մասը Սև ծովուն վրայ. Սիբարիս 100,000 զինուոր հանեց. Սիրակուսա հին աշխարհին ամենէն նշանաւոր և զօրաւոր քաղաքներէն մին եղաւ:

Գաղթականութիւնները բնաւ մայր երկրին հպատակ չէին, այլ անկախ վիճակ մ'ունէին: Սակայն իրենց մայր քաղքին համար որդիական յարգանք կ'տածէին, նորա բարքը, օրէնքը, կրօնական պաշտամունքը կ'պահէին և նորա թշնամեաց հետ բնաւ չէին միանար:

Գլխաւոր գաղթականութիւններն էին,

1. ՓՈՔՐ ԱՍԻՈՅ ԾՈՎԵԶԵՐԱՑ ՎՐԱՅ. — Եօլեան գաղթականութիւն, Տրովիոյ և Միսիոյ մէջ, և մօտակայ Լեսբոս կղզւոյն մէջ. — Յոնիական գաղթականութիւն, կամ Յոնիա՝ Լիւդիոյ և մօտաւոր Սամոս ու Քիոս կղզիներուն մէջ. յոնիական գլխաւոր քաղաքներն էին, Սամոս, Փոկէա, Զմիւռնիա, Եփեսոս և Միլէտ. — Դորեան գաղթականութիւն, Կարիոյ և Կոս, Հռոդոս ու Կրետէ կղզիներուն մէջ. գլխաւոր քաղաքն էր Ալիկառնաս:

2. ՊՈՆՏՈՍԻ ՎՐԱՅ (Սև ծով). — Միլէտէն եկող

գաղթականները մեծաւ մասամբ հիմնեցին Պոնտոսի քաղաքները. գլխաւորն էր Սինոպ Պափլագոնիոյ մէջ։

3. ԹՐԱԿԻՈՅ ԵԶԵՐԱՑ ՎՐԱՅ. — Գլխաւորապէս Մեգարա և Կորնթոս քաղաքներէն գաղթող ժողովուրդն հիմնեցին Թրակիոյ եզերքը գտնուած քաղաքները. նշանաւոր էին, Բիւզանդիոն (այսօր Կոստանդնուպօլիս), Պոտիդէ՝ Քաղքիդոնական ըսուած թերակղզին վրայ, Ոլինթոս՝ Պոտիդէի մօտ։

4. ՅՈՆԻԱԿԱՆ ԾՈՎՈՒՆ ՎՐԱՅ (Յունաստանի և Իտալիոյ միջև). — Կորկիրա։

5 ՍԻԿԻԼԻՈՅ ՄԷՋ. — Նաքսոս, Կատանէ՝ զոր Յոնիացիք հիմնեցին. Սիրակուսա, որ կորնթացւոց քաղաքն էր, Մեսսինա, Գելա, Ակրագանդ, Սելինոն, դորիական։

6. ՀԱՐԱՒԱՅԻՆ ԻՏԱԼԻՈՅ ՄԷՋ. — Սիբարիս և Կրոտոնա, աքայական. Կումա և Նէապոլիս, եոլիական քաղաքներ. Տարենտոն, դորիական։

7. ԳԱՂԻՈՅ ՄԷՋ. — Մարսէլիա, փոկէական։

8. ՍՊԱՆԻՈՅ ՄԷՋ. — Սագունտոն։

9. ԱՓՐԻԿԷԻ ՄԷՋ. — Սիրենէ, որ մեծ առևտուր կ'ընէր Լիբիոյ և Եգիպտոսի հետ։

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԴԻՐՔԸ. — Յունաստան՝ այժմեանին պէս՝ ամբողջ մէկ տէրութիւն չէր, այսինքն մի և նոյն կառավարութիւնը չունէր, այլ մի շատ մանր մունր տէրութիւններէ կ'բաղկանար, որոց ամէն մէկը հազիւ թէ փոքրիկ գաւառի չափ տարածութիւն ունէր։ Կային նաև տէրութիւններ որ լոկ քաղաք մը կ'պարունակէին, նոյն քաղքին բոլորտիքը պզտիկ հող մ'ունենալով. այսպէս էին Մեգարա, Կորնթոս և այլն։

Դորիական արշաւանքին ժամանակ բոլոր յունաց տէրութիւնները թագաւորներ ունէին։ Բայց վերջէն թագաւորութիւնը տապալեցին և հա-

մանրապետութիւններ հաստատեցին։ Արդէն Աթենք Կոդրոսի մահուընէ ետեւ՝ միապետութիւնը ջնջեց։ Ուրիշ քաղաքներ ալ նոյնն ըրին։ Միայն Սպարտա պահեց միշտ իր թագաւորները։ Բոլոր յունական հասարակապետութիւնները նոյն ձեւը չունէին. ոմանք ազնուապետական էին, այլք ռամկապետական։

*Շատ յոյն ժողովուրդներ, այլ մի ազգ.* — Ամեն մէկ յունական տէրութիւն ինքնօրէն էր, այսինքն անկախ և ինքն իր յատուկ օրինօք կառավարուող։ Ուստի Յունաստան իր ծոցը մի շատ այլ և այլ ժողովուրդներ ունէր որոց իւրաքանչիւրն իրեն բնիկ շրջանին մէջ անկախ կ՚կառավարուէր և կ՚զարգանար։ Ամենէն երեւելիներն էին Աթենացիք, Սպարտացիք, Մեսսենացիք, Արգոսացիք, Կորնթացիք, Թեբացիք։ Այս ժողովուրդները՝ որ իրարմէ շատ կ՚տարբերէին բնաւորութեամբ և կառավարութեամբ, շարունակ կռուի մէջ էին և շատ անգամ իրենց մէջ կ՚պատերազմէին, և կ՚ջանային որ զիրար նուաճեն. ուստի երբեմն այս երբեմն այն ժողովուրդն այլոց վրայ առաջնութիւն կամ գերիշխանութիւն կ՚ստանար։

Թէպէտեւ՝ Յունաստանի ժողովուրդներն այսպէս երկպառակութեան և հակառակութեան մէջ էին, բայց որովհետեւ նոյն լեզուն կ՚խօսէին, գրեթէ նոյն սովորութիւններն ու կրօնն ունէին՝ ինքզինքնին իբրեւ համանման ցեղ և մէկ ազգ կ՚սեպէին։ Նոցա մէջ եղբայրական միութեան զգացումը միշտ տիրեց, թէեւ կագ ու կռիւ իրենց մէջ անպակաս էին։

Հելլէնք և բարբարոսք. — Յունաստանի բոլոր բնակիչներն մեծ պարծանք կ'սեպէին իրենց Հելլէն անունը և օտար ժողովուրդները բարբարոս կ'անուանէին։ Իրաւ է որ Հելլէնք կամ Յոյնք մարմնական և մտաւոր մեծ ձիրքեր ունէին. Մարմնական գեղեցկութիւն, իմացական աշխոյժ, գիտութեանց սէր, արուեստից ճաշակ, ազատութեան համար խանդ, եռանդոտ հայրենասիրութիւն. այս ամեն հանգամանքով՝ սոյն փոքրիկ ազգը մարդկութեան մէջ մեծ տեղ մը բռնելու սահմանուած էր։

Ամփիկտիոնեան դաշնակցութիւն. — Յունաստանի ժողովուրդներն երեք կապով իրարու հետ միացած էին. այս կապերն էին քաղաքակրթութիւն, կրօն և ազգային խաղեր։

Քաղաքական կողմն ամենէն աւելի տկար էր։ Յունաստանի զանազան նահանգներն անկարող եղան, Հելվէտիոյ գաւառաց, Ամերիկայի Միացեալ-Նահանգաց պէս՝ իրենց մէջ դաշնակցութիւն մը կազմել, որ՝ ամեն մէկ մասնաւոր գաւառի իր յատուկ կեանքն ու ինքնօրէնութիւնը թողլով հանդերձ, նորա անկախութիւնն ապահովէ թէ՛ միւս դաշնակից նահանգաց թէ օտարաց դէմ։ Իրաւ է որ քանի մ'անգամ փորձ փորձեցին այս քաղաքական միութիւնը հաստատելու. ամենէն երևելին է Ամփիկտիոնեան դաշնակցութիւնը, որ իր մէջ տասներկու նահանգ կամ տէրութիւն կ'պարունակէր, և նպատակ ունէր իրենց մէջ ծագած վէճերն հաշտարար կերպով վերջացնել և Դելփիսի ազգային տաճարը պաշտպանել։

Կրօնք. — Կրօնական կողմն շատ աւելի զօրաւոր էր քան թէ քաղաքականը։ Թէև ամեն յունական քաղաք իր յատուկ պաշտպան աստուածն ունէր, բայց կային նաև այնպիսի կրօնական պաշտամունք որոց ամենքը կ'մասնակցէին

ցեին և տաճարներ՝ զոր իբրև բոլոր ազգին ստացուածքը կ՚համարէին (Ապողոնի մեհեանն 'ի Դելփիս, Արամազդայ մեհեանն յՈլիմպիա)։ Դելփիոյ պատգամն կրօնական իշխանութեան ամենէն բարձր ազգային դրօշմն ունէր։ Ամեն ծանր պարագայից մէջ՝ ժողովուրդները՝ նոյնպէս մանաւանդ անձինք Ապողոնէ խորհուրդ ու պատգամ կը հարցնէին։ Այս տաճարին քրմուհին, Պիւթիա (հարցուկ) անուամբ, եռոտանիի մը վրայ նստած՝ իր պատասխանները կու տար։ Այս եռոտանին փոսի մը մօտ էր, ուսկից գոլորշիներ կ՚ելնէին։ Քրմուհին անոր վրայ ելած՝ կ՚փրփրար, կ՚գեղնէր, բոլոր մարմինը կ՚դողար. Նախ տրտունջներ և հեծեծանքներ կ՚հանէր բերնէն, ապա կ՚սկսէին աչքերը շողալ, մազերը տնկուիլ, և կցկտուր խօսքեր լսուիլ. այս խօսքերը կ՚ընդունէին իբրև պատգամ։ Քուրմերն ամեն հասարակային և մասնաւոր գործոց անտեղեակ լինելով՝ այնպիսի երկդիմի խօսքեր արտասանել կ՚տային Պիւթիայի որ կարելի էր պատգամահարցին փափաքին համեմատ մեկնել։

Ազգային հանդէսներ. — Այս հանդէսներն երբեմն ազգային կամ էին և կրօնական հանգամանք ունէին։ Յոյնք շատ կ՚սիրէին տեսարաններն ու խաղերը։ Ամեն քաղաք իր հանդիսի օրերն ունէր. այս հանդէսները շքեղ արարողութեամբ և ամեն տեսակ փայլուն տեսարաններով ու խաղերով կ՚կատարէին։ Ոմանք ազգային հանդէսներ դարձեր էին, ինչպէս Նեմէան խաղեր՝ որ 'ի պատիւ Հերակլէսի՝ Արգոլիս կ՚կատարէին. Իսթմեան խաղեր, որ 'ի պատիւ Պոսիդոնի՝ 'ի Կորնթոս կ՚հաշակէին. Պիւթեան խաղեր, 'ի Դելփիս՝ 'ի պատիւ Ապողոնի, և 'ի վերջէ՝ ամենէն երեւելի խաղերն, այս է Ոլիմպիական՝ Արամազդայ մեհեանին մօտ՝ Էլիսիոյ Ոլիմպիա քաղաքին մէջ։

Ոլիմպիական խաղերն չորս տարին անգամ մը կ՚կատարուէին. այս չորս տարուան շրջանն Ոլիմպիատ կ՚կոչուի։ Յունաց թուական էր այն. առաջին ոլիմպիադը 776էն (Ք. Ա.) կ՚սկսէր։ Այս խաղերը տեսակ տեսակ մարմնական վարժութիւններ էին (արշաւանք, ձիարշաւ, կառարշ-

ճկունութիւն, ըմբշամարտութիւն, կռփամարտութիւն, նշաձգութիւն, բանաստեղծութիւն)։ Ով որ յաղթական ըլլար գաւառին կամ ձիթենիէ պսակ մ'իբրև մրցանակ կ'ընդունէր։ Մեծ պարծանք էր յաղթելը, ոչ միայն յաղթողին այլ իր ընտանեաց և բնիկ երկրին համար։ Ցեղանեւեան հայրեր որ իրենց յաղթական որդիքը գրկելով ուրախութենէ մեռան։

Ազգային խաղերն եռապատիկ արդիւնք ունեցան. Յունաստանի բոլոր ժողովրդոց համար կապ մ'եղան. շատ անգամ հանդէսներու առթիւ գժտեալ քաղաքացիք հաշտուելով խաղաղութիւն ըրած են։ Մարզանաց ճաշակն արծարծեցին՝ որ որչափ հոգւոյն նոյնչափ մարմնոյն օգտակար է։ Վերջապէս ազնիւ փառասիրութիւն մը ներշնչեցին Հելլենաց, այսինքն արժանաւորութեան և հանճարի պատիւն ընդունիլ իրենց քաղաքակցաց ձեռօք։

---

## ԳԼՈՒԽ Զ.

### Լիկուրգոսէն մինչև Դրակոն

### (898—624)

ԼԱԿՈՆԻԱ. — Պելոպոնէսի այս գաւառն հովիտ մ'է որ երկու լեռներու շղթայի մէջ կը գտնուի, ուսկից կ'անցնի Եւրոտաս գետը։ Լեռներէն մին Տայգետոն է որ Լակոնիան Մեսսենիայէն կ'զատէ։ Այսպէս բնական պատուարներով շրջապատուած Լակոնիան դիւրին էր պաշտպանել ամեն արտաքին թշնամիներու դէմ։

Լակոնիան Դորիացւոց իշխանութեան ներքեւ ընկաւ ։ Այս նորեկ յաղթականները նուաճեցին հին բնակիչները, որ ցիր ու ցան եղան եւ Լակեդեմոնայի սահմանը շրջակայ սարերը բնակեցան, մինչդեռ Դորիացիք Սպարտան իրենց կայան ըրին եւ Սպարտացի կոչուեցան ։ Սպարտացիք միայն քաղաքական իշխանութիւն կ՚վայելէին. Լակեդեմոնացիք հարկատու էին ։ Սակայն Դորիացիք քիչ քիչ իրենց հին պարզ ու չարքաշ կեանքը թողլով մեղկացան. իրենց մէջ զօրաւոր գերդաստաններ յառաջ եկան եւ այլք իրենց ստացուածքէն զրկուեցան. այնպէս որ հարուստ եւ աղքատ ընտանեաց մէջ կռիւներ պակաս չէին ։ Ասկից զատ՝ Սպարտա միշտ երկու տարբեր ցեղէ թագաւոր ունենալով՝ սոքա շատ անգամ իրարու դէմ թշնամաբար կ՚վարուէին ։ Այս ամեն պարագաները սաստիկ մեծ խռովութեանց պատճառ կ՚ըլլէին ։

Այս խռովութեանց մէջ երեւցաւ Լիկուրգոս՝ որ Սպարտացի թագաւորաց մէյն եղբայրն էր ։ Իր հայրն նոյն տանի անկարգութեանց զոհ գացեր էր. վասն զի օր մ՚ուզեց զատել երկու մարդ որ կ՚կռուէին եւ դանակի հարուած մը ընդունելով՝ մեռաւ ։ Իր եղբայրն ալ մեռաւ այրի կինը յղի թողլով ։ Այս կինն առաջարկեց Լիկուրգոսին որ զաւակը ծնելուն սպաննէ՝ այս պայմանաւ որ իրեն հետ կարգուի ։ Լիկուրգոս այս առաջարկութիւնն առ երեսս ընդունեց, որպէս զի մանկիկն ազատէ ։ Երբոր ծնաւ՝ Լիկուրգոս զանի թագաւոր հրատարակեց եւ նորա խնամակալն եղաւ ։ Բայց իր նաեւ այսպէս խա-

զամէն սիրտ առած՝ Լիկուրգոս Սպարտա դարձաւ և օրէնքներ հաստատեց։

Կ՚պատմուի թէ երբ Լիկուրգոս տեսաւ որ իր օրէնսդրութիւնն քաղաքակիցներն յօժարակամ ընդունեցան, ամենուն երդում ընել տուաւ որ մինչև իր վերադարձը բան մը չփոխեն։ Ապա գնաց Դելփիս ու պատգամ հարցուց։ Պիւթիա պատասխանեց թէ Սպարտա բոլոր միւս քաղաքները պիտի գերազանցէ եթէ օրէնքն անթերի պահէ։ Լիկուրգոս այս պատգամը Լակեդեմոն ուղարկեց, և ապա կամովին անօթի մնալով մեռաւ, որպէս զի Սպարտացիք իրենց երդման կապուած մնան։

Լիկուրգոսի օրէնսդրութիւնը. — (888) Լիկուրգոսի գլխաւոր նպատակն էր ուժեղ ու կորովի մարդիկ, անշահախնդիր և հայրենեաց անձնուէր քաղաքացիներ պատրաստել։ Ի՞նչ միջոց բանեցուց — այն բաներն որ մարդուս մարմինը կ՚ջլատէին կամ հոգին կ՚ապականէին քաղքէն հեռացուց և նոյա ոյժ ու կորով տուող բաները գործածեց։ Գիտէր որ հարստութեանց սէրն շատ չարեաց աղբիւրն է, ուստի նախ ստացուածոց հաւասարութիւն հաստատեց։ Նախորդ թագաւորաց օրոք՝ քանի մը զօրաւոր մարդիկ բոլոր երկրին տէր եղեր էին, և ժողովրդեան մեծ մասը թիզ մը տեղ չունէր. Լիկուրգոս այս անիրաւութեան վերջ տալու համար՝ Լակոնիան 39,000 հաւասար մաս բաժնեց, որոց 30,000ը Լակեդեմոնացւոց մէջ բաշխեց և 9,000 մասերն՝ որ աւելի ընդարձակ է

ամենէն լաւ հողերն էին, Սպարտացւոց տուաւ։ Սպարտացին իր բաժինը չէր կրնար ծախել, պարտաւոր էր իր անդրանիկ որդւոյն թողուլ, և եթէ որդի չունենար, իր անդրանիկ դստեր։

Այս կերպով՝ Լիկուրգոս կ'յուսար որ ոչ ոք աղքատ կարող լինէր հողային հարստութեան տիրանալ։ Նոյնպէս ուրիշ ամեն տեսակ հարստութիւն ուզեց ջնջել։ Այսպէս ոսկի ու արծաթ դրամները ժողվեց և նոյա տեղ ծանր երկաթէ դրամ դրաւ, որմէ պզտիկ գումար մ'անգամ սայլերով կարելի էր փոխադրել. ապա վաճառականութիւնն ալ արգիլեց, որ հարստութեան աղբիւր է։ Նոյնպէս կանոն դրաւ որ Սպարտացիք օտարաց հետ չհաղորդակցին՝ որպէս զի իրենց մէջ վատթար գաղափարներ մուտ չգտնեն։ Օտարականները միայն որոշեալ օրեր Սպարտա այցելելու հրաման ունէին, և Սպարտացիք ալ առանց մասնաւոր արտօնութեան չէին կարող բնիկ երկրէն դուրս ուղևորիլ։

Այնուհետև Լիկուրգոս ջանաց իր հայրենակիցները պարզութեան, չարքաշութեան և անձնուիրութեան վարժեցընել։ Մտածեց որ եսականութիւնը ջնջելու և եղբայրսիրութիւնը զօրացնելու միակ միջոցն էր հասարակ կենակցութիւն հաստատել. այսինքն ամեն քաղաքացի, մեծ ու պզտիկ նոյն կեանքը վարեն, նոյն շահն ունենան։ Ուստի ջնջեց ընտանիք. մասնաւոր շահ, և պահանջեց որ ամեն մարդիկ լոկ հայրենեաց համար ապրին։

Լիկուրգոս մեծ կարևորութիւն կ'տար դաստիարակութեան։ Իր օրէնսդրութիւնը գրեթէ բո-

կ'ճաշէին. սեղանն հասարակաց էր. նոյն իսկ թագաւորներն ժողովրդեան սեղանակից կ'ըլ-լէին։ Ամէնքը յետին ծայր ժուժկալ էին։ Գլխաւորապէս պանիր, ձիթապտուղ, թուզ կ'ուտէին, այլ իրենց սիրական կերակուրն էր սեւ ճաշը, այսինքն աղով, քացախով, խոզի ճար-պով խառն մսի յօշուածք։ Եթէ պատերազմ չլինէր՝ Սպարտացիք որսի կ'ելնէին, հրապա-րակը գումարուելով կ'խօսակցէին եւ կարճ ու վճռական ոճ մ'ունէին, զոր Լակոնական կ'կո-չուի։

Լիկուրգոս սպարտ դրաւ որ օրիորդներն ալ մարդոց պէս չարքաշութեամբ դաստիարակուին։ Ուստի նոքա եւ տղոց պէս մարմնամարզութեան կ'վարժէին, եւ քաջութեան ու հայրենասիրու-թեան կողմէ վար չէին մնար։ Սպարտացի կա-նայք լակոնական ոճով կ'ըսէին իրենց որդւոց՝ պատերազմի վահանը տալով. Վահանովդ դար-ձիր կամ նորա վրայ, այսինքն յաղթական կամ մեռած։

Սպարտայի ժողովուրդը. — Լակոնիոյ ժողովուրդն ե-րեք դասի բաժնուած էր. Սպարտացիք, Լակեդեմոնացիք եւ Հիլոտները։ Առաջիններն ազնուական դասը կ'կազմէին եւ միայն հասարակային գործերով կ'պարապէին։ Լակե-դեմոնացիք՝ երկրագործութեան, վաճառականութեան եւ ճարտարութեան մէջ գործունեայ, ճարպիկ մարդիկ էին եւ զինուորական ու նաւային պաշտօններ ալ կ'վարէին։ Իսկ Հիլոտները ստրուկներ էին, որ հողը կ'մշակէին եւ ստորին ծառայութիւններ կ'ընէին։ Սակայն Լակեդեմոն Սպարտայի համանիշ էր։

Կառավարութիւն. — Լիկուրգոս հին կառավարութեան ձևը պահեց։ Երկու ժողով կար, որ վեհապետական պաշտօնն ունէին. Ժողովրդային ժողով և Ծերակոյտ։ Առաջնոյն անդամներն էին բոլոր 30 տարեկան սպարտացիք. իր գլխաւոր պաշտօնն էր ծերակոյտին առաջարկութիւններն ընդունիլ կամ մերժել առանց վիճաբանութեան. միայն այո կամ ոչ քուէ կ'տար։ Ծերակոյտը 60 տարեկան եղող 28 հատ ծերերէ կ'բաղկանար և ամէն կարևոր գործերը կ'անօրինէր։ Կային նաև Երկու թագաւորներ՝ որ բանակին կ'հրամայէին, քրմապետի ու դատաւորապետի պաշտօն կ'վարէին և պարտաւոր էին Հերակլեանց ցեղէն ըլլալ։ Պատերազմի ժամանակ բացարձակ իշխանութիւն ունէին։ Լիկուրգոսէն շատ ետք ուրիշ հինգ պաշտօնատարներ կարգեցան, Եփորոս (պարետ) անուամբ, որ ամէն բանի վրայ կ'հսկէին և օրէ օր իրենց իշխանութիւնն այնքան մեծցաւ որ մինչև անգամ թագաւորները կ'ամբաստանէին և բանտ կ'դնէին։

Մեսսենիական առաջին պատերազմը. Արիստոդեմ. — (744-724) Քանի որ Լիկուրգոսի օրինօք Սպարտացիք պատերազմասէր ժողովուրդ մը դարձան, 'ի հարկէ ուրիշ ժողովրդոց վրայ տիրելու, և Լակոնիան ընդարձակելու պիտի ջանային։ Արդարև՝ հազիւ թէ Լիկուրգոս մեռաւ որ Սպարտացիք Մեսսենիացւոց դէմ պատերազմի ելան։ Այս երկու ժողովուրդներն ալ Դորիական ցեղէ էին, բայց իրարու թշնամի. ինչ էին այս թշնամութեան պատճառները. ա) Երբ Դորիացիք Պելոպոնէսը նուաճելով իրենց մէջ բաժներ էին՝ Սպարտացիք մեծ և լեռնոտ մասը պահեր էին. բ) Երբ սպարտացի աղջկունք Արտեմեայ տաճարը կ'երթային, որ երկու ժողովրդոց սահմանագլուխը կ'գտնուէր,

Մեսսենիացւոց կողմէ նախատինք ընդունեներ էին։ Ուստի երկար և արիւնալի պատերազմներ կը ծագին որ քսան տարի կ'տեւեն։ Մեսսենիացիք ներքեւ կ'մնան և կ'ստիպուին Իթոմ լերան վրայ եղած բերդը քաշուիլ, որպէս զի ինքզինքնին պաշտպանեն։ Ետոյ դէմ պատգամ հարցընելով կ'իմանան որ պէտք է արքայազն աղջիկ մը զոհել աստուածոց բարկութիւնը հանդարտեցնելու համար։ Այն ատեն Արիստոդեմ իր դուստրը կ'զոհէ ձեռնօքն որ պատգամը կատարէ և միանգամայն թագաւոր լինի։ Սակայն այս զոհը Մեսսենիան չազատեց։ Փառասէր Արիստոդեմ՝ որ խղճին յաւէտն կ'տանջուէր և երազներով կ'խռովէր՝ իր աղջկան գերեզմանին վրայ ինքզինք սպաննեց յուսահատ։ Սպարտացիք Իթոմը կ'պաշարեն կ'առնուն և Մեսսենիացիքը կ'նուաճեն, որոց շատերը գաղթեցին Արգոս, Սիրակուզա։

Մեսսենիական երկրորդ պատերազմը։ Արիստոմենէս։ — (684–668) Քառասուն տարի Մեսսենիացիք Սպարտայի բռնաւորութիւնը կրելէն ետև՝ ապստամբեցան, Արիստոմենի զօրապետութեամբ, որ իրենց հին թագաւորաց ցեղէն էր։ Արիստոմեն յանդուգն ու անվեհեր զօրապետ մ'եղաւ և քաջութիւններովը Սպարտացւոց սարսափ ազդեց։ Օր մը մինակ ճամբայ կ'ելնէ, լեռ ու ձոր կ'անցնի, գիշերայն Սպարտա կ'մտնէ և Աթենասայ տաճարը վահան մը կ'կախէ այս արձանագրով. «Արիստոմենի նուէրն առ Աթենաս, Սպարտացւոց աւարէն»։ Սպարտացիք այս յանդգնութենէ վախնալով Դելփիս պատգամ հար-

ժել։ Արիստոմէն իր մարդիկը չորս դին ժողվեց, գունդ մը ձեւացուց, նոցա մէջ դրաւ ծերերը, կիներն ու տղայքն և այսպէս Իրա բերդէն ելաւ։

Սպարտացիք Մեսսենիայ տիրեցին. Արիստոմէն իր հայրենիքն ազատելու անյոյս՝ Հռոդոս կղզին և անկից Սարդիկէ քաշուեցաւ։ Բազմաթիւ Մեսսենիացիք Սիկիլիա գացին և Մեսսանա (Մեսսինա) քաղաքին իրենց անունը տուին։



## ԳԼՈՒԽ Է.

### Դրակոնէն մինչև Պիսիստրատ։

### (624—560)

Ատտիկէ. — Այս նահանգը փոքրիկ թերակղզի մ'է որ Եգեան ծովուն մէջ կ'երկննայ. աջ կողմէն Եւբէա երկար կղզին և ձախ կողմէն Սալամինէ և Եգինէ կղզիները կ'գտնուին։ Մարդկային ազգի պատմութեան մէջ Ատտիկէ ամենէն նշանաւոր երկիրներէն մին է։ Ընդհանրապէս իր քարուտ հողը շատ արգասաւոր չէ, սակայն իր բերքն է որթատունկ և ձիթենի։ Իր գլխաւոր հարստութիւնն էին Հիմետ լեռին մեղուներն, Պանտելիկի մարմարի և արծաթի հանքը։ Որովհետև Ատտիկէի գրեթէ ամեն կողմը ծովը կը

պատէ, աղուոր նաւահանգիստներ ունի և դիմացը շատ կղզիներ կան, վաճառականութեան համար դիրքը սքանչելի է, որ Ելլադայի, Պելոպոնէսի, Փոքր Ասիոյ կղզիներուն և գաղթականութեանց մէջ գտնուելուն՝ յոյն ազգին բնական կեդրոնը դարձեր էր։ Այս պատճառաւ Ատտիկէ ամէն տարագիր ու ճնշեալ յոյն ցեղերուն ապաւէնն եղաւ։ Թէև իր ժողովուրդն յոնիական ցեղէ էր, իր երակաց մէջ միւս հելլենական բոլոր ցեղերուն արիւնն ունէր։

Արխոն. — Ատտիկէի մայրաքաղաքն Աթէնք էր։ Աթենացիք Յունաց մէջ գերագանց մասն էին. հելլենական ցեղին բոլոր ընտիր ձիրքն ունէին։ Աթենք մղոն մը հեռու կ՚գտնուէր ծովէն, որու վրայ նաւահանգիստ մը կար, Սալամինէ և Եգինէ կղզիներուն դիմացը։ Շատ ատեն թագաւորներ նորա վրայ տիրեցին։ Բայց Կոդրոսի (երես 41) մահուանէ ետք՝ Աթենացիք իրեն արժանի յաջորդ մը չգտան և թագաւորութիւնը ջնջելով՝ պետ մ՚ընտրեցին Արխոն անուն, որ ցկեանս պաշտօն կ՚վարէր։ Վերջէն ինն արխոն հաստատեցին, որ միայն տարի մը պաշտօն կ՚վարէին։

Դրակոն. — Սակայն Աթենքի մէջ՝ ինչպէս ամէն յունական երկիրներն՝ զօրաւոր ազնուապետութիւն մը կար որ բոլոր հարստութեան տէրն էր և երկիրը կ՚կառավարէր։ Ժողովրդեան մեծ մասը շատ աղքատ էր և բռնութեան տակ կը տառապէր։ Այն ատեն անկարգութիւններ ծա-

վերցան ։ Դրակոն անուն մարդն էր արխոն, որ Աթէնքի առաջին օրէնսգիրն եղաւ ։ Վասն զի՝ այս անիշխանութեան վերջ տալու համար՝ ժողովուրդը Դրակոնին առաջարկեց որ օրէնքներ հաստատէ ։ Դրակոն զգօն, այլ անաչառ ու անգութ մարդ մ՚էր ։ Տեսնելով որ իր հայրենակիցներն վայրագ մարդիկ են, զսպելու մտօք այնպիսի խիստ կանոններ գրեց որոց համար կ՚ըսէին թէ արիւնով գրուած են ։ Ամենէն թեթեւ և ծանր յանցանքի մահուան պատիժը դրեր էր. եթէ մէկը մարդ սպաննէր, պտուղ մը գողնար, կամ ծոյլ լինէր, մահուան կամ աքսոր երթալու կ՚դատապարտէր ։ Աթենացիք թէև առաջ այս օրինաց հնազանդեցան, բայց վերջէն գլուխ վերցուցին և Դրակոնը քաղաքէն վռնտեցին ։

Կիլոն. Էպիմենիդէս. — Աթէնքի հարուստ բնակիչներէն Կիլոն՝ մտքը դրաւ թագաւոր լինել ։ ուրիշ կուսակիցներ ժողվեց և Աթէնքի միջնաբերդին տիրեց ։ Այն ատեն ժողովուրդն ոտք ելաւ, Կիլոնը սպաննեց ։ մահուանէ ազատող իր կուսակիցներէն ոմանք Աթենացւոց տաճարին ապաւինեցան, որ՝ իբրև նուիրական տեղ՝ անբռնաբարելի էր ։ Աթէնացւոց խոստման վրայ՝ փախստականներն անձնատուր եղան, բայց ամէնքն ալ ջարդուեցան ։ Այնուհետեւ անկարգութիւնները նորէն սկսան և Աթէնացիք Էպիմենիդէս անուն իմաստուն ծերունին կանչեցին՝ Դելփիքի պատգամին համեմատ, որպէս զի այս չարեաց դարման մը բերէ և Աթէնա-

սայ յաջողութիւնն կորսնցընէ • Եպամինոնդէս , որ կրեսացի էր , յորդորեց ժողովուրդը միաբանութեան և զգաստութեան և իր յորդորներն առեն մ՚արդիւնք ունեցան ; Իմաստուն ծերունին ամեն պարգև մերժեց և՝ Աթենացւոց կրկին երախտագիտութեան նշան՝ ձիթենիի ճիւղ մը առնլով իր տեղը դարձաւ •

Սոլոն : — Էպիմենիդէս մեկնելէն ետև՝ անկարգութիւնները նորէն սկսան և դարման մը փնտռելու էլան Աթենացիք • Այն ժամանակ՝ Կոդրոսի ցեղէն նշանաւոր անձ մը կար Աթենք՝ Սոլոն անուն ; որ նախ վաճառական եղաւ և ապա սկսաւ ինքզինքն ուսման տալ • շատ ճամբորդութիւններ ըրաւ ու մեծ համբաւ ստացաւ իր իմաստութեան համար , այնպէս որ Յունաստանի եօթն իմաստնոց* կարգն անցաւ : Իր համբաւն աւելցաւ Հայրենասիրական զարմանալի գործով մը • Մեգարացիք Սալամինէ կղզին գրաւեր էին • Աթենացիք՝ նոցա թշնամիներն , չէին ուզեր որ Ատտիկէի այնքան մօտ գտնուող կղզի մը Մեգարացւոց ձեռքը մնայ : Ուստի երկար ատեն պատերազմեցան որ Սալամինէն առնուն ;

* Միւսներն են ; Քիլոն , Պիտտակոս ; Բիաս ; Պերիանդրոս , Կղէոբուլոս ; Թալէս : Սոքա ոչ գիտուն էին և ոչ փիլիսոփայ , այլ գործնական իմաստութեան տէր մարդիկ ; որ մարդկային կարգն ու վարքը և ընկերութիւնը քննելով՝ այլ և այլ բարոյական խրատներ կ՚հանէին և ժողովրդեան մէջ տարածելով՝ լաւ ճամբու մէջ դնելու կ՚ջանային ; Բայց 'ի Թալէսէն , միւսները կառավարութեան մարդիկ եղան :

քայց չյաջողեցան ։ Այս պայքարէն տաղտկանալով Աթենացիք որոշեցին որ նոյն կղզին առնելու համար ուրիշ փորձ մը չընեն․ նա մանաւանդ վճիռ տուին թէ ով որ այդպիսի առաջարկութիւն մ'ընէ՝ սպաննուի ։ Սոլոն այս վճիռն իր հայրենեաց նուաստութիւն սեպեց, ինչպէս նաև բոլոր Աթենացի երիտասարդներն, և հնար մը մտածեց որ զայն աւրէ ։ Ուստի քաղաքին մէջ ձայն հանել տուաւ որ խենթացեր է ։ Ետքը՝ օրին մէկը հրապարակը գնաց, ամպիոնն ելաւ, և՝ բոլոր ժողովրդեան առջև՝ սկսաւ քանի մը տաղաւորներ արտասանել և գրգռել որ Սալամինէն զինուք առնուն ։ Իր եռանդոտ խօսքերէն բոլոր ժողովուրդը կ'յազուի, առջի վճիռը կ'ջնջէ և Մեգարայի դէմ արշաւելու կ'որոշէ ։ Սոլոն այս պատերազմին մէջ զօրապետ կ'լինի. և Մեգարացիք յաղթուելով Սալամինէն Աթենացւոց ձեռքը կ'իյնան ։

Սոլոն, օրէնսդիր Աթենքի. — Աթենացիք՝ Սոլոնի հայրենասիրութեան վրայ սքանչանալով զինք արխոն ընտրեցին և խնդրեցին որ իրենց նոր օրէնքներ տայ ։ Սոլոն յանձն առաւ, իր օրէնսդրութիւնը՝ թէև Լիկուրգոսի օրինաց չափ նշանաւոր եղաւ, բայց անկից բոլորովին տարբեր էր ։ Սոլոն՝ Լիկուրգոսի պէս հողերն հաւասար չբաժնեց քաղաքացւոց մէջ, պարտքերը չջնջեց ինչպէս որ պարտապանները կ'ուզէին, այլ ստակին տոկոսը նուազեցուց, և արգիլեց որ պարտատէրն իրեն գերի ընէ պարտապանն՝ երբ այս իր տալիքը չէր կարող վճարել, ինչպէս որ առաջները կ'ընէին ։

Սոլոն ընտանիքի կապն ալ չքնջեց՝ Լիկուրգոսին պէս, այլ նորա իրաւունքը յարգեց։ Պարտաւորեց ծնողքն որ իրենց զաւակները դաստիարակեն. այս դաստիարակութիւնը թէ մարմնական և թէ մտաւորական էր։ Նոյնպէս քաջալերեց Սոլոն ճարտարութիւնը, վաճառականութիւնք, արուեստները, և լինք Աթէնքի ծովային զօրութեան հիմունքը դրաւ. Ոչ միայն աշխատութիւնը չէր անարգեր Սոլոն, ինչպէս Սպարտացիք կ'անարգէին, այլ կը պատուէր և իր օրէնօք իւրն պարտաւորութիւն դրած էր ամենուն վրայ։ Եթէ հայր մ'իր որդւոյն արուեստ մը սորվեցընել չտար, իրաւունք չունէր պահանջելու որ որդին պէտք հոգայ և խնամէ իր ծերութեան ատեն, և անուանի ատեան մը, Արիոպագոսի ատեանն ամեն քաղաքացիի ապրուստի միջոցները կ'քննէր և ով որ անգործ նստէր կ'դատապարտէր։ Ընդհանրապէս Սոլոնի օրէնքն աւելի անուշ, ազատական և մարդասիրական էին քան թէ Լիկուրգոսի օրէնքը. օտարականաց հետ յարաբերութիւնը չէր արգիլեր, օտար վաճառականներ և ճարտարներն Աթէնքը կ'ընդունէր և կ'պատուիրէր որ ստրուկներու հետ քաղցրութեամբ վարուին քաղաքացիք։

ԱԹԷՆՔԻ ՔԱՂԱՔԱՑԻԱՑ ՕՐԷՆՔԸ. — Սոլոն չորս դասի բաժնեց ժողովուրդն՝ իրենց հարստութեան համեմատ։ Առաջին երեք դասերը միայն քաղաքային պաշտօններու կրնային համնիլ, չորրորդ աղքատ դասն անկից զրկուած էր։ Սակայն առաջին դասերը պետութեան ամենէն ծանր տուրքերը կ'կրէին։ Նոքա միայն կ'վճարէին հողային տուրք և զինուորական ծառայութիւններ կ'կատարէին։

Արքոններ. — Սոքա ինն հոգի էին և միայն տարի մը պաշտօն կ'վարէին. այս պաշտօնը գործադիր իշխանութիւն էր. սակայն դատաւորական պաշտօն ալ ունէին և քանի մ'ատեաններու կ'նախագահէին: Մահուան վճիռ կ'ընդունէր արքոն մը եթէ հասարակութեան մէջ արբած երեւէր: Առաջին արքոնը պատիւ ունէր տարուան իր անունը տալու:

Սոլոնի օրէնսդրութեան հանգամանքը. — Այս օրէնսդրութիւնն կէս մը ազնուապետական կէս մը հանրապետական էր, սակայն հանրապետութեան աւելի կ'մօտենար: Ժողովրդեան վիճակը բարւոքեց, անհատական ներհականութիւնը յարգելով: Ցեղական ազնուապետութիւնը ջնջեց, բայց հարստութեան վրայ հիմնուած ազնուապետութիւն մը հաստատեց: Աշխատութեան սէրը գրգռեց և մտաւոր զարգացումը քաջալերեց, որով Աթէնք յառաջ գնաց ճարտարութեան, արուեստից և գրականութեան մէջ, և այս աւելի տեւական փառք մ'էր քան թէ պատերազմական փառքը:

---

## ԳԼՈՒԽ Ը.

### Պիսիստրատէն մինչև Մարաթոնի ճակատամարտը:

### (560—490)

Պիսիստրատ. Բռնաւորութիւն. — Սոլոն Աթէնացիքը երդմնեցուց որ տասն տարի իր դրած օրէնքը յարգեն: Ետքը մեկնեցաւ և դէպ'ի Արեւելք երկարատեւ ուղեւորութիւն մ'ըրաւ: Ես-

գիպտոս և Փոքր Ասիա գնաց և այն ատենն էր որ Լիւդիոյ Կրեսոս երևելի թագաւորին արքունիքն այցելեց՝ Սարդիկէ մայրաքաղաքին մէջ (Ա. Մաս. երես 152)։

Երբոր տասն տարիէն ետք՝ Աթենք վերադարձաւ՝ իր հայրենիքը նորէն մեծ երկպառակութեան ու անկարգութեանց մէջ գտաւ, ազնուականներն ժողովրդեան դէմ կ'կռուէին։ Անօգուտ տեղը ջանաց կուսակցութիւնները հաշտեցընել։ Շատ մը մեծամեծներ իշխանութիւնը ձեռք ձգելու կ'աշխատէին։ Մին՝ որ Պիսիստրատ կ'կոչուէր՝ ժողովրդեան կողմը բռնելով՝ նորա ջերմ պաշտպան եղեր էր։ Ազնուականը հին կառավարութեան ձևը կ'ուզէր, ժողովուրդը ռամկավարութեան կուսակից էր. իսկ վաճառականներն ու նաւորդներն միջին ճամբայ մը գտնելու կ'ջանային։ Պիսիստրատ անուշ, խորագէտ բնաւորութիւն մ'ունէր, առատաձեռն էր և աղքատաց օգնելով՝ ամբոխին վրայ մեծ ազդեցութիւն կ'բանեցընէր։ Օր մը՝ իր մարմինը դիտմամբ կ'վիրաւորէ, հրապարակը կ'իջնէ՝ արիւնլուայ։ Ժողովուրդը զարմանալով նորա չորս դին կ'պաշարէ և այս վիճակին պատճառը կ'հարցընէ։ Այն ատեն Պիսիստրատ կը պատմէ թէ իր թշնամիները զինք սպաննել կ'ուզեն, և թէ կեանքը վտանգի մէջ է։ Ժողովուրդը կ'հաւտայ, այս դաւաճանութեան վրայ կը զայրանայ և Պիսիստրատի մէկ կուսակիցն անմիջապէս կ'առաջարկէ որ ժողովրդեան այս բարեկամին յիսուն թիկնապահ տան։ Բայց ծերունին Սոլոն այս անցած դարձածն իմանալով

շուտ մը փախեց հասաւ Հրապարակն և ընդունայն ջանաց համոզելու ամբոխն որ Պիսիստրատ խորամանկութեամբ իշխանութեան հասնիլ կ'ուզէ ։ Հարուստները մտիկ չըրին, խուժանը սպառնաց, ուստի Սոլոն ստիպուեցաւ հեռանալ ։ Ժողովուրդը Պիսիստրատի տուաւ խնդրած թիկնապահները ։ Սոլոն՝ իր տունը դառնալով զէնքերն առաւ և իր տանը դրան առջևը դրաւ, ըսելով վհատութեամբ. «Որչափ որ հնար էր՝ հայրենիքն ու օրէնքը պաշտպանեցի» ։

*Պիսիստրատ բռնակալ.* — Սակայն Պիսիստրատ ստացած զօրքով Աթէնքի միջնաբերդին տիրեց և ինքնիշխան տէր եղաւ ու բռնաւոր ։ Յոյն հասարակապետութեանց մէջ բռնաւոր կ'անուանէին կառավարութիւնն յափշտակող և մինակը կառավարող մարդը ։ Բայց բռնաւոր անունը միշտ բուռն ու անգութ թագաւոր մը չէր նշանակեր, այլ պարզապէս բռնակալի իմաստն ունէր ։ Պիսիստրատի բռնաւորութիւնը շատ մեղմ եղաւ ։ Սոլոնի օրէնքը պահեց. մինչև անգամ իմաստուն ծերունիին հաւանութիւնն ու պաշտպանութիւնը շահելու ջանաց. բայց Սոլոն այդ բռնաւորին խնդիրը մերժեց և գործերէն հեռու մենաւոր կեանք մ'անցուց. քիչ մ'ետք մեռաւ (559) ։

Սակայն Սոլոն չմեռած տեսաւ որ ազատութիւնը նորէն հաստատութիւն գտաւ իր հայրենեաց մէջ ։ Իրաւ է՝ Պիսիստրատ՝ թէև ճարտար էր և խոհեմ՝ հազիւ տարի մը կրցաւ իշխանութիւնը պահել ։ Ժողովուրդը զինք վռն-

տեց, վերջէն կոչեց, ապա դարձեալ աքսորեց։ Երկար աքսորէ մը դառնալէն ետև՝ մինչև մահը տէրութեան գլուխը մնաց։ Իր կառավարութիւնը փառաւոր եղաւ։ Աթենքն այլ և այլ շէնքերով զարդարեց, վաճառականութիւնը ծաղկեցուց։ Պիսիստրատ գրականութիւնը կ՚սիրէր. առաջին անգամ Յունաստանի մէջ գրքատուն հիմնողն ինքն եղաւ։

Իպպարքոս. Իպպիաս. — Պիսիստրատին յաջորդեցին իր երկու որդիքը Իպպարքոս և Իպպիաս, որ իրենց հօր փառաւոր իշխանութիւնը շարունակեցին։ Բայց երբեմն շատ անգութ և բռուն գործեր կ՚ընէին։ Այսպէս անգամ մը հրապարակաւ նախատեցին Արմոդիոս անուն աթենացիին քոյրը։ Այն ատեն Արմոդիոս իր Արիստոգիտոն բարեկամին հետ գաղտնի դաւ դրին երկու բռնաւորները սպաննելու համար։ Եւ իրաւի՝ Իպպարքոսը հանդիսի օր մը սպաննեցին. իսկ Իպպիաս կարող եղաւ փախչելու և իր եղբօրը մահուան վրէժը լուծելու համար անգթաբար կ՚տանջէր Աթենացիքը և կասկածելի մարդիկը սպաննել կ՚տար։ Արդէն իր թիկնապահներն Արմոդիոսը զարկեր էին։ Արիստոգիտոն տանջանաց դատապարտեցաւ որ իր դաւակիցները յայտնէ։ Այս ալ բռնաւորին ամենէն սիրական բարեկամները ցցուց, զոր անմիջապէս մեռցուցին։ Երբ Իպպիաս հարցուց Արիստոգիտոնին թէ ուրիշ դաւակիցներ ունի՞. «Միայն դու մնացիր, պատասխանեց երիտասարդը, և քու մահդ կ՚ուզէի. զէթ քու սիրած բոլոր անձերդ

սպաննել տուր Հրամանովդ»։ Լեէնա կինն ալ տանջանք կրեց և որպէս զի ցաւէն անուն մը չյայտնէ՝ ակռաներովը լեզուն կտրեց։ Այս դէպքերն Աթենացւոց ազատութեան սէրը գրգռեցին։ Արիստոգիտոնի, Արմոդիոսի և Լեէնայի 'ի պատիւ արձաններ կանգնեցին, և ազգային երգեր յօրինեցին։

Իսկ Իպպիաս՝ որ երկչոտ ու կասկածոտ բռնաւոր մ'եղեր էր, իր անգթութիւններն այնչափ շատցուց որ բոլոր ժողովրդեան ատելի դարձաւ։ Արդէն մի շատ ազնուականներ իր Հրամանով Աթենքէն աքսորուեր էին։ Ասոնք տեսնելով որ ժողովուրդը բռնաւորին ձեռքէն ազատելու կ'փափաքի՝ իսկոյն Սպարտա մարդ ղրկեցին խնդրելով որ Իպպիասը վռնտելու Համար օգնութեան գան։ Սպարտացիք՝ որ Պիսիստրատեանց օրով Աթենքի ստացած բարօրութենէ կ'նախանձէին՝ շուտ մը Իպպիասի դէմ զօրք ղրկեցին։ Բռնաւորը քաղքէն փախաւ և գնաց Պարսկաստան՝ Դարեհ թագաւորին արքունիքը։

Կլիսթենէս. — Աթենացի ազնուականները կը յուսային որ Լակեդեմոնացւոց օգնութեամբ ազնուապետական կառավարութիւնը պիտի կարենան հաստատել։ Բայց ժողովուրդը դէմ կեցաւ և իր կամքը յառաջ տարաւ։ Դժգոհ ազնուական մը, Կլիսթենէս անուն, Սոլոնի օրէնքը վերաքննեց, չորս դասը տասը դասի բաժնեց և ժողովրդեան իրաւունքն աւելի ընդարձակեց։ Ծերակոյտի անդամոց թիւը մինչև 500ի հասուց։

Կ՚ըսեն թէ այս Կլիսթենէսն էր որ խեցեվճիռն հաստատեց։ Երբ ժողովուրդը տեսնէր որ քաղաքացի մը զօրանալով հայրենի ազատութեան վտանգաւոր կ՚ըլլար, խեցեվճիռ կ՚արձակէր անոր դէմ, այսինքն փոխանակ քուէ նետելու՝ ամբաստանեալ մարդուն անունը խեցիի մը վրայ կ՚գրէր, և եթէ վեց հազար խեցի գումարուէր, այն մարդը տասն տարուան համար կ՚աքսորուէր։

Յունաստանի գաղթականական վիճակը. — Աթենքի մէջ չէր միայն որ բռնաւորներ ելան. ուրիշ շատ քաղաքներու մէջ ժողովուրդը ազնուապետական կառավարութեան ձեռօք կ՚ճնշուէր, այսինքն ստրկութիւն ընտանեաց ձեռօք։ Այս ազնուապետական լուծը թօթափելու համար՝ ժողովուրդը փառասէր ազնուական մ՚իրեն գլուխ կարգեց։ Այս ժողովրդապետը, առէպ իշխանութիւնը գրաւեց և իր հայրենեաց բռնաւոր դարձաւ։ Յունաց մէջ ամենէն նշանաւոր բռնաւորներն եղան Պերիանդրոս 'ի Կորնթոս, թէև եօթն իմաստնոց մին՝ որ կենցաղավարութեան սէր ունէր և միանգամայն յետին ծայր անգութ էր. Պոլիկրատ 'ի Սամոս և Պիսիստրատ՝ որուն վրայ արդէն խօսեցանք։ Ի սկզբան բռնաւորներն ժողովրդեան օգնութեամբ պաշտօնի կ՚հասնէին, բայց միշտ՝ Իտալիայի պէս, վերջէն նորա ատելի կ՚դառնային։ Այն ատեն ժողովուրդն այդ բռնաւորները կ՚տապալէր և ռամկապետութիւնը կ՚յաղթանակէր։

Սպարտայի և Աթենքի հակառակութիւնը. — Սակայն Յունաստանի բոլոր տէրութիւններն ռամկավարական կառավարութիւն չունէին։ Սպարտա և դորիական համայնքներն աւելի ազնուապետական իշխանութիւն կ՚սիրէին, մինչդեռ Աթենք բոլորովին ինքզինք ռամկավարութեան տուաւ։ Այսպէս Սպարտա և Աթենք, մին դորիական

միւսը յոնիական, ոչ միայն երկու տարբեր ցեղեր ներկայացուցին, այլ կառավարական երկու տարբեր ձեւեր։ Սակայն Սպարտա՝ որ ցամաքային զօրաւոր իշխանութիւն մ'էր, Աթենքի ծովային զօրութեան վրայ կ'նախանձէր։ Դարէ մ'ի վեր՝ և Մեսսենիոյ երկու երկարատև ու արիւնալի պատերազմներէն ետև, Սպարտացիք բոլոր Մեսսենիոյ տէրեր էին (երես 58)։ Նոյնպէս տէրեր էին Արգիացիքն որ իրենց գերագահութիւնը ճանչեն։ Հետևաբար՝ Սպարտա Պելոպոնէսի վրայ կ'տիրապետէր և գերիշխանութիւն ունէր։ Բայց այս գերիշխանութիւնն բոլոր Յունաստանի վրայ տարածել կ'ուզէր։ Ոսոխ մը ունէր միայն որմէ կ'վախնար, և այս էր Աթենք։ Սպարտա ուզեց որ այս քաղքին մէջ ազնուապետութիւն և մինչև անգամ Իպպիասի բռնաւորութիւնը հաստատէ։ Բայց չյաջողեցաւ։ Անտարակոյս այս երկու հակառակորդ քաղաքաց մէջ պայքարը պիտի ծագէր, երբ հասարակ վտանգ մը, այս է Պարսից արշաւանքը՝ զանոնք միացուց առ ժամանակ մը, որպէս զի բարբարոսութեան դէմ յոնական հայրենիքը պաշտպանեն։

**Յոնիոյ ապստամբութիւնը Պարսից դէմ.** — Պարսիկներն Ասիոյ մէկ մասին տիրելէն ետև՝ կը մտածէին Եւրոպա անցնիլ և զայն նուաճել։ Ամենէն առաջ Յոյներն այս զօրաւոր թշնամիներուն հարուածը պիտի կրէին։ Արդէն Կիւրոս Փոքր Ասիոյ յոյն գաղթականութիւններն իր իշխանութեան ներքև առեր էր։ Այնուհետև՝ Դարեհ Թրակիան և Մակեդոնիան նուաճելով՝ Յունաստանի մօտեցեր էր, և յարմար առիթ մը կ'սպասէր այս երկիրն արշաւելու։ Արդէն Ասիա և Եւրոպա իրարու դէմ հին ատելութիւն մ'ունէին, որ Տրոյիոյ պատերազմէն կ'սկսէր։ Այս հակառակութիւնն աւելի

սոսկալի պատերազմի պատճառ պիտի լինէր (560)։

Ամենէն առաջ՝ Փոքր Ասիոյ յոյն գաղթականներն սկսան կռիւը։ Շատ ծանր էր իրենց համար բարբարոսաց լուծն և կ'փափաքէին զայն թօթուել։ Միլէտ, այս հարուստ և զօրաւոր քաղաքն՝ ապստամբութեան առաջին նշանը տուաւ և մայր երկրին օգնութիւնը խնդրեց։ Ուստի նախ դեսպան ղրկեց Սպարտա, և ապա Աթէնք։ Սպարտա օգնելու մերժեց, վասն զի իր շահուց հակառակ կ'սեպէր հեռաւոր երկիրներ արշաւել և վտանգի մէջ մտնել։ Բայց՝ ընդ հակառակն՝ Աթենացիք Միլէտցւոց առաջարկութիւնը եռանդագին ընդունեցին, վասն զի Պարսից թագաւորին դէմ ելնելու լաւ պատճառներ ունէին։ Նախ՝ Դարէհ պատսպարան տուեր էր Իպպիասին՝ հրաման ղրկելով Աթէնացւոց որ իրենց հին բռնաւորը նորէն ընդունին. երկրորդ՝ Միլէտ՝ յոնիական գաղթականութիւն մ'էր, և Աթէնք՝ որ ինքզինք բոլոր յոնիական երկիրներու մայրաքաղաքը կ'համարէր, կարծէր թէ պարտաւոր է այդ յունական երկիրները պաշտպանել։ Երրորդ՝ Աթենացիք կ'գուշակէին որ վաղ կամ անագան Պարսիկները Յունաստանի վրայ պիտի յարձակէին։ Այս զանազան պատճառներով Աթենացիք որոշեցին օգնել Յոնիացւոց և նոցա նաւատորմիղ մը և զօրք ղրկել։

Աթենական զօրքը քիչ ատենէն Սարդիկէի վրայ քալեց։ Լիւդիոյ այս մայրաքաղաքն առաւ ու կողոպտեց։ Տուները եղէգէ շինուած լինելուն՝ զինուոր մը տան մը կրակ տուաւ և բռ-

ջոր քաղաքը հրդեհեց։ Բայց Պարսիկներն՝ որ մեծ բանակ մը պատրաստեր էին, Աթենացւոց յաղթեցին. սոքա ստիպուեցան իրենց նաւատորմիղը և վերջապէս Աթենք վերադառնալ, վասն զի այս հեռաւոր պատերազմէն ձանձրացեր էին։ Թէև Փոքր Ասիոյ Յոնիացիք այսպէս անօգնական մնացին, կռիւը շարունակեցին քաջութեամբ. Բայց ամէն կողմէն յաղթուեցան։ Պարսիկները Միլէտոն ալ առին կործանեցին և բոլոր Փոքր Ասիոյ քաղաքներն իրենց իշխանութեան տակ ընկան։

Ասիոյ յոյն քաղաքներուն այս աւերումն բոլոր Յունաստանի մէջ ընդհանուր վիշտ պատճառեց։ Մանաւանդ Աթենք ողբաց այս կործանման վրայ։ Բանաստեղծ մը՝ թատրի վրայ Միլէտոյի առումը ներկայացնել տալուն՝ բոլոր հանդիսականներն ողբ ու կոծ արձակեցին, և հեղինակը 1000 դրախմի (դրեթէ 900 ֆրանք) տուգանք վճարելու դատապարտուեցաւ, վասն զի, կ՚ըսէին, առտնին դժբաղդութեանց յիշատակը նորոգեր էր։

Յոնիական ապստամբութիւնն մարական կամ պարսկական ըսուած պատերազմներուն ուղղակի պատճառը կ՚համարուի։ Երկու մարական պատերազմ կայ. առաջինը Դարեհի մէկը, երկրորդը Քսերքսեսի, թէև սոցա յաջորդներուն օրովն ալ այս պատերազմները շարունակուեցան։

---

## ԳԼՈՒԽ Թ.

### Մարաթոնեան պատերազմէն մինչև Քսերքսեսի արշաւանքը։

### (490—485)

Մարաթոնի ճակատամարտը. Միլտիադէս. — Յունիան նուաճելէն ետև՝ Դարեհ միտքը դրաւ Եւրոպիոյ յոյները պատժել նորա համար որ իր հպատակացն ապստամբութեան ձեռնտու գտնուեր էին։ Որպէս զի իր վրէժը չմոռնայ՝ իր մէկ սպասաւորին պատուիրեր էր որ ամեն օր ճաշի ատեն իրեն ըսէ. «Մեծդ Թագաւոր, յիշէ Աթենացիքը»։ Սակայն երկար ատենէ 'ի վեր՝ Իպպիաս որ Դարեհի ապաւիներ էր, կը գրգռէր այս թագաւորն որ Յունաստանը նուաճէ։ Դարեհ դեսպաններ ուղարկեր էր Յունաց որ իր կողմէ հող ու ջուրը պահանջեն, այսինքն՝ հնազանդութիւն։ Մի շատ յունական քաղաքներ առ ահի հնազանդեր էին, բայց Սպարտա և Աթենք Պարսից թագաւորին այս յանդուգն պահանջման վրայ սրդողելով՝ ազգաց իրաւանց դէմ՝ նոցա մէկ դեսպանը ջրհոր մը նետեր էին, միւսը խորունկ փոսի մը մէջ՝ ըսելով. «Հո՛ղն ու ջո՞ւրը կ'պահանջէք՝ գացէք առէք»։

Դարեհ այս անարգանքն իմանալով՝ սաստիկ զայրացեր և իր փեսային՝ Մարդոնիոսի բանակ մը տալով Յունաստան ղրկեր էր։ Բայց իր նաւատորմիղն Աթոս լերին մօտ փոթորկի մը հան-

դիպելով ջնջուեր և Մարտոնիոս՝ ցամաքային բանակով Մակեդոնիոյ տիրելէն ետև՝ չկրցեր էր Յունաստան մտնել, վասն զի Թրակացիք նորա ընթացքն արգիլեր էին զօրացը մեծ ջարդ-տալով և զինքն ալ վիրաւորելով։

Շատ չանցաւ՝ Դարեհ նոր արշաւանք մը պատրաստեց և այս անգամ բանակն՝ որ 100 հազար հետևակ և 10 հազար ձիաւոր զօրք կը պարունակէր, Դատ և Արտափեռն զօրապետաց յանձնեց, որ Ատտիկէ ելան և Մարաթոնի դաշտը հասան։ Նոյն իսկ Իպպիաս այս դաշտն՝ իբրև յարմար տեղ՝ ցոյց տուեր էր իր հայրենեաց թշնամիներուն։ Երբ այս գոյժն առին՝ իսկոյն Աթենացիք այլ և այլ քաղաք սուրհանդակ հանեցին և օգնութիւն խնդրեցին։ Սպարտացիք օգնելու խոստացան, բայց կրօնական օրէնք մը կ՚արգիլէր իրենց պատերազմի երթալ՝ լուսինը լրանալէն առաջ։ Աթենացիք չէին կարող սպասել։ Թէև միայն 10 հազար զինուոր ունէին, բարբարոսաց դէմ քալեցին։ Պղատէացիք միայն 1000 հոգի ղրկեցին։ Յունաց այս պզտիկ բանակին մէջ տասը զօրավար կար որ ըստ կարգի մէյմէկ օր պիտի հրամայէին։ Ասոնց մէջ երկու երևելի մարդիկ կ՚գտնուէին, այս է Միլտիադէս և Արիստիդէս։ Այս տասը զօրավարները համաձայն չէին. հինգը կ՚ուզէր որ օգնութեան սպասեն, միւս հինգը կ՚պնդէր որ անմիջապէս պատերազմին։ Միլտիադէս՝ այս վերջին կարծիքէն էր։ Արիստիդէս իր պաշտօնակիցները յորդորեց որ իրենց հրամայելու կարգը Միլտիադէսին թողուն, որ ամենէն աւելի

փորձառու ու ճարպիկն էր ։ Այս զօրավարն ընդունեց և սակայն սպասեց որ իր օրը գայ ։

Միլտիադէս իր զօրքը յարդարեց բլրի մը ստորոտը, որով իր բանակին կռնակը ապահովեց. ձախ թևն երկնցուց թշնամի բանակին դիմացն, իսկ ճակատը պաշտպանեց ծառերու կոճղերէ պատնէշ մը շինել տալով, Պարսից այրուձիին զօրութիւնը կոտրելու համար ։ Աթենացի քաղաքացիներն աջ թևը կեցեր էին՝ Պղատէացիք ձախ թևը, մինչդեռ նորակիրթ գերիներ կեդրոնը բռներ էին ։ Դատ դիտեց որ այս դիրքը շատ նպաստաւոր էր Աթենացւոց, բայց իր զօրաց շատութեան վրայ վստահ՝ ճակատամարտի նշանը տուաւ ։ Պատերազմն սկսաւ. Պարսիկներն կեդրոնը կ'զարնեն և կ'յաջողին Յունաց բանակին գիծը ճեղքելու, երբ Աթենացիք երկու թևերուն կողմն յաղթող կ'ելնեն և կեդրոնին կողմը շրջելով թշնամիին ետևէն կը զարնեն, այնպէս որ այս յանկարծական շարժումէն շուարելով՝ Պարսից բանակը կ'ցրուի և խառն 'ի խուռն դէպ 'ի նաւերը փախչելու կ'սկսի ։ Յոյներն նոցա ետևէն վազելով՝ սաստիկ ջարդ մը կ'տան, եօթը նաւ կ'այրեն, շատ աւ ու աւար կ'առնուն ու այն շղթաներն՝ զոր Պարսիկները բերեր էին Յոյները կաշկանդելու՝ բռնուած գերիները կապելու կ'գործածեն ։

Մեռնող Պարսից մէջ կ'գտնուէր Իպպիաս մատնիչը ։ Այս փառաւոր յաղթութենէ ետք՝ զինուոր մը նետի պէս Մարաթոնէն Աթենք կը թռի, շնչասպառ կ'հասնի հրապարակն և այս խօսքն ըսելէն ետև՝ «Յաղթող ենք» շունչը կը

վիճէ կ'մնունի : Պատերազմին միւս օրն 2000 Սպարտացիք հասան Աթենացւոց զօրավիգ՝ երեք օրուան մէջ : Երբոր կռուոյ դաշտը մեռելներով ծածկուած տեսան՝ գովեցին Աթենացւոց արիութիւնն և իրենց տեղը դարձան : Աթենք իր քաջերուն համար սիւնազարդ շիրիմ մը կանգնեց և նոցա անուններն արձանագրեց : Մինչև այսօր Մարաթոնի դաշտին մէջ այս դամբանական բլրակին հետքը կ'տեսնուի :

**Միլտիադէս կ'դատապարտուի.** — Միլտիադէս Պարոս կղզին Պարսից ձեռքէն առնել ուզեց որպէս զի Եգեան ծովը նոցա նաւատորմիղներէն ազատ պահէ : Աթենացիք նաւեր տուին այս զօրավարին, որ գնաց նոյն կղզին պաշարեց : Բայց կղզեցիք ուժգին դիմադրելով՝ Միլտիադէս ստիպուեցաւ պաշարումը վերցընել ծանր վէրք մը առնլէն ետև : Իր ապերախտ քաղաքացիք զինքն ամբաստանեցին՝ իբրև այս ձախորդութեան պատճառ և կաշառակեր, և դատաստանի կանչեցին՝ մահուան վճիռ արձակելու սպառնալով : Միլտիադէս՝ առած վէրքէն՝ չկրցաւ ժողովրդեան ատեանն ելնել և իր բարեկամները զինք պաշտպանեցին, Մարաթոնի փառաւոր յաղթանակը յիշեցին և յաջողեցան նորա գլուխն ազատել՝ ժողովուրդը շահելով : Սակայն դարձեալ Միլտիադէս 50 տաղանդ (275,000 ֆրանք) տուգանք վճարելու դատապարտուեցաւ : Այս տուգանքը վճարելու անկարող գտնուելուն՝ զինք բանտ դրին, ուր վէրքէն մեռաւ : Վերջէն իր որդին Կիմոն տարաբաղդ հօրն այս պարքը վճա-

րեց ։ Այս դատապարտութիւնն մեծ արատ բերաւ Աթէնքի, որ զայն ջնջելու համար Մարաթոնի դաշտին մէջ Միլտիադէսի շիրիմ մը կանգնեց ։

Արիստիդէսի աքսորը. — Աթէնքի մէջ մեծ մարդիկ պակաս չէին և Միլտիադէս յաջորդ մը ունեցաւ ։ Երկու քաղաքացի՝ Արիստիդէս ու Թեմիստոկլէս շատ մեծ անուն և ազդեցութիւն ունէին ժողովրդեան վրայ ։ Արիստիդէս նշանաւոր էր մանաւանդ իր վեհանձն բնաւորութեան, և արդարասիրութեանը կողմէ, այնպէս որ զինք Արդարն Արիստիդէս կ'անուանէին ։ Ճշմարտութիւն կ'սիրէր, ժողովուրդը չէր շողոքորթեր ; և ազգին օգուտն անձնականէն շահէն վեր կ'դասէր ։ Թեմիստոկլէս ոչ այնքան իր ուղիղ բնաւորութեան որքան իր տաղանդին համար անուանի էր. փառասէր, քաղաքագէտ էր նա և իշխանութեան հասնելու համար ամեն միջոց կը գործածէր ։ Միլտիադէսին տրուած գովեստներն իր նախանձը կ'գրգռէին և ստէպ կ'ըսէր. «Միլտիադէսի յաղթանակները չեն թողուր որ հանգչիմ» ։ Օր մը Թեմիստոկլէս ըսաւ որ Աթենացւոց համար շատ օգտակար խորհուրդ մը ունէր մտքին մէջ՝ բայց թէ չէր կրնար հրապարակաւ յայտնել ։ Այն ատեն ժողովուրդն իր կողմէ Արիստիդէսը սահմանեց որ խնդիրն իրեն հաղորդէ ։ Այս խորհուրդն էր Սպարտայի նաւատորմիղը գաղտնի այրել ։ Արիստիդէս Աթենացւոց ըսաւ ․ «Անտարակոյս Թեմիստոկլի խորհուրդը մեզի շատ օգտակար պիտի լինէր, բայց

կեանքին ծայր անիրաւ խորհուրդ մ՛է»։ Այս իմանալով՝ ժողովուրդը չուզեց նորա խօսքն ընել։

Արիստիդէսի յարգն ու համարումը օր ըստ օրէ կ՚աւելնար Աթենացւոց մէջ։ Այս բանս Թեմիստոկլէսի նախանձն այնչափ շարժեց որ գաղտնի ձայն հանել տուաւ թէ՝ իր ոսոխն թագաւոր լինելու կ՚փափաքի։ Այն ատեն ժողովուրդը յուզուելով՝ հաւաքուեց և խեցեվճռով (երես 72) Արիստիդէսը յաքսոր դատապարտեց՝ այս հայրենասէր մարդուն ըրած ծառայութիւնները մոռնալով։ Կ՚պատմեն թէ երբոր ժողովուրդը հրապարակը գումարուած նորա աքսորի քուէն կ՚պատրաստէր, գիւղացի մ՚որ գրել չգիտէր Արիստիդէսին մօտեցաւ և խնդրեց որ նորա անունը խեցիին վրայ գրէ։ Այն ատեն Արիստիդէս հարցուց միայն. «Ի՞նչ յանցանք կ՚գտնես այն մարդուն վրայ»։ — «Յանցանք մը չեմ գտներ, պատասխանեց կոշտ գիւղացին, և ոչ իսկ զինքը կ՚ճանչեմ. բայց ձանձրացած եմ Արդար անունը լսելէն»։ Այս վճռոյն վրայ Արիստիդէս իր հայրենիքէն հեռացաւ և աստուածներէն խնդրեց որ Աթենացիք իր աքսորին վրայ չզղջան իրեն կարօտ մնալով։

Թեմիստոկլէս. — Արիստիդէսին աքսորը բաց ասպարէզ կ՚թողուր Թեմիստոկլէսին որ իշխանութիւնը ձեռք ձգէ և ամէն բան տիրաբար կատարէ։ Այս իրաւ է որ Թեմիստոկլէս իր իշխանութիւնը հայրենեաց մեծութեանը համար գործածեց։ Մարաթոնի պատերազմէն ետք՝ Աթենացիք կ՚կարծէին թէ Պարսից հետ նորէն

կռուի չպիտի սկսին։ Միայն Թեմիստոկլէս հասկցաւ որ այս կռիւը նոր սկսեր էր։ Յունաստանն ապագայ վտանգէ զերծ պահելու և անկախութիւնն ապահով վիճակի մէջ դնելու համար մտածեց որ պէտք էր նաւային զօրութիւնն աւելցնել, և յորդորեց ժողովուրդն որ արծաթի հանքաց արդիւնքն՝ որ մինչև այն ատեն քաղաքացւոց մէջ կ՚բաժնուէր, ցռկանաւեր շինելու գործածուի։ Այսու հետև Աթենքի նաւատորմիղը Յունաստանի ամենէն զօրաւոր նաւատորմիղն եղաւ։ Քիչ ատենէն կազմ և ծովային պատերազմի վարժ երկու հարիւր նաւ Քսերքսէսի դէմ պիտի հանէր։

---

## ԳԼՈՒԽ Ժ.

### Քսերքսեսեան արշաւանքներ ընդդէմ Աթենքի հերոսականութիւնը։

### (485—479)

Քսերքսեսեան արշաւանքը։ — Դարեհի որդին ու յաջորդը՝ Քսերքսես՝ իր հօրը վրէժը լուծելու համար մեծ պատրաստութիւններ տեսաւ։ Այնպիսի ահագին բանակ մը կազմեց և անթիւ նաւերէ տորմիղ մը՝ որոց նմանն երբէք տեսնուած չէր։ Վախնալով որ իր նաւատորմիղն Աթոս լերին թերակղզիէն անցնելու ատեն նոր ձա-

խաղուածքի մը չհանդիպի (երես 76) նոյն լեռին մէջէն ջրանցք մը փորել տուաւ որպէս զի անձնաս անցնին նաւերը։ Իսկ բանակին համար՝ Ելլեսպոնտոսի (այսօր Տարտանէլ) վրայ կամուրջ մը ձգեց որ պարանով իրարու մօտ ամուր կապուած նաւերէ շինուած էր։ Մրրիկ մը ելնելով այս կամուրջը կործանեց։ Քսերքսէս ծովուն դէմ զայրացաւ՝ և հրամայեց որ խարազանով զայն ծեծեն ու շղթայեն։ Այս յիմարական գործը բաւական չսեպեց և հրաման հանեց որ այն կամուրջը շինողներն սպաննեն։ Յետոյ կամուրջը նորէն շինեցին և բանակը եօթն օր ու եօթը գիշերուան մէջ դիմացը՝ Եւրոպա անցաւ։

Երբոր Քսերքսէս Թրակիոյ դաշտերը հասաւ իր զօրքը համրել տուաւ։ Աւանդութեամբ կ'ըսեն թէ երկուք ու կէս միլիոնէն աւելի էին, նոյնչափ սպասաւորներ, գերիներ և կանայք կային որպէս թէ բոլոր Ասիոյ ժողովուրդներն այս արշաւանաց մասնակցեր էին՝ իրենց զանազան հագուստով և զէնքով։ Այս ահագին բանակն՝ որու անցած տեղերն աւեր ու ամայի կը դառնային, Թրակիոյ և Մակեդոնիոյ մէջէն ասպատակելու ատեն՝ զօրաւոր նաւատորմիղ մը՝ որ 1000 ցռկանաւէ և 3000 բեռնակիր նաւէ կ'բաղկանար, նոյն ծովեզերքը կ'շրջէր։

**Արտեմիսիոն**. — Յոյն ժողովուրդներէն շատերն այս անթիւ հրոսակներուն գալն իմանալով՝ ահ ու սարսափ զգացին և Պարսիկ թագաւորին հնազանդեցան։ Բայց Սպարտա և Աթէնք

յուսահատօրէն պատերազմելու համար պատրաստուեցան, և այսպէս ցոյց տուին թէ արիութեամբ, ազատասիրութեամբ և հայրենասիրութեամբ միացած ժողովուրդ մը անպարտելի կ՚մնայ ։ Աթենացիք Դելփիս դեսպան ուղարկեցին որ պատգամ խնդրեն ։ Պիւթիա պատասխանեց որ պարտաւոր էին փայտէ պատուարներու ետին ինքզինքնին պաշտպանել ։ Թեմիստոկլէս հասկըցաւ պատգամին միտքը՝ որ կ՚հրամայէր նաւերն ելնել, և իր տուած խորհրդոյն վրայ՝ Աթենացիք իրենց նաւատորմն աւելցուցին և մինչև անգամ իրենց բնիկ երկրէն հեռանալու համար պատրաստուեցան ։

Սակայն կային յոյներ որ մահը գերութենէ նախադաս կ՚համարէին. սոքա Կորնթոսի պարանոցն եկան գումարուեցան ։ Լէոնիդաս, Սպարտայի թագաւորն՝ Թերմոպիլէի կիրճը պաշտպանելու ղրկեցին ։ Այս կիրճէն կարելի էր միայն Յունաստան մտնել՝ հիւսիսային կողմէն ։ Յունական նաւատորմիղն ալ իրեն պիտի օգնէր ։ Այս նաւատորմիղն իրօք Արտեմիսիոնի հրուանդանը գնաց, որ Եւբէա կղզիին հիւսիսակողմը կ՚գըտնուէր և Թերմոպիլէի մօտ. այս տեղ Պարսից նաւատորմիղին սպասեց ։ Այս նաւատորմիղն՝ որ Եւբէա կղզին պաշարելու կ՚երթար՝ փոթորիկի մը հանդիպելով՝ 400 նաւ կորոյս ։ Վերջապէս Արտեմիսիոնի առջևը հասաւ և այն տեղ նաւային մեծ կռիւ մը սկսաւ ։ Յոյնք յաղթող ելան, բայց վախնալով որ թշնամիք նորէն չգան կղզին չպաշարեն՝ քաշուեցան, մանաւանդ երբ լսեցին որ Պարսից բանակը Թերմոպիլէի կիրճէն անցեր է ։

Թերմոպիլէի պատերազմը. Լէոնիդաս. — Քսերքսէս՝ Թեսսալիայէն անցնելով Թերմոպիլէի առջև հասեր էր։ Անդ գտաւ Լէոնիդասի փոքրիկ բանակն, որ գրեթէ 4000 հոգի ունէր և որոց 300 Սպարտացիք նորա հոգին էին։ Քսերքսէս չէր կարծեր որ այս ափ մը մարդիկ իր ահագին բանակին դիմադրելու պիտի համարձակին. կ՚յուսար որ Յոյներն անմիջապէս անձնատուր պիտի լինին։ Չորս օր այս յուսով սպասեց։ Պարսիկ ձիաւոր մ՚ուղարկեց որ Սպարտացւոց դիրքը քննէ։ Այս ձիաւորը տեսաւ որ Յոյներն մարմնական կրթութիւններ կ՚ընէին կամ իրենց երկար գիսակը կ՚սանտրէին, ոչ ոք իրեն ուշադրութիւն ըրաւ։ Քսերքսէս այս համարձակութեան վրայ զարմանալով Լէոնիդասին գրեց. «Եթէ հնազանդիս, Յունաստանի տէրութիւնը քեզի պիտի տամ»։ Անվեհեր Լէոնիդաս պատասխանեց. «Աւելի կ՚ընտրեմ իմ հայրենեացս համար մեռնիլ քան թէ նորա վրայ իշխել»։ Այն ատեն Պարսից թագաւորը դեսպան ղրկեց Լէոնիդասին որ զէնքերը տայ։ «Եկուր առ» պատասխանեց Լէոնիդաս։

Վերջապէս Քսերքսէս այս խրոխտ պատասխանին վրայ զայրանալով հրամայեց իր զօրաց որ Յունաց վրայ յարձակին և ողջ ողջ բռնելով իրեն բերեն։ Բայց Լէոնիդաս ամուր դիրք մ՚ունէր, և թշնամեաց բազմութիւնն նոյն նեղ կիրճին դէմ անօգուտ էր։ Սպարտացւոց զէնքերն աւելի ընտիր էին, երկար նիզակներով և խոշոր վահաններով զինուած էին, ուստի յաղթող ելան։ Պարապ տեղը Քսերքսէս իր

նան։ Յունաց արիստաւորք զօրքն խելքին նման և Թշնամեաց վրայ քալեց։ Կրպէս զի աւելի մեծ կատարած մ'ընէ կիրճէն դուրս պատերազմի դաշտը գնաց։ Այն ատեն աչնագին կռիւ մը կ'ելլէ. երկու կողմէն մեծեղնաբար կ'պատերազմին։ Պարսկաստանցիք այնքան մարդ կ'ջարդեն որ իրենց նիզակները կ'կոտրին, բայց սրով կը շարունակեն պայքարը։ Իրաւ որ Պարսիկներ պերտին կ'գլորէին, իրենց զօրավարներն մարտկելով յառաջ կ'քշէին զիրենք։ Սակայն Յունաց Թիւն երթալով կ'պակսի. նոյն իսկ Լեւոնիդաս ընչասպառ գետին կ'Թաւալի։ Իր դիակին վրայ կատաղի կռիւ մը կ'ելլէ։ Յոյներն իրենց արիասիրտ զօրապետին մարմինը կ'պաշտպանէին երբ Պարսիկներն լեռնէն վեր ելնելով յետուստ երեւցան։ Այն ատեն մինչեւ կիրճին մուտքը ետ կ'քաշուին։ Հոն այս անգամ ամեն կողմէ պաշարուելով Յունաց վրայ քարեր և նետեր կ'տեղան։ Քաջերն այնպիսինները որ՝ իրենց զէնքն կոտրուած լինելով՝ ձեռքով և ակռաներով ինքզինքնին կ'պաշտպանէին։ Եւ ոչ Սպարտացի մը, ոչ Թեսպիացի մը կենդանի չմնաց։ Միայն քանի մը Թեբացիք անձնատուր եղան։ Քսերքսէս խաչը հանել տուաւ Լեւոնիդասի մարմինը։ — Յունաստան Թերմոպիլէի դիւցազուններուն ոսկորները ժողվեց և շիրիմ մը կանգնեց նոցա յիշատակին՝ այս պարզ այլ վեհ արձանագրով. «Անցորդ, գնա՛ Սպարտա ըսէ որ իր օրինաց հնազանդելու համար այս տեղ ընկանք»։

Սալամինի նաւամարտը․ Թեմիստոկլես․ — Թերմոպիլէն առնելէն ետև՝ Քսերքսէս Յունաստան մտաւ և բոլոր երկիրն անապատ դարձուց․ Քաղաքներն այրեց, բնակիչները կոտորեց։ Յետոյ Աթենքի վրայ քալեց, որպէս զի Մարաթոնի վրէժն առնու։ Այս իմանալով՝ Աթենացիք իսկոյն իրենց բնիկ երկիրը թողուցին և Էգինէ ու Սալամինէ փոխադրեցին իրենց ընտանիքը․ Քսերքսէս միայն քանի մը ծերեր և քաղաքացիներ գտաւ քաղաքը, որ պատգամը սխալ մեկնելով (երես 84) փայտէ պատնէշներու ետին՝ միջնաբերդը՝ պատսպարուեր էին, ուր յուսահատ արիութեամբ ինքզինքնին պաշտպանեցին․ Ամենքը ջարդուեցան և քաղաքը մոխիր դարձաւ․

Նոյն միջոցին յունական նաւատորմիղն Արտեմիսիոնէն ելնելով՝ Սալամինէի մօտ խարիսխ նետեր էր․ Աթենքի հրդեհին դոյժն բոլոր յոյն զօրավարաց սարսափ ազդեր էր․ ամեն մարդ կ՚ուզէր որ իր բնիկ երկիրն երթայ պաշտպանէ․ շատերը իրենց նաւերը մտան, առագաստները բացին և մեկնելու պատրաստուեցան․ բայց Թեմիստոկլէս կ՚պնդէր որ մնան։ Եւրիբիադէս լակեդեմոնացին՝ որ նաւատորմիղին կ՚հրամայէր՝ բոլոր զօրավարները գումարեց խորհրդակցելու համար․ Այն ատեն բուռն վիճաբանութիւն մը ծագեցաւ․ Պելոպոնեսոցիք ոտք կոխեցին որ իրենց տուները դառնան և իրենց բոլոր զօրութիւնը Կորնթոսի պարանոցին վրայ ժողվելով հայրենիքը պաշտպանեն։ Ընդ հակառակն՝ Թեմիստոկլէս կ՚պնդէր որ Սալամինէի նե-

ղուցը միայն, ուր թշնամեաց բազմութիւնը չէր կարող զիրենք յաղթահարել։ Բայց ընդունայն կ'ջանար համոզել իր բանաւոր և ճարտասան խօսքերով հակառակորդները, որ սաստիկ զայրացած կ'աղաղակէին։ Նոյն ինք Եւրիպիադէս գաւազանը վերցուց և սպառնաց Թեմիստոկլէսի որ իր կարծիքը յառաջ տանի։ «Զարկ, բայց մտիկ ըրէ» ըսաւ Թեմիստոկլէս ծովապետին։ Բայց ոչ ոք կ'ուզէր մտիկ ընել Աթենացի զօրավարին։ Մինչև անգամ գլխաւորներէն մին այնքան կ'բարկանայ որ կ'գոչէ. «Ինչու վիճաբանինք այս մարդուն հետ որ մը հայրենիք չունի»։ «Մեր հայրենիքը, կ'պատասխանէ Թեմիստոկլէս, աստ է, այս երկու հարիւր նաւերուն մէջ՝ որ պատրաստ են Յունաստանի ծառայել, եթէ կամենայ. թէ ոչ, մեր ընտանիքները կ'առնենք և դէպ 'ի Իտալիա կ'նաւարկենք»։

Այս ազդու խօսքն ու սպառնալիքը մեծ ներգործութիւն ըրաւ միւս զօրավարներուն վրայ, բայց բոլորովին չհամոզեց։ Այն ատեն Թեմիստոկլէս վախցաւ որ Պեղոպոնեսցիք գիշերով խոյս չտան իրենց հայրենիքը և մտածեց որ այդ բանն արգիլէ։ Ատոր հնարք մը գտաւ։ Իր զաւակաց դաստիարակը Քսերքսէսին ուղարկեց յայտնելու թէ Յոյները ցրուելու կ'պատրաստուէին և թէ պէտք էր այն միջոցին որ նոյն տեղը գումարուած էին 'ի Սալամինէ, յարձակիլ նոցա նաւերը պաշարել և մէկ հարուածով պատերազմը վերջացընել։ Քսերքսէս կարծեց թէ այս խորհուրդն անկեղծ էր և հրաման տուաւ իր ծովապետին որ լակոյն երթայ յա-

նաց նաւատորմը պաշարէ ։ Թեմիստոկլէս այս ազդը գաղտնի Քսերքսէսին ղրկեց, եւ՝ նորէն միւս զօրապետներուն մօտ գացեր էր, երբ մարդ մ'եկաւ զինք տեսնելու ։ Նոյն ինք տարագիր Արիստիդէսն էր, որ թշնամի նաւատորմէն անցնելով եկեր էր իր հայրենակիցներուն հետ պատերազմելու ։ «Միշտ մրցող ըլլինք, ըսաւ Արիստիդէս. բայց ցոյց տանք թէ ով աւելի եռանդով կ'մրցի հայրենեաց փրկութեան համար» ։ Եւ իմացուց Թեմիստոկլէսին որ Պարսիկներուն յունական նաւատորմը պաշարելու կը պատրաստուին ։ «Գիտեմ, ըսաւ Թեմիստոկլէս, և այս բանս անուղղակի տուած ազդարարութեանս համեմատ կ'կատարուի» ։

Հետեւապէս Յոյները պարտաւորեցան մնալ և հետեւեալ օրը նաւային պատերազմը սկսաւ ։ Ունէին 300 նաւ, մինչդեռ Պարսից տորմիղն 1000 նաւէ կ'բաղկանար ։ Քսերքսէս Սալամինէ կղզին՝ բարձր տեղ մ'ելեր էր որպէս զի հեռուէն նայի կռուին ։ Պարսիկները չկրցան իրենց բոլոր նաւերը նեղուցէն անցընել, որ միանգամայն ծանր էին, իրարու կ'զարնէին և հովն հակառակ էր, մինչդեռ յոյն նաւերն թեթեւաշարժ էին և ահագին ակիշներ ունէին որով թշնամին կ'հարուածէին ։ Իսկ երբ Պարսիկ ծովակալը սպաննուեցաւ մեծ խառնակութիւն մը ծագելով թշնամիները սկսան փախչիլ և Քսերքսէս յուսահատութեամբ կ'դիտէ՛ր իր աթոռին վրայ նստած՝ Յունաց այս նաւային յաղթութիւնը ։

Այս կռուին մէջ իր արիասրտութեամբն երեւելի եղաւ Կարիոյ թագուհին Արտեմիզա, որ

տեսաւ թէ իր նաւուն ետեւէն աթենական ցռկանաւ մ՚ընկած էր, յանկարծ պարսիկ նաւու մը վրայ նետուելով՝ զայն ընկղմեց։ Աթենացին կարծելով որ սխալմամբ դաշնակից նաւ մը կ՚հալածէ, դարձաւ և ուրիշ նաւու մը ետեւէն ինկաւ։ Քսերքսէս, որ կարծեց թէ Արտեմիս թագուհին յոյն նաւ մ՚ընկղմեր էր, ըսաւ թէ՝ այն օրն կիները մարդու արիութեամբ կռուեր էին և մարդիկ կիներու պէս (480)։

Քսերքսէսի փախուստը. — Սակայն Պարսիկները միայն 200 ցռկանաւ կորուսեր էին, և Քսերքսէս միշտ ահագին բանակի մը գլուխը գտնուելուն՝ կարող էր պատերազմը շարունակել։ Բայց Թեմիստոկլէս Պարսից բռնաւորն ահաբեկելու համար գաղտնի մարդ ղրկելով ձայն հանել տուաւ որ Յոյներն իր շինած կամուրջը կործանելու միտք ունին։ Քսերքսէս այս իմանալով փութաց ճամբայ ելնելու, որպէս զի Եւրոպա չարգիլուի, և շուտ մը Թրակիա հասաւ։ Կամուրջը փոթորիկէ կործաներ էր և Քսերքսէս՝ իբրև փախստական ձկնորսի մը նաւակով անցաւ Ելլեսպոնտոսէն Ասիա, մինչդեռ քիչ մ՚առաջ իբրև յաղթող անցեր էր։

Պղատէայի ճակատամարտը. Պաւսանիաս. — Քսերքսէս Ասիա դառնալու ատեն՝ իր Մարդոնիոս զօրապետին 300 հազար զօրաց բանակ մը թողուց որպէս զի պատերազմը շարունակէ։ Բայց Մարդոնիոս ջանաց Աթենացիքը շահիլ, և առաջարկեց Աթենքը շինելու եթէ իրեն միանան։

Աթենացիք այս առաջարկութիւնը գոռոզաբար մերժեցին ։ Իրաւ է որ նոյն անհամաձայնութիւնը կ'տիրէր Յունաց մէջ ։ Ամէն մարդ իր քաղաքն ազատելու հոգն ունէր ։ Սպարտացիք Պեղոպոնէսի մուտքը գոցելու համար որոշեցին Կորնթոսի պարանոցին վրայ մեծ պարիսպ մը կանգնել և թող տուին որ Պարսիկներն երկրորդ անգամ Աթէնք ասպատակեն ։ Աթենացիք այս անտարբերութեան վրայ սրտմտելով սպառնացին Սպարտացւոց որ Մարտոնիոսի հետ պիտի հաշտուին ։ Սպարտա զգաց որ եթէ Աթենացիք Պարսից միանան Յունաստան պիտի կորսուի, իսկոյն 40,000 զօրք ուղարկեց Աթէնք, իր Պաւսանիաս թագաւորին հրամանատարութեամբ ։

Երբ Մարտոնիոս լսեց որ Սպարտայէն օգնութիւն կ'հասնի, Ատտիկէն թողուց և Բէովտիա գնաց, որու ընդարձակ դաշտերն հեծելազօրքին յարմար էին ։ Պաւսանիաս Կորնթոսի պարանոցէն անցնելով Պարսից զօրապետին ետևէն ընկաւ, մինչդեռ Արիստիդէս ուրիշ բանակով մը նորա միացաւ ։ Ճակատամարտը Պլատէա քաղաքին մօտ եղաւ ։ Յոյներն 100 հազար էին, 50 հազար յոյն զօրք՝ որոց մէջ Թեսբացիք կային՝ բանակին օգնելու եկեր էին ։ Սոսկալի եղաւ պատերազմը, գրեթէ ճակատ առ ճակատ կ'կռուէին ։ Երկու կողմէ ալ քաջութիւն ցոյց տուին. բայց Պարսիկներն անվարժ էին և անկարգ կ'պատերազմէին ։ Մարտոնիոս սպիտակ ձիու մը վրայ հեծած՝ արիաբար կը խրախուսէր և որչափ ատեն որ կենդանի մնաց

Պարսիկները կարող եղան Յունաց դիմադրել։ Բայց երբոր ընկաւ և իր Թիկնապահները ջարդուեցան՝ մնացած զօրքը կռնակը դարձուց և սկսաւ փախչիլ։ Յոյները սոսկալի կոտորած մը ըրին, Մարտոնիոսի բանակէն հազիւ թէ 50 հազար հոգի ազատելու յաջողեցան և Բիւզանդիոնի նեղուցէն Ասիա անցան։ Անոնց աւար դառն Յոյներն Պարսից բանակատեղը, մէկ մասը Դելփիոյ մեհեանն ու զարդեցին, և մեծ մասն իրենց մէջ բաժնեցին։

Միկալէի նաւամարտը. Քսանթիպպոս. — Նոյն օրը Յոյներն Փոքր Ասիոյ ծովեզերքը՝ Միկալէ հրուանդանին մօտ՝ նոր յաղթութիւն մը տարին Պարսից վրայ և այսպէս Յոնիան ըստ մասին ազատեցին։ Իրենց հրամանատարն էր Քսանթիպպոս, Պերիկլէսի հայրը։

## ԳԼՈՒԽ ԺԱ.

### Աթէնքի վերաշինութիւն — մինչև Պերիկլէսի դարը։

### (479—449)

Աթէնք կ՚շինուի. — Պարսիկներն Յունաստանէն քաշուելէն ետև՝ Աթենացիք իրենց քաղաքը վերաշինելու ձեռք զարկին, բայց երբ

նոյն քաղքին պարիսպներն ալ շինելու ելան, Սպարտացիք՝ որ նոցա նաւային զօրութեան վրայ կ'նախանձէին, ուզեցին արգիլել․ ինչ պատճառաւ․ վասն զի, կ'ըսէին, եթէ Պելոպոնէսէն դուրս ամուր քաղաք մը շինուի, բարբարոսները գալով կ'առնեն և նորա մէջ ամրանալով Յունաստանի մեծ վտանգ և աղէտ կը բերեն ։ Աթենացիք անհիմն գտան այս պատճառն, և նորէն Թեմիստոկլէսի խորհրդով իրենց պարիսպները շինելու փոյթ տարին ։ Բոլոր ժողովուրդը մեծ ժրութեամբ գործն 'ի կատար հանելու ջանաց ։

Այն ատեն Սպարտացիք բարկանալով դեսպան ղրկեցին Աթենք պահանջելու որ շէնքը դադրեցնեն ։ Թեմիստոկլէս՝ Սպարտա գնաց իբրև պատգամաւոր այս գործին վրայ խորհրդակցելու համար․ բայց որպէս զի ժամանակ շահի, ծանր ծանր ճամբորդեց, և երբ հասաւ, իր պաշտօնակցաց սպասեց որպէս զի Սպարտացւոց հետ բանակցի ։ Նոյն միջոցին՝ Աթենքի մէջ՝ այր, կին, տղայ, ծեր, ամենքը մեծ եռանդով կ'աշխատէին պարիսպները լմնցընելու ։ Այս լուրն որ Սպարտա հասաւ, Թեմիստոկլէսէն բացատրութիւն խնդրեցին ։ Աթենացի զօրավարը պնդեց որ այդ լուրերը սուտ էին, և եփորոսներն աղաչեց որ գործը ստուգելու համար յատուկ պատգամաւորներ ուղարկեն Աթենք, սակայն գաղտնապէս իր հայրենակցաց իմացուց որ այն սպարտացի պատգամաւորներն իբրև պատանդ պահեն մինչև վերադարձը ։ Վերջապէս երբոր Թեմիստոկլէս իմացաւ որ պա-

իւսպը բաւական առաջ գացեր է և կրնայ ար-տաքին յարձակման դէմ դնել՝ և քաղաքը պաշտպանել ։ Սպարտայի ծերակոյտին ալ ջէն եղաւ և զուոզարար ըսաւ . «Աթենացիք իրենց քաղքէն ելնելու և նաւերը քաշուելու համար ձեզի խորհուրդ չհարցուցին, նոյնպէս իրենց պարիսպները կառուցանելու համար , զոր Յունաստանի թշնամիները կործանեցին, ձեր խորհրդին պէտք չունին» ։ Սպարտացիք տեսան որ Թեմիստոկլէս ժամանակ շահելով զիրենք խաբեր էր, բայց իրենց ոխը ծածկեցին և առ երես այս բացատրութենէ գոհ երեւցան ։

Պաւսանիասի մատնութիւնը . — Սակայն Սպարտա քիչ ատենէն պիտի ստիպուէր Աթենայի գերիշխանութիւնը ճանչել ։ Պարսից դէմ պատերազմը կը շարունակուէր, բայց այս պատերազմը բոլորովին ծովային էր ։ Սպարտացիք յաջողակ չէին ծովուն վրայ, և մանաւանդ այս կռիւներէն զզուեցան երբոր իրենց Պաւսանիաս թագաւորին մատնութիւնն իմացան ։

Այս թագաւորն Պարսիկները Թրակիայէն վանելու վրայ էր, երբ գաղտնի իմացուց Քսերքսէսի որ եթէ իր աղջիկն իրեն կնութեան տայ, բոլոր Յունաստանը նուաճելու կ՚խոստանայ ։ Քսերքսէս այս առաջարկութիւնն ընդունեց ։ Այնուհետև Պաւսանիաս, որպէս թէ արդէն արքայից արքային փեսան եղեր էր, յոնական զգեստը թողուց, պարսկական պատմուճան հագաւ, և սկսաւ արևելեան պերճութեամբ ապրիլ, և մարզպանի մը գոռոզութեամբ վարուիլ

իր դաշնակցաց հետ, որ զայրանալով չուզեցին հնազանդիլ Պաւսանիասին, և Արիստիդէս ու Միլտիադէսի որդի՝ Կիմոնին հրամանին տակ մտան։

Երբոր Սպարտա իմացաւ Պաւսանիասի մատնութիւնը՝ իսկոյն զինք պաշտօնէ հանեց և դատաստանի կոչեց։ Վասն զի ծերակոյտն նորա մէկ գիրն առ Քսերքսէս ձեռք ձգեր էր գրաւոր դերիի մը ձեռօք։ Այս գրաւորը դիտեր էր որ իրմէ առաջ Պարսից արքունիքը գացող սուրհանդակներն ետ չէին դարձեր, կասկածի երթալով՝ նամակը բացեր և Պաւսանիասի մէկ պատուէրը կարդալուն թէ գրաւորը պէտք է սպաննել, գիրը պարէտներուն ղրկեր էր։ Պաւսանիաս ինքզինքն արդարացնելու համար Սպարտա գնաց և երբ իր ջանքն անօգուտ եղաւ՝ Աթենասայ տաճարը փախաւ։ Եւ սրովհետև չէին կարող զինքն այն նուիրական տեղէն բռնութեամբ հանել, դուռը մեծ քարերով դրսէն գոցեցին որպէս զի անօթութենէ մեռնի։ Կ'ըսեն թէ Պաւսանիասի մայրն՝ բոլոր Սպարտացւոց հետ այնքան զայրացեր էր իր որդւոյն վատութեան դէմ, որ առաջին քարն ինք դրաւ։ Երբոր մեռնելու մօտ էր Պաւսանիաս, դուրս հանեցին որպէս զի տաճարն իր մահուամբը չպղծի։

**Թեմիստոկլէսի աքսորը.** — Սպարտացիք տեսնելով որ հեռաւոր պատերազմներն իրենց բարուց և օրինաց վրայ վնասակար ազդեցութիւն ունէին, քաշուեցան ասպարիզէն և յանձ-

կան զօրաց հրամանատարութենէ ։ Այն ատեն Աթենացիք Յունաստանի գործոց գլուխն անցան և Պարսից դէմ պատերազմը շարունակեցին, մինչդեռ Սպարտա՝ Պելոպոնէսի ժողովրդոց գլուխն անցած՝ հեռուէն անտարբեր կ՚դիտէր ։ Աթենացի գլխաւորներն՝ Թեմիստոկլէս, Արիստիդէս և Կիմոն իրենց բոլոր ջիգը թափեցին որ Աթենք Յունաստանի գերիշխանութիւն վարէ ։

Թեմիստոկլէս Աթէնքի նաւային իշխանութիւնը զօրացուց և նորա պարիսպներն ամրացընելէն ետև Փալերեա հին նաւահանգստին տեղ՝ Պիրէոն ընդարձակ նաւահանգիստը մայրաքաղաքին միացուց երկու մեծ պատով, այնպէս որ Պիրէոն երկրորդ քաղաք մ՚ու իր դիրքով թէ վաճառականութեան և թէ ծովային զօրութեան ընտիր կեդրոն մը դարձուց ։ Բայց Թեմիստոկլէս իր փառասէր ընթացքով և պերճասիրութեամբն հայրենակցաց կասկածները գրգռելուն՝ խեցեվճռով պիտի դատապարտուէր երբ Պելոպոնէս քաշուեցաւ ։ Այս յարմար առիթ մը սեպելով Սպարտացիք իրենց ոխն առնլու համար զինք ամբաստանեցին որպէս մասնակից Պաւսանիասի մատնութեան և դատաստանի կոչեցին ։ Այս ամբաստանութիւնն անիրաւ էր, բայց Թեմիստոկլէսի կեանքը բոլորովին անարատ չէր ։ Ուստի իր հայրենակցաց արդարասիրութեան վրայ չվստահելով՝ Կորկիւրէ կղզին, անկից Եպիրոս և ապա Պարսկաստան փախաւ՝ Քսերքսէսի մահուանէ ետք, որու յաջորդեր էր Արտաշէս ։ Սիրով ընդունեց Արտաշէս այս Պարսից ահարկու թշնամին, որ նոյն միջոցին խոստացաւ Յու-

նաստանն արքայէն արքային յանձնել։ Սակայն երբ Արտաշէս ստիպեց զինք որ իր խոստումը կատարէ և պարսիկ զօրաց սպարապետութիւնը վարէ, Թեմիստոկլ իր վաղեմի փառքը չաղարտեց, իր հայրենեաց ազատութիւնն զոր այնքան սուղ գներ էր, իր անձնական մեծութեան զոհել չուզեց և աւելի սիրեց մեռնիլ քան թէ մատնիչ լինիլ. ուստի թոյն խմեց ու մեռաւ։ Իր ոսկորտիքը գաղտնի Աթենք փոխադրեցին։

Արիստիդէսի մահը. — Սակայն Արիստիդէս իր արդարասիրութեամբն աւելի օգնեց Աթենքի գերիշխանութեան՝ քան թէ Թեմիստոկլ իր հնարագիտութեամբը։ Յունաստանի և Փոքր Ասիոյ կղզեններն Աթենքի հետ նիզակակցութիւն մը կազմեր էին բարբարոս թշնամիները վանելու համար։ Այս դաշնակցութեան գլուխն ու կեդրոնն էր Աթենք։ Արիստիդէս բոլոր դաշնակցաց հաւանութեամբ որոշեր էր թէ ամէն մէկ նիզակակից ժողովուրդ որչափ մարդ, ստակ և նաւ պիտի մատակարարէր։ Արիստիդէս մինչև վերջը իր հայրենակցացը համարումն ու վստահութիւնը վայելեց։ Այնքան աղքատ մեռաւ որ տէրութիւնն նորա թաղման ծախքը քաշեց և նորա աղջիկներն օժտեց։

Կիմոնի փառքը. — Նիզակակից ժողովուրդները շուտով տաղտկացան այս պատերազմէն զոր Պարսից դէմ կ՚մղէին։ Առաջարկեցին որ ստակ տան միայն փոխանակ զինուոր և նաւ տալու։ Աթենք յանձն առաւ և ամենուն կողմէ պայքարը շա-

րտնակեց։ Նոյն միջոցին Արիստիդէսին տեղը՝ Կիմոն, Միլտիադէսին որդին անցեր էր զօրավարութեան պաշտօնին մէջ։ Վեհանձն և մարդասէր էր Կիմոն ու իր հայրենակցացը շատ սիրելի. իր մեծ հարստութիւնն Աթենքը զարդարելու համար կ'գործածէր։ Իր պարտէզները ժողովրդեան և սեղանն ամենուն համար բաց էին։ Կիմոն վռնտեց Պարսիկները Թրակիայէն և Եգեան ծովուն կղզիներէն։ Մինչև անգամ Ասիա անցաւ և թէ՛ ցամաքի և թէ ծովու վրայ Եւրիմեդոն գետին բերանն (Կարիա) նշանաւոր յաղթութիւն մը տանելով՝ Փոքր Ասիոյ բոլոր յունական քաղաքները Պարսից լուծէն ազատեց։

Սակայն Կիմոն, Թեմիստոկլի և Արիստիդէսի պէս՝ իր հայրենակցաց նախանձն ու կասկածները գրգռեց իր վրայ։ Նա կ'սիրէր Սպարտան ու նորա օրէնքը։ Աթենացիք ծուռ աչքով կը նայէին այս ազնուապետական համակրութիւնն և Սպարտացւոց վրայ ունեցած սէրը. իսկ Կիմոնի թշնամիներն ալ կարծեցին որ իր առատաձեռնութեամբ ժողովուրդը շահիլ և իշխանութեան հասնիլ կ'ուզէ։ Այս գաղտնի ատելութիւնն աւելի սաստկացաւ՝ երբ անգամ մը Կիմոն յորդորեց Աթենացիքն որ Սպարտայի օգնեն Մեսսենիացւոց դէմ, որ ապստամբելով Իթոմ լեռը քաշուեր էին (Մեսսենիական երրորդ պատերազմն էր այս որ տասն տարի տևեց)։ Կիմոն մեծ բանակով մը Պելոպոնէս անցաւ, բայց քիչ ատենէն Սպարտացիք՝ չվստահելով Աթենացւոց՝ Կիմոնը ճամբեցին։ Այս ծանր նախա-

տինքը չկրցաւ կրել ժողովուրդն, Կիմոնը բոլորովին աչքէն հանեց և խեցեվճռով դատապարտեց:

Բայց հինգ տարի ետք՝ Աթենացիք նորէն կանչեցին Կիմոնն որ իր ասպարէզը փառաւոր կերպով լմնցուց: Կիպրոս կղզիին դէմ արշաւեց և քաղաք մը պաշարելու ատեն մեռաւ: Աթենական նաւատորմիղն՝ Կիմոնի դիակն Աթէնք տանելու ատեն՝ Փիւնիկեցւոց և Պարսից նաւատորմին հանդիպեցաւ Կիպրոսի առջև և բոլորովին յաղթեց: Այս եղաւ մարական պատերազմաց վերջին կռիւը: Վերջապէս Պարսիկներն ու Յոյները խաղաղութիւն կնքեցին և դաշինք գրին (զոր ոմանք Կիմոնի դաշնադրութիւն կ'անուանեն) այս պայմաններով որ Պարսկաստան Փոքր Ասիոյ Յունաց անկախութիւնը կ'ճանչէր և Եգեան ծովուն վրայ պատերազմական նաւեր չհանելու կ'խոստանար:

Աթէնքի փառքն մարական պատերազմաց ատեն.—Սպարտա՝ Քսերքսէսի արշաւանաց ժամանակ՝ Յունաստանի առաջնութիւնը վարեց: Իր թագաւորները կամ զօրապետներն էին որ ցամաքի կամ ծովային զօրաց վրայ կը հրամայէին: Սակայն Յունաստանի ազատարարն Աթէնք կ'սեպուէր, վասն զի Աթենացիք յաղթական եղեր էին 'ի Մարաթոն, իր նաւատորմը Արտեմիսիոնի, Սալամինէի և Միկալէի յաղթութիւնները տարեր էր, և Սպարտայի հետ այս պայքարին մէջ համբաւ ստացեր էր: Աթէնքի մեծ մարդիկը, Միլտիադէս, Թեմիստոկլ, Արիստիդէս, Քսանդիպպոս, Կիմոն իրենց անունն ու հայրենիքը փառաւորեր էին, և իրենց հայրենասիրութեամբ, քաջութեամբ ու տաղանդովն Յունաստանի ազատութիւնն ապահովեր էին: Մանաւանդ Թեմիստոկլ ընդհանուր

ազատանչացման տօնարկայ եղեր էր և երախտագէտ Յոյներն Զինծեւսի տաճար մը պարգևեր էին նմա, որ Հանճարի և փառաց նշանակն էր։

Մարական պատերազմէն ետև՝ Աթենք ծովապետութիւն մը հիմնեց որ ատեն մը պետութիւն դարձեր և մինչև բոլոր Եգէեան ծովը տարածուեր էր։ Այս պետութիւնը կ՚ամփոփէր նոյն ծովուն կղզիներն և Փոքր Ասիոյ գաղթականութիւնները. դաշնակիցներ, հարկատուներ և ջողնախաններ կ՚պարունակէր։ Աթենքի առաջնութիւնն ճշմարիտ գերիշխանութեան մը փոխուեցաւ, այնպէս որ իր հին դաշնակիցներէն շատերն իրենց ինքնօրէնութիւնը կորուսին. վասն զի իրենց անկախութիւնը ձեռօք ձգելու համար գլուխ քաշող ժողովուրդներն ընկճեցան և Աթենքի հպատակ եղան։

## ԳԼՈՒԽ ԺԲ.

### Պերիկլէսի դարը — Պելոպոնեսեան պատերազմին սկիզբը

### (449—431)

Պերիկլէս. — Մարական պատերազմէն ետք հասաւ ժամանակ մ՚որ Յունաց պատմութեան մէջ ամենէն պայծառ ու փայլուն ժամանակն եղաւ։ Աթենք նոյն միջոցին գրեթէ Յունաստանի մայրաքաղաքն և քաղաքակրթութեան կեդրոնը դարձեր էր։ Մեծ հանճար մը, Պերիկլէս՝ նորա վրայ կ՚տիրէր։ Այս է պատճառն որ նոյն ժամանակը՝ Պերիկլէսի դար կոչուեցաւ։

Պերիկլէս՝ Քսանթիպպոսի, Միկալէի յաղթականին որդին էր։ Շատ ընտիր ձրից տէր էր, թէ՛ պատերազմի և թէ կառավարութեան գործոց մէջ ճարտար ու յաջողակ։ Թէև 'ի ծնէ ազնուական, ժողովրդեան կուսակից եղաւ և Աթենքի կառավարութիւնը բոլորովին ռամկապետական ըրաւ։ Ժողովրդեան համարումը շահելու համար ամեն ճիգը թափեց և երբէք մարդ մը Պերիկլէսին չափ ազդեցութիւն և յարատև իշխանութիւն բանեցուցած չէ հանրապետութեան մը մէջ։ Բայց չէր մոռնար երբէք որ պարզ քաղաքացի մ'էր. միշտ անշուք և ժուժկալ կեանք մ'անցուց և ամենուն հետ սիրով կ'վարուէր։ Քաղաքական կենաց մէջ՝ իր ճարտասանութեամբը և իմաստութեամբն Աթենացւոց պատկառանք կ'ազդէր և չէր վախնար այս դիւրափոփոխ և թեթև ժողովուրդը սաստելու։ Այսպէս մերթ ընտանի և պարզ, մերթ խրոխտ և մեծանձն երևելով Պերիկլէս՝ ամենուն սէրն ու վստահութիւնը գրաւեց, և թէև մի շատ թշնամիներ ունեցաւ, բայց՝ իր անուանի նախորդներուն պէս՝ խեցեվճռով դատապարտութիւն չկրեց։

Պերիկլէսի օրով՝ Աթենք իշխանութեան գերագոյն աստիճանն հասաւ, և իր դաշնակցաց վրայ բոլորովին տիրեց։ Պերիկլէս բաւական չսեպեց Աթենքի նաւային զօրութիւնն դաշնակից ժողովրդոց դրամովն աւելցընել, քաղաքը Պիրէոնի կցող երկու մեծ պարիսպներն աւարտեց։ Այս ստակով Աթենքը շքեղ շէնքերով զարդարեց։ (Աթենասայ անուանի տաճարը, Պարթենոն անուն, Օդէոն կամ Պրոպիլէ)։ Հա-

տաղակաց շէնքերն սքանչելի քանդակներով զարդարուած էին․ Հոչակաւոր արձանագործ մը, Փիդիաս այս շինութեանց վրայ կ'հսկէր։ Բայց ժողովուրդը տեսնելով որ սոցա համար ահագին գումարներ ծախք կ'լինին, Պերիկլէսն ամբաստանեց իր շռայլութեանը համար։ «Լաւ ուրեմն», ըսաւ Պերիկլէս, «բոլոր այս ծախքերն ես պիտի քաշեմ, բայց այս յիշատակերտաց վրայ իմ անունս միայն պիտի գրուի»։ Այս հպարտ խօսքին վրայ՝ ժողովուրդն զգաց որ գծուծ շահերը պէտք է ազգային փառաց զոհէ և որոշեց որ Պերիկլէս՝ առանց բան մը խնայելու՝ շարունակէ քաղաքը զարդարելու։

Սպարտա և Աթէնք իրարու նախանձորդ. — Աթէնքի զօրութիւնն ու փառքը չափէն աւելի գրգռեցին Սպարտայի նախանձը։ Ուստի Հելլենական այս երկու քաղաքաց մէջ տիրած ոսոխութիւնն Պերիկլէսի ժամանակ անընդհատ շարունակուեցաւ։ Սպարտացիք կեդրոնական Յունաստանի մէջ Աթէնքի նախանձորդ իշխանութիւն մը հաստատել ուզեցին։ Մարական պատերազմին մէջ Թեբացւոց բռնած անարժան ընթացքը մոռնալով՝ Սպարտացիք այս ժողովրդեան օգնեցին որպէս զի Բէովտացւոց վրայ տիրապետէ։ Աթէնացիք դէմ կենալ ուզեցին, բայց Տանակրէի մէջ յաղթուեցան Լակեդեմոնացւոց կողմէ։ Սակայն շատ չանցաւ նորէն զօրացան, և Բէովտիոյ, Փոկեայի և Լոկրիսի մէջ ռամկապետական կառավարութիւնը նորէն հաստատեցին։ Այս միջոցիս աթենական իշխանութիւնն իր բարձրագոյն կէտն է, Աթէնք ցամաքի ու ծովու վրայ կ'տիրէ կեդրոնական Յունաստանի և կղզիներուն վրայ։ Իր մէկ նաւատորմը՝ Սպարտայի նաւահանգիստը՝ Գիթիոն կ'երթայ այրելու, Կորնթոսն նոյն իսկ իր ծովածոցին մէջ նախատելու, և Նաւպակտոսը գրա-

ւելու (յԷգալիա)։ Այն միջոցին Մեսսենիական երրորդ պատերազմը կ'աւարտէր։ Աթոմի պաշտպանները Պելոպոնէսէն ելնելու հրաման ստանալով, Աթենք զայնս ընդունեց և Նաւպակտոսը նոցա տուաւ։

Սակայն Աթենքի գերիշխանութիւնը ցամաքի վրայ քիչ տեւեց։ Բէովտիոյ մէջ աղնուապետական կուսակցութիւնն յաղթանակեց և Աթենացիքը Կորոնէայի մէջ հարուածեց։ Այս պարտութիւնն Աթենքի տիրապետութիւնը սասանեց։ Եւբէա կղզին և Մեգարա ապստամբեցան նոցա դէմ Սպարտացւոց օգնութեամբ, որ Ատտիկէ արշաւեցին։ Պերիկլէս Եւբէա կղզին նուաճելու յաջողեցաւ, բայց վերջապէս Սպարտայի հետ երեսուն տարուան զինադադար մը կնքելու ստիպուեցաւ, որով Աթենք Պելոպոնէսի եզերքն ունեցած բոլոր տեղերն Սպարտայի կ'թողուր։ Այս զինադադարը Պերիկլեան խաղաղութիւն կոչուեցաւ։ Այնուհետև գերիշխանութիւնն Աթենքի և Սպարտայի մէջ բաժնուեցաւ. առաջինոյնը էապէս ծովային, մինչդեռ Սպարտայինը ցամաքային եղաւ։ Այս քաղաքներէն ամեն մէկն շատ դաշնակցութեան մը գլուխը կ'գտնուէր։ Աթենական դաշնակցութեան մէջ էին Եգեան ծովուն կղզիները և Փոքր Ասիոյ յոնիական քաղաքները։ Միւս դաշնակցութիւնն որ Պելոպոնէսեան կ'կոչուէր գլուխ ունէր Սպարտան, և դորիական ու եւոլիական մի շատ պետութիւններ կ'պարունակէր։ Աթենք հանրապետական օրինաց ձեռնտու էր, մինչդեռ Սպարտա ամեն տեղ աղնուապետական կուսակցութեանց կ'օգնէր։

Սպարտայի և Աթենքի մէջ հակառակութիւնն այնքան սաստիկ էր որ Պերիկլէսի հաստատած խաղաղութիւնը չէր կրնար երկար ատեն տեւել։ Երկպառակութեան շատ պատճառներ կային Յունաստան, այնպէս որ այս փոքրիկ երկրին մէջ մեծ և սոսկալի քաղաքային պատերազմ պիտի ծագէր. այս եղաւ Պելոպոնէսի պատերազմը։

*Պելոպոնէսի պատերազմին պատճառները.* — Կորընթոս Պելոպոնէսի ամենէն ծաղկած քաղաքն

էր ։ Իր վճռահատութեան եւ ծովային զօրու-
թեան կողմէ՝ Աթենքին նախանձորդն էր, ինչ-
պէս որ էր Սպարտա իր զինուորական զօրու-
թեան համար ։ Կորնթոս ալ մի շատ գաղթա-
կանութիւններ հիմներ էր, որոց մեծ մասն բա-
ւական ծաղկեցան, ինչպէս Սիրակուսա՝ Սիկի-
լիոյ մէջ, Կորկիւրէ՝ Համանուն կղզին մէջ, եւ
Պոտիդէ ։ Նոյն միջոցին Կորնթոսի եւ Կորկիւ-
րէի մէջ վէճ ծագելով՝ այս վերջինն Աթեն-
քէն օգնութիւն խնդրեց ։ Պերիկլէս՝ գուշակե-
լով որ Սպարտայի հետ պիտի զարկի, չուզեց
դաշնակից մը շահելու առիթը ձեռքէ հանել,
քանի որ այս դաշնակիցն խիստ զօրաւոր նաւա-
տորմիղ մ'ունէր, եւ Կորկիւրեցւոց օգնութիւն
ուղարկեց ։

Շատ չանցաւ՝ Աթենացիք իրենց դաշնակիցը՝
Պոտիդէն պաշարեցին որ իրենց դէմ գլուխ քա-
շեր էր ։ Վերջապէս Աթենացիք որ Մեգարայի
դէմ մեծ կռուի մէջ էին, նորա նաւահանգիս-
տը գոցել տուին ։ Կորնթոս եւ Մեգարա, որ
պելոպոնէսեան դաշնակցութեան մէջ էին, Ա-
թենքն ամբաստանեցին որպէս թէ Պերիկլէսի
խաղաղութեան դաշանց դէմ գործեց ։ Ուստի
Պելոպոնէսի ժողովրդոց պատգամաւորներ Սպար-
տա գումարուելով՝ ընդհանուր ժողով մը կազ-
մեցին որ առաջարկեց Աթենացւոց՝ Կորկիւրէ
կղզին թողուլ եւ Պոտիդէի պաշարումը վերցը-
նել ։ Պերիկլէս մերժեց այս առաջարկութիւնը ։

Նոյն միջոցին պատերազմի ուրիշ դրդիչ մ'ալ
ծագեցաւ ։ Թեբացիք՝ Սպարտայի դաշնակից-
ներն՝ մութ գիշեր մը յանկարծ Պլատէա, Ա-

Երկու կողմէն ամեն բան 'ի սուր և 'ի հուր կ'մատնէին. քաղաքներ կ'կործանէին, գերիներ կ'ջարդէին: Աթենացիք Պոտիդէն առնլով՝ բնակիչներն անկից վտարեցին: Քիչ մ'ետք՝ Միտիլէնէի բնակիչներն՝ Սպարտացւոց դրդմամբ՝ իրենց դաշնակից Աթենացւոց դէմ ապստամբեցան, բայց չկրնալով երկար ատեն դիմանալ՝ անձնատուր եղան և հազար հոգի գերի բռնուելով Աթենք տարուեցան ու գլխատուեցան: Ատեանն այնքան կատաղեր էր որ բոլոր Միտիլենէի ժողովուրդը սրէ անցընելու պատուէր տուեր էր, բայց հետևեալ օրը զղջալով՝ այս անօրէն վճիռը ետ առեր էր: Սակայն արդէն նոյն վճիռը տանող նաւն առջի օր ճամբայ ելեր էր, և հետևապէս հակառակ հրամանը տանող նաւն յետին ծայր շուտ հասնիլ պէտք էր՝ որպէս զի նախորդ հրամանին գործադրութիւնն արգիլէ: Արդէն Միտիլենէի հրապարակին վրայ ատեանի վճիռը կարդացուեր էր և քիչ ատենէն պիտի գործադրուէր, երբոր երկրորդ ցուցմունքը նաւահանգիստը մտաւ: Այսպէս բնակիչներն մահուանէ ազատեցան, բայց դարձեալ անտանելի գերութեան դատապարտուեցան: Իսկ Սպարտացիք աւելի անգութ եղան: Պլատէան առնլով երկար պաշարմանէ մ'ետք՝ նորա բոլոր պաշտպաններն սպաննեցին, կիներն ու տղայքը գերի վարեցին և քաղաքը հիմնայատակ ըրին, որու հողը վերջէն Թեբայեցւոց տուին:

Շատ չանցաւ՝ աթենացի Դեմոսթենես զօրապետը Պիլոս կղզին առաւ, որ Մեսսենիայի մէջ նաւահանգիստն էր (Սփակտերիա կղզին դիմացը

զօրքով Նիկիասին օգնելու համար ճամբայ հանեցին։ Դեմոսթենէս ինքն իր գլխուն թշնամեաց վրայ քալեց և յաղթուեցաւ, ինչպէս նաև իր նաւատորմիղը։ Այն ատեն աթենական բանակին բեկորները պաշարումը վերուցին, բայց Գիլիպպոս չթողուց որ խոյս տան և նոցա ետևէն գնալով ստիպեց որ անձնատուր լինին։ Սիրակուսացիք անգթաբար սպաննեցին Նիկիաս ու Դեմոսթենէս զօրապետները։ Զինուորներն ալ խորունկ քարահանքերը նետեցին, ուր անօթի ու թշուառ մեռան։ Մինակ քանի մ'աթենացի զինուորներ յաղթողներուն գութը շարժեցին Եւրիպիդէս անուանի բանաստեղծին տաղերը կարդալով, և իրենց ազատութիւնը ձեռք ձգեցին։

Ալկիբիադէի դարձն ու կրկին աքսորը. — Սիկիլիոյ արշաւանաց ձախող և աղէտալի ելքն Աթենքի մէջ սարսափ ու սուգ պատճառեց։ Ժողովուրդը սկսաւ սաստիկ գանգատիլ այն անձերէն որ զինքն այս պատերազմին ձեռնարկել տուեր էին։ Բայց այս գանգատներն օգուտ չունէին։ Աթենքի դաշնակիցներն այս առթիւ ապստամբեցան, ու Եւբէա, որ քաղաքին համբարանոցն էր, Պելոպոննեսացւոց ձեռքն անցաւ։ Սպարտացիք՝ որ Դեկելիան առնլով՝ նորա մէջ ամրացեր էին, Ատտիկէն անապատ դարձուցին, և Աթենք՝ պաշարէ զուրկ մնալով՝ մեծ վտանգի մէջ կ'գըտնուէր։ Վերջապէս Սպարտա Պարսից թագաւորին հետ միացեր և նորա թողեր էր Ասիոյ յոյները։ Այս ընթացքով Սպարտա կ'մատնէր

Յունաստանն և Կիմոնի դաշնադրութիւնը կը ջնջէր, որ մարական պատերազմաց վերջին փառաւոր արդիւնքն էր։ Բայց Տիսաֆեռն՝ Փոքր Ասիոյ մարզպանն, Սպարտայուց նաւատորմիղ մը խոստացեր էր որպէս զի Աթենքի նաւային զօրութիւնն՝ որ դեռ մեծ էր, բոլորովին կործանեն։

Այսպէս Աթենքի կրած բոլոր ձախորդութիւններն Ալկիբիադին երեսէն էին։ Այս մարդն որ աթենական ճշմարիտ տիպար մ'էր. թեթև բնաւորութեանը կողմէ, Սպարտայի մէջ Սպարտացի եղեր էր և զարմանալի դիւրութեամբ սոյն քաղաքին խստամբեր բարքն ու սովորութիւններն առեր էր։ Սակայն 'ի վերջէ՝ այս ծանր կեանքէն տաղտկանալով՝ իր անկարգ ընթացքն սկսաւ և Լակեդեմոնացիք զինք վռնտեցին։ Այն ատեն Ալկիբիադ՝ Պարսից Տիսաֆեռն կուսակալին քովը փախաւ և յորդորեց զանի որ Սպարտայի չօգնէ այլ թողու որ երկու ժողովուրդներն՝ Աթենացիք և Սպարտացիք՝ կռուելով տկարանան։ Միւս կողմէ մարդ ղրկեց Աթենացւոց բանակն՝ որ Սամոս կղզին կ'գտնուէր՝ որպէս զի իր հայրենեաց հետ հաշտուելու ճամբայ մը գտնէ։ Ալկիբիադ բանակին և նաւատորմին մէջ հին բարեկամներ ունէր որ իրեն համար բարեխօս եղան և աքսորէն դարձը խնդրեցին Աթենքէն։

Նոյն միջոցին այս քաղաքին մէջ ապստամբութիւն մը ծագեցաւ։ Ազնուապետական դասն որ խաղաղութեան կուսակից էր, բոլոր ռամկավարներն՝ իբրև պատճառ պատերազմի՝ կ'ամբաստանէր։ Վերջին աղէտքն յարմար առիթ հա-

մերժելով այդ ազնուապետականներն համրապետական կառավարութիւնը տապալեցին և սակաւապետական իշխանութիւն մը հաստատեցին։ Բայց այս սակաւապետական իշխանութիւնը քիչ տևեց, իր բռնաւորական գործերուն և մանաւանդ խիստ ամօթալի պայմաններով Սպարտացւոց հետ հաշտուելու առաջարկելուն կործանեցաւ։ Աթենական բանակն ազնուապետական դասուն մատնութեանց վրայ սրտմտելով՝ Ալկիբիադը վերադարձուց, որ շատ մը նշանաւոր յաղթութիւններ տարաւ։ Աթենացի ժողովուրդը՝ չափազանց ուրախանալով որ վերջապէս բաղդն իրեն նպաստաւոր կ'դառնայ, Ալկիբիադն աքսորէն կոչեց, և այս յանդուգն զօրապետը վերստին իր բնիկ երկիրն առօք փառօք մտաւ։ Այս եղաւ Ալկիբիադի վերջին փառաւոր վայրկեանը։ Երբոր Ասիա դարձաւ որ պատերազմը շարունակէ, իր տարակայութեան ատեն նաւատորմիղը իր մէկ տեղակալին յանձնեց պատուիրելով՝ որ մինչև գալը պայքարը չսկսի։ Բայց տեղակալն անսաստեց, պատերազմ մղեց, յաղթուեցաւ ու ինքն ալ սպաննուեցաւ։ Աթենացի ժողովուրդը կարծեց թէ Ալկիբիադ նորէն կ'մատնէ զինք և նորէն ձեռքէն զօրաց հրամանատարութիւնն առաւ։ Սակայն Ալկիբիադ երկրորդ անգամ աքսոր գնաց, վերջէն Փոքր Ասիոյ մէջ մեռաւ Պարսիկ կուսակալի մը հրամանին վրայ։



## ԳԼՈՒԽ ԺԴ.

### ԱԹԵՆՔԻ ԱՆԿՈՒՄԷՆ ՄԻՆՉԵՒ ՆԱՀԱՆՋ ԲԻՒՐՈՒՆ։

### (404—401)

Լիսանդր. — Երբոր Աթենք իր մէկ ընտիր զօրավարը կ'կորուսէր, Սպարտա իր զօրաց գլուխը դրաւ հնարագէտ և քաջասիրտ մարդ մը, այս էր Լիսանդր՝ որու համար կ'ըսէին թէ աղուէսի պէս խորամանկ, ու միանգամայն առիւծի պէս քաջ էր։ Ահա այս զօրապետն էր որ Ալկիբիադի տեղակալին վրայ յանկարծ յարձակելով զարկեր յաղթեր էր։ Սակայն Սպարտացիք զինքը քիչ մ'ատեն պաշտօնէն հեռացուցին։ Նոյն միջոցին տասն աթենացի զօրապետներ որ Ալկիբիադի տեղն անցեր էին, Սպարտացւոյ վրայ մեծ նաւային յաղթութիւն մը տարին Արգինուսա (Լեսբոսի մօտ) կղզիին քով։ Բայց նաւամարտէն ետք՝ փոթորիկ մ'ելնելով զօրապետները չկրցան նաւաբեկեալներն ու մեռելները վերցընել, և այս մեծ մեղք կ'համարուէր։ Ուստի ժողովուրդը տաս զօրապետներն ամբաստանեց և մահու դատապարտեց։

Եգոսի նաւամարտը. — Լիսանդր նորէն նաւատորմին հրամանատար կարգուեցաւ։ Նա յաջողեցաւ Պարսից թագաւորին որդին՝ Կրտսերն Կիւրոսը՝ որ Փոքր Ասիոյ կ'հրամայէր, շահիլ որ Սպարտայի

օգնէ ։ Երկու թշնամի նաւատորմիղներն Եղեսպոնտոսի մօտ՝ Եգ… գետին բերանն իրարու հանդիպեցան ։ Աթենացիք որ իրենց վերջին պատերազմին վրայ կ'պարծենային, չորս օր հետզհետէ եկան պատերազմ առաջարկել Լիսանդրի, բայց նա ամեն անգամուն ալ մերժեց ։ Աթենացիք կարծելով որ թշնամին վախէն կը մերժէ կռուելու, անհոգ կեցան, նաւերէն դուրս ելան որ ասդին անդին պաշար փնտռեն ։ Ալկիբիադ որ շրջակայքը կ'գտնուէր՝ շուտ մը Յունաց բանակը գնաց որպէս զի իր հայրենակիցներն յորդորէ որ արթուն մնան ։ Այս յորդորը մտիկ չըրին ։

Հինգերորդ օրը՝ Աթենացիք վերստին գալով առաջարկեցին Լիսանդրի որ պատերազմին. բայց հազիւ թէ քաշուեր և ասդին անդին ցրուեր էին՝ որ Լիսանդր նոցա նաւատորմին վրայ յարձակեցաւ, պարապ նաւերը դրաւեց և խումբ խումբ վազող անզէն զինուորները կոտորեց ։ Այս պատերազմ չեղաւ, այլ սոսկալի ջարդ մը. 3000 աթենացի գերիներ անգթաբար ջարդուեցան ։ Այսպէս Աթենքի վերջին բանակը ջնջուեցաւ ։ Քիչ ատենէն Լիսանդր այս քաղքին առջևը հասաւ իր բոլոր նաւատորմղով և զայն ցամաքէն ու ծովէն պաշարեց ։ Այնուհետև Պիրէոնի մէջ նաւ մ'անգամ չկար, և ոչ զինուոր մը նորա պարիսպները պահպանելու համար ։ Սակայն դարձեալ Աթենքի բնակիչներն դիւցազնաբար կռուելէն ետև՝ ստիպուեցան սովէն անձնատուր լինիլ թշնամեաց ։ Սպարտացիք հիմնայատակ ըրին նորա պարիսպներն յաղթական

երգեր երգելով։ Այս եղաւ Պելոպոնէսի սոսկալի պատերազմին վերջին արարուածը (404)։

**Երեսուն բռնաւորք. Թրասիպուլ.** — Սպարտացիք Աթենքն առնլէն ետև՝ Սոլոնի դրած օրէնքը ջնջեցին և նոր կառավարութիւն մը հաստատեցին, իշխանութիւնը երեսուն իշխանաց յանձնելով։ Այս եղաւ Երեսուն բռնաւորաց կառավարութիւնն, որոց գլուխն էր Կրիտիաս։ Սորա խորհրդով բազմաթիւ մարդիկ սպաննուեցան և սոսկալի անգթութիւններ եղան Աթենքի մէջ, այնպէս որ շատ բնակիչներ քաղքէն խոյս տուին և այլ և այլ տեղեր ապաւէն փնտռեցին։ Վերջապէս Թրասիպուլ աթենացին իր հայրենիքն երեսուն բռնաւորաց ձեռքէն ազատեց։ Մի շատ փախստականներ ժողովեց և Ատտիկէ մտնելով Փիլէ ամրոցին տիրեց։ Հետզհետէ Թրասիպուլի զօրագունդը մեծնալով կարող եղաւ նա Պիրէոնն ալ առնուլ և Աթենքը պաշարել։ Կրիտիաս այս կռուին մէջ մեռաւ։ Երեսուն բռնաւորները ներս մտնելով՝ անձնատուր եղան և մահուան դատապարտուեցան։ Վերջապէս Թրասիպուլ Սոլոնի հին սահմանադրութիւնը հաստատեց, և անյիշաչարութեան հրովարտակ մը հրատարակեց որով Աթենք իր խաղաղութիւնը գտաւ (403)։

**Սոկրատայ մահը.** — Յունաստանի մէջ՝ մոլութիւնն ու նախապաշարմունքն սկսեր էին աւելնալ։ Պելոպոնէսի պատերազմն ժողովրդեան բարքն աւրեր ու ապականեր էր։ Սուտ իմաս-

տուններ, որ սօֆէստ կ'ըսուէին, շատ վնասակար վարդապետութիւններ կ'քարոզէին, որով երիտասարդութեան միտքն ու սիրտը կ'խանգարէին։ Այս սոփեստներն ճշմարտութեան գոյներով մոլորութիւնը ծածկելու արուեստը գիտէին։

Այն ատեն Աթենքի մէջ Սօկրատ անուն ճշմարիտ փիլիսոփայ մը կար, արձանագործի մը (Սօֆրօնիսկօս) որդին, որ ինքզինքն ուսման տալէն առաջ՝ պատերազմի մէջ մտեր ելեր և քաջ զինուոր մ'եղեր էր։ Ճակատամարտի մը մէջ Ալկիբիադի կեանքն ազատեր էր, նոյնպէս Քսենոփոնի։ Սօկրատ ամեն բանէ աւելի ճշմարտութիւնը կ'սիրէր և ամենուն սրտին մէջ կրօնական ու բարոյական զգացում մը դրդուելու կը ջանար, սոփեստներու մոլար կարծիքները ջրելով։ Մի շատ պատանիներ, որոց մէջ հարուստ ընտանեաց զաւակներ կային (Ալկիբիադ, Կրիտիաս) իր դասերը մտիկ ընելու կ'գային։ Աթոռի մը վրայ նստած բարձրէն իր դասերը չէր աւանդեր, այլ ամեն մարդու հետ կ'խօսակցէր. իր տան մէջ՝ իր բարեկամներուն և աշակերտներուն հետ, հրապարակն՝ որ և է մարդու մը հետ։ Երբոր դուրս ելնէր՝ շուտ մը չորս կողմը կ'գումարուէին մարդիկ որպէս զի նորա վիճաբանիլը մտիկ ընեն, և երբեմն պարզ գործաւորի՝ երբեմն սոփեստի մը հետ կ'վիճաբանէր։

Թէպէտև Սօկրատ ուղղակի կռապաշտութեան դէմ չէր խօսեր՝ գռեհիկ պաշտամունքն ալ չէր սիրեր, և իր ժամանակին նախապաշարումները

կ՚անդոսնէր ։ Իրաւ է որ սոփեստներն իր [illegible] խօսքերէն սրտմտեր էին ։ Վերջապէս զինք ամբաստանեցին որպէս թէ Նորահաստատ ռամկապետական իշխանութեան հակառակ էր , և իրեն յանցանք կ՚համարէին մի շատ ազնուական դասէ աշակերտներ ունենալը ։ Իր թշնամիները զինք ամբաստանեցին ըսելով որ կրօնից դէմ կ՚խօսի և անաստուած է ։ Ի վերջէ դատաստանի կանչուեցաւ . անձամբ ժողովրդական ատենի մ՚առջև ելաւ , ինք պաշտպանեց ինքզինք ազնիւ և պարզ ոճով իր ընթացքն արդարացընելու համար ։ Գոռոզաբար ջրեց այն ամբաստանութիւնն որով զինք անկրօն կ՚համարէին , յիշելով Պիւթիայի այն պատգամն որ կ՚ըսէր թէ՝ մարդկան մէջ ամենէն արդարն ու իմաստունն ինքն է , և խնդրեց որ իրեն դէմ եղած ամբաստանութիւնները փաստով հաստատեն ։ Թերևս զինք արձակէին դատաւորները եթէ խօսք տար իր պաշտօնէն ետ կենալու ։ Բայց Սոկրատ յայտնեց թէ չպիտի հնազանդի եթէ զինք բռնի լռութեան դատապարտեն . վասն զի իր ներքին ձայնին հնազանդելու պարտաւոր էր ։ Այս իր վեհ և աներկիւղ ընթացքը ժողովին դժգոհութիւն պատճառեց , ուստի յանցաւոր դատուեցաւ , և պատիժ մ՚որոշելու ելան ։ Ամբաստանները մահուան պատիժն առաջարկեցին ։ Բայց Սոկրատ գոչեց . «Ես , Աթենացիք , կառավարութեան ծախքովը կերակրուելու կ՚դատապարտիմ , վասն զի իմ քաղաքակիցներս առաքինի ընելու համար անդադար աշխատեցայ» ։ Այս գոռոզ պատասխանին վրայ ատեանը բար-

կացաւ։ Ժողովին մեծ մասը մահուան պատիժը վճռեց։ Իր աշակերտներէն մէկ քանին, մանաւանդ Կրիտոն՝ խոյս տալու միջոցներն նմա ցոյց տուին, այլ ընդունայն։ Սոկրատ չուզեց այդ օրինական դատապարտութեան հակառակիլ։ Ամիս մը բանտ մնաց Սոկրատ և այս ամիսն անցուց բարեկամաց հետ հոգւոյ անմահութեան և հանդերձեալ կենաց վրայ խօսելով։ Վերջապէս մահուան օրը հասաւ։ Արևը մարը մտնելու ատեն՝ մոլեխինդ բերին Սոկրատին, որ զայն անվրդով խմեց՝ իր արտասուալից բարեկամաց մէջ և մեռաւ։

Սոկրատ. — Այս իմաստասէրն ինքզինք գիտնական մը չէր համարեր, այլ երբեւ ճշմարտութիւնը փնտռող մարդ մը, խնդրակ մը՝ ինչպէս որ ինք կ'ըսէր։ Նախ այնպէս կ'կեղծէր որ իր խօսակցին գիտութեան վրայ մեծ վստահութիւն ունի և կ'փափաքէր նորա մօտ բան ուսանիլ։ Քանի մը պարզ ու մտացի հարցումներով՝ իր խօսակիցը կ'ստիպէր որ քանի մը սկզբնական ճշմարտութիւններ ընդունի, ապա՝ միշտ խօսակցութիւնը շարունակելով՝ անակնկալ հետևանքներ հանել կ'տար խօսակցին և քիչ քիչ նոր նոր ծանօթութիւններ կ'հաղորդէր։ Այս մեթոդն՝ որու նպատակն է, ճարպիկութեամբ խօսակցութիւնը շարունակելով՝ խօսակիցը մէկ ճշմարտութենէ ուրիշ ճշմարտութեան մը տանիլ, կերպով մը միտքը զըրգռել նոր գաղափարներ ստանալու, Գերմանացւոց եղած է սոկրատեան մեթոդ անուամբ։ Ճշմարտութիւնը ճանչելու համար՝ Սոկրատ իր դեւ անուանած էակին իշխանութիւնն օգնութեան կ'կոչէր։ Այս դեւ կամ ընտանի ոգին պարզապէս իր խղճին կամ բանականութեանը ձայնն էր, որ՝ դժուարին պարագաներու մէջ՝ զինք ուղղելու համար կը հանէր։ Սակայն Սոկրատ Դելփիսի տաճարին ճակատը այս խօսքը կարդացեր էր. Ծանի՛ր զքեզ։ Այս ասածն

16

էր վարդապետութեան հետ եղաւ։ Իր յատուկ հոգին քննելով՝ Արարչին նորա մէջ դրած քանի մը մեծ ճշմարտութիւնները գտնելու յաջողեցաւ, 'ի մասնաւորի՝ միակ Աստուծոյ գոյութիւնը։

Սոկրատ բնաւ գրաւոր գործ մը չթողուց, բայց իր աշակերտներէն երկուքը, Պղատոն փիլիսոփայն և Քսենոփոն զօրավարը՝ իրենց ուսուցչին բնաւորութիւնն ու վարդապետութիւնները նկարագրեցին, մին տրամախօսութեանց մէջ, միւսը յիշատակագրութեանց մէջ։



## ԳԼՈՒԽ ԺԵ.

Նահանջ Բիւրուն — Փոքր Թեբէի տիրապետութիւնը։

(401—382)

Կրտսերն Կիւրոս. — Մարաթոնեան պատերազմէն 'ի վեր՝ Պարսից տէրութիւնն օր ըստ օրէ կը տկարանար։ Արքունեաց մէջ մեծ անկարգութիւններ և գաւառներուն շարունակ ապստամբութիւններ կ'պատահէին։ Այն ատեններուն՝ Կրտսերն Կիւրոս՝ Արտաշէս Ուշեղ եղբայրն գահէն վար ձգել ու ինք նորա տեղ անցնիլ ուզեց։ Ուստի Սարդիկէ քաղաքը բանակ մը կազմեց, որու մէջ 100,000 բարբարոս և 13,000 վարձկան յոյն զինուորներ կային։ Այս բանակն առնլով Պարսկաստանի վրայ քալեց։ Արդէն Փոքր Ասիայէն անցեր և Եփրատի մօտ հասեր էր, երբոր Ար-

տաշէս անհամար զօրօք Կիւրոսի դէմ ելաւ իր թագը պաշտպանելու համար։ Մեծ Ճակատամարտ մը տեղի ունեցաւ ՚ի Կունաքսա, Բաբելոնի մօտ։ Յոյներն ցիր ու ցան ըրին Պարսից զօրքն, Կրտսերն Կիւրոս յաղթութիւնը պիտի տանէր, և արդէն իր Թիկնապահներն իբրև թագաւոր կ՚բարևէին զինք, երբոր իր եղբօրը հանդիպեցաւ խառնուրդին մէջ և նորա ձեռօք սպաննուեցաւ։ Այս լուրն առնլով Կիւրոսի զօրքն սկսաւ փախչիլ, Յոյները միայն կռիւը շարունակեցին և ամեն յարձակում վանելով պատերազմի դաշտին տիրացան, մինչդեռ երկու պարսիկ բանակներն, մին դաշնակից, միւսը թշնամի, ՚ի փախուստ կ՚դառնային։ Կունաքսայի յաղթութեան վրայ Յոյներն մեծ շփոթութեան մէջ մնացին։ Ընդարձակ տէրութեան մը մէջ առանձին մնացեր էին և իրենց թիւը 10,000ի իջեր էր։ Արտաշէս հրաման ղրկեց որ անձնատուր լինին. զօրավարք մերժեցին։ Այն ատեն Տիսափեռն մարզպանն՝ որ Պարսից բանակին հրամանատարն էր, խաբամանկութեամբ յոյն զօրավարները հրաւիրեց որ հաշտութեան վրայ խօսին և ամենքն ալ սպաննել տուաւ։

Նահանջ բիւրոցն. Քսենոփոն. — Այս կատարածն՝ որ ազգաց իրաւանց դէմ էր, Յունաց փոքրիկ բանակին զայրոյթ ու վհատութիւն ազդեց։ Արդէն անձնատուր լինելու վրայ կ՚խորհէին՝ իրենց չորս կողմը գտնուած վտանգներէ վախնալով երբ Քսենոփոն պատմիչն՝ որ զօրաց մէջ կամաւոր զինուոր մ՚էր, յառաջ կ՚անցնի,

Յոյները կ՚քաջալերէ որ աներկիւղ մնան և հայրենիք վերադառնալու պատրաստուին ։ Ուստի ինք բանակին գլուխը կ՚անցնի և իր առաջնորդութեամբ կ՚սկսի այն նշանաւոր վերադարձն որ պատմութեան մէջ Նահանջ Բիւրուն անուամբ կ՚յիշուի ։ Նոյն ինք Քսենոփոն այս նահանջին նկարագիրը մանր գրեց ։

Յոյները Բաբելոնէն մինչև Պոնտոս գնալու համար անծանօթ երկիրներէ և տաժանելի ճամբաներէ անցան՝ ստէպ բնիկներու դէմ կռուելով՝ և շատ անգամ առանց պաշարի ու կրակի մնալով ։ Շատ տառապանք կրեցին, մանաւանդ Հայաստանի ձիւնապատ լեռներու մէջ շատեր ցրտէն մեռան ։ Պարսից զօրավարը՝ Տիսափեռն՝ նոցա ետևէն ընկնելով կ՚հալածէր, բայց տեսնելով որ պիտի չկրնայ նոցա հասնիլ ու կոտորել, ետ դառնալու ստիպուեր էր ։ Յոյնք անդուլ շարունակելով իրենց ճամբան կ՚հասնին բարձր լեռ մ՚ու անկից Սև ծովը կ՚նշմարեն. ամենքը միաբերան կ՚գոչեն «Ծով, ծով» և ցնծութեան աղաղակներ կ՚արձակեն որ իրենց նեղութեանց վերջը հասաւ ։ Քանի մ՚օր եւս քալելէն ետև՝ կ՚մտնեն Տրապիզոն, յոյն գաղթականաց մօտ ատեն մը հիւր կ՚մնան և իրենց ազատումը հռչակելու համար զոհեր կ՚մատուցանեն դից. և հանդէսներ կ՚կատարեն ։ Հայրենիք դառնալու համար նաւ չգտնելով՝ Սև ծովուն եզերքը կ՚բռնեն և իրենց ընթացքը կ՚շարունակեն՝ շատ անգամ շրջակայ բարբարոսներու դէմ մաքառելով ։ Վերջապէս երբ Բիւզանդիոն կ՚հասնին հանգիստ և ապահովութիւն

կ՚ըզտնեն ։ — Այս արշաւանքն ու նահանջը տասն հինգ ամիս տեւեր էին ․ նոյն միջոցին բիւր զօրականներն 1300 մղոն տեղ շրջեր էին , բայց իրենց թիւը գրեթէ 8000ի իջեր էր ։

Ագեսիլաոս ․ — Արտաշէս իր Տիսափեռն մարզպանին հրամայեց որ Փոքր Ասիոյ յոնիական քաղաքները նուաճէ , վասն զի իր եղբօր՝ Կրտսեր Կիւրոսի՝ օգներ էին ։ Սպարտացիք յարմար առիթ մը սեպեցին Պարսից դէմ պատերազմը նորոգելու եւ Ասիոյ վրայ իշխելու , մանաւանդ գիտնալով որ ափ մը վարձկան յոյն զինուորներ մինչեւ Պարսկաստան գացեր եւ յաղթանակաւ դարձեր էին , կ՚յուսային որ պիտի կրնան դիւրաւ իրենց փառասիրութեան հասնիլ ։ Ի սկզբան լակեդեմոնացի զօրքը քանի մ՚աննշան կռիւներ ըրին Պարսից դէմ , վասն զի իրենց նախկին արիութիւնն ու մարզանքը կորուսեր էին , բայց երբ Ագեսիլաոս թագաւորն , որ ճշմարիտ սպարտացի ․ թէպէտ տձեւ մարմնով՝ այլ հանճարեղ զօրավար մ՚էր՝ զօրաց հրամանատար կարգեցաւ , կարգ կանոն մտցուց նոցա մէջ , եւ նշանաւոր յաղթութիւններ տարաւ ։ Սարդիկէի պարսպաց առջեւ՝ Տիսափեռնը հարուածեց եւ այս խեղճ մարզպանը՝ Պարսկաստանէն կանչուելով իր պարտութիւնը քաւեց գլուխը տալով ։ Իսկ Ագեսիլաոս Փոքր Ասիան արշաւելով յառաջ կ՚անցնէր դէպ ՚ի Պարսկաստան , որու տիրելու կ՚յուսար (397) , երբ Սպարտացիք զինք Յունաստան կանչեցին , այն տեղ ծագած խռովութեանց պատճառաւ ։

վարը մեծ համբաւ ստացաւ, քանի մ'անգամ Սպարտացիքը զարկաւ ցրուեց և Պելոպոնէսի ներսերն աւերատակեց։ Սպարտա տեսնելով որ իր ցամաքային գերիշխանութիւնն ալ ձեռքէն պիտի ելնէ՝ Պարսից Թագաւորին որսալու ելաւ. ոչ այնքան Յունաստանի ազատութիւնն ու պատիւը որչափ իր տիրապետութիւնը կ'մտածէր։ Ուստի Անթալկիդաս անուն խորամանկ մարդն Արտաշէս Թագաւորին ուղարկեց որպէս զի նորա և Աթենացւոց մէջ եղած բարեկամութիւնը քակէ։ Արտաշէս՝ որ արդէն ծուռ աչքով կ'նայէր Աթենքի նաւային զօրութեան՝ սպարտացի պատգամաւորին յորդորը յօժարակամ մտիկ ըրաւ և նորա հետ դաշնադրութիւն մը կնքեց։ Այս դաշնադրութեան ուժով, մէկ կողմէ՝ Փոքր Ասիոյ բոլոր յոնիական քաղաքները Պարսից իշխանութեան ներքև պիտի մնային, միւս կողմէ՝ Յունաստանի բոլոր քաղաքներն ազատ և անկախ պիտի լինէին։ Արտաշէս պիտի պատերազմէր այս դաշնադրութեան դէմ ելնողները Սպարտացւոց հետ հարուածել։ Հետևապէս Սպարտայի թշնամիներն ստիպուեցան բռւն զօրութեան առջև գլուխ ծռել։ Աթենք իր իշխանութեան տակ մնացող քաղաքներն ետ դարձուց և Սպարտա թէ՛ ցամաքի և թէ ծովու վրայ իր գերիշխանութիւնը ստացաւ։

Անթալկիդասի դաշնադրութիւնը. — Այս դաշնադրութիւնը Կիմոնի հաստատած դաշանց հակադարձն էր։ Սպարտա Յունաստանը մատնեց, երբոր յանձն առաւ որ մարական պատերազմէն յառաջ եկած օգուտները ջնջուին։ Իրաւ է որ այլ և այլ հելլենական քաղաքներ անկախ

պիտի ըլլային, բայց նիզակակցութիւն մը կազմելու չպիտի կարենային, վասն զի այդ նիզակակցութիւնը կրնար Սպարտայի կամ Պարսից դէմ ապառնալ։ Այսպէս Յոյներն ոչ միայն ներքին ազատութենէ կ'զրկուէին այլ և արտաքին զօրութենէ, այսինքն՝ անհնար պիտի ըլլար իրենց դաշնակցիլ թէ Սպարտայի բռնութեան և թէ Պարսից փառամոլութեան դիմադրելու համար։

Անտալկիդասի դաշնադրութեամբ Պարսից թագաւորն Փոքր Ասիոյ ապահով տէրը կ'դառնար և Սպարտա՝ Յունաստանի դերիշխանութիւնը կ'առնար. վասն զի ոչ Սպարտա և ոչ Պարսից թագաւորը կարող չէին Յունաստանի դէմ մաքառիլ, եթէ նորա քաղաքները նիզակակցէին, մինչդեռ դիւրին էր մէկուն կամ միւսին՝ տիրել զատ զատ ամէն մէկ քաղաքին։

Վերջնական զօրք. — Անտալկիդասի դաշնադրութիւնը միանգամայն մեծ անկման նշան մ'էր։ Յոյները գրեթէ մոռցեր էին որ համասեռ ազգ մը կ'կազմեն, և Պարսկաստան իրենց հասարակ թշնամին էր։ Ներքին անընդհատ կռիւներն հայրենեաց սէրը տկարեր էին և քաղաքացին ալ չէր ուզեր նորա համար իր արիւնը թափել։ Ատեն մը զինուորապէս քաղաքացիներէ կ'բաղկանար բանակը. իսկ Անտալկիդասի դաշնադրութեան ժամանակ գրեթէ բոլորովին վարձկան զինուորներէ կ'բաղկանար, որ հայրենասիրական զգացումէ զուրկ ըլլալով՝ միայն դրամի համար կ'պատերազմէին։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

### Թեբէի առաջնորդութիւնը մինչև Մակեդոնական իշխանութիւնը.

### (382—360)

Թեբէի տիրապետութիւնը. — Սպարտացիք բոլոր Յունաստանի տէր եղեր էին և՝ Անտալկիդասի դաշնադրութեան համեմատ՝ ամեն նիզակակցութիւն, ամեն դաշնակցութիւն կ՚ջնջէին և շատ տեղ ազնուապետական կառավարութիւն կ՚հաստատէին։ Թեբէ քաղաքն ալ իրենց ձեռքին տակ մտաւ։ Օր մ՚որ Թեբացիք Դեմետր դիցուհւոյն տօնը կ՚տօնէին, յանկարծ լակեդեմոնացի բանակ մը հասաւ և Կադմէա միջնաբերդին տիրեց։ Թեբացիք չկրցան դիմադրել և հնազանդեցան։ Բայց մի շատ քաղաքացիներ աւելի լաւ սեպեցին տարագրիլ քան թէ իրենց հայրենեաց ստրկութիւնը տեսնել։ Դրացի ժողովուրդներն՝ որ սաստիկ սրտմտեր էին Սպարտայի այս խորամանկ ընթացքին դէմ, սիրով ընդունեցին այն հայրենասէր տարագիրները։ Սոցա մէջ կը գտնուէր Պելոպիդաս անուն պատանին՝ որ ազնուական և հարուստ գերդաստանի մ՚որդին էր։ Գործունեայ, քաջասիրտ Պելոպիդաս յուսալով որ օրին մէկը Թեբէ իր ազատութիւնը պիտի ձեռք ձգէ՝ բազմաթիւ բարեկամներով Աթենք գնաց և անդ սիրալիր ընդունելութիւն մը գտաւ, ինչպէս որ Թրասիբուլ աթենացին գտեր

էր երբ իր մշտաւոր ընկերներով Թեբէ քաշուեր էր ։

**Պելոպիդաս և Եպամինոնդաս.** — Թեբէի մէջ Պելոպիդաս բարեկամ մ'ունէր՝ Եպամինոնդաս անուանով, որ թէև իրեն պէս հարուստ չէր, բայց իմաստուն, համեստ, արդարասէր մարդ մ'էր և իր քաղաքական և պատերազմական հանճարին համար բոլոր քաղաքացւոց վստահութիւնը կ'վայելէր ։ Պելոպիդաս շատ անգամ իր տարագիր ընկերներուն հետ հայրենեաց թշուառութեան վրայ կ'խօսէր, և օր մ'առաջարկեց նոցա որ երթան Սպարտացիքն անկից վռնտեն ։ Յանդուգն էր այս խորհուրդը. բայց այս մարդիկ՝ թէև սակաւաթիւ՝ հայրենասիրութեան և ազատութեան ոգւով վառուած՝ զայն արիութեամբ 'ի գործ դնելու ելան ։ Ձմեռ ատեն որսորդի պէս ծպտեալ՝ Ճամբայ ընկան և Թեբէ հասան երեկոյին, երբ սպարդացի բռնաւորներն՝ **Փիլլիդաս** Թեբացիին տունը խնջոյքի հրաւիրուած էին ։ Այս Փիլլիդաս Եպամինոնդի հետ՝ արդէն տեղեակ էին Պելոպիդասի ձեռնարկութեան և անհամբեր գալուն կ'սպասէին ։

Պելոպիդաս և իր ընկերներն կանանց հագուստներ կ'հագնին՝ որոց ներքև իրենց զէնքերը պահեր էին, և իմաց կ'տան բռնաւորներուն որ օտար կանայք կ'ուզեն զիրենք տեսնել ։ Այն ինչ ոսք կ'ելնեն այս հիւրերն ընդունելու՝ որ Պելոպիդաս և իր ընկերներն իրենց կանացի հագուստը կ'հանեն, և սուր 'ի ձեռին սպարտացի իշխաններուն վրայ յարձակելով կ'սպաննեն ։ Ե-

տոյ տպաւորիչները Ջահերով քաղաքը կ'թափին՝ բոլոր Թեբացիքն 'ի զէն կ'կոչէն յանուն ազատութեան, մինչդեռ Եպամինոնդ՝ զօրագնդի մը գլուխն անցած՝ մնացած Սպարտացիքը կ'կոտորէ՝ այնպէս որ հազիւ թէ քանի մը հոգի խոյս կ'տան։

Լեւկտրայի ճակատամարտը. — Այնուհետեւ Սպարտացւոց և Թեբացւոց մէջ պատերազմն կ'սկսի։ Աթենացիք այս վերջիններուն կ'օգնեն, Սպարտայէն վրէժ լուծելու համար, վասն զի նա ուզեր էր Պիրէոնի տիրել՝ ինչպէս որ յանկարծակի տիրեր էր Կադմէայի։ Երկու կողմէ կը պատրաստուին։ Եպամինոնդ դաշնակիցներ կը շահի, զօրքը կ'կազմակերպէ, Պելոպիդաս 300 կորովի և արիասիրտ երիտասարդներ կ'ժողվէ և Նուիրական ըսուած գունդը կ'կազմէ, որ հանդիսապէս երդում կ'ընեն մինչեւ 'ի մահ հայրենեաց համար պատերազմիլ։ Այս Նուիրական գնդին զօրավարն էր Պելոպիդաս, մինչդեռ իր բարեկամն Եպամինոնդ Թեբացւոց ամբ. բանակին հրամանատարն էր։ Սպարտացիք իրենց Կղէոմբրոտ թագաւորը Թեբացւոց դէմ կ'ղրկեն։ Երկու կողմէ կատաղօրէն կ'կռուին Լեւկտրայի դաշտին մէջ (Բէօտիա) և Թեբացիք յաղթական կ'ելլեն (371)։ Արդէն Աթենացիք ալ նաւային յաղթութիւն մը տարեր էին Սպարտացւոց դէմ (Նաքսոսի մօտ) և այսպէս թէ ցամաքի և թէ ծովու վրայ Սպարտա իր գերիշխանութիւնը կը կորուսէր։

Սպարտա երբէք այսպիսի պարտութիւն մը

կրած չէր։ Երբ սորա լուրը հասաւ ազգային հանդէս մը կ'կատարէր։ Ագեսիլաս՝ որ արդէն առած վէրքին պատճառաւ՝ Լեւկտրայի ճակատամարտին ներկայ չէր գտնուած, հրամայեց որ հանդէսը շարունակուի. մինչդեռ մեռնողներուն ծնողքն ուրախ զուարթ հրապարակը կ'ելնէին, փախստական զինուորներուն ազգականներն իրենց տուները փակուեցան և սուգ ըրին։

**Եպամինոնդ և Պելոպիդաս Պելոպոնեսի կ'արշաւեն.** — Լեւկտրայի ճակատամարտին վրայ Յունաստանի բոլոր ժողովուրդներն Սպարտայի լուծը թօթափելու համար կ'ապստամբին։ Նոյն իսկ Պելոպոնէսի ժողովուրդները Թեբացւոց կ'միանան։ Արկադիոյ քաղաքներն անգամ՝ որ մինչև այն ատեն բաժնուած էին, և այս երկպառակութեան պատճառաւ միշտ Սպարտայի հպատակ մնացեր էին, միութեան կեդրոն մ'ունենալու համար՝ Մեգալոպոլիսը (մեծ քաղաք) կ'հիմնեն։ Մինչդեռ Ագեսիլաս կ'ջանար ապստամբները զսպելու, Եպամինոնդ ու Պելոպիդաս Պելոպոնէս կ'արշաւեն և մինչև Սպարտայի դուռը կը հասնին։ Այս քաղաքը կ'սարսափի։ Երբէք Լակեդեմոնացի կանայք թշնամի բանակի մը մուխը տեսած չէին։ Այս սպառնալից վտանգին առաջն առնելու համար Ագեսիլաս ամեն բան հոգաց և իր զօրքն այնպէս կարգադրեց որ Եպամինոնդ չհամարձակեցաւ աւելի յառաջ քալել և Սպարտան զարնել, այլ բաւական սեպեց բոլոր Լակոնիան աւերել։ Սակայն Պելոպոնէսէն չելած՝ Եպամինոնդ մեծ անօրէնութիւն մը ըրեց

և Սպարտայի կարեւոր հարուած մը տուաւ. Մեսսենիոյ անկախութիւն տալով և Մեսսինա քաղաքը հիմնելով՝ որպէս զի նոյն երկրին միութեան կեդրոնը լինի (ինչպէս Մեկալոպօլիս Արկատիոյ եղեր էր)։

Այս արշաւանքն երկար քշեր էր. օրէնքը չէր ներեր որ զօրավար մը պայմանեալ ժամանակէն աւելի բանակը վարէ։ Երկու Թեբացի զօրապետներն այս պայմանաժամէն աւելի հրամանատարութիւնը պահեր էին։ Ուստի երբ որ Թեբէ դարձան դատի կոչուեցան։ Եպամինոնդ ժողովրդեան ըսաւ միայն. «Դատապարտեցէք զիս և գերեզմանիս վրայ գրեցէք. Եպամինոնդ մահուան պատիժը կրեց Լակեդեմոնացւոց 'ի Լեւկտրա՝ յաղթելուն, Սպարտան պաշարելուն և Մեսսենիան վերականգնելուն համար»։ Այս պատասխանին վրայ ժողովուրդն ամօթապարտ մնաց և երկու զօրապետներն անպարտ հրատարակեց։

Թեբէի գերիշխանութիւնը. Մանդինէայի ճակատամարտը. — Լեւկտրայի յաղթութեան վրայ Թեբէ Յունաստանի վրայ գերիշխանութիւնը ստացաւ։ Աթենացիք նորա զօրութենէ վախնալով Սպարտայի կողմը դարձան, և երբ ծովու վրայ ալ տկարացան Պարսից օգնութեան դիմեցին։ Այն ատեն Պելոպիդաս Արտաշէս թագաւորին դիմեց և նորա նիզակակցութիւնը խնդրեց։ Արտաշէս Թեբացիքը պաշտպանեց, որ այնուհետև սկսան տարածել Թեսալիոյ և Մակեդոնիոյ վրայ իրենց իշխանութիւնը։ Պելոպիդաս

քանի մ՚անգամ Թեսալիա արշաւեց և Եպամինոնդ Պելոպոնէս։ Առաջինն մեռաւ՝ Թեսալիոյ Փէրէի քաղքին բռնաւորին (Աղէքսանդր) դէմ ըրած մէկ պատերազմին մէջ. իսկ երկրորդը չորրորդ անգամ արշաւեց Պելոպոնէս՝ և Մանդինէայի մօտ սպարտացի և աթենացի զօրաց հանդիպեցաւ, որոց ձեռն Ագեսիլաս կ՚հրամայէր (363)։ Իրարու զարկուեցան թշնամի բանակներն և կռիւը շատ երկար ու արիւնահեղ եղաւ։ Ի վերջէ Թեբացիք յաղթական ելան, թէև Եպամինոնդ կուրծքին ծանր վէրք մ՚առաւ։ Վիրաբոյժներն ըսին որ եթէ սլաքն՝ որ վէրքին մէջ մնացեր էր, հանեն՝ իսկոյն պիտի մեռնի։ Սակայն Եպամինոնդ անհամբեր սպասեց որ իմանայ թէ ո՛ր կողմն յաղթեր էր։ Երբոր եկան ըսին որ իր բանակը յաղթող էր. «Հիմակ կրնամ մեռնիլ» ըսաւ. և սլաքը վէրքէն քաշել տուաւ։ Իր չորս դին գտնուող բարեկամները կ՚ցաւէին որ անզաւակ կ՚մեռնի։ «Մի՛ վշտանաք, ըսաւ, երկու անմահ զաւակներ կը թողում, այս է Լեւկտրայի և Մանտինէայի յաղթութիւնները»։

Եպամինոնդի մահուամբն Թեբացւոց իշխանութիւնն ալ ընկաւ։ Աթենացիք նորէն սկսան ծովու վրայ զօրանալ և քանի մը տարուան մէջ Տիմոթէոս, Քաբրիաս և Իփիկրատ զօրավարներն Եգէեան ծովուն կղզիներուն տիրեցին, և ընկերական պատերազմն սկսաւ։

Ներքին երկպառակութեանց վրայ՝ Յունաստանի թուլացումն. — Յոյներն մարական պատերազմաց մէջ դիւցազնաբար իրենց անկախութեան համար կռուելէն ետև՝

ակներ էին իրարու վրայ տիրապետելու ջանալ. մեծ քաղաքները կ'ուզէին փոքրները նուաճել. Արգոս՝ Արկադիայի մէջ և Թեբէ՝ Բէովտիոյ մէջ իշխել կ'ուզէր, ինչպէս Աթենք՝ Ատտիկէի և Սպարտա՝ Լակոնիոյ մէջ: Հազիւ թէ Մեկալոպօլիս հիմնուեր էր, որ Արկադիոյ միւս քաղաքներուն վրայ տիրելու կ'ջանար: Իրաւ է որ սակայ մ'ըլ և այլ քաղաքներ իրարու հետ միանալով տեսակ մը դաշնակցութիւն կ'կազմէին, բայց դաշնակցական քաղաքն կ'փափաքէր ճշմարիտ մայրաքաղաք մը դառնալ և միւսները հպատակեցընել: Այսպէս Աթենք, Սպարտա, Թեբէ իրենց դաշնակիցներն անտանելի լծի ներքև դնելու յաջողեր էին: Թեբացւոց գլխաւորութիւնն իր երկու նախանձորդ քաղաքաց գլխաւորութեան չափ անիրաւ եղեր էր: Թեբացիք շատ քաղաքներ կործանեցին, 'ի մէջ այլոց Պլատէա, որ հազիւ իր աւերակներէն վերականգներ էր: Այս ներքին երկպառակութիւններն երկար և աղէտալի եղան. սովորական բաներ էին, քանդել, հրդեհել և ջարդելը: Ամեն տեղ ուրիշ բան չէր տեսնուեր այլ կիսակործան քաղաքներ, կիսով ջնջուած ժողովուրդներ: Յունաստան բոլորովին քայքայած էր: Ուստի Աթենքի, Սպարտայի և Թեբէի գերիշխանութենէ ետև չկար քաղաք մ'որ գլուխը կարենար բարձրացընել: Գոնէ այս անզօրութիւնը դաս մը լինէր: Եթէ Յոյներն հասկընային որ պարտաւոր էին իրենց փոխադարձ անկախութիւնը յարգել և հաւասար իրաւունքի վրայ ճշմարիտ դաշնակցութիւն մը կազմել, թերևս այս իրենց վատթար վիճակէն վեր ելնէին և դարձեալ օտարին դէմ դնելու կարող լինէին: Բայց նոքա բնաւ այսպէս չըրին: Տեղական նախանձասիրութիւնն և մանաւոր փառասիրութիւնն հին հակառակութեան ճարակ տուին: Սպարտա Մեսսենիոյ անկախութիւնը չուզեց ճանչել, ոչ Թեբէ՝ Բէովտիոյ, և Աթենք միշտ իր ծովային տիրապետութիւնը պահելու կ'փափաքէր: Յունաց քաղաքներն ալ այս և այն ժողովրդեան գերիշխանութենէ զզուած՝ չուզեցին գլուխ ծռել այն քաղաքաց որ անկարող էին իրենց վրայ բռնանալ:

# ԳԼՈՒԽ ԺԷ.

Մակեդոնական իշխանութիւն — մինչև Քերոնեական պատերազմին վերջը։

(360—336)

Մակեդոնիա. Կարանոս. — Լեռնոտ և անտառուտ երկիր մ'էր Մակեդոնիա Թեսսալիոյ հիւսիսային կողմը։ Քրիստոսէ 796 տարի առաջ Արգոսէն գաղթականներ ելնելով Մակեդոնիոյ կողմերը հաստատուեցան։ Այս թագաւորութեան առաջին հիմնադիրն եղաւ Կարանոս, որու յաջորդներն շրջակայ ժողովրդոց հետ շարունակ պատերազմի մէջ էին։ Պարսիկները տիրեցին Մակեդոնիոյ՝ երբոր Յունաստան արշաւեցին և զայն հարկատու ըրին։ Միայն Պլատէայի ճակատամարտէն ետև՝ Մակեդոնիա իր անկախութիւնը ձեռք ձգեց բայց նշանաւոր դեր մը չխաղաց մինչև Փիլիպպոս թագաւորին ժամանակը։

Փիլիպպոս. — Անգամ մը Պելոպիդաս Մակեդոնիա երթալով՝ որպէս զի այն տեղ ծագած կռիւները դադրեցընէ՝ 'ի դարձին իր հետը բերեր էր իբրև պատանդ Փիլիպպոս անուն մակեդոնացի իշխանազուն մը, որ Եպամինոնդի տան մէջ մնաց։ Փիլիպպոս յունական կրթութիւն ստացաւ և այն հռչակաւոր զօրապետին խնամօք զինուորական արուեստը սորվեցաւ և յունաց

քաղաքականութեան մէջ վարժեցաւ ։ Ի դարձին հայրենիքը՝ Փիլիպպոս Մակեդոնիոյ գահն ելաւ ։ Թէեւ նորահասակ՝ Փիլիպպոս ճարտար, գործունեայ, նենգամիտ էր, եւ իր ուսուցչին՝ Եպամինոնդին պէս՝ մեծ քաղաքագէտ եւ մեծ զօրապետ եղաւ ։ Ինք կազմեց մակեդոնական ֆալանգ ըսուածն, որ տեսակ մը քառակուսի վաշտ մ'էր 1600 հոգիէ բաղկացած, տոկուն վահաններով եւ երկայն նիզակներով զինուած․ իրօք այս գունդն երկաթապատ պատուար մ'էր ։

Փիլիպպոս նախ դրացի բարբարոս ժողովուրդները նուաճեց, եւ Եգեան ծովուն եզերքը գտնուած յոյն քաղաքները մի առ մի իր իշխանութեան ներքեւ առաւ․ ինչպէս, Ամֆիպոլիս, Պոտիդէ, Օլինթոս ։ Այս ծովեզերեայ տեղերը գրաւելէն ետեւ՝ զօրաւոր նաւատորմիղ մը շինեց ։ Երբ Աթենացիք սարսափելով տեսան որ այն ծաղկած քաղաքներն իրենց ձեռքէն ելան, ամէն ճիգ թափեցին որ Մակեդոնիոյ փառասէր թագաւորին խորհուրդներն 'ի դերեւ հանեն, բայց չյաջողեցան ։ Այս յաջողութեանց միջոցին Փիլիպպոս՝ Եպիրոսի թագաւորին դուստրն Ողիմպիան իրեն կին առաւ, որմէ ծնաւ Աղեքսանդր ։ Մի եւ նոյն օրուան մէջ երեք կարեւոր լուր հասաւ Փիլիպպոսին․ պատգամաւոր մը գալով իմացուց իրեն որ Պարմենիոն զօրավարն մեծ յաղթութիւն մը տարեր է Իլլիւրիկեցւոց դէմ․ ուրիշ մը նորա ետեւէն եկաւ ու ըսաւ թէ՝ Ձիերն Ողիմպիական խաղերուն մէջ յաղթեր են․ երրորդ մ'ալ աւետեց թէ՝ Արու զաւակ մ'ունեցեր է ։ Այն ատեն Փիլիպպոս խնդութեամբ

այս իմաստով նամակ մը գրեց Արիստոտել փիլիսոփային. «Աստուածոց շնորհապարտ եմ որ ինծ զաւակ մը պարգևեցին. բայց աւելի շնորհապարտ եմ որ քու կենդանութեանդ ատեն ըրին այս պարգևը: Վասն զի՝ յուսամ որ քու խնամօքդ կրթուելով՝ այս որդիս Մա՛կեդոնիոյ արժանաւոր ժառանգ մը դառնայ»:

Փիլիպպոս Յունաստանի մէջ տիրած երկպառակութիւնները տեսնելով՝ անկից օգուտ քաղելու ելաւ: Իր փառասէր ոգին ծածկելով՝ ամենուն սիրտը չափաւորութեամբ շահելու կ՚ջանար: Որովհետև իր տէրութեան մէջ ոսկիի հանք ունէր, ամեն տեղ կուսակիցներ շահելու և իր նաւատորմիղը զօրացընելու միջոցներ կը գտնէր: Մինչև անգամ Աթենքի մէջ Եսքինէս ճարտասանն իր հայրենիքը կ՚մատնէր Մակեդոնիոյ թագաւորին համար:

Դեմոսթենէս ճարտասանը. — Սակայն Յունաստանի մէջ հայրենասիրական զգացումը բոլորովին մարած չէր, և Փիլիպպոս իրեն արժանի հակառակորդ մը գտաւ, որ էր աթենացի Դեմոսթենէս: Այս մարդն որ Յունաց ամենէն մեծ ճարտասանն եղաւ, ՚ի սկզբան մեծ դժուարութեամբ կ՚խօսէր, թոթով էր, բայց յարատև աշխատութեամբ իր բնական պակասութիւններն ուղղեց: Երբեմն շատ շատ բլրէ մը վեր կ՚ելնէր՝ բարձրաձայն ոտանաւորներ արտասանելով, երբեմն ծովեզրը կ՚կենար՝ բերանը գայլախազներ կ՚լեցընէր որպէս զի լեզուն բացուի և կոհակներուն ձայնին դէմ ինք կ՚մաքառէր: Երբոր

Դեմոսթենէս քաղաքական գործերու մէջ մտաւ։ Մակեդոնիոյ թագաւորին փառասիրութիւնն ամենէն մեծ հոգն եղաւ և հայրենեացն ազատութեան անձանձիր ախոյեան մը դարձաւ։ Քաջ ըմբռնեց Փիլիպպոսի գաղտնի խորհուրդներն և նոցա առաջն առնլու համար իր բոլոր ճարտասանական տաղանդը գործածեց Աթենացւոց եռանդը գրգռելու համար։ Բայց իր վսեմ ճառերն (Փիլիպպեանք, Փիլիպպոսի դէմ, Ողինթեանք, Ողինթոսն ազատելու համար) անզօր եղան խորամանկութեան և զօրութեան յաղթելու, և Փիլիպպոս որ ըստ օրէ իր տէրութիւնն ընդարձակեց դէպ 'ի Թեսսալիա և Եւմէա, և քիչ ատենէն Յունաստանի սահմանները հասաւ։

Մեհենական պատերազմունք. — Յոյներն իրենց ներքին կռիւներով Փիլիպպոսի փառասէր խորհրդոց յաջողութեան պատճառ եղան և նորա առիթ տուին Յունաստանի ներքին գործոց խառնուելով՝ զայն նուաճելու։ Երբ արդէն Մակեդոնիոյ թագաւորին իշխանութիւնը կ'զօրանար, Փոկիսացիք Դելփիսի մեհենին պատկանող նուիրական հողի կտոր մ'առեր մշակեր էին։ Այս գործուածը սրբապղծութիւն մ'էր, վասն զի Ամփիկտիոնի ատեանն (երես 47) օրէնք դրած էր որ ոչ ոք այն հողը ոտք կոխէ։ Ուստի նոյն ատեանը՝ որ Ապողոնի տաճարին շահերը պաշտպանելու պաշտօնն ունէր, Փոկիսացիքը մեծ տուգանք մը վճարելու դատապարտեց, և որովհետև այս տուգանքը վճարելու կ'մերժէին, Թեբացիք այս վճիռը գործադրել տալու ելան.

Այսպէս սկսաւ առաջին Մակեդոնական պատերազմը։ Փոկիսացիք՝ իրենց Փիլոմէլ զօրավարին դրդմամբ՝ զօրք ժողվեցին և Դելփեան տաճարին գանձերը կողոպտելով՝ տասն տարի դէմ կեցան, Սպարտացւոց և Աթենացւոց օգնութեամբն որ Թեբացւոց վրայ կ'նախանձէին։ Այն ատեն այս վերջիններն Փիլիպպոս թագաւորին օգնութիւնը խնդրեցին։ Փիլիպպոս այս առթին կ'սպասէր որ Յունաստան մտնէ, և իրօք՝ Թերմոպիլէէն կ'անցնի․ Փոկիսացիքը կ'զսպէ և Ամփիկտիոնի ատեանին մէջ նոցա ունեցած երկու ձայնն ինք կ'առնէ, ինչպէս նաև այս ժողովին նախագահութիւնը։

Քերոնէայի ճակատամարտը. — Այնուհետև Փիլիպպոս թագաւորն Յոյներն արսալու ջանաց և Թրակիոյ կողմն իր զէնքը դարձուց և անշուշտ Բիւզանդիոնը ալ իւր առնուր եթէ Փոկիոն որ հայրենասէր, և քաջ աթենացի զօրավար մ'էր, զայն չպաշտպանէր։ Երկրորդ Մակեդոնական պատերազմն ծագելով՝ Փիլիպպոս Յունաստանի տիրեց։ Լոկրիացիք ալ Դելփիսի հողերը մշակել ուզելով՝ տուգանքի դատապարտուեցան և վճարելու մերժեցին։ Փիլիպպոս՝ աթենացի Եսքինէս Ճարտասանին առաջարկութեան վրայ՝ Լոկրիացիքը պատժելու կ'երթայ և զայնս կը զսպէ։ Բայց Բէոտիոյ Ելատէ քաղաքն յանկարծակի գրաւելէն ետև՝ Ատտիկէ մտնելու կ'սպառնայ։ Այս գործն իմանալով Աթենացիք կ'զարհուրին և արտորնօք ժողով կ'կազմեն որ վտանգին առաջն առնուն․ բայց սովորական

Ճարտասաններէն և ոչ մէկը կ'իշխէ խօսիլ։ Այն ատեն ամէնքն իրենց աչքը Դեմոսթենէսին վրայ կ'դարձընեն։ Այս անուանի Ճարտասանն ամպիոն կ'ելնէ, իր հայրենակցաց սիրտը կ'բորբոքէ և կ'յորդորէ որ ազատութեան համար վերջին կռիւ մ'ընեն։ Անմիջապէս Աթենք իր բոլոր զօրքը կ'հաւաքէ, Թեբացիք տեսնելով որ իրենք ալ վտանգի մէջ են, Աթենացւոց կ'միանան, և ամէնքը Փիլիպպոս թագաւորին դէմ կ'քալեն, և զանի Քերոնէայի դաշտին վրայ (Բէօվլոխա) կ'գտնեն իր բանակով։ Բայց Աթենացի զինուորները չէին կարող Մակեդոնական ահարկու ֆալանգին դիմադրել, ուստի յաղթուեցան և այսպէս կորուսին Յոյնք իրենց անկախութիւնը Քերոնէայի մէջ (338)։

Փիլիպպոս ընդհանուր սպարապետ. իր մահը. — Այս պատերազմէն ետք՝ Փիլիպպոս Յունաց, մանաւանդ Աթենացւոց հետ անուշութեամբ վարուեցաւ և բաւական համարեց Յունաստանի գերիշխանութիւնը ստանձնել։ Եւ որպէս զի Յունաց սիրտը շահի Կորնթոսի մէջ Ամփիկտիոնեան ժողովը գումարեց և առաջարկեց որ Պարսից դէմ պատերազմը նորոգեն։ Ինքն արդէն Յունաստանի զօրաց սպարապետ կարգուեր էր երբո՛ր իր մէկ անձնապահ զինուորը զինք սպաննեց։ Յունաստան Մակեդոնիոյ լուծէն դրեթէ ազատ մնաց. բայց Փիլիպպոս թագաւորին մահուանէ ետք՝ իր անկախութիւնը չկրցաւ ձեռք ձգել։

# ԳԼՈՒԽ ԺԲ.

## Մեծն Աղեքսանդր — Կեանքը մահը.

## (336—323)

Աղեքսանդր իր հօրը կ'յաջորդէ. — Մակեդոնիոյ Փիլիպպոս թագաւորին յաջորդեց իր որդին Ալեքսանդր, 21 տարեկան պատանի մ'որու դաստիարակն եղեր էր Արիստոտել փիլիսոփայն: Այն ինչ աթոռն ելեր էր որ ամեն տեղ ձայն հանեցին թէ մեռեր էր: Անմիջապէս յոյն ժողովուրդները գլուխ կ'քաշեն. Թեբացիք Մակեդոնացի պահապան զօրաց հրամանատարներն անգամ կ'սպաննեն: Բայց Ալեքսանդր կայծակի պէս Յունաստանի վրայ կ'յարձակի, Թեբէն կ'առնէ և հիմն 'ի վեր կ'տապալէ, բնակիչները կ'ջարդէ կամ կ'ծախէ. յաղթողը միայն տաճարները, Կադմէան և Պինդարոսի տունն անձեռ կ'թողու: Այս սոսկալի գործերն Յունաստանի ահ ու սարսափ կ'ազդեն: Բայց նորատէ թագաւորին զայրոյթը կ'իջնէ, ապստամբաց կը ներէ և՝ իր հօրը պէս՝ կ'խնդրէ որ Պարսից դէմ արշաւեն և զինք զօրաց սպարապետ կարգեն: Կորնթոսի մէջ գումարուած ժողով մ'ուր Յունաստանի ժողովրդոց կողմէ երեսփոխաններ եկեր էին, Ալեքսանդրը դաշնակից զօրաց սպարապետ կ'անուանեն և Պարսկաստան արշաւելու կ'պատրաստուին:

Այն միջոցին Դիոգենէս երեւելի փիլիսոփայն

Կորնթոս կ'գանուէր ։ Ալեքսանդր ուզեց զանի տեսնել ։ Դիոգինէս պատի մը ստորոտը պառկած արեւուն կ'տաքնար ։ Ալեքսանդր հարցուց թէ արդեօք բանի մը կարօտ էր . — Այո , ըսաւ Դիոգինէս , կ'խնդրեմ միայն որ քիչ մը անդին երթաս և արեւս չխափանես» ։ Կ'ըսեն թէ Ալեքսանդր այս մարդուն պարզութեան վրայ զարմանալով՝ իր քովի մարդոց դառնալով ըսեր է . «Եթէ Ալեքսանդր չլինէի , կ'ուզէի Դիոգինէս լինիլ» ։

Ալեքսանդր Ասիա կ'անցնի . — Ալեքսանդր գարնան մէջ իր պատրաստութիւններն ընելով՝ Մակեդոնիոյ կառավարութիւնը Անդիպատրոսի յանձնեց և Ելլեսպոնտոսէն անցաւ 35,000 զօրաց բանակով մը ։ Երբ Տրոյիոյ եզերքը հասաւ՝ հին դիւցազանց յիշատակին համար , մանաւանդ Աքիլլէսի համար , որու հետևիլ կ'փափաքէր , այլ և այլ խաղեր խաղալ տուաւ ։ Անկից քիչ մը հեռու՝ Գրանիկոս գետին քով՝ Պարսից վրայ առաջին յաղթութիւնը տարաւ ։ Քիչ մնաց այս կռուին մէջ պիտի սպաննուէր՝ երբ Պարսից իշխանի մը հետ կ'մենամարտէր , եթէ իր բարեկամը Կլիտոս չհասնէր և արիաբար նորա կեանքը չազատէր ։ Այս յաղթութեան վրայ՝ Ալեքսանդր բոլոր Փոքր Ասիոյ տիրեց և յոյն քաղաքաց մէջ հանրապետութիւն հաստատելով՝ Փռիւգիա և Կիլիկիա անցաւ ու այս երկիրները նուաճեց ։

Գորդեան հանգոյց . — Փռիւգիոյ մէջ՝ Գորդիոն քաղաքը հին կառք մը կար որու ղեկին վրայ

այնպէս ճարպիկութեամբ կապուած հանգոյց մը կ՚գտնուէր որու ծայրերը կարելի չէր տեսնել։ Այս կ՚կոչուէր Գորդեան հանգոյց։ Պատգամ մ՚ելեր էր թէ զայն քակող մարդը բոլոր Ասիոյ պիտի տիրանայ։ Աղեքսանդր փորձ մ՚ըրաւ զայն քակելու՝ ՚ի զուր, և ապա թրովը կտրեց և այսպէս կարծեց թէ պատգամը կատարեց։

Կիլիկիոյ Տարսոն քաղաքը դէպք մը պատահեցաւ որ քիչ մնաց Աղեքսանդրի բաղդը պիտի վճռէր։ Թագաւորը քրտնած Կիւդնոս գետը մտաւ որ լուացուի. պաղ ջրին մէջ յանկարծ տենդային դող մ՚առաւ զինք. կիսամեռ գետէն հանելով՝ վրանը տարին. կեանքը վտանգի մէջ էր։ Այն ատեն իր Փիլիպպոս բժիշկն ըմպելի մը պատրաստեց որ թագաւորը պիտի բուժէր։ Նոյն պահուն Աղեքսանդր իր Պարմենիոն զօրապետէն նամակ մը առաւ, որով կ՚յայտնէր թէ չվստահի բժշկին, որ Պարսից Դարեհ (Գոտոման) թագաւորին ծախուած էր, կ՚ըսէր։ Աղեքսանդր մէկ ձեռքով բժշկին ներկայացուց այն ամբաստանիչ նամակը, մինչդեռ միւսով բաժակն առաւ և անվրդով խմեց դեղը։ Փիլիպպոս ըսաւ թագաւորին այլայլելով. «Տէր իմ, բժշկութիւնդ պիտի արդարացընէ զիս»։ Եւ իրօք Աղեքսանդր քանի մ՚օրէն բոյժ գտաւ, և այսպէս իր կեանքն ազատեց. վասն զի բարեկամութեան վրայ վստահ էր և առաքինութեան վրայ հաւատ ունէր։

Իսոսի ճակատամարտը. Տիւրոսի պաշարումը. — Սակայն Դարեհ ահագին բանակով մը Աղեք-

սանդրի դէմ ելնելու համար Տաւրոս լեռներուն կիրճերը մտաւ և Իսոս քաղաքին մօտ նորա զօրաց ճակատ տուաւ։ Ալեքսանդր յաղթեց (333). Դարեհ խոյս տուաւ՝ իր մայրը, կինն ու զաւակները յաղթողին ձեռքը թողլով, որ շատ մարդասիրութեամբ վարուեցաւ նոցա հետ։ Ալեքսանդր չուզեց հալածել փախստական թշնամին, այլ նախ ծովեզերեայ քաղաքները նուաճեց որպէս զի Դարեհ չկրնայ Յունաստանի հետ հաղորդակցիլ։

Իսոսի ճակատամարտէն ետք՝ Ալեքսանդր Սիրիա մտաւ, Դամասկոս քաղաքը գրաւեց, ուր Դարեհի գանձերը կ'գտնուէին և ապա Փիւնիկէ մտնելով՝ Տիւրոս քաղաքը պաշարեց։ Այս քաղաքը միայն յաղթականին դիմադրելու ելաւ. կղզեկի մը վրայ շինուած լինելով՝ կարծէր թէ անառիկ է։ Ալեքսանդր թումբ մը շինել տուաւ որ կղզեակը ցամաքին միացընէ։ Տիւրացիք 'ի զուր գործաւորները նեղեցին. Թումբը լմնցաւ և այն ատեն քաղաքին պաշարումն սկսաւ. բաբաններն նորա բարձր պատերը փլեցին. 'ի վերջէ քաղաքն առնելով՝ Ալեքսանդր հիմնայատակ ըրաւ։ Այս նշանաւոր պաշարումը եօթն ամիս տևեր էր։

Այնուհետև Ալեքսանդր Պաղեստինէն անցաւ և ուզեց Հրէայքը պատժել որ Պարսից հաւատարիմ մնացեր էին։ Բայց երբ Երուսաղէմ գնաց՝ Յադդոս քահանայապետն հանդիսով զանի դիմաւորեց և նմա ներկայացուց Դանիէլի մարգարէութիւններն որ կ'իմացընէին թէ Պարսից տէրութիւնն օրին մէկը Յունաց մէկ թագաւորին

ձեռօք պիտի կործանէր ։ Աղեքսանդր անկից Եգիպտոս դիմեց և Նեղոսի բերանն Աղեքսանդրիա քաղաքը հիմնեց, որ օրին մէկը Տիւրոսի տեղը պիտի բռնէր և բոլոր Եւրոպայի վաճառականութեան վաճառատեղին պիտի դառնար ։ Աղեքսանդր Լիբիոյ օվասիսն երթալով ուզեց Արամազդայ Ամոնի տաճարը տեսնել ։ Պատգամախօսը յայտնեց թէ այս աստուծոյն որդին է, որով Արևելեան ազգաց առջև մեծ յարգ ստացաւ ։ Եգիպտացիք իբրև ազատարար ընդուներ էին Մակեդոնացի աշխարհակալն, վասն զի մեծ ատելութիւն ունէին Պարսից դէմ որ իրենց կրօնքն ու ազգային զգացումները միշտ նախատեր և արհամարհեր էին ։

Արբելայի ճակատամարտը։ — Եգիպտոսը նուաճելէն ետև՝ Աղեքսանդր Միջերկրականի բոլոր ծովեզրեայ քաղաքաց տէրն եղաւ և Ասիա վերադարձաւ՝ որպէս զի Դարեհի դէմ քալէ ։ Նորէն Սիրիա մտաւ, Եփրատ և Տիգրիս գետերէն անցաւ և Պարսից անհամար բանակն Արբելայի դաշտերուն մէջ գտաւ, որ հին Նինուէ քաղքէն հեռու չէր ։ Այս տեղ երրորդ անգամ յաղթեց Դարեհին, և Պարսից տէրութեան տիրեց, որու մայրաքաղաքներն՝ այս է Բաբելոն, Շօշ, Պերսեպօլիս, Եկբատան, անբաւ գանձերով իր ձեռքն անցաւ ։ Բայց չկրցաւ Դարեհը բռնել որ շարունակ կ'փախչէր ։ Ի վերջէ այս ապարաբաղդ թագաւորն իր մէկ մարզպանէն (Բեսոս) ձեռօք սպաննուեցաւ ։ Աղեքսանդր նորա մահուան վրայ լացաւ, մարդասպանը բռնեց և

Դարեհի ազգականաց յանձնեց, որ սոսկալի տանջանօք զանի սպաննեցին ։

**Աղեքսանդր Հնդկաստան կ'արշաւէ.** — Աղեքսանդր ուզեց նաև Հնդկաստանի տիրել ։ Ուստի Հինդոս գետին հովիտն իջաւ, և նոյն կողմի ժողովուրդները նուաճեց ։ Սակայն Պորոս՝ երկրին ամենէն զօրաւոր թագաւորը՝ չուզեց հնազանդիլ և պատերազմի մէջ գերի ընկաւ ։ Աղեքսանդրի առջև տարին զինք վիրաւոր ։ «Ի՞նչպէս կ'ուզես որ հետդ վարուիմ» հարցուց Աղեքսանդր ։ Պորոս հպարտութեամբ պատասխանեց. «Ինչպէս որ կ'վայլէ վարուիլ թագաւորի մը հետ» ։ Աղեքսանդր նորա մեծասրտութեան վրայ զարմանալով՝ վերստին աթոռը նստեցուց և նորա հետ բարեկամութեան դաշինք դրաւ ։ Յետոյ իր ընթացքը շարունակեց մինչև Հինդոսի արևելեան ծայրը ։ Այս գետէն անցնելով՝ բոլոր Հնդկաստան արշաւել ուզեց, բայց մակեդոնացի զօրքը աւելի յառաջ քալելու մերժեցին, անսաստելով Աղեքսանդրի յորդորանաց ։ Աղեքսանդր ստիպուեցաւ ետ դառնալ՝ Հինդոս գետին եզերքը 12 կոթող կանգնելէն ետև՝ իբրև սահմանագիծ իր արևելեան պետութեան ։ Հնդկային ովկիանոսը հասնելուն՝ իր նաւատորմիղը Նէարքոս ծովակալին յանձնեց որ Պարսից ծովէն Պարսկաստան դառնայ, և ինք ցամաքային զօրաց գլուխն անցած՝ Կրմանի վրայէն Բաբելոն հասաւ ։

**Աղեքսանդրի մեռանիլը.** — Աղեքսանդր 22 տարեկան էր երբ Ելլեսպոնտոսէն անցաւ և 10

տարուան մէջ Պարսից տէրութիւնը նուաճեց։ Իր այս արշաւանաց ատեն՝ ոչ միայն դիւցազնական յաղթութիւններ ցցուց, այլ քաջ զօրապետի տաղանդն և վեհապետի մը հանճարը։ Պատերազմաց մէջ միշտ առաջինն էր յարձակողն և շատ անգամ վէրք ստացաւ։ Զինուորի պէս չարքաշ էր, հետիոտն կ'քալէր, անօթութեան և խոնջէնքի կ'դիմանար։ Օքսոսի անապատին մէջ՝ երկար արշաւէ մ'ետք՝ ծարաւցաւ, բայց չուզեց իր մէկ զօրապետին գտած ջուրը խմել, վասն զի իր զինուորները ծարաւի էին։

Աղեքսանդր ընդարձակ պետութիւն մը հաստատեց որ Եւրոպայի մէջ՝ Հելլենական թերակղզին էր մինչև Դանուբ (Թրակիա, Մակեդոնիա, Իլլիրիկէ, Թեսսալիա, Եպիրոս և Յունաստան). արևմտեան Ասիա՝ մինչև Ինդոս, և վերջապէս Եգիպտոս։ Բաւական չսեպեց Աղեքսանդր զինու զօրութեամբ ժողովուրդները նուաճել, այլ նոցա սիրտը շահեցաւ քաղաքակրթութեան օգուտները սփռելով։ Ամեն տեղ քաղաքներ կ'հիմնէր, որոց շատերն իրեն անունը կ'կրէին և որ վաճառականութեան կեդրոններ դարձան։

Աղեքսանդրի մահը. — Աղեքսանդր նուաճած ժողովրդոց հետ քաղցրութեամբ վարուեցաւ և ջանաց նոցա սիրտը շահիլ։ Կ'փափաքէր որ յոյն և ասիացի մէկ ազգ ընէ. իր հիմնած քաղաքաց մէջ միշտ բնիկներուն հետ յոյները կը խառնէր և նոցա մէջ խնամութիւն կ'հաստատէր. Նոյն ինք Դարեհի մէկ դուստրն (Ստա-

տիրա) իրեն կին ըրաւ։ Մինչեւ անգամ յունական սովորութիւններն ասիական սովորութեանց հետ միացընել ուզեց. ինքն ալ Պարսից պէս կ'ապրէր, կ'հագուէր եւ կ'խօսէր։ Այսպէս յոյն եւ պարսիկ մի եւ նոյն աչքով նայելուն՝ Մակեդոնացիք դժգոհ եղան, վասն զի սոքա կ'պահանջէին որ իբրեւ յաղթող խստութեամբ վարուին Պարսից հետ։ Այս է պատճառն որ բանակին մէջ սաստիկ տրտունջներ կ'լսուէին եւ ապստամբութիւններ կ'պատահէին։ Պարմենիոնի մէկ որդին՝ որ Թագաւորին կենաց դէմ եղած դաւաճանութեան մը տեղեակ էր, Աղեքսանդր քարկոծել տուաւ, վասն զի գիտնալովը երեւան չէր հանած զայն։ Նոյն ինք Պարմենիոն՝ որ Փիլիպպոսի եւ Աղեքսանդրի ամենէն ընտիր զօրավարն էր, իբրեւ դաւակից ամբաստանուելով՝ իր ծերութեան ժամանակ գլխատուեցաւ։

Աղեքսանդր այս յաղթութեանց վրայ շփանալով սկսաւ ասիական պերճութիւն եւ բռնութիւն գործածել։ Անտանելի դարձաւ իր գոռոզութիւնն եւ իր փարթամ կեանքն աննման. կարծէր թէ շատ բարձր է միւս մարդերէն եւ ինքզինք իբրեւ աստուած պաշտել կ'տար։ Այս ընթացքը սաստիկ վիրաւորեց իր հին զինակիցները։ Իր բարեկամաց դէմ անգամ դաժան եղաւ։ Արդէն իր Կլիտոս բարեկամն, որ համարձակեր էր Փիլիպպոսի գործերն իր որդւոյն գործերէն վեր դասել, գինովութեան ժամանակ սպաննեց։ Զղջաց ըրածին վրայ. իր կեանքն 'ի Գրանիկոն ազատող մարդուն մահն սաստիկ վշտացուց սիրտն եւ ուզեց ինքզինքն սպաննել։ Աղեքսանդր

իր կատաղութեան ժամանակ՝ ուրիշ գլուխներ ալ կերաւ (Կալիսթէնէս)։ Իրաւ է որ փառասէր կերպով կատարել տուաւ Եփեստոն բարեկամին թաղումը։ Ինք ալ այնուհետև շատ չապրեցաւ։ Արդէն ինքզինք զեղխութեան և գինեմոլութեան տուեր էր, որպէս զի ժամանակէ մ'ի վեր իր միտքը պաշարող տխուր տեսիլները փարատէ։ Մեծ խնճոյքի մ'ատեն՝ քանի մ'անգամ Հերակլէսի բաժակով գինի խմելէն ետև՝ վրան դող եկաւ և անշունչ գետինն ընկաւ։ Այս անկէն չկրցաւ բժշկուիլ։ Վերջին անգամ զօրքը կը փափաքէր զինք տեսնել։ Լալով եկան նորա ձեռքը պագին։ Աղեքսանդր իր մատնին հանեց և Պերդիկկաս զօրապետին տուաւ։ Հարցուցին իրեն թէ որո՞ւ պիտի թողու տէրութիւնը. — «Ամենէն արժանաւորին, ըսաւ նա. բայց կը վախնամ որ իմ թաղումս արիւնահեղ պիտի լինի»։ Այնուհետև մեռաւ Աղեքսանդր Բաբելոնի մէջ երբ դեռ 33 տարեկան չկար (323)։

## ԳԼՈՒԽ ԺԹ.

### Աղեքսանդրի յաջորդները — Փոքր Ասիական պատերազմները

### (323—280)

Աղեքսանդրի տէրութեան բաժանումը. — Աղեքսանդր մեռնելու ատեն գուշակեր էր որ իր յաւ-

ղարկաւորութիւնն արհամահեց պիտի լինի ։ Իւրաքի՝ իր տէրութիւնը գրեթէ քան հինգ տարի շարունակ խռովութեան մէջ մնաց , որով իր բոլոր ընտանիքը և մի շատ զօրապետները բնաջինջ եղան ։

Աղեքսանդր իր ընդարձակ տէրութեան արժանի ժառանգորդ մը չթողուց ։ Իր մահուանէ քանի մ'ամիս ետք՝ որդի մ'ունեցաւ , և ապուշ եղբայր մը ։ Սոքա միասին թագաւոր անուանեցան ։ Այն ատեն զօրապետներն Աղեքսանդրի տէրութեան այլ և այլ գաւառներն իրենց մէջ բաժնեցին ։ Անտիպատրոս Մակեդոնիան առաւ , Անտիգոն՝ Փոքր Ասիոյ մէկ մասը , Եւմենէս՝ Կապադովկիան , Սելեւկոս՝ Բաբելոն , Պտղոմէոս՝ Եգիպտոս ։ Պերդիկկաս՝ որ Աղեքսանդրի ձեռքէն մատանին առեր էր , բոլոր պետութեան ընդհանուր վարչութիւնն իր վրայ առաւ ։ Բայց զօրապետներն այս բաժանումով գոհ չեղան , ամէն մէկը կ'ուզէր բացարձակ վեհապետ լինիլ . և ամէնքը Պերդիկկասի գերադահութիւնը ճանաչելու մերժեցին ։

Իպսոսի ճակատամարտը . — Ահա այն ատեն այս փառասէր զօրավարաց մէջ պատերազմը ծագեցաւ ։ Երբոր Պերդիկկասի զինուորները զինք սպաննեցին , Անտիպատրոս և Եւմենէս Աղեքսանդրի ընտանեաց իրաւունքն և պետութեան միութիւնը պաշտպանելու ելան ։ Բայց որչափ որ Եւմենէս շատ ճարտարութիւն գործածեց և ստէպ յաղթութիւններ տարաւ , արդիւնք մը չունեցան , և վերջապէս զօրքը Անտիգոնի ձեռքը

մատնեցին զինքն և Անտիգոնի հրամանաւ մահուան դատապարտուեցաւ։ Այն ատեն ողբալական ցեղն անոր ու անօգնական մնաց և հետզհետէ բնաջինջ եղաւ իրեն թշնամեաց ձեռօք։ Բաւական ատեն Անտիգոն և իր Դեմետրիոս որդին, որ Պոլիորկետ (քաղաքառու) կոչուեցաւ, յաջողեցան Ասիոյ մէջ գերիշխանութիւն մը վարել, բայց այս յաջողութիւնն երկար չտեւեց։ Միւս զօրավարներն իրարու հետ նիզակակցելով նոցա դէմ ելան։ Այս նիզակակցութեան գլուխն էին Պտղոմէոս և Սելեւկոս։ Այն ատեն սոսկալի պատերազմ եղաւ։ Անտիգոն և Դեմետրիոս իրենց թագաւոր անուանեցին. իրենց ախոյեաններն ալ նոյնն ըրին։ Վերջապէս Փոքր Ասիոյ Իպսոս քաղաքին մօտ մեծ ճակատամարտ մը մղեցին։ Դաշնակից զօրավարները յաղթեցին։ Անտիգոն սպաննուեցաւ և Դեմետրիոս փախուստ տուաւ։ Այս Իպսոսի ճակատամարտին (301) վրայ Աղեքսանդրի պետութիւնն երկրորդ անգամ վերջնական կերպով բաժնուեցաւ։ Նորա բեկորներէն երեք գլխաւոր տէրութիւն կազմուեցաւ, այսինքն, Սիրիոյ, Եգիպտոսի և Մակեդոնիոյ։

Պտղոմեանք և Սելեւկեանք. — Պտղոմէոս և Սելեւկոս Աղեքսանդրի յաջորդաց մէջ ամենէն յաջող թագաւորներն եղան։ Ամեն մէկը տէրութիւն մը հաստատեց որ երկար ատեն պիտի տեւէր, այս է Պտղոմեանց տէրութիւնը յԵգիպտոս և Սելեւկեանց տէրութիւնն 'ի Սիրիա։ Առաջին թագաւորութեան իշխաններն ամենքը Պտղոմէոս կ'անուանէին, որ իրենց մականունով իրարմէ կ'որոշուէին։ Պտղոմէոս Ա Սոտեր (ազատիչ), Պտղոմէոս Բ

Փիլադէլփոս (եղբայրասէր), Պտղոմէոս Գ Էվէրգէտ (բարերար) և այլն։ Սելևկեանց գալով՝ ոմանք Սելևկոս կոչուեցան, այլք Անտիոքոս։

Եգիպտոս՝ առաջին Պտղոմէոսեանց օրով՝ մեծ յաջողութիւն ստացաւ և նաւային ու զինուորական զօրաւոր թագաւորութիւն մ'եղաւ։ Այն ատեն Աղեքսանդրիա ոչ միայն աշխարհիս վաճառականութեան կեդրոնը դարձաւ, այլ և նոյն ժամանակի մտաւորական զարգացման կեդրոնը։ Պտղոմէոսեանք իրենց արքունիքը կոչեցին գիտունները, գրականութիւնն ու արուեստները քաջալերեցին և թանգարան մը հիմնեցին, տեսակ մը ճեմարան, ուր գիտունները կ'բնակէին և որ հին ատենի ամենէն փառաւոր մատենադարանը կ'պարունակէր. բայց այս գիտուններն արքունի ընտանեաց պէս օտարներ էին Եգիպտոսի համար (յոյնք և հրէայք)։ Ուստի աղեքսանդրեան մշակութիւնն օտար բոյս մ'էր՝ որ ժողովրդեան մէջ արմատ չունէր։ Հետևապէս շատ քիչ փայլեցաւ։ Իրաւ է որ Պտղոմէոսեանց արքունիքն իր ցոփութեան, անբարոյականութեան և անգթութեանց կողմէ այնքան նշանաւոր եղաւ որչափ իր ճոխութեամբ և գրական փառքով։ Անկից յառաջ եկաւ արագ քայքայում մը, որ իրենց հարստութեան և պետութեան կործանմամբը լմնցաւ։

Ի սկզբան Սելևկեանք շատ զօրաւոր եղան։ Իրենց պետութիւնը մինչև Հինդոս կ'տարածուէր։ Քառասունի չափ քաղաքներ հաստատեցին (որոց մէջ կ'գտնուէր Անտիոք Օրոնտէսի վրայ և Սելևկիա Տիգրիսի վրայ), որ բոլոր Արևելքի մէջ յունական քաղաքակրթութիւնը տարածեցին։ Բայց ինչպէս յԵգիպտոս նոյնպէս այս տեղ ցոփ և անզգամ թագաւորներ տիրեցին։ Հարստութեան հիմնադրէն ետք՝ Սելևկոս Նիկատոր (յաղթական) մականուանեալը, Սելևկեանց մէջ ամենէն նշանաւորն եղաւ Մեծն Անտիոքոս, որ Եգիպտոսի Պտղոմէոսեանց և Հռոմայեցւոց դէմ մղած պատերազմներով անուանի հանդիսացաւ։ Այս իրաւ է որ Պտղոմէոսեանք և Սելևկեանք անգութ կռուի մէջ էին և իրարու ձեռքէ յափշտակել կ'ուզէին այնպիսի երկիրներ, որ երկու տէրութիւններ կը

սահմանափակէր (Պաղեստին, Փիւնիկէ և մինչև անգամ Եգիպտոսի ու Եփրատայ մէջ գտնուած երկիրները)։ Սելևկեանց շուայտութիւնն իրենց միապետութեան կործանումը պատճառեց, որոց մէջէն մի շատ պզտիկ քաղաքներ զատուեցան (Պերգամայի Թագաւորութիւնը Փոքր Ասիոյ մէջ, Պարթևաց Թագաւորութիւնը)։

**Յունաստանի պատմութիւնը. Լամիական պատերազմը.** — Յոյները տեսնելով որ՝ Աղեքսանդրի մահուան վրայ՝ իր ընդարձակ պետութիւնը կը բեկանի, պատեհ առիթ սեպեցին Մակեդոնացւոց լուծը թօթուելու։ Արդէն այս աշխարհակալին կենդանութեան ժամանակ՝ Սպարտացիք գլուխ քաշեր էին իրենց Ագիս թագաւորին ներքև։ Բայց չկրցեր էին բան մը ընել, վասն զի Յունաստանի միւս ժողովուրդներն իրենց չօգներ էին, քանի որ իրենք ալ Քերոնէայի ճակատամարտին ժամանակ Աթենացիքն անօգնական թողեր էին։ Ուստի Մակեդոնիոյ կուսակալն՝ Անտիպատրոս՝ Ագիսի դէմ քալելով յաղթեց։ Սակայն երբոր Աղեքսանդրի մահուան լուրը Յունաստան հասաւ՝ ամենքը զէնք առին, ինչպէս նաև Աթենացիք Լեոսթենէսի գլխաւորութեամբ։ Անտիպատրոս ապստամբեալ ժողովրդոց դէմ գնաց և յաղթուեցաւ Լամիա (Թեսալիա) անուն քաղաքին մէջ պաշարուելով։ Բայց այս պատերազմն որ Լամիական կոչուեցաւ, վերջապէս անյաջող դարձաւ Յունաց, որ Կրանոնի մօտ յաղթուեցան։

Աթենացիք ծանր պայմաններով հաշտութիւն ըրին։ Անտիպատրոս Աթէնքի մէջ պահապան զօրք դրաւ, հանրապետական կառավարութիւ-

նը կործանեց, Փոկիոն աթենացւոյն յանձնեց քաղքին պահպանութիւնն և Դեմոսթենէսին գլուխը պահանջեց։ Այս մեծ ճարտասանը Կալաւրիա կղզին փախաւ և Պոսիդոնի տաճարին ապաւէն մը փնտռեց։ Բայց երբ մակեդոնացի զինուորներ գացին տաճարը պաշարեցին՝ Դեմոսթենէս խօսք տուաւ անձնատուր ըլլալու իր կտակը գրելէն ետև։ Այն ատեն գրչին մէջ պահած թոյնն առաւ՝ իր դահիճներուն ըսելով. «Մահը վեհանձն ապաւէն մ'է, նախատինքէ զերծ կ'պահէ մարդս»։ Եւ այսպէս մեռաւ։

Քանի մը տարի ետք՝ հանրապետական դասը սկսաւ զօրանալ Աթենքի մէջ։ Այն ատեն Փոկիոն՝ որ մեծասիրտ մարդ մ'էր և մակեդոնացւոց կուսակից, ամբաստանուեցաւ իբրև բռնասէր։ Ժողովուրդը զինք մահուան դատապարտեց։ Փոկիոն մոլախինդն առաւ և 80 տարեկան մեռաւ։ Մեռնելէն առաջ՝ իր բարեկամները հարցուցին իրեն թէ արդեօք իր որդւոյն պատուէր մ'ունի՞ տալու. «Ըսէք որդւոյս, պատասխանեց այս ծերունի քաղաքացին, որ Աթենացւոց անիրաւութիւնը չյիշէ»։ Այնուհետև Աթենքի մէջ կուսակցութեան ոգին քիչ մը դադարեցաւ. բայց հայրենասիրութիւն, ազատութիւնը վերցան։ Աթենացիք հետզհետէ վատթարացան և իրենց տիրապետող բռնաւորները պաշտելու չափ նուաստացան։

## ԳԼՈՒԽ Ի.

Աքայեան դաշնակցութիւն — մինչև Փիլոպեմէն, Յունաց վերջինն :

(280—183)

Արատոս. — Բոլոր Յունաստան օրէ օր կը կործանէր : Մակեդոնիոյ բռնաւորներ կամ թագաւորներ Յունաց այլ և այլ քաղաքաց տէրեր էին : Սակայն Յունաստանի անկախութիւնը ձեռք ձգելու համար արիասիրտ երիտասարդ մը փորձ փորձեց : Այս էր Արատոս, բնիկ Սիկիոնէ, քսան տարեկան կարիճ մը, որ իր հայրենիքը Մակեդոնացւոց լուծէն ազատելու ելաւ քանի մը փախստականներով : Եւ իրաւի՝ գիշեր մը յանկարծ Սիկիոնի պարսպէն ներս մտաւ, ժողովուրդն ոտք հանեց, Նիկոկլէս բռնաւորին պալատին կրակ տուաւ և քաղքին տէրն եղաւ : Այս քաջութիւնն ընելէն ետև՝ Արատոս ուզեց նաև բոլոր Հայրենի երկիրն Մակեդոնական բռնութենէ ազատել : Այս խորհուրդը յաջողութեամբ կատարելու համար՝ պէտք էր բոլոր յունական քաղաքները միաբանել, մարական պատերազմին ատենուան պէս, օտարականը դուրս վռնտելու համար :

Արդ՝ Աքայիոյ փոքրիկ քաղաքներն 'ի վաղուց միութիւն մը կազմեր էին, որ թէև զօրաւոր չէր, բայց կրնար 'ի հարկին մեծնալ : Տեսակ

մը դաշնակցութիւն էր այս որ կրնար Արատոսի խորհրդին օգնել։ Ուստի Արատոս այս Աքայեան դաշնակցութիւնը քաջալերեց և բոլոր Յունաստանն նորա հետ կապելու ջանաց։ Մի շատ բռնաւորներ վանեց, Կորնթոսն ազատեց Լակեդեմոնացւոց պահապան զօրքէն, շատ քաղաքներ նոյն դաշնակցութեան մէջ մտցուց և մինչև անգամ Աթենքի աջակցութիւնը ստացաւ։

Ետովլիական դաշնակցութիւն. — Նոյն միջոցին Մակեդոնացւոց մէջ ներքին կռիւներ կային այնպէս որ չէին կարող իրենց իշխանութիւնը պաշտպանել ՚ի Յունաստան։ Բայց Աքայեան դաշնակցութիւնն երկու զօրաւոր թշնամի ունէր. մին էր Ետովլիական դաշնակցութիւնը հիւսիսային կողմէն, միւսն էր Սպարտա՝ հարաւային կողմէն։ Ետովլիացիք կոշտ ժողովուրդ մ՚էին և աւազակութեամբ կ՚ապրէին. շարունակ աւազակութիւններ կ՚ընէին, կողոպտելով ցամաքի և ծովու վրայ։ Սոքա ևս դաշնակցութիւն մը կազմեր էին, չէ թէ քաղաքական նպատակի համար, այլ իրենց կողոպուտները պաշտպանելու համար։ Քիչ մ՚ատեն Ետովլիացիք Աքայեցւոց դէմ կռուելէն ետև՝ նոցա հետ միացան։ Ամեն բան կ՚յաջողէր Արատոսի՝ երբոր Սպարտայի նախանձը նորէն վտանգի մէջ դրաւ Յունաստանի վիճակը։

Ագիս. Կլէոմէն. — Մինչդեռ Արատոս Յունաստանը բռնաւորութենէ ազատելու կ՚աշխատէր, Սպարտա ներքին խռովութիւններով կը

տառապէր և վատթար վիճակի մէջ ընկեր էր։ Իր կործանումը մօտալուտ էր՝ երբ Ագիս նորատի թագաւորն աթոռ նստաւ և ջանաց Լիկուրգոսի օրէնքը վերահաստատել։ Ագիս առաջարկեց նաև պարտքերը ջնջել և հողերը վերստին բաժնել։ Հարուստներն այս առաջարկութեան դէմ կեցան և Ագիսը սպաննել տուին։ Քիչ մ'ետք՝ ուրիշ թագաւոր մը Կլէոմէն անուն գահն ելաւ և Ագիսի խորհուրդները կատարելու ձեռնարկեց։ Բայց որպէս զի նախ ժողովրդեան սէրը շահի և այսպէս սկսած բարեկարգութիւնը գլուխ հանէ, Լակեդեմոնացւոց զինուորական փառքն աւելցընելու առիթ մը փնտռեց ու գտաւ։ Որովհետև Սպարտացիք խեթիւ կ'նայէին Աքայեան դաշնակցութեան յառաջ երթալը, Կլէոմէն նորա դէմ գնաց և քանի մ'անգամ Արատոսին յաղթեց։ Այս յաղթութեամբ ժողովրդեան համարումը ստացած՝ Կլէոմէն Սպարտա դարձաւ և Լիկուրգոսի օրէնքը գործադրելու սկսաւ։ Այս յեղափոխութեամբ Սպարտա նոր սիրտ առաւ և Կլէոմէն Պելոպոնէսի գլխաւորութիւնը ձեռք ձգելու համար ամեն ճիգը թափեց։ Այն ատեն Արատոս՝ Կլէոմէնի փառաւոր խորհրդէն վախնալով՝ Մակեդոնացւոց դիմեց և օգնութիւն խնդրեց։ Այսպէս Յունաց աղէտաբեր պառակտումներն առիթ կ'տային օտարին դիմելու։ Սելասիա քաղաքին մօտ (Լակոնիա) մեծ ճակատամարտ մը մղեցին մէկ կողմէ՝ Կլէոմէն, միւս կողմէ՝ Արատոս Մակեդոնացւոց հետ։ Առաջինը յաղթուեցաւ և Եգիպտոս գնաց Պտղոմէոսէն օգնութիւն խնդրելու։ Բայց չկրցաւ

իր Նպատակին հասնիլ և Աղեքսանդրիոյ ժողովուրդն ալ ոտք հանել ուզեց ապստամբութեան պատրուակով. այս բանէն ախմար ժողովուրդ մը չէր կրնար բան մը հասկընալ և անբաղդ Կլէոմէն ինքզինքն սպաննեց որ Պտղոմէոսի զօրաց ձեռքը գերի չմնայ։

Արատոսի մահը. — Արատոս ալ Կլէոմէնին պէս իր կեանքը լմնցուց։ Սելասիոյ Ճակատամարտէն ետք՝ պատերազմ սկսաւ Աքայեցւոց և Ետոլիացւոց մէջ, որ Մակեդոնիոյ տեղ՝ ամէն մէկը կ'ուզէր Յունաստանի վրայ տիրել։ Այս եղաւ երկու դաշնակցութեան պատերազմը։ Աքայեցիք յաղթուեցան և երկրորդ անգամ Մակեդոնացւոց դիմեցին, որոց վրայ այն ատեն Փիլիպպոս Գ. կ'իշխէր։ Բայց Արատոս օտարին դիմելով իր մահը գտաւ, վասն զի, կ'ըսեն թէ՝ Փիլիպպոսին հրամանաւ Արատոսին թոյն տալով սպաննեցին և այս թագաւորը ժամանակ մը Յունաստանի գերիշխանութիւնը վարեց։

Փիլոպեմէն. — Յունաստանի անկախութեան համար ուրիշ մեծ մարդ մը բոլոր Ճիգը թափեց՝ ընդունայն։ Այս էր արկադիացի և Մեկալոպոլսի բնիկ Փիլոպեմէն, որ Եպամինոնդի օրինակին հետևիլ կ'փափաքէր։ Պարզասէր, քաջ զօրավար և ազատութիւն սիրող անձ մ'էր։ Աքայեան բանակին գլուխն անցաւ, զայն կարգաւորեց և Սպարտան ալ այն դաշնակցութեան մէջ մտցուց։ Հռոմայեցիք՝ որ արդէն դէպ 'ի Արևելք իրենց աչքը դարձուցեր էին, չէին ու-

մէջ որ Յունաստան զօրանայ, և նորա դէմ Մեսսենիացիքը գրգռեցին։ Փիլոպէմէն, թէև 78 տարեկան ծերունի մ'էր, Մեսսենիոյ վրայ քալեց, բայց գերի բռնուելով սպաննուեցաւ։ Բոլոր Յունաստան ողբաց այս քաղաքացիին վրայ, և զանի Յունաց վերջինն անուանելով պատուեց։

## ԾՐԱԳԻՐ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

ՅՈՒՆԱՍՏԱՆ. — Բուն Յունաստան շատ սահմանափակ էր. միայն 100 մղոն էր հիւսիսէն հարաւ, և միջին լայնութիւնն 50 մղոնէն աւելի չէր։ Բայց՝ թէև սահմանաւոր՝ Յունաստանի աշխարհագրական դիրքը մեծ առաւելութիւններ ունէր. խորունկ ծովածոցեր, պատսպարան նաւահանգիստներ՝ որ նաւարկութեան շատ յարմար էին։ Հին աշխարհի կեդրոնը գտնուելուն՝ Յունաստան կերպով մը Ասիան և Ափրիկէն Եւրոպայի հետ կը կապէր։ Արդարև՝ արևելեան քաղաքակրթութիւնն իւրացընելէն ետև՝ զարգացուց և Եւրոպայի աւանդեց։

Յունաստանի սահմանն էր, հիւսիսէն Իլլիրիկէ և Մակեդոնիա, հարաւէն՝ Միջերկրական ծով, արևելքէն՝ Եգէան ծով, արևմուտքէն՝ Յոնիական ծով։

Յունաստան երեք մաս կ'բաժնուէր

ա) Հիւսիսակողմը՝ ԹԵՍՍԱԼԻԱ և ԵՊԻՐՈՍ. բ) Կեդրոնը, ԵԼԼԱԴԱ, որ կ'պարունակէր գլխաւորապէս՝ Ատտիկէ, Բէովտիա, Փոկիս, Լոկրիս, Տորիս, Ետոլիա, Ակառնանիա. գ) Հարաւակողմը, ՊԵԼՈՊՈՆԷՍ, որ կ'պարունակէր՝ Արգոլիս, Լակոնիա, Մեսսենիա, Ելիս, Աքայիա և Արկադիա։

Պելոպոնէս (Պելոպսի կղզի) թերակղզի մ'էր որ Եւ-

լադայի կ'միանար Կորնթոսի պարանոցով. Կորնթոս կ'պարունակէր Մեգարա, Կորնթոս և Սիկիոն քաղաքները։

Յունաստանի շուրջը շատ կղզիներ կային։ Ամենէն նշանաւորներն էին. Եւբէա, Սալամին, Եգինէ, Կրետէ, Կիթերա, Կորկիւրա, Լեւկաս, Կիկլադեանք (Դելոս, Նաքսոս, Պարոս և այլն)։

Յունաստանի գլխաւոր ծովածոցն էր Կորնթոսի ծոցը։ Գլխաւոր նեղուցներն էին. Ելլեսպոնտոս (Տարտանէլ) որ Եգէական ծովը Պրոպոնտիդի (Մարմարա) հետ կ'միացընէ, և Թրակիոյ Բոսփորոսն (Կ. Պօլսոյ նեղուց) որ Պրոպոնտիդն Սև ծովու հետ կ'միացընէ։

Գլխաւոր հրուանդաններն էին. Տենարոս (Մադաբան) և Մալէա, Լակոնիոյ հարաւային դին. Սունիոն, Ատտիկէի հարաւ-արևելեան դին. Արտեմիսիոն, Եւբէա կղզիին հիւսիսակողմը։

Գլխաւոր գետերն էին. Հեբրոս (Մարիցա) որ Թրակիայէն կ'անցնի. Պենէոս, որ Թեսսալիայէն կ'անցնի. Կեփիսոս, որ Փոկիսէն կ'անցնի և Կոպայիս լիճը կ'թափի, 'ի Բէովտիա. Ալփէոս, որ Արկադիայէն և Էլիսէն կ'անցնի. Եւրոտաս, որ Լակոնիայէն կ'անցնի։

Գլխաւոր լեռներն էին. Ոլիմպոս, Թեսսալիոյ և Մակեդոնիոյ մէջ. Ոլիմպոսի դիմացը, Օսսա. Էօթա, Թեսսալիոյ հարաւակողմը. Պառնաս՝ Փոկիս. Հելիկոն՝ Բէովտիա. Հիմետ՝ Ատտիկէ. Տայգետ՝ Լակոնիոյ և Մեսսենիոյ մէջ։

Գլխաւոր քաղաքներն էին.

Պելոպոնեսի մէջ՝ Սպարտա, Մեսսենէ, Մանտինէա, Էլիս, Արգոս, Սիկիոն, Կորնթոս, Մեգարա և այլն։

Ելլադայի մէջ՝ Աթէնք և Եղևսիս, Թեբէ, Պլատէա, Լեւկտրա, Թեսպիա, Կորոնէա, Քերոնէա ('ի Բէովտիա) Դելփի։

Թեսսալիոյ մէջ՝ Փարսալա, Փերէս և Լարիսսա. Մակեդոնիոյ մէջ՝ Պիդնա և Թեսաղոնիկէ. Քաղկիդէի մէջ՝ Պոտիդէ և Ողինթոս. Թրակիոյ մէջ՝ Ամփիպոլիս և Բիւզանդիոն. Եւբէայի մէջ՝ Քաղկիս և Երետրիա։

ՅՈՒՆԱՑ ՔԱՂԱՔԱԿԻՐԹՈՒԹԻՒՆԸ. — Ինչպէս որ արդէն տեսանք՝ առեն առեն Եգիպտոսէն և Փիւնիկէէն եկող գաղթականներ Յունաստան բերին արուեստից և գիտութեանց սերմերը. բայց Յոյնք հետզհետէ իրենց գործունէութեամբ ու խելքովը կրօն, արուեստ ու գիտութիւնն այնքան զարգացուցին որ բոլոր արևելեան ազգերը գերազանցեցին, և մանաւանդ գեղականութեան այլ և այլ ճիւղերը գրեթէ կատարելութեան հասուցին.

Կրօն. — Յոյներն շատ աստուածներ ունէին, որ մարդոց պէս առաքինութեանց և մոլութեանց, խելքի ու սկարութեան տէր էին. Մարդկային ամեն կիրք և բնութեան ամեն երևոյթներն աստուածացուցեր էին. հետևապէս անհամար աստուածներ ունէին. — Աւասիկ Յունաց գլխաւոր աստուածները. Սատուռնոս (Կրոնոս) կամ Ժամանակ՝ դից հայրն էր: Իր որդին Արամազդ, երկնից աստուածը, որու գահն Ողիմպոսի լերան վրայ էր, ուր տասն երկու դիք կ'բնակէին. Այս տասն երկու դիք էին, Արամազդէն զատ՝ Հերա, իր կինը. — Պոսիդոն, իր եղբայրը, ծովու աստուածը. իր քոյրերը՝ Դեմետրէ՝ հնձոց դիցուհին, և Վեստա, որ կ'հսկէր ընտանի առաքինութեանց վրայ. — Ապոլոն, բանաստեղծութեան և արուեստից աստուածը, Արամազդայ որդին, ինչպէս նաև Արէս, պատերազմի աստուածը. — Եփեստոս, օգտակար արուեստից աստուածը, և Հերմէս՝ վաճառականութեան և ճարտասանութեան աստուածը. — Աթենաս՝ իմաստութեան դիցուհին, որ Արամազդայ դուստրն էր, ինչպէս նաև Աստղիկ, գեղեցկութեան դիցուհին, Անահիտ, որսորդութեան դիցուհի. — Բաց 'ի այս տասն երկու Ողիմպեան աստուածներէն՝ կային նաև Պլուտոն, դժոխոց թագաւորը, և Արամազդայ ու Պոսիդոնի եղբայրը. Բաքոս, գինիի աստուածը. Ասկլեպիոս՝ բժշկութեան. — Բազմաթիւ էին նաև երկրորդ կարգի աստուածներ, ինչպէս իննը Մուսայք, որ գրականութեան և քանի մ'ուրիշ արուեստից դիցուհիք էին. երեք Պարկայք, որ մարդկան ճակատագրին կ'հսկէին. Յաւերժահարսունք, որ ան-

տուները, գետերը, լիճերը կ'պահպանէին. Նայադք կամ աղբիւրներու յաւերժահարսունք և այլն։ — Ամէն մէկ քաղաք իր պահապան աստուածն ունէր. Աթենքինն էր՝ Աթենաս, Արգոսինն՝ Հերա, Դելփիինն՝ Ապոլլոն, Կիպրոսինն՝ Աստղիկ։ — Յոյնք կ'հաւատային որ հանդերձեալ կեանք մը կայ և պատիժ՝ չարերուն, վարձք՝ արդարներուն համար։ Ստորերկրեայ աշխարհն՝ ուր մեռելոց հոգիները կ'երթային կամ ստուերներն՝ երկու մաս կ'բաժնուէր. Ելիւսեան դաշտ, արդարոց բնակարանը, և Տարտարոս՝ չարերուն բնակարանը։

Դիւցազնաբանութիւն. — Յոյնք անուանի քերթողներ ունեցած են, որոց մէջ ամենէն նշանաւորն է Հոմերոս՝ կոյր վիպասան մը, որ Քրիստոսէ 1000 տարի առաջ ապրած պիտի ըլլայ։ Կ'ըսուի թէ երկու մեծ դիւցազնական քերթուած յօրինած է, Եղիական և Ոդիսական։ Եղիականը կ'հռչակէ Աքիլլէսի բարկութիւնը, Տրոյիոյ պարսպաց ներքև մղուած կռիւներն՝ պատերազմին վերջին յիսուն օրուան մէջ մինչև Հեկտորի թաղումը։ Ոդիսականը կը պատմէ Ոդիսեւսի արկածները Տրոյիոյ առումէն ետք։

Դարեր անցնելէն ետև՝ երբ բանուորներ կ'ուէրէին այլ և այլ քաղաքաց վրայ (երես 72) Յունաստանի մէջ Ռափսոդիստք բանաստեղծներ ելան, և այս անուամբ կ'կոչուէին, վասն զի քնարի ձայնով իրենց քերթուածները կ'երգէին։ Ամենէն ծանօթներն են Պինդարոս, որ կեղօններ և ազգային խաղերու մէջ յաղթողներն երգեց, կին մը Սաֆոյ, և Անակրէոն՝ որ գինին ու զուարճութիւններն երգեց։

Մարական պատերազմներէն ետք՝ և Պերիկլէսի դարուն էր որ յունական գրականութիւնը մեծ փայլ առաւ։ Ողբերգական քերթողներն, ինչպէս՝ Եսքիլէս, Սոփոկլ, Եւրիպիդէս խիստ ընտիր ողբերգութիւններ շինած են։ Արիստոփանէս՝ կատակերգութիւններ յօրինեց որոց մէջ իր ժամանակի մոլութիւնները կ'ծաղրէր. նոյնպէս հեգնեց ատենակալները (Կլէոն) և սոփեստները. Սոկրատ

անգամ չխնայեց՝ զոր սոփեստներուն հետ շփոթեց և զա-նի ժողովրդեան կասկածելի ըրաւ։

Այն ատեն Յունաստան նշանաւոր մատենագիրներ, պատմաբաններ և ատենաբաններ ալ ունեցաւ. ինչպէս՝ Թիւքիդիդէս, որ Աթէնքէն աքսորուած էր՝ Պելոպոնէսի պատերազմին ժամանակ, վասն զի Ամփիպոլիսը Սպարտա-ցւոց դէմ չկրցեր էր պաշտպանել, և այս աքսորման ժա-մանակն անցուց այն պատերազմին պատմութիւնը գրելով։ Իր այս գործն աւարտելու ատեն չունեցաւ, վերջէն Քսե-նոփոն զայն շարունակեց. պատմութիւնը Եպամինոնդասի ժամանակէն մինչև Մանտինէայի ճակատամարտին հաս-ցընելով. Քսենոփոն գրեց նաև Նահանջ Բիւրոցն, զոր ինք առաջնորդեր էր. վերջապէս նա Կիւրոսի դաստիարա-կութեան հեղինակն է. տեսակ մը վէպ է այս, որու մէջ Կիւրոսի դաստիարակութիւնը կ'նկարագրէ։

Արդէն խօսեցանք յոյն անուանի ատենաբաններու վը-րայ, այս է Դեմոսթենէս, ինչպէս նաև սորա նախանձորդ Եսքինէսի վրայ։

Յունաստանի մէջ՝ նշանաւոր իմաստասէրներ ալ ծաղ-կեցան։ Ամենէն հիներուն մէջ՝ յարգանօք կ'յիշուին եօթն իմաստունները (եր. 63) որոց մէջ ամենէն երևելիներն էին Միլետի Թալէսն ու Սոլոնը։ Բայց ամենէն երևելի փի-լիսոփաներն Սոկրատի դպրոցէն ելան։ Պղատոն, որ սորա աշակերտն էր, Պերիպատետիկեանց դպրոցը հիմնեց, հին ա-տենի ամենէն կարևոր փիլիսոփաներն են։ Սակայն պէտք է նաև յիշել Զենոն, որ Ստոյիկեանց դպրոցին հիմնա-դիրն է, և Եպիկուրոս՝ Եպիկուրեանց դպրոցին հիմնա-դիրը։ Առաջինները հռչակաւոր էին իրենց աննկուն բնա-ւորութեամբ, երկրորդները՝ հեշտասիրութեան համար։ Վերջապէս Դիոգինէս՝ որ շնական կ'մականուանուի, բա-ւական համբաւ առաց՝ ամէն երկրային հարստութիւն անգոսնելով։

Արուեստ. — Արուեստներն՝ մանաւանդ ճարտարապե-տութիւնն ու քանդակագործութիւնը՝ Յունաստանի մէջ գրականութեան չափ մշակուեցան։ Իրաւ է որ ճարտա-

քաղաքակրթութեան գործերը՝ Արեւելքի բարթամ մեծութիւնը չունին, բայց այլ և այլ մասերուն կատարելութիւնն ու փայլչութիւնը՝ աննման գեղեցկութիւն կ'ընծայեն տաճարներուն և թատրոններուն։ Տաճարները միշտ շքեղ սիւներով շրջապատուած էին։ Յունական ճարտարապետութիւնն՝ սիւներուն ձեւին և 'ի մասնաւորի խոյակներուն զարդարանքին համեմատ երեք կարգ կ'բաժնուէր. Դորիական կարգ, հոծ և առանց զարդի, Յոնիական կարգ, աւելի թեթեւ և շնորհալի, Կորնթիական կարգն, հարուստ և շատ այլազան զարդերով։

Յունաց քանդակագործութիւնն շատ մասամբ կատարելութեան հասաւ։ Այն հրաշակերտներն՝ որ մնացած են, դեռ եւս շնորհաց և գեղեցկութեան կողմէ իբրև օրինակ կ'սեպուին։ Այս քանդակագործաց մէջ ամենէն անուանին Փիդիաս է։



# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀՌՈՄԱՅԵՑՒՈՑ

---

## ԳԼՈՒԽ ԻԱ.

Իտալիոյ նախնի ժողովուրդք — Մինչև Հռոմուլոս

(796—754 Ք. Ա.)

ԻՏԱԼԻԱ. — Երկար ու նեղ թերակղզի մ՚է Իտալիա՝ որ Միջերկրական ծովուն մէջ կ՚ձգուի. արևելեան դին կ՚գտնուի Ադրիական ծովը, արևմտեան կողմն ունի Տիւրենեան կամ Դոսկանայի ծովը. Հարաւային կողմը՝ Յոնիական ծովը, որով Յունաստանէն կ՚զատուի. իսկ հիւսիսային կողմէ Ալպեան լերանց ահագին շղթայով կ՚շրջապատուի, և մէջ տեղէն կ՚անցնի ուրիշ շղթայ մ՚որ է Ապենինեան լեռը։

Իտալիա երկու որոշ մաս կ՚բաժնուի, ցամաքային մասն՝ դէպ ՚ի հիւսիս (Լոմպարտիա), որ ընդարձակ դաշտավայր մ՚է և մէջէն կ՚անցնի Բօ գետը։ Բուն թերակղզին կամ ստորին մասը, շատ լեռնոտ է։

Նախնի ժողովուրդք. — Իտալիոյ նախնի պատմութիւնը շատ մութ է։ Յունաստանի հին բնակչաց պէս Իտալիոյ ժողովուրդներն ալ ինք-

զինքնին Երկրածին կ'անուանէին ։ Բնիկներն Պե-
լասգեանց սերունդէն էին և Հնդկա-գերմանա-
կան մեծ ցեղէն կ'սերէին ։ Սովորաբար կ'կար-
ծուի թէ այս Պելասգեանք՝ որ Յունաստան ի-
ջեր էին, Իտալիա գալով տարածուեր էին ։

Իտալիոյ նախկին գլխաւոր ժողովուրդներն
էին, Սաբինացիք, Մարսացիք, Սամնիտացիք, Էկուա-
ցիք, Վոլսկացիք և Լատինացիք ։ Այս ժողովուրդ-
ները քիչ շատ բարքով և սովորութեամբ իրա-
րու կ'նմանէին, թէև իրենց մէջ նշանաւոր տար-
բերութիւններ ալ կային ։

Սակայն ատեն ատեն ուրիշ օտար ժողովուրդ-
ներ եկան ու Իտալիոյ քանի մը տեղերը բնակե-
ցան, ինչպէս, Ետրուսկացիք, որ Ետրուրիա ա-
նունը տուին (այսօր Տոսկանա) իրենց հաստա-
տուած երկրին, Օմբրիացիք, Գալլիացիք, Լիգու-
րացիք և այլն ։ Ետրուրացիք՝ Հիւսիսային երկիր-
ներէն գալով՝ Իտալիոյ բնակչաց մէջ արուեստ-
ներն և ճարտարութիւնը ծաղկեցուցին ։ Իրենց
իշխանութիւնն ատեն մը մինչև Պոյի դաշտն ու
Կամպանիա տարածեցին ։ Նոյնպէս Լատինացիք
մեծ ազդեցութիւն ունեցան Իտալիոյ վրայ ։ Յոյ-
ներն ալ շատ գաղթականութիւններ հաստա-
տեցին Հարաւային Իտալիոյ մէջ, որ իրենց ա-
նուամբ Մեծն Յունաստան կոչուեցաւ ։ Տեսակ մը
դաշնակցութիւն կ'կազմէին այլ և այլ քաղաք-
ներէ որոց գլխաւորն էր Ալբա-լա-Լոնկ ։

Նումիտոր և Ամուլիոս. — Աւանդութեամբ կը
պատմուի թէ՝ Տրոյիոյ պատերազմէն ետք՝ Ե-
նէաս անուն տրոյացի զօրապետ մ'իր հայրենի-

քէն ելեր և իր Ասկանիոս որդւոյն հետ Իտալիա գալով՝ Լաւինիոնի մէջ բնակեր է ։ Նոյն երկրին Թագաւորը Լատինոս սիրով ընդուներ է Ենէասն և նորա որդւոյն իր աղջիկը կնութեան տուեր է ։ Իր հօրը մահուանէն ետք՝ Ասկանիոս Ալբա-Լոնկ քաղաքը շիներ և տասն երկու Թագաւորաց ցեղին հիմնադիրն եղեր է ։

Այս Ալբայի Թագաւորներէն մին երկու որդի թողուց, Նումիտոր և Ամուլիոս՝ որ խօսքը մէկ կ՚ընեն տարուէ տարի կարգաւ իշխելու ։ Բայց Ամուլիոս՝ թէև կրտսերն էր, Թագը յափշտակեց և իր եղբօրը միայն քիչ մը կալուած տուաւ ։ Նոյն միջոցին Նումիտորի որդին մեռցուց և նորա դուստրն ալ՝ Ռէա Սիլվիա՝ Վեստայի կուսանաց քովը դրաւ ։ Այսպէս կը կոչուէին Վեստայի քրմուհիներն որ այս դիցուհւոյն տաճարին մէջ նուիրական հուրը գիշեր ցերեկ անշէջ պահելու պաշտօնն ունէին ։ Այն որ այդ կրակը մարելու կ՚թողուր՝ ողջ ողջ կ՚թաղուէր ։ Այս Վեստեան կուսանք շատ մեծ պատիւներ կը վայելէին ։ Եթէ իրենցմէ մին դիպուածով մահապարտ յանցաւորի մը հանդիպէր, կարող էր նորա կեանքն ազատել ։

Որովհետև Վեստեանք չէին կրնար կարգուիլ, Ամուլիոս այնպէս կ՚կարծէր թէ իր եղբայրն ոչ ժառանգորդ պիտի ունենայ և ոչ վրիժառու ։ Բայց՝ Հռոմայեցւոց առասպելական աւանդութիւնները կ՚ըսեն թէ՝ Արէս պատերազմի աստուածն առևանգեց Ռէա Սիլվիան և հետը գաղտնի կարգուեցաւ ։ Ռէա Սիլվիա երկու երկւորեակ որդի ծնաւ ։ Այս լսելով՝ Ամուլիոս

կատղեցաւ և հրամայեց որ երկու նորածին մանկիկները Տիբեր գետը նետեն։ Սակայն նոյն միջոցին գետը յորդելով՝ դաշտերը ծածկեր էր, մանկիկներն օրօրոցի մը մէջ դրին և ծանծաղուտ տեղ մը ձգեցին։ Ջրերն առին օրօրոցն ու մինչև Պաղատին լեռը վայրի թզենիի մը տակ քշեցին։ Կ՚ըսեն թէ էգ գայլ մը տղոց աղաղակները լսելով՝ լեռնէն վար իջեր և այս մանկիկները սնուցեր է։

Վերջէն Թագաւորին մէկ հովիւն այս հրաշքը տեսեր, տղոց վրայ գթացեր և առեր իր կնոջը բերեր է։ Այս երկուորեակները Հռոմուլոս և Հռեմոս կոչուեցան։ Իրենց մանկական օրերն հովիւներուն հետ անցուցին և երբ մեծցան քաջարի ու կորովի երիտասարդներ դարձան։ Ու որսորդութիւն երբեմն ալ աւազակութիւն ընելով իրենց ընկերներու վրայ իշխանութիւն ստացան։ Օրին մէկն երկու եղբայրներ Նումիտորի հովիւներուն հետ կռուի բռնուեցան Աւենտինին լեռին վրայ։ Նումիտորի պահապանները յաջողեցան Հռեմոսը ձերբակալ ընել և Թագաւորին առջևը տանիլ։

Երբոր Հռոմուլոս իմացաւ որ իր եղբայրը գերի ինկեր է և թէ ինք Ռէա Սիլվիայի որդին է, սաստիկ զայրոյթ զգաց և միտքը դրաւ վրէժ լուծել։ Ուստի իր ընկերները ժողվեց, խումբ մը կազմելով Ալբա քաղաքին վրայ քալեց և Ամուլիոսը սպաննեց։ Յետոյ իր պապը՝ Նումիտորն՝ որ քառասուն տարիէ ՚ի վեր բանտն էր, ազատեց և հրաման խնդրեց որ իր եղբօր Հռեմոսի հետ իրենց մեծցած տեղը քաղաք մը

Հիմնեն, այսինքն Պաղատին լեռին վրայ. Նումիտոր հրաման տուաւ, բայց՝ երբոր քաղաքը չինեցին՝ երկու եղբարց մէջ վէճ մը ծագեցաւ թէ ո՞վ պիտի տիրէ առաջ նոյն քաղքին վրայ։ Նումիտոր յորդորեց որ թռչնոց թռիչէն իմանան աստուածոց կամքը։ Այն ատեն Հռոմուլոս Պաղատին լեռն ելաւ և Հռեմոս Ավանտին լեռը։ Նախ Հռեմոս վեց անգղ տեսաւ, ապա Հռոմուլոս տասն երկու հատ տեսնելուն՝ իրենց ընկերներուն ըսին թէ դիք Հռոմուլոսի կողմը կը բռնեն և այս պատճառաւ նորաշէն քաղաքն իր անուամբը Հռոմ կոչուեցաւ։ Այնուհետև Հռոմուլոս քաղքին բոլորտիքը պարիսպ մը քաշել տուաւ։ Հռեմոս ծաղրելով պարսպին վրայէն ցատկեց քաղաքը մտաւ։ Հռոմուլոս կատղելով իր եղբօրը վրայ ընկաւ և զանի սպաննեց ըսելով. «Այսպէս պիտի մեռնի ով որ իմ նոր քաղքիս պարիսպներուն վրայէն անցնելու յանդգնի»։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Հռոմուլոսէն մինչև Տարքուին գոռոզ։

### (754—534)

Հռոմուլոս. — Նորաշէն քաղքին բնակիչներն աւելցընելու համար՝ Հռոմուլոս հրաման հանեց

կատղեցաւ և հրամայեց որ երկու նորածին մանկիկները Տիբեր գետը նետեն։ Սակայն նոյն միջոցին գետը յորդելով՝ դաշտերը ծածկեր էր, մանկիկներն օրօրոցի մը մէջ դրին և ծանծաղուտ տեղ մը ձգեցին։ Ջրերն առին օրօրոցն ու մինչև Պալատին լեռը վայրի թզենիի մը տակ քշեցին։ Կ'ըսեն թէ էգ գայլ մը տղոց աղաղակները լսելով՝ լեռնէն վար իջեր և այս մանկիկները սնուցեր է։

Վերջէն թագաւորին մէկ հովիւն այս հրաշքը տեսեր, տղոց վրայ գթացեր և առեր իր կնոջը բերեր է։ Այս երկուորեակները Հռոմուլոս և Հռեմոս կոչուեցան։ Իրենց մանկական օրերն հովիւներուն հետ անցուցին և երբ մեծցան քաջասիրտ ու կորովի երիտասարդներ դարձան, ու որսորդութիւն երբեմն ալ աւազակութիւն ընելով իրենց ընկերներու վրայ իշխանութիւն ստացան։ Օրին մէկն երկու եղբայրներ Նումիտորի հովիւներուն հետ կռուի բռնուեցան Աւենտինի լեռին վրայ։ Նումիտորի պահապանները յաջողեցան Հռեմոսը ձերբակալ ընել և թագաւորին առջևը տանիլ։

Երբոր Հռոմուլոս իմացաւ որ իր եղբայրը գերի ինկեր է և թէ ինք Ռէա Սիլվիայի որդին է, սաստիկ զայրոյթ զգաց և միտքը դրաւ վրէժ լուծել։ Ուստի իր ընկերները ժողվեց, խումբ մը կազմելով Ալբա քաղաքին վրայ քալեց և Ամուլիոսը սպաննեց։ Յետոյ իր պապը՝ Նումիտորն՝ որ քառասուն տարիէ 'ի վեր բանտն էր, ազատեց և հրաման խնդրեց որ իր եղբօր Հռեմոսի հետ իրենց մեծցած տեղը քաղաք մը

Տիճինէն, այսինքն Պալատին լեռնին վրայ։ Նումիտոր Հրաման տուաւ, բայց՝ երբոր քաղաքը շինեցին՝ երկու եղբարց մէջ վէճ մը ծագեցաւ թէ ով պիտի տիրէ առաջ նոյն քաղքին վրայ։ Նումիտոր յորդորեց որ թռչնոց թռիչէն իմանան աստուածոց կամքը։ Այն ատեն Հռոմուլոս Պալատին լեռն ելաւ և Հռեմոս Ավանտին լեռը։ Նախ Հռեմոս վեց անգղ տեսաւ, այս Հռոմուլոս տասն երկու։ Հաս տեսնելուն՝ իրենց ընկերներն ըսին թէ պէտք Հռոմուլոսի կողմը կը բռնեն և այս պատճառաւ նորաշէն քաղաքն իր անուամբը Հռոմ կոչուեցաւ։ Այնուհետև Հռոմուլոս քաղքին բոլորտիքը պարիսպ մը քաշել տուաւ։ Հռեմոս ծաղրելով պարսպին վրայէն ցատկեց քաղաքը մտաւ։ Հռոմուլոս կատղելով իր եղբօրը վրայ ընկաւ և զանի սպաննեց ըսելով. «Այսպէս պիտի մեռնի ով որ իմ նոր քաղքիս պարիսպներուն վրայէն անցնելու յանդգնի»։

---

## ԳԼՈՒԽ ԻԲ.

Հռոմուլոսին մինչև Տարկին գոռոզ։

(754—534)

Հռոմուլոս. — Նորաշէն քաղքին բնակիչներն աւելցընելու համար՝ Հռոմուլոս Հրաման հանեց

Թէ ով որ կամի կարող է գալ Հռոմ բնակիլ ազատօրէն։ Ուստի շատ տեղերէ գողեր, մարդասպաններ, պարտատէրներ, փախստական գերիներ եկան և Հռոմի մէջ պատսպարան մը գտան։ Բայց որովհետև այս եկողներն անկին էին, Հռոմուլոս մօտակայ ժողովրդոց դեսպաններ ղրկեց և խնդրեց որ խնամութիւն ընեն իր քաղաքացիներուն հետ։ Ամէն տեղ իր դեսպաններն անարգուեցան և իր առաջարկութիւնն անընդունելի եղաւ։ Հռոմուլոս իր բարկութիւնը զսպեց և ինչ որ բռնութեամբ չէր կրնար ձեռք ձգել միտքը դրաւ նենգութեամբ ստանալ։ Հրամայեց որ Կոնսոս կռուքին տօնը հանդիսաւորա կատարուի Հռոմի մէջ։ Դրացի ժողովուրդները՝ մանաւանդ Սաբինացիք՝ խմբովին այս հռչակաւոր հանդէսը տեսնելու համար Հռոմ եկան։ Յանկարծ՝ նշան մը տրուելուն՝ Հռոմայեցիք յարձակելով օտար աղջիկները յափշտակեցին և գերի պահեցին։ Այն ատեն Սաբինացի ծնողք զայրանալով այս նախատանաց վրայ՝ Հռոմէն դուրս ելան և վրէժ լուծելու համար պատերազմի պատրաստուեցան։

Եւ իրաւի՝ քիչ ատենէն Սաբինացիք եկան Կապիտոլինի բերդն՝ որ Պալատինի մօտ էր։ պաշարեցին։ Բերդապահին աղջիկը՝ Տարպէա՝ օր մը վար կ՚իջնէ ջուր բերելու համար, և թշնամիներէն կ՚բռնուի։ Սաբինացիք ստիպեցին որ բերդին դուռը բանայ, Տարպէա յանձն առաւ՝ այս պայմանաւ որ իրենց ձախ թևն ունեցածն իրեն տան, այսինքն ոսկի ապարանջանները։ Բայց Սաբինացիք նոյն թևին վրայ վահանները

ալ կ'կրէին ։ Ուստի բերդը մտնելու ատեն Թշնամիներն իրենց վահանները Տարպէյայի վրայ նետեցին և զէնք մատուցին ։ Հռոմուլոս իր զօրքովը հասաւ, և նոյն տեղը սաստիկ պատերազմ եղաւ ։ Յաղթութիւնն անորոշ կ'մնար, երբ սաբինացի կիներ, որ Հռոմայեցւոց կողակիցներն եղեր էին, իրենց ծնողաց և ամուսիններուն մէջ ընկան և ստիպեցին որ այս արիւնահեղ կռիւը դադրեցընեն ։

Այն ատեն պատերազմողներուն կատաղութիւնն իջաւ ։ Երկու կողմը հաշտութիւն ըրին ։ Մի շատ Սաբինացիք եկան Հռոմ հաստատուեցան և իրենց Տատիոս Թագաւորը Հռոմուլոսի հետ զաշինք դրաւ որ միասին Թագաւորեն Հռոմի մէջ ։ Բայց Տատիոս երկար ժամանակ չապրեցաւ ։ Յետոյ Հռոմուլոս ալ հրաշալի կերպով մ'աներևոյթ եղաւ իր զօրաց հանդէսն ընելու ատեն ։ Կ'կարծուի թէ ծերակոյտի անդամները զինք սպաննեցին ։

Հռոմ. — Ի սկզբան Հռոմ անշուք աւան մ'ու անկանոն գիւղ մ'էր, որուն բնակիչներն արտորէից բերքով կ'ապրէին ։ Եօթ բլուր վրայ շինուած էր Հռոմ, որ Տիբեր գետին ձախ եզերքին վրայ էին ։ Կեդրոնը կ'գտնուէր Պալատին լեռը, և սորա բոլորտիքը՝ Կապիտոլիոն, Կուիրինալ, Վիմինալ, Էսկիլին, Կելիոս և Աւենտին ։ Կապիտոլիոնի այն մասն որուն վրայ Տարպէա Սաբինացւոց ձեռքը սպաննուեր էր, Տարպէեան ժայռ կոչուեցաւ. վերջէն Հռոմ քաղաքը Տիբեր գետին ձախ եզերքին վրայ տարածուեցաւ և ուրիշ երկու բլուրներ ալ իր մէջն առաւ, այս է Յանիկուլոն և Վատիկան ։ Տիբեր գետակ մ'է դեղնակակ ջրերով և ինքնին նշանակութեան արժանի բան մը չունի ։

**ՀՌՈՄԻ ԵՕԹԸ ԹԱԳԱՒՈՐՆԵՐԸ**. Նումա Պոմպիլիոս. — Հռոմ եօթը թագաւոր ունեցաւ։ Առաջինն էր Հռոմուլոս, որու մահուան վրայ Սաբինացի ու Հռոմայեցի երկու ժողովրդոց մէջ կռիւ ծագեցաւ այնպէս որ անմիջապէս չկրցան Հռոմուլոսի յաջորդ մը գտնել։ Ուստի տարի մ'աթոռը պարապ մնաց, այս միջոցն անիշխանութեան միջոց կոչեցին, և ծերակոյտը կառավարեց երկիրը։

Տարի մ'անցնելէն ետև՝ որոշեցին որ Հռոմայեցիք ընտրեն թագաւոր մը, բայց այս թագաւորը Սաբինացի մը լինի։ Ժողովուրդը Տատիոսի փեսան՝ Նումա Պոմպիլիոսը թագաւոր կարգեց։ Այս մարդն մեծ համբաւ ունէր իր իմաստութեան և բարեպաշտութեանը կողմէ՝ գիւղը կ'բնակէր, հանդարտ ու խաղաղ կեանք մը կը վարէր և իմաստութեամբ կ'պարապէր։ Երկու ծերակոյտի անդամներ եկան Նումայի տունն արքունական թագը։ Նումա նախ մերժեց։ Դեսպաններն նորա ոտքը կ'իյնան և կ'պաղատին որ ընդունի։ Նումա վերջապէս յանձն առաւ, երբ որ իր ծերունի հայրն յորդորեց զինքն ըսելով որ պարտաւոր էր ժողովրդեան ձայնին հնազանդիլ։

Այսպէս Նումա Պոմպիլիոս Հռոմի երկրորդ թագաւորն եղաւ։ Չափազանց խաղաղասէր և կրօնասէր մարդ մ'էր։ Ուստի ամենէն առաջ իր ժողովրդեան վայրագ բարքը մեղմացընելու ջանաց և այլ և այլ կրօնական արարողութիւններ հաստատեց։ Կ'ըսեն թէ Նումա Եգէրիա դիցուհւոյն խորհրդովը կ'կարգադրէր ամեն բան։

Բազմաթիւ տաճարներ կանգնեց, որոց մէջ էր և Յանուսի մեհեանն։ Այս Յանուսն երկու դէմք ունէր. մին դէպ 'ի անցեալ դարձած՝ միւսը դէպ 'ի ապագայն։ Նորա մեհեանն խաղաղութեան ժամանակ գոց կ'մնար, իսկ պատերազմի ատեն բաց էր։ Նումայի իշխանութեան օրովը բոլորովին գոց մնաց։ Նումա Սահմանաց աստուծոյն համար ալ տաճար մը շինել տուաւ, որ սեպհականութեան պաշտպան էր, նոյնպէս քրմական զանազան կարգեր հաստատեց, մասնաւորապէս Աւգուրներն, որոց պաշտօնն էր դից կամքն իմանալ՝ բնութեան երևոյթներէն գուշակութիւններ հանելով (ինչպէս փայլակներէն, որոտումներէն, թռչուններուն թռիչէն և նուիրական հաւերուն կերակուր ուտելէն և այլն)։

Տուլլոս Օստիլիոս. — Այս եղաւ Հռոմի երրորդ թագաւորը։ Նա պատերազմ կ'սիրէր որչափ որ Նումա խաղաղութեան կուսակից էր։ Իր առաջին կռիւն Ալբա քաղաքին հետ եղաւ, որ Հռոմի գլխաւոր քաղաքն էր։ Արդէն երկու կողմէն ճակատ կազմեր էին և պատերազմի պիտի սկսէին՝ երբ Ալբայեցւոց գլխաւորը Մեթիոս առաջարկեց որ՝ արիւնահեղութեան առաջն առնելու համար՝ գործը մենամարտութեամբ կարգադրեն։ Հռոմայեցիք Որատիոս անուամբ երեք եղբայրներն ընտրեցին իբրև մենամարտիկ, իսկ Ալբայեցիք՝ Կուրիատիոս անուն երեք եղբայրները։ Այս վեց կտրիճներն անուանի էին իրենց արիութեամբ և ուժովը։ Եթէ Որատիոսեանք յաղթական ելնէին, Ալբա քաղաքին Հռոմ պիտի տի-

ըէր, եթէ պարտուէին՝ Հռոմ Ալբային պիտի հնազանդէր։ Այս մենամարտութեան մէջ՝ երկու Որատեանք առաջ սպաննուեցան և միայն մէկը մնաց կենդանի և անվնաս. բայց երեք Կուրատեանք վիրաւորուեր էին։ Նոյն միջոցին բոլոր ժողովուրդը կարծեց թէ այս վերջիններս յաղթող եղան, երբ Որատիոս փախչիլ ձեւացուց. սակայն երեք Կուրատեանք Որատիոսի ետեւէն իյնալով՝ իրարմէ կ՚հեռանան։ Այն ատեն Որատիոս կ՚դառնայ և երեքն ալ զատ զատ կ՚սպաննէ։

Հռոմայեցիք առօք փառօք Հռոմ մտան։ Որատիոսի քոյրն որ Կուրատեանց մէկին նշանուած էր, լալով վազեց իր եղբօրն դիմացն ելաւ և դառնապէս յանդիմանեց զինքն իր նշանածն սպաննելուն համար։ Որատիոս կատղելով՝ դաշոյնը քաշեց և քոյրը զարկաւ սպաննեց, ըսելով. «Թո՛ղ այսպէս մեռնին ամեն Հռոմայեցիք որ Հռոմի թշնամիներուն վրայ կ՚ողբան»։ Այսպիսի սոսկալի ոճրի մը պատիժը մահ էր, և իրօք մահուան պիտի դատապարտուէր Որատիոս՝ երբ ծերունի հայրը սրտաշարժ ճարտասանութեամբ ժողովրդեան գութը շարժեց և միայն տուգանք վճարելով իր որդին ազատեց։

Ի սկզբան Ալբայեցիք հնազանդեցան, բայց վերջէն Հռոմայեցիքը մատնեցին ճակատամարտի մը մէջ։ Այն ատեն Հռոմ այս մատնութիւնն առիթ բռնելով՝ որոշեց Ալբա քաղաքը կործանել։ Ուստի հրաման տրուեցաւ նորա բնակիչներուն որ իրենց տունը տեղը թողուն և երթան Հռոմ բնակին։ Ալբայեցիք Կելիոս լերին վրայ

հաստատեցին իրենց բնակութիւնը։ Յետոյ Ալբա քաղաքը հիմնայատակ եղաւ։

Կ՚ըսուի թէ Տուլլոս Ոստիլիոս կայծակնահար մեռաւ, Հռոմայեցիք այս մահն իբրև արդար պատիժ մը սեպեցին, վասն զի այս թագաւորն կրօնական ծէսերը չպահեր եղեր։

Անկոս Մարկիոս. — Այս եղաւ Հռոմի չորրորդ թագաւորը։ Նումայի թոռն էր և նորա ընթացքը բռնեց։ Կրօնական պաշտամունքն՝ որ խանգարուած էր, վերանորոգեց, երկրագործութիւնը ծաղկեցուց և խաղաղութիւնն անվրդով պահելու ջանաց։ Անկոս Մարկիոս ուրիշ կրօնական արարողութիւններ ալ հաստատեց, ինչպէս նաև ու[illegible]ուրու քրմերու կարգն։ Սոքա պարտաւոր էին հսկել որ Հռոմայեցիք անիրաւ պատերազմի չձեռնարկեն։ Ուստի իրենց պաշտօնն էր պատերազմ հրատարակել և խաղաղութիւն կնքել։

Երբոր ժողովուրդ մը Հռոմի տէրութեան դէմ նախատինք մ՚ընէր կամ երկիրն արշաւէր, չորս ազդարար քուրմեր՝ իրենց քրմական զգեստները հագած՝ թշնամի ժողովրդեան դատաւորներուն առջև կ՚ելնէին և հատուցում կ՚պահանջէին։ Եթէ երեսուն օրուան մէջ հատուցում չտրուէր՝ ազդարարները սահմանագլուխը կ՚վերադառնային, և մին դիքը վկայ բռնելով՝ կրակով սևցած և արիւնաներկ գեղարդ մը կ՚նետէր թշնամւոյն հողին վրայ, այս նուիրական խօսքն արտասանելով. «Յանուն արդարութեան՝ ձեզի դէմ պատերազմ կ՚հրատարակեմ»։

Թէպէտև Անկոս Մարտիոս խաղաղութիւն կը սիրէր, սակայն Լատինացւոց դէմ պատերազմ հրատարակելու ստիպուեցաւ, վասն զի Լատինք հռոմէական հողին վրայ շարունակ կ՚ասպատակէին։ Անկոս յաղթեց այս ասպատակներուն, իրենց մի շատ քաղաքները գրաւեց և բնակիչներուն մէկ մասը Հռոմ փոխադրեց։ Նոյնպէս Ավանտին լերին վրայ լատինացի գաղթականներ հաստատեց։ Անկոս Հռոմ քաղաքն արտաքին յարձակումէ պահպանելու համար Յանիկուլոն լեռն ամրացուց, որ Տիբերիսի աջ եզերքն էր և գետին երկու ափունքը փայտէ կամրջով մը միացուց (Հռոմի առաջին անգամ շինուած կամուրջն էր, որ Սուբլիկիոս կոչուեցաւ)։ Վերջապէս՝ առուտուրն ու նաւարկութիւն յառաջ տանելու համար Տիբերիսի բերանն Ոստիա քաղաքը հիմնեց՝ որ Հռոմի նաւահանգիստն եղաւ։

Տարկինեանք. — Այն ատեններն Դեմարատոս անուն հարուստ կորնթացի մը՝ քաղաքական խռովութեանց պատճառաւ՝ իր հայրենիքէն աքսորուելով՝ Իտալիա գաղթեր և Ետրուրիոյ Տարկինիա քաղաքը բնակեր էր։ Իր որդին Լուկումոն ետրուրացի ազնուատոհմ աղջկան մը հետ կարգուեցաւ, այս է Տանաքիլ։ Փառասէր կին մ՚էր այս Տանաքիլ՝ որու յորդորանօք Լուկումոն իր ընտանեօք եկաւ Հռոմ հաստատուեցաւ։ Կ՚ըսեն թէ երբ քաղաքին կ՚մօտենար՝ արծիւ մ՚իր գլխուն վրայ սաւառներ, գլխարկն առեր և օդին մէջ ատեն մը թռելէն ետև՝ կամացուկ մ՚իջեր և նորէն բերեր գլուխը դրեր է։ Տանաքիլ այս

տեսնելով՝ իր երկանը կ'աւետէ թէ քիչ ատենէն մեծ փառքի պիտի հասնի : Լուկումօն իր անունը փոխեց ու Լուկիոս դըրաւ, և նոյնին կցեց Տարկէն անունն ալ իր ելած քաղքին յիշատակին համար : Լուկիոս Տարկէն՝ իր անբաւ հարըստութեանց շնորհիւ՝ քիչ ատենէն մեծ յարգ. և զօրութիւն ստացաւ Հռոմի մէջ : Մինչև անգամ Անկոս Մարտիոսի վստահութիւնը գրաւեց, այնպէս որ այս թագաւորն՝ իր մահուան ժամանակ՝ զանի որդւոցը խնամակալ անուանեց : Վերջապէս՝ փառասէր Տարկէն՝ ամեն հնարք 'ի գործ դնելով՝ յաջողեցաւ ինքզինք թագաւոր ընտրել տալ : Երեց մականունը տուին այս Տարկէնին Տարկէն գոռոզէն զանազանելու համար :

Տարկէն Երեց. — Այս եղաւ Հռոմի հինգերորդ թագաւորն՝ որ փառաւոր իշխանութիւն մը վարեց : Քրիստոսէ 600 տարի առաջ կ'ապրէր : Մեծ յաղթութիւններ տարաւ մօտակայ ժողովրդոց վրայ, այսինքն՝ Լատինացւոց, Սաբինացւոց և Ետրուրացւոց վրայ, որ վերջապէս ստիպուեցան Հռոմի գլխաւորութիւնն ընդունիլ : Սակայն իր իշխանութեան աւելի փայլ տուողն մեծաշէն գործերն եղան քան թէ պատերազմական յաջողութիւնները : Հռոմ քաղաքն այնքան գեղեցկացուց ու զարդարեց որ բոլորովին այլակերպ եղաւ : Նախ նորա բոլորտիքը քարաշէն պարիսպ մը քաշեց. Կապիտոլիոնի վրայ Արամազդայ շքեղ մեհեանը հիմնեց : Նոյնպէս կառոյց Մեծ Կրկէսն՝ որ կառարշաւներու և հասարակաց խաղերու սահմանուած էր : Այս ահա-

գին շէնքը՝ որ երկարաձիգ շրջանակի մը ձեւն ունէր, Պաղատին և Ավանդին լեռներու մէջ շինուած էր. 2000 ոտք երկայն և 500 ոտք լայն էր։

Տարկէնի շինել տուած ամենէն նշանաւոր շէնքն եղաւ Լուբէրքը, որ ընդարձակ ստորերկրեայ կոյնոյներ էին, ուսկից քաղքին աղտոտութիւններն Տիբեր գետը կ՚վազէին։ Այս շինութեանց մէկ մասը դեռ կ՚կենայ։ Այսպէս քաղքին տղմոտ ու ցած կողմերը մաքրելէն ետեւ՝ Տարկէն Կապիտոլիոնի և Պաղատինի մէջ ընդարձակ տեղ մը շինել տուաւ վաճառականներու և ժողովրդեան ժողովներուն համար։ Այս եղաւ անուանի Ֆօրումը՝ (Հրապարակ) որ գրեթէ քաղքին կեդրոնը կ՚գտնուէր։ Այս Ֆօրումը քիչ քիչ հոյակապ շէնքերով պատեցին։ Ժողովներու յատկացած մասը Կոմիդիոն կոչուեցաւ։

Տարկէն Երէց Ետրուրացւոց սովորութիւնները, մանաւանդ նոյա փառաւոր արարողութիւններն Հռոմ մտցուց։ Իր օրովը պատահած շատ հրաշալի բաներ կ՚պատմեն։ Օր մ՚որ Տարկէն Հրապարակը կ՚գտնուէր նշանաւոր վհուկ մ՚ուղեց փորձել. այս վհուկին անունն էր Ատտիոս Նէվիոս։ «Կարող ես գուշակել, ըսաւ վհուկին, եթէ կարելի պիտի լինի ինձ այս միջոցիս մտքէս անցածն իրագործել»։ Վհուկը աստղերը դիտելէն ետեւ՝ պատասխանեց. «Այո»։ «Լաւ ուրեմն, ըսաւ թագաւորը, եթէ կարող ես սա գայլախազն ածելիով մը կտրէ»։ Բոլոր հանդիսականներն սկսան ծիծաղել. բայց վհուկը պատասխանեց անվրդով. «Ձարկ վստահու-

կժեամբ այդ քարին և մէջ տեղէն պզտիկ ճեղ-քուիդ : Ածելի մը և դայլախազ մը բերին և վհուկը՝ ժողովրդեան առջև՝ դայլախազը մէջ տեղէն երկու կտրեց : Թագաւորը շատ զարմա-ցաւ և այնուհետև սկսաւ գուշակութեանց հա-ւատալ : Այս հրաշքը կատարուած տեղը՝ յիշա-տակերտ մը կանգնել տուաւ Ատտիոս Նէվիոսի արձանով և անոր մէջ դրաւ հրաշալի ածելին և դայլախազը :

Սերվիոս. — Տարկէն Երէցի կինն ալ շատ ճարտար էր հմայութեանց մէջ : Արդէն իր ա-մուսնոյն փառաւոր բաղդը գուշակեր էր : Ու-րիշ նշանաւոր գուշակութիւն մ'ալ ըրաւ : Սա-բինացի զօրապետ մ'իր բնիկ երկիրը պաշտպա-նելու ժամանակ մեռեր և իր այրի կինն Տար-կէնի ձեռքը գերի ինկեր էր : Տարկէն այդ գե-րին իր Տանակիլ կնոջ ընծայեր էր : Հազիւ թէ արքունիքը մտեր էր որ խեղճ որբևայրին զաւակ մը ծներ էր որու Սերվիոս (Մտրուկ) անունը տուեր էին, վասն զի ստրկութեան մէջ աշխարհ եկեր էր : Օր մ'արքունեաց մէջ ամենքն իրար ան-ցան տարօրէն հրաշք մը տեսնելով : Երբ Սեր-վիոս մանուկը կ'քնանար՝ իր գլուխը պահ մը բոցերու մէջ երևցաւ : Անմիջապէս Տանակիլ գուշակեց որ այս տղան մեծ մարդ մը պիտի լի-նի : Ուստի մեծ խնամօք կրթեց զանի և վերջէն իր աղջիկը Սերվիոսի կնութեան տուաւ : Սեր-վիոս իր բարձր կոչութեան արժանի եղաւ իր բնաւորութեամբն ու՝ տաղանդովը :

Տարկէնի մահը։ — Սակայն Անկոս Մարտիոսի որդիքը դեռ կենդանի էին և չէին կարող ներել այդ Թագաւորին որ իրենց հայրենական աթոռը յափշտակեր էր․ ուստի որոշեցին զանի սպաննել տալ։ Երկու հովիւ գտան, և նոցա մեծ գումար մը խոստացան եթէ Տարկէնը սպաննեն։ Այս հովիւներն արքունի պալատին դրան առջև գալով՝ սկսան իրարու հետ կռուիլ և Տարկէնէն արդար դատաստան խնդրել։ Թագաւորն այս աղմուկը լսելով՝ երկու ոսոխ կռուարարներն իր առջև բերել տուաւ, բայց երբոր մին այս վէճին պատճառը բացատրելու վրայ էր, միւսը կացինը վերցուց և Տարկէնի գլխուն իջեցուց։ Տարկէնը կիսամեռ սենեակը տարին։ Այս գոյժը լսելով՝ ժողովուրդը պալատին բոլորտիքը գումարուեցաւ։ Բայց Տանակիլ իր սովորական ճարտարամտութիւնը գործածեց այս պարագայիս մէջ։ Վախնալով որ Անկոսի որդիք այս խռովութիւններէն օգուտ քաղելով թագաւորական աթոռը չգրաւեն, պատուհանէն ելաւ և ժողովուրդը յորդորեց որ խաղաղի։ Յայտնեց որ թագաւորին վէրքը ծանր չէ և քանի մ՚օրէն բոլորովին պիտի բժշկուի։ Միայն խնդրեց որ նորա հիւանդութեան ժամանակ Սերվիոս կառավարութեան գործերը տեսնէ։ Ժողովուրդն՝ որ Սերվիոսը կ՚սիրէր, հաճութիւն ցցուց ու քաշուեցաւ գնաց։ Անկոսի որդիքը տեսնելով որ իրենց նպատակին չհասան՝ խոյս տուին և կամովին աքսոր գացին։ Տարկէն քիչ ատենէն մեռաւ։ Շատ օրեր իր մահը գաղտնի պահուեցաւ։ Երբոր երևան ելաւ, ժողովուրդն Սեր-

վիոսի կառավարութենէ գոհ ըլլալով՝ զինք Թագաւոր հրատարակեց։

Սերվիոս Տուլլիոս. — Հռոմի Թագաւորներուն մէջ ամենէն ժողովրդասէրն եղաւ Սերվիոս Տուլլիոս որ ոչ միայն ժողովրդեան տառապանքը թեթեւցուց այլ և Հռոմը մեծցուց և զարդարեց։ Ինք մոռցած չէր որ ատեն մը գերիի մը զաւակ էր, ուստի հրաման հանեց որ գերի ունեցողը կրնայ ազատ թողուլ և այսպէս ազատուող գերիներն Լիպերտինի կ'ըսուէին։ Հռոմ քաղաքն ընդարձակեց, նորա կիսկատար պարիսպները լմնցընել տուաւ և քաղաքին շրջապատին մէջ առաւ եօթ բլուրները։

Սերվիոս երկու աղջիկ ունէր զոր Տարկէն Երէցին երկու որդւոց հետ կարգեր էր։ Այս փեսաներէն մին Լուկիոս Տարկէն՝ վայրագ բնութիւն մ'ունէր, և Տուլլիա՝ Սերվիոսի աղջիկներէն մին՝ նորա չափ չարասէր էր։ Տուլլիա իր էրիկը թունաւորեց և իր տայգրին՝ Լուկիոսի հետ կարգուեցաւ, երբոր այս վերջինն ալ իր կինը սպաննեց։ Այս երկու անզգամ ամուսինները ուրիշ ոճիր մը մտածեցին։ Ցանկած Լուկիոս Տարկէն ելաւ Սերվիոսէն գահը պահանջեց, ըսելով որ նա Տարկէն Երէցին ձեռքէն յափշտակեր էր. ուստի օր մը նորա վրայ յարձակելով՝ զանի գահէն իջեցուց և պալատին պատուհանէն վար նետեց։ Խեղճ Թագաւորն այսպէս արիւնլուայ փողոցն ինկեր մեռեր էր՝ երբ Տուլլիա դուստրն՝ որու գրգռութեամբ աները սպաններ էր անգութ Տարկէն, նոյն փողոցէն կառ-

քով անցնելով պալատը կ'երթար, իր պատուա-նոյն միանալու։ Կառապանն Թագաւորին դիակը տեսնելուն՝ ուզեց ետ դառնալ, բայց վատանուն Տուլլիա հրամայեց որ դիակին վրայէն անցընէ կառքը։ Այսպիսի ահռելի գործ մ'անպատիժ չմնաց։

## ԳԼՈՒԽ ԻԳ.

### Սերվիոս Տուլլիոսէն մինչև Թագաւորութեան անկումը։

### (534—510)

**Տարքէն Գոռոզ.** — Հռոմի այս եօթներորդ Թագաւորին իր բռնաւորութեան համար՝ շատ ատելի եղաւ ժողովրդեան։ Սերվիոսի դրած արդար օրէնքը ջնջեց և ծերակոյտի անդամներն՝ որ իրեն դէմ բողոքեցին, աքսորել կամ սպաննել տուաւ։ Այս բռնակալն միայն ժողովուրդը չէր ճնշեր այլ և իր ընտանիքն որոց մէկ քանին մահուան դատապարտեց։ Իր մէկ քեռորդին Յունիոս մահուանէ ազատեցաւ միայն սուտ խենդ ըլլալով։ Այս կեղծ յիմարութեան պատճառաւ՝ Յունիոսի՝ Բրուտոս (ապուշ) անունը տուին։

**Գաբիէս քաղաքին առումը.** — Սակայն Տարքէն իր ներքին անգութ ու բռնի գործերը ծածկելու

համար՝ ջանաց պատերազմական փառք ստանալ ։ Մօտակայ ժողովրդոց վրայ մեծ յաղթութիւներ տարաւ և շատ աւարով Հռոմ դարձաւ ։ Միայն Գաբիիս քաղաքն իր զօրութեան դիմադրեց՝ եօթ տարի ։ Տարկէն ճար մը մտածեց և քաղաքը նենգութեամբ առաւ ։ Իր մէկ որդին՝ Սեքստոս՝ այնպէս ձևացուց որ իր հօրը հետ գժտած է և գնաց Գաբիէս քաղաքն ապաւէն մը փնտռեց ։ Այս նորահաստատ իշխանն քիչ ատենէն բնակիչներուն վստահութիւնը գրաւեց և նոցա զօրապետն եղաւ ։ Այն ատեն իր հօրը դեսպան ղրկեց և հարցուց թէ ինչ ընել պէտք էր քաղաքը նուաճելու համար ։ Թագաւորն՝ որ նոյն միջոցին պարտէզը ժուռ կ'գար՝ պատասխան մը չտուաւ դեսպանին, այլ իր պտոյտը շարունակելով բաւական սեպեց ամենէն երկայն խաշխաշներուն գլուխը կտրել ձեռքի գաւազանովը ։ Տարկէնի որդին իր հօրն ընթացքին նշանակութիւնը հասկըցաւ և Գաբիէսի գլխաւոր քաղաքացիները սպաննեց. այսպէս քաղաքը տկարանալով քիչ ատենէն Հռոմայեցւոց իշխանութեան տակն ընկաւ ։

Սիբիլեան գրեանք. — Տարկէն Գոռոզ թշնամիներէն առած ճոխ աւարներով Հռոմի մէջ գեղեցիկ շէնքեր կանգնեց ։ Տարկէն Երէցին սկսած Կապիտոլիոնն աւարտեց ։ Այս մեհեանին շինութեան ատենն էր որ հռոմէական անյաղթութեան վերաբերող նշանաւոր դէպք մը պատահեցաւ ։ Օր մը Տարկէնի առջին ելաւ անծանօթ կին մ'ու առաջարկեց որ ինն հատ գուշա-

կուխեանց վերաբերող գիրքերը գնէ։ Թագաւորը մերժեց խնդրած գինը տալու. կինը գնաց գիրքերէն երեքն այրեց և մնացած վեց հատին համար դարձեալ նոյն գինը պահանջեց։ Երբոր Տարկէն նորէն մերժեց, կինն երեք հատ եւս այրեց և միւս երեքին համար առջի գումարը խնդրեց։ Թագաւորը կնկան այս ընթացքին վրայ զարմացաւ և վերջապէս երեք գիրքը գնեց։ Կինն անմիջապէս փախաւ ստակն առնլէն ետև և նորէն չերևցաւ։ Այս հատորներն Սիբիլեան գրեանք կ'անուանէին, վասն զի Կումա քաղքին Սիբիլլայի կամ հարցուկի գործը կ'համարէին։ Տարկէն պատուիրեց որ այս գրեանքը Կապիտոլիոնի կռատան մէջ զգուշութեամբ պահեն, և հասարակային մեծ ձախորդութեանց ժամանակ նոյն գիրքերէն պատգամ կ'խնդրէին։

Տարկէն Հռոմէն կ'արտաքսուի. — Բռնակալ Տարկէն կ'յուսար որ իր իշխանութիւնն անվրդով պիտի շարունակէ՝ երբ այնպիսի անակնկալ դէպքեր պատահեցան որ թագաւորութեան վերջ տուին։ Քանի մը չարագուշակ դիպուածներ Տարկէնի միտքը յուզեցին. իր որդիքը Դելփիս ղրկեց որ պատգամ հարցընեն։ Նոցա հետ Յունիոս Բրուտոսն ալ ղրկեց որպէս զի ճամբան հետը զուարճանան։ Սոքա Տարկէնի կամքը կատարելէն ետև՝ հարցուփորձ ըրին պատգամախօսին թէ իրենցմէ ով թագաւոր պիտի ըլնի և այս պատասխանը ստացան. «Ո՛վ որ առաջ իր մայրը համբուրէ գահը պիտի ելնէ»։ Երբոր Հռոմ վերադարձան երեք պատանիները

Բրուտոս իբր ակամայ գետինը կ'ընկնի եւ հողը կ'պագնէ ըսելով. «Ամենուն մայրը երկիրն է»։

Այս պատգամը քիչ ատենէն կատարուեցաւ։ Երբոր Տարկէն Սէքսթոս փոքրիկ քաղաքը կ'պաշարէր, իր մէկ որդին ազնուական կին մը նախատեց, Լուկրետիա անուն, որ Կոլլատինոսի կողակիցն էր։ Այս նախատանաց չուզեց համբերել Լուկրետիա եւ իր էրկան ու Յունիոս Բրուտոսի առջեւ ինքզինքը դաշոյնով սպաննեց։ Բրուտոս դաշոյնը Լուկրետիայի սրտէն քաշեց հանեց եւ զայն տատանելով երդում ըրաւ վրէժ լուծել բռնաւորներէն։ Անմիջապէս Լուկրետիայի արիւնլուայ դիակը հրապարակը հանեց եւ ժողովուրդը գրգռեց որ ապստամբի։ Տարկէն իսկոյն վերադարձաւ Արտէա քաղքէն որ ապստամբութիւնը զսպէ, բայց քաղքին դռները գոց գտաւ։ Նոյն միջոցին Բրուտոս բանակը գացեր և զայն յորդորեր էր որ Արտէայի պաշարումը թողու ու գայ Հռոմ ժողովուրդը պաշտպանէ։ Այսպէս Տարկէնեանք աքսորուեցան եւ թագաւորութիւնը կործանեցաւ։ Հռոմի մէջ Հասարակապետութիւն հաստատուեցաւ։ Այս կ'պատահէր 510ին, ճիշդ այն տարին որ Աթենք Պիսիստրատեանց բռնաւորութենէ կ'ազատէր։

Հռոմէական պատմութեան նախապատմութեան ժամանակ։ — Հռոմի պատմութեան այս առաջին մասը բոլորովին ստոյգ չէ։ Ենէասի գալուստը յԻտալիա, Հռոմուլոսի և Հռեմոսի ծնունդը, Հռոմի հիմնարկութիւնն երկու եղբարց ձեռօք, ժողովրդային աւանդութիւններ են ճշմարտութենէ զուրկ։ Հռոմի թագաւորներու պատմութիւնն ալ շատ կասկածելի իրողութիւններ կ'պարունակէն, թէեւ

կարեւոր մասերը քիչ շատ ստուգութիւն կրնան ունենալ։ Հռոմի նախկին պատմութիւնն գլխաւորապէս Տիտոս-Լիվիոս աւանդած է մեզի։ Օգոստոս կայսեր օրով կ'ապրէր։ Տիտոս-Լիվիոս Հռոմէական մեծ պատմութիւն մը գրած է, որու միայն մէկ մասը կայ։

Հռոմի իշխանութիւնը թագաւորներուն ժամանակ։ — Ի սկզբան Հռոմ լատին քաղաք մ'էր որու բոլորտիքը սահմանաւոր երկիր մ'ունէր։ Անդադար կռուի մէջ էր միւս լատին քաղաքներու և դրացի ժողովրդոց հետ, ինչպէս Սաբինեանց, Էքուացւոց, Վոլսկեանց և Էտրուրացւոց հետ։ Այս կռիւներով Հռոմ մեծցաւ, նոյնպէս ժողովուրդը շատցաւ մօտակայ քաղաքներու բնակչաց և դրացի ժողովրդոց հետ խառնուելով։ Այսպէս Հռոմ իր նախնի լատին ժողովրդեան Եթրուսկական յառաջելով ժողովուրդներն ալ միացուց։ Իր ծագումը լատին էր և յառաջելով բուն լատին քաղաքն եղաւ։ Առեն առեն իր նուաճած երկիրներուն գաղթականներ կ'ղրկէր, որով իր տիրապետութիւնը կ'ընդարձակէր, նոյնպէս ազդեցութիւնը։ Հռոմայեցի գաղթականներն Հռոմի բարքը, օրէնքն ու սովորութիւնները կ'տարածէին։ Ուստի Հռոմ Լատիոմի բնական ազգային կեդրոնը դարձաւ, և կերպով մը լատին քաղաքներու հետ տեսակ մը դաշնակցութիւն կազմեց, որու մայր քաղաքը դարձաւ։

Նախնի Հռոմի քաղաքական և ընկերական կազմութիւնը։ — Հռոմայեցի ժողովուրդն երկու գլխաւոր դաս կ'բաժնուէր. Պատրիկներն ու Պլեբէյեանք (Ռամիկ)։ Պատրիկները կերպով մը Հռոմի ազնուականներն էին. ասոնք կը կազմէին բուն քաղաքացիներու դասն, անոնք քաղաքական իրաւունք կ'վայելէին, այսինքն կառավարութեան գործերու մասնակից կ'լինէին։ Իսկ հասարակ ժողովուրդն իբրև հպատակ կ'նկատուէր և ազգային գործերու մասնակից չէր լինէր։

Պատրիկներն ալ երեք ցեղ կ'բաժնուէին, որ Հռոմի երեք կարգ բնակիչներէ կ'ծագէին (Լատին, Սաբինացի

և Եւրուրացի)։ Իւրաքանչիւր ցեղ տասն փուլ և իւրաքանչիւր տոհմ՝ ի սկզբան՝ տասն ընտանիքէ կ՚բաղկանար։ Հետեւապէս ազնուական դասն 3 ցեղ, 30 տոհմ և 300 ընտանիք կ՚պարունակէր։

Սերվիոս Տուլլիոս ուրիշ ցեղական բաժանում մը հաստատեց, որ բոլոր ժողովուրդը, թէ՛ Պատրիկ և թէ Ռամիկ՝ կ՚պարունակէր։ Այս ցեղերը չորս էին, որ մարդերու մինչակին համեմատ բաժնուած չէին, այլ հողերու։ Վերջէն այս հողական բաժանումն ալ փոխուեցաւ։ Սերվիոս ուրիշ բաժանում մ՚ալ հաստատեց։ Ժողովուրդը, պատրիկ ու ռամիկ՝ 6 դաս և 193 հարիւրեակի բաժնեց։ Այս բաժանումն, որ հարստութեան համեմատ կարգադրուեր էր, ուրիշ բանի համար չէր այլ միայն տուրքն աւելի կանոնաւոր կերպով բաշխելու և զինուորական պաշտօններն որոշելու համար։ Վերջէն այս բաժանումն ընտրութեանց համար ալ ծառայեց, որ հարիւրեակներու ժողովներու մէջ տեղի ունեցան։ Առաջին դասն, որ ամենէն հարուստ քաղաքացիներէ կ՚բաղկանար, ամենէն զօրաւորն էր. իսկ վերջինն՝ չքաւոր քաղաքացիներու դասը, խուժանն էր։ Այս օրէնսդրական փոփոխութիւններն սովորաբար Սերվիոս Տուլլիոսի սահմանադրութիւնն կ՚կոչուի։ Թէև Հռոմի մէջ միշտ ազնուական և ռամիկ դասն մնաց և առաջինին մի շատ արտօնութիւններ պահեց, բայց հարուստ ռամիկն ալ պատրիկի համազօր լինելով՝ հարստութեան ազնուականութիւնն քիչ քիչ տոհմային ազնուականութեան տեղը կ՚անցնէր։ Այս նկատմամբ Սերվիոսի օրէնքը Սոլոնի օրինաց կ՚նմանէր։

Հռոմի մէջ՝ այս դասերէն զատ՝ կար նաև ստրուկներու դասը։ Հռոմի ստրուկը մարդ չէր սեպուեր այլ առարկայ մը զոր տէրը կրնար ըստ հաճոյս գործածել։ Ստրուկ կ՚լինէր մէկն եթէ պատերազմի ժամանակ գերի ըլլնէր, եթէ պարտքը չկրնար վճարել, եթէ դատավճռիւ մ՚ընդունէր։ Ստրուկը կարող էր իր ազատութիւնը գնել. այն ատեն ազատագրեալներուն կարգը կ՚անցնէր, բայց երբեմն իր հին տիրոջ ծառայ կ՚մնար, երբեմն կէս քաղաքացի կ՚դառնար։ Ծառայ ըսուած մասն ալ այն մարդիկն

էին որ ընտանիքի մէջ կ'ծառայէին պատրիկին պաշտպանութեան տակ։

Կրօն. — Արդէն յիշեցինք Հռոմի մէկ քանի կրօնական արարողութիւնները, զոր Հռոմուլոս ու Նումա հաստատեցին բնիկ ժողովրդոց դից վրայ։ Քիչ քիչ՝ Յունաստանի աստուածներն անուն փոխելով Հռոմ մտան, մինչ Կապիտոլիոն Արամազդայ իշխանութեան ներքև։ Ետրուրացիք ունէին Տինա (Զևս) Կուպրա (Հերա) Մենրֆա (Աթենաս) Վերտումնա (Դիոնիսոս) որ եղանակներու փոփոխութիւնը կ'ցուցընէ. Սէլվանոս, անտառներու աստուածը։ Թիւրանք, Լարայք, ընտանի դիք, Մանթուս (Պղուտոն) և այլն։ Լատինացիք կ'պաշտէին, Տելլուս (երկիր) Սատուրնոս և իր Օպս կինը, որ նմանութիւն ունէին Կրօնոսի և Ռեայի հետ. Արամազդ, իր Հերա կինն։ Յանոս երկդէմ, Վեստա, հայրենի տան դիցուհին։ Սաբինացւոց ալ գլխաւոր աստուածներն էին, Փերոնիա, Արէս և Կէրէնոս. Սօլ (արև) Լունա (լուսին)։

Կառավարութիւն. — Հռոմի կառավարութիւնը բարեխառն միապետութիւն էր. երեք տարրերէ կ'բաղկանար, թագաւոր, ծերակոյտ և ժողովուրդ։ Թագաւորը ընտրութեան գլուխն էր. պատրիկները կ'ընտրէին զանի՝ ծերակոյտին առաջարկելովը։ Երեք պաշտօն ունէր. զօրաց սպարապետ, քրմապետ և գերագոյն դատաւոր էր։ Պատերազմի ժամանակ և քաղքէն դուրս բացարձակ իշխանութիւն կ'վարէր։ Իսկ խաղաղութեան ժամանակ ծերակոյտին ու ժողովրդեան խորհրդովը կ'գործէր։ Երբ դուրս ելնէր՝ իր առջեւէն սակրաւորներ կ'երթային. հրապարակը՝ իր փղոսկրեայ գահին վրայ նստած՝ ինք դատաստան կը կտրէր կամ իր կողմէ ընտրուած դատաւորներն այս պաշտօնը կ'վարէին։ Իբրև քրմապետ՝ թագաւորը զոհերը կ'կարգադրէր։

Ծերակոյտը ազնուական ընտանեաց գլխաւորներէն կը բաղկանար. ընտրութեան գործոց վրայ կ'խորհրդակցէր, թագաւորին կամ իր տեղակալին նախագահութեամբը,

և իր որոշումները ժողովրդեան հաւանութեան կ'ներկայացընէր։ Ժողովուրդն՝ 'ի սկզբան պատրիկներու խումբն էր, որ Կոմիտիոնը՝ ծերակոյտի պալատին մօտ կ'գումարուէր, Թագաւորը կ'ընտրէր, առաջարկուած օրէնք կ'ընդունէր կամ կ'մերժէր, խաղաղութեան կամ պատերազմի վրայ իր որոշումը կ'պատրաստէր և այլն։ Սերվիոս Թագաւորին օրովը՝ ռամիկներն ալ քաղաքական իշխանութեան մասնակից եղան։

Ընտանիք կեանք. — Այս նախկին ժամանակներին՝ Հռոմայեցւոց անձային կեանքը պարզ և չարքաշ էր։ Տանուէրն իր սպասաւորներուն հետ հողը կ'հերկէր, տանտիկինն իր սպասուհիներուն հետ կ'մանէր. նոյն իսկ Տանակիլ Թագուհին և տարաբաղդ Լուկրետիան։ Բայց սովորութիւնները խիստ և օրէնքը շատ անգութ էին։ Տանուէրն իր տան մէջ բացարձակ իշխան էր. իբրև ամուսին՝ կարող էր իր կինը դատապարտել՝ եթէ իր պարտիքը չկատարէր. իբրև հայր՝ արտօնութիւն ունէր ծնած տձև զաւակը սպաննել և մինչև երեք անգամ միւսները ծախել, թէև հասակաւոր ու պաշտօնաւոր ըլլային։ Իր մահուան ժամանակ՝ կրնար բոլոր ստացուածքն օտարի մը տալ, կինն ու որդիքը զրկելով։

---

# ԳԼՈՒԽ ԻԴ.

## Հասարակապետութիւն — մինչև Տասնապետք.

## (510—450)

Տարքւինի դատապարտութիւնը. — Հռոմայեցիք՝ երկու հարիւր յիսուն տարի Թագաւորներու ձե-

ուօք կառավարութենէն ետև՝ Հասարակապետութիւն հաստատեր էին։ Իշխանութիւնը ծերակոյտին և երկու հիւպատոսներու ձեռք անցեր էր, որք տարի մը պաշտօն կ'վարէին։ Առաջին երկու հիւպատոսներն եղան Բրուտոս և Տարկէն Կոլլատինոս, որ ամենէն աւելի աշխատեր էին թագաւորութիւնը տապալելու համար։

Սակայն այս նորահաստատ Հասարակապետութիւնը մեծամեծ վտանգներու հանդիպեցաւ։ Ներսէն թագաւորին կուսակիցները նորա դէմ կ'դաւադրէին, դրսէն Հռոմի բոլոր թշնամիներն այս ներքին երկպառակութիւններէ օգուտ քաղելով հռոմէական զօրութիւնը կործանելու կը ջանային։ Տարկէն դեսպաններ ղրկեց Հռոմ և իր ստացուածքը պահանջեց։ Սոքա սկսան մարդորսալ որպէս զի նորէն թագաւորական իշխանութիւնը հաստատեն։ Գիշեր մ'այս դաւակցութիւնն երևան ելաւ, և յանցաւորներն՝ որոց մէջ Բրուտոսի երկու որդիներն ալ կային, մահուան դատապարտեցան։ Այս դէպքն այնքան գրգռեց Հռոմայեցւոց ատելութիւնը նոյն իսկ Տարկէնի անուան դէմ, որ այնուհետև չուզեցին որ այս զզուելի անունն ունեցող մարդ մը անգամ քաղքին մէջ մնայ։ Այս Տարկէն Կոլլատինոս՝ թէև բռնաւորին աքսորման ամենէն ճիգ թափողներէն մէկն էր, բայց ստիպուեցաւ հրաժարիլ իր պաշտօնէն և Հռոմէն հեռանալ։

Վէյացւոց դէմ պատերազմը. — Տարկէն տեսնելով որ Հռոմի մէջ լարած դարանն 'ի դերև ելաւ, ուզեց զինու զօրութեամբ իր գահը ձեռք

Ճգնիլ ։ ուստի մօտակայ ժողովրդոց, և մասնաւորապէս Ետրուրացւոց դիմեց օգնութիւն խընդրելու ։ Վեյացիք զօրք տուին Տարկէնի ։ Պատերազմն սկսաւ ։ Տարկէնի մէկ որդին Բրուտոսը կ'տեսնէ հեռուէն և իսկոյն նորա դէմ կ'վազէ ։ Երկուքն ալ այնպիսի կատաղութեամբ կ'մաքառին իրարու դէմ որ զիրար կ'զարնեն ու կ'սպանենեն ։ Սակայն Հռոմայեցիք կ'յաղթեն և Բրուտոսը փառաւոր հանդիսով կ'թաղեն ։ Հռոմի կիները տարի մը Բրուտոսի սուգը կ'պահեն, վասն զի Լուկրետիայի պատիւը պաշտպաներ էր ։

Պորսէննա ։ Որատիոս Կոկլէս ։ Մուկիոս ։ — Երբոր Տարկէն Վեյացւոց հետ չկրցաւ յաջողիլ Հռոմի յաղթելու, Կլուսիոնի Պորսէննա թագաւորին դիմեց որ Հռոմի վրայ արշաւէ ։ Այս անգամ Հռոմայեցիք յաղթուեցան ։ Պորսէննա Հռոմ քաղաքը պաշարեց և Ցանիկուլոն բլուրն՝ որ Տիբեր գետին աջ կողմն էր, առաւ ։ Եթէ Որատիոս Կոկլէս Հռոմայեցին դիւցազնաբար չպատերազմէր՝ Պորսէննա բոլոր քաղքին պիտի տիրէր ։ Այս արիասիրտ Հռոմայեցին Տիբեր գետին կամուրջը միայնակ պաշտպանեց բոլոր թշնամի բանակին դէմ և ժամանակ տուաւ քաղաքացիներուն որ կամուրջը փլուցին ։ Այն ատեն ինք զէնքով գետը նետուեցաւ և դիմացի կողմն անցաւ ։ — Ուրիշ Հռոմայեցի մ'ալ, Մուկիոս անուն՝ Պորսէննայի բանակը մտաւ գաղտնի որպէս զի զանի սպաննէ, և մինչև թագաւորական վրանը հասաւ ։ Այն տեղ տեսաւ որ զինուորները գրագրի մը բոլորտիքն առեր իրենց ռոճիկը կ'ընդունէին ։

Գորսենա կարծելով թէ այս դրագիրը բուն թագաւորն է՝ սուրն նորա կողը մխեց ու սպաննեց. Իսկոյն բռնեցին զինք և թագաւորին առջև տարին։ Գորսենա ստիպեց զինքն որ իր դաւակիցներն երևան հանէ։ Մուկիոս ըսաւ միայն որ 300 երիտասարդ ուխտ ըրած են զինք սպաննելու, ապա՝ ցոյց տալու համար որ տանջանքէ ու մահէ չէր վախնար, աջ ձեռքը մօտակայ կրակարանին մէջ դրաւ ըսելով. «Ես ինքս կը պատժեմ այս ձեռքս որ սխալեցաւ»։ Թագաւորն նորա արիասրտութեան վրայ զարմանալով հրամայեց որ Մուկիոսն արձակեն։ Մուկիոսի աջ ձեռքն այրեր էր, և նորա համար Սկեւոլա (ձախլիկ) կոչուեցաւ։ Այնուհետև Գորսենա վախէն կամ Հռոմայեցւոց քաջութենէ պատկառելով՝ նոցա հետ հաշտութիւն ըրաւ։

Լատինացւոց դէմ պատերազմը. — Տարկէն այս կողմէն ալ յուսահատ՝ Լատինացւոց գնաց օգնութիւն խնդրելու։ Այն ատեն Հռոմայեցիք պատերազմ մղելու համար իշխանապետ մ'ընտրեցին։ Վտանգաւոր պարագաներու մէջ Հռոմայեցիք իշխանապետ մը կ'ընտրէին, որ բացարձակ իշխանութիւն կ'վարէր դէթ վեց ամիս, և այս ժամանակը լրանալէն ետև՝ իր պաշտօնէն կ'հրաժարէր։ Այս պատերազմին մէջ Հռոմայեցիք յաղթեցին Լատինացւոց Ռեգիլ լճին մօտ։ Տարկէն Գոռոզ իր որդիքը կորսնցուց այս կռուին մէջ. ինքն ալ կարեվէր վէրք մ'առաւ և քիչ մ'ետք մեռաւ։ Այսպէս Ռեգիլլէի ճակատամարտին մէջ Տարկէնները յաղթուելէն

Ջնջուեցան և Հռոմի հասարակապետութիւնն իր անհաշտ թշնամիէն ազատեցաւ ։

Խառնակութիւնն 'ի Հռոմ. — Արտաքին վտանգն անցնելէն ետև՝ Հռոմի մէջ ներքին կռիւներ ծագեցան ։ Այս կռիւներուն պատճառը ռամիկ ժողովրդեան թշուառութիւնն էր, որ անտանելի դարձեր էր ։ Պատրիկները միայն կ'վայելէին պատերազմի օգուտները՝ մինչդեռ ժողովուրդը կը պարտաւորէր ոչ միայն իր արտերն անմշակ թողուլ, արիւն թափել, այլ և պատերազմի ծախքը քաշել ։ Այս բաւական չէ, զինուորները շատ անգամ թոշակ ալ չէին առնար և իրենց ընտանեաց ապրուստը հոգալու համար ազնուականաց կ'դիմէին և ծանր տոկոսով ստակ փոխ կ'առնէին ։ Հռոմէական օրէնքն անգութ, սոսկալի էր պարտապանին համար. եթէ նա իր պարտքը ժամանակին չվճարէր՝ գերի կ'դառնար ։ Պարտատէրն իրաւունք ունէր ոչ միայն նորա բոլոր կալուածքը գրաւել, այլ նաև նորա կինն ու որդիքը և ինքն գերի ծախել ։

Երբ ժողովուրդն այս ցաւոտ վիճակին մէջ կը տառապէր ու կ'յուզուէր, օրին մէկն յանկարծ հրապարակն երևցաւ ծերունի մ'որ պատառոտ զգեստներ հագեր էր, մազերը խառն ու շփոթ, երեսը գունատ էր ։ Ծեր զինուոր մը, հարիւրապետ մ'էր նա՝ որ իր վիրալից կուրծքը ժողովրդեան կ'ցուցընէր ։ Այն տեղ պատմեց թէ ինչպէս պատերազմի ժամանակ իր դաշտերն աւերակ եղեր ու տունը թշնամիներուն ձեռօք այրեր է ։ Ետև իր հայրենեաց հա-

մարմարիւն թափեր, բոլոր ունեցածը կորուսեր էր, բայց դարձեալ կառավարութիւնն իրմէ տուրք պահանջեր էր և զայն վճարելու համար պարտաւորեր է փոխ ստակ առնուլ։ Իր պարտքը օրէ օր աւելնալուն՝ ստիպուեր է բոլոր հողերը ծախել որ զայն գոցէ, բայց անօգուտ տեղը։ Ուստի իր պարտատէրը զինք բանտ նետեր և սաստիկ տանջեր է։ Այս լսելով թըշուառ մարդը բացաւ ցցուց կռնակին՝ որու վրայ դեռ կ'երևէին գաւազանի կապոյտ նշանները։

Ժողովուրդն այս ծերունի զինուորին պատմածը լսելով՝ սաստիկ զայրացաւ և սոսկալի աղմուկ ու շփոթ հանեց։ Նոյն միջոցին երկան իմաց տուին որ Վոլսկեանք Հռոմի վրայ կ'քալին որ զայն պաշարեն։ Ժողովուրդն այս լուրն առնելուն՝ ուրախութեան աղաղակներ կ'արձակէ և չուզեր թշնամւոյն դէմ քալել։ «Քանի որ պատերազմի պտուղը պատրիկները կ'վայելեն, թող նոքա պատերազմի երթան» կ'ըսէին և անհոգ էին։ Սակայն որչափ որ հիւպատոսը այլ և այլ խոստմունքով կ'յորդորէ ժողովուրդն որ զէնք առնու, բայց երբ պատերազմը կ'լմննայ ծերակոյտը հիւպատոսին բերնով ըրած խոստմունքը չկատարեր։

Նուաճողական լեռ. — Ժողովուրդն ուրիշ մէկ քանի անգամ սուտ խոստմունքէ բռնուելով՝ իր արիւնը թափեց հայրենիքի համար, բայց վերջապէս տեսնելով որ ամեն անգամ ծերակոյտն ու պատրիկները զինք կ'խաբեն, Հռոմէն ելաւ և անկից մէկ ու կէս մղոն հեռու լեռ մը քա-

շուեցաւ, որ Կուիրինալեան լեռ կ՚ըսուի, որպէս զի այն լերին վրայ նոր քաղաք մը հիմնէ։ Պատրիկները ժողովրդեան այս շարժումէն վախնալով իսկոյն դեսպաններ ուղարկեցին որ դժգոհները Հռոմ դառնալու յորդորեն։ Երբոր այս փորձերն անօգուտ ելան՝ ծերակոյտը՝ ժողովրդեան սիրելի և խոհեմ մարդ մը, Մենենիոս Ագրիպպաս ղրկեց՝ իբրև դեսպան, արտօնութիւն տալով որ նոցա պահանջումները կատարէ։ Ագրիպպաս պատմեց նոցա անդամներուն առակն, որք ստամոքսին հետ դժգոհ էին և նորա մնունդ չէին մատակարարեր՝ ըսելով թէ իրենք կ՚աշխատին և ստամոքսը կ՚վայելէ։ Այն ատեն բոլոր մարմինը կ՚տկարանայ։ Ժողովուրդը Հռոմ դառնալու խոստացաւ քանի մը պայմաններով։ Խնդրեց որ իր պարտքը թեթևցընեն և երկու ժողովրդապետ ընտրեն իրենց մէջէն, որպէս զի իրենց շահերը պաշտպանէ։ Այս ժողովրդապետները Տրիբուն կ՚կոչուին։

Կորիոլան։ — Ժողովուրդը Հռոմ դառնալուն Վոլսկեանց դէմ պատերազմի գնաց։ Մարկիոս երևելի հանդիսացաւ այս կռուին մէջ և Կորիոլան քաղաքն որ Հռոմայեցւոց կ՚դիմադրէր, առաւ։ Այս քաջութեան փոխարէն ուրիշ բան մը չուզեց ընդունիլ այլ միայն Կորիոլան մականունը, ձի մը և քանի մը գերիներ։ Յետոյ իր ծառայութեանց համար հիւպատոսութիւնը խնդրեց և ժողովուրդը տրամադիր կ՚գտնուէր տալու, երբոր ընտրութեան օրը Կորիոլան այնպիսի հանդիսով հրապարակն իջաւ, որ ժողովուրդը

սկսաւ կասկածիլ նորա վրայ՝ և տեղն ուրիշ մը ընտրեց ։

Քիչ ատենէն՝ Հռոմի մէջ սով ծագեցաւ ։ Ծերակոյտը Սիկիլիոյ կղզիէն ցորեն բերել տալով աժան գնով ծախել կ՚ուզէր ։ Կորիոլան ծերակոյտին առաջարկեց որ ժողովրդեան ցորեն տայ՝ եթէ հաւանի իր ստացած իրաւունքն ետ տալ և տրիբունութիւնը ջնջել ։ Ժողովուրդը սաստիկ զայրանալով՝ գոռոզ Կորիոլանն դատաստանի կանչեց ։ Կորիոլան ինքզինք պաշտպանելու համար այնպիսի նախատալի ձեւ մը խօսեցաւ որ աքսոր երթալու վճիռ ստացաւ ։ Կորիոլան իր սրտին մէջ սաստիկ ոխ պահեց, Վոլսկեանց քով ապաւէն փնտռեց և ապա բանակ մը կազմելով եկաւ իր հայրենի քաղաքը պաշարելու ։ Ծերակոյտն ընդունայն դեսպաններ ղրկեց քանի մ՚անգամ որպէս զի հաշտութիւն հաստատեն, բայց նա անողոքելի մնաց ։ Այն ատեն Հռոմայեցի կանայք Կորիոլանի Վետուրիա մայրն ու Վոլումնիա կինն և երկու որդիքն առնելով Վոլսկեանց բանակը գացին որպէս զի Կորիոլանն յորդորեն որ իր դիտաւորութենէն ետ կենայ ։ Կորիոլան նոցա աղաչանքը մտիկ ըրաւ և ըսաւ իր մօրը. «Ո՛ մայր, Հռոմն ազատեցիր, բայց որդիդ կորուսիր» ։ Յետոյ Կորիոլան բանակն առաւ ու Հռոմէն հեռացաւ ։ Վոլսկեանք՝ նորա վրայ բարկանալով զինք սպաննեցին ։

Փուբլիոս . Կինկինատոս . — Հռոմի մէջ կռիւը կ՚շարունակուէր միշտ, պատրիկներուն և ժողո-

վրդեան մէջ։ Այս երկպառակ վիճակէն օգուտ քաղելով՝ դրացի ժողովուրդները, Վոլսկեանք, Եկուացիք, Վէյացիք, սկսան Հռոմի վրայ յարձակիլ և զայն նեղել։ Երևելի եղան այս պատերազմաց մէջ Փաբիոսեանց ազգատոհմը, որ բազմաթիւ էր և մեծ անուն ունէր իր արիութեան և վեհանձնութեան համար։ Փոքրիկ ծերակոյտէն հրաման խնդրեց որ իր ընտանիքը զինէ և Վէյացւոց դէմ քալէ։ Երբ այս հրամանը ստացաւ՝ Փաբիոս երեք հարիւր վեց հոգիէ խումբ մը կազմեց իր ծախքովը և Հռոմէն դուրս ելնելով՝ վազեց թշնամեաց դէմ ու նշանաւոր յաղթութիւն մը տարաւ։ Սակայն վերջէն որոգայթի մէջ ընկնելով՝ այս արիագունդ ընտանիքը բնաջինջ եղաւ և միայն տղայ մը (477) մահուանէ ազատ մնաց։ Այս գոյժն որ Հռոմ հասաւ մեծ սուգ պատճառեց և այս քաջերուն մեռած օրը չարաշուք օրերուն կարգն անցաւ։ Այնուհետև Վէյացիք եկան Յանիկուլոն լեռին տիրեցին և այն տեղ բանակեցան։ Այս աղետալի դէպքէն երեք տարի առաջ Լեւոնիդաս և երեք հարիւր Սպարտացիք հայրենեաց համար իրենց կեանքը զոհեր էին Թերմոպիլէի կիրճը։

Սակայն Հռոմայեցիք չվհատեցան։ Այն ատեն Հռոմի մէջ Կինկիննատոս անուն մարդ մը կար որ Տիբերի մօտ իր արտը կ՚մշակէր։ Երբ օրին մէկն իր արօրը կ՚քշէր Հռոմէն դեսպաններ եկան և իմաց տուին որ իշխանապետ ընտրուած է։ Կինկիննատոս՝ որ պարզ և անփառասէր մարդ մ՚էր, ՚ի սկզբան մերժեց այս առաջարկութիւնը, բայց հայրենեաց վտանգը

տեսնելով յանձն առաւ այս պայմանաւ որ ծերակոյտն իր դաշտը մշակել տայ որպէս զի 'ի դարձին կարենայ հունձքն ընել ։ Ուստի նոր բանակի մը գլուխն անցաւ ; Հռոմը պաշարելու եկող թշնամիները զարկաւ վանեց և առօք փառօք Հռոմ դարձաւ ։ Սակայն իշխանութիւնը չպահեց Կինկիննատոս , այլ երբոր յաղթական կառքէն վար իջաւ , իր պաշտօնը՝ զոր տասն վեց օր վարեր էր , թողուց և իր դաշտը դարձաւ ։

Պատրիկներուն և ժողովրդեան մէջ կռիւներ . — Ագրարական օրէնք . — Քիչ քիչ աղնուականաց և ժողովրդեան մէջ ծագած գժտութիւնը կը սաստկանար . ժողովուրդը կ'պահանջէր որ պատրիկներուն պէս ինքն ալ իրաւունքներ և արտօնութիւններ ունենայ ։ Կ'ուզէր որ ամեն մարդ հաւասար լինի օրինաց առջև և տէրութեան գործերուն մասնակից գտնուի ։ Մանաւանդ չէր կըրնար հանդուրժել որ մինակ պատրիկներն անբաւ հողային կալուածներ ունենան , թշնամիներէն առնուած հողերն իրենց մէջ բաժնեն և ինք հայրենեաց համար արիւն թափելէն և տուրք տալէն ետև՝ թշուառ և զրկուած մնայ ։ Ուստի սկսաւ բողոքել այս անիրաւութեան դէմ և պահանջեց որ իր արեան գնով առնուած հողերէն մաս մ'իրեն տրուի ։ Երևելի պատրիկ մը , Սպուրիոս Կասսիոս , որ երեք անգամ հիւպատոս եղեր էր , ժողովրդեան իրաւանց պաշտպան կեցաւ և ինք առաջարկեց Ագրարական օրէնքը ։ Այս օրէնքով կ'ուզէր միայն որ թշնամիներէն առնուած հողերն , որ տէրութեան կա-

լուած պիտի լինէին և զոր պատրիկները գրաւեր էին, աղքատ ժողովրդեան մէջ բաժնուին։ Երբոր ազնուական դասն այս առաջարկութիւնը լսեց սոսկաց և իր բոլոր ուժովը դէմ կեցաւ, ըսելով թէ ժողովուրդը զինք կողոպտել կ'ուզէ։ Ուստի հնարք մը մտածեցին որ այս առաջարկութեան հեղինակը սպաննեն։ Կասսիոսն ամբաստանեցին որպէս թէ թագաւորութեան աչք ունի։ Այն ատեն տրիբուններն՝ որ Կասսիոսէն կ'նախանձէին, զինք չպաշտպանեցին, և այս ժողովրդասէր մարդը Տարպեան ժայռէն վար նետելով մեռցուցին։

## ԳԼՈՒԽ ԻԵ.

Տասնապետք — Մինչև Գաղղիացւոց արշաւանքը։

(450—395)

Տասնապետք. Օրինաց տասն երկու տախտակներ. — Դատաւորական իշխանութիւնը միայն պատրիկները կ'վարէին. սոքա միայն օրինաց հմուտ էին։ Գրաւոր չէին այս օրէնքը. և որովհետև ժողովուրդն նոցա անտեղեակ էր՝ պատրիկներն ըստ հաճոյս կ'մեկնէին։ Ուստի ժողովուրդն ուզեց որ նոր օրէնք հաստատուի ու հրատարակուի։ Ծերակոյտը տասն տարի դէմ կեցաւ ժողովրդեան

այս արդար պահանջման դէմ, և այս տասն տարուան միջոցին շատ կռիւներ և բռնութիւններ պատահեցան։ Վերջապէս ճարը հատած՝ ծերակոյտը ժողովրդեան խնդիրը կատարելու յանձն առաւ և երեք պատգամաւոր ընտրեց որպէս զի Յունաստան երթան և Սոլօնի օրէնքն առնեն բերեն։ Երբոր այս պատգամաւորները վերադարձան՝ բոլոր պաշտօնաւորները, դատաւոր, հիւպատոս, տրիբուն պաշտօնէ ընկան, տասն դատաւոր ընտրեցին մէկ տարուան համար և նոցա լիակատար իշխանութիւն տուին։ Այս դատաւորները Տասնպետք կոչուեցան, որոց պաշտօնն էր օրէնքները քննել և նոր օրինագիր մը պատրաստել։ Տասնպետներն՝ որ պատրիկներու դասէն էին, արդարութեամբ կառավարեցին ժողովուրդը, իրենց շինած օրէնքը տասն հատ պղնձէ տախտակներու վրայ փորել տուին և հրապարակը դնել տուին որպէս զի ժողովուրդը կարդայ, և այս եղաւ Հռոմայեցւոց օրինաց հիմը։ Երբոր տարին լմնցաւ՝ տասնպետներն հրաժարեցան։ Սակայն ժողովուրդն այնքան գոհ եղաւ տասնպետներու կառավարութենէ որ նոյն իշխանութիւնը վերահաստատեց։ Նախորդ տասնպետներէն միայն մէկն ընտրուեցաւ, այս է Ապպիոս Կլաւդիոս որ ժողովրդասէր կերպերուն իր փառասիրութիւնը կ'պահէր։

Բայց այս նոր տասնպետները մէյմէկ բռնաւորներ դարձան և սկսան ամեն տեսակ չարիք գործել օրինաց հակառակ։ Երբ իրենց տարին լմնցաւ՝ իրենց իշխանութիւնը բռնի շարունակեցին։ Նոյն միջոցին պատերազմ ծագեցաւ,

Հռոմէական բանակները տասնապետներուն դէմ բարկացած ըլլալով՝ կամաւ յաղթուեցան։ Տասնապետները ալ վրէժ լուծեցին․ Արիստիրա զէնուոր մ՚որ սաստիկ ոխ ունէր իրենց դէմ, սպաննել տուին․ բայց այս զինուորն տասնապետներու մարդերէն տասն հինգ հոգի սպաննելէն ետև մեռաւ։

Վիրգինիա․ — Հռոմի մէջ՝ Վիրգինիա անուն նորատի աղջիկ մը կար, որ գեղեցիկ էր և միանգամայն համեստ։ Այս աղջկան հայրը Վիրգինիոս, որ քաջասիրտ և առաքինի հարիւրապետ մ՚էր, բանակը կ՚գտնուէր։

Օր մը Ապպիոս տասնապետն այս օրիորդը կը տեսնէ և իմանալով որ նորա հայրը բանակը կ՚գտնուի, միտքը կ՚դնէ զանի իբրև գերի գրաւել։ Ուստի իր սպասաւորներուն կ՚հրամայէ որ օրիորդը բռնեն և իրեն բերեն։ Սակայն Վիրգինիայի հօրեղբայրն այս բռնութեան դէմ ժողովրդեան բողոքեց, որ իսկոյն ոտք ելաւ և բռնաւորին հրամանն արգիլեց։ Երբ Վիրգինիոս իմացաւ իր աղջկան վտանգը շուտ մը ճամբայ ելաւ Հռոմ հասաւ ճիշտ այն միջոցին որ Ապպիոս իր չար խորհուրդը նորէն 'ի գործ դնելու համար փորձ կ՚փորձէր։ Խեղճ Վիրգինիոս՝ տեսնելով որ բռնաւորը դատ բացեր է և հրապարակաւ իր աղջիկն իբրև գերի՝ պիտի գրաւէ, առ երեսս ելած անիրաւ վճռին հաւանութիւն ցցուց, և խնդրեց միայն որ իր աղջկան վերջին բարևը տայ։ Ապպիոս այս թշուառ հօր խնդիրը չմերժեց։ Այն ատեն Վիրգինիոս լալով

հօրը գիրկն ընկաւ և Վիրգինիոս, որ սաստիկ կատղեր էր բռնաւորին դէմ, մսագործի մը դանակն առաւ և աղջկան սիրտը մխեց, ըսելով. «Այս Թուրը միայն կրնայ ազատել պատիւդ բռնաւորին ձեռքէն»։ Այս արիւնալի դանակն Ապպիոսին ցոյց տուաւ գոչելով. «Անօրէն մարդ, այս անմեղին արիւնն քեզմէ վրէժ կ՚խնդրէ»։ Եւ Վիրգինիոս՝ նոյն արիւնաթաթաւ դանակն ՚ի ձեռին՝ բանակը վազեց։ Զինուորներն այս հեգհօր ողորմելի վիճակն ու Ապպիոսի անօրէնութիւնը լսելով՝ կ՚կատղին և Հռոմի վրայ կ՚քալեն։ Տասնպետները պաշտօնէ կ՚ձգեն ու մահուան կամ յաքսոր կ՚դատապարտեն. Ապպիոսը բանտ կ՚նետեն, ուր հետևեալ օրը խեղդուած կը գտնուի։ Այսպէս կնկան մը մահն Հռոմի ազատութեան պատճառ եղաւ, ինչպէս որ արդէն Լուկրետիայի մահուան վրայ Թագաւորութիւնը կործաներ էր։

Հիւպատոսութեան բաժանումը. — Բոլոր հին պաշտօնները նորէն հաստատուեցան Տասնպետներու անկումէն ետև՝ և նոր հիւպատոսներ ու տրիբուններ ընտրուեցան։ Բայց դարձեալ հին հակառակութիւններն երևան ելան։ Թէև ժողովուրդն նոր օրինաց շնորհիւ ազնուականներու զուգութիւնը կորեր և նոցա պէս քաղաքային իրաւունքներ կ՚վայելէր, սակայն այս բաւական չհամարելով՝ ուզեց որ ամեն քաղաքական պաշտօններու ալ մասնակից լինի։ Դար մը այս կռիւները շարունակելէն ետև՝ ժողովուրդը յաջողեցաւ ուզածը ստանալ, և հիւպատոսնե-

բէն մին ժողովրդեան մէջէն ընտրուեցաւ։ Շատ չանցաւ՝ ժողովուրդն բոլոր ազնուականներու պէս ամէն քաղաքական պաշտօններու մէջ մտաւ։

Ժողովրդեան յաղթանակը. — Մինչև այն ատեն միայն պատրիկները հիւպատոս կ'ըլլէին, այնուհետև ժողովրդեան մարդիկ ալ պիտի կարենային լինիլ, և այս յաղթանակը ժողովրդեան համար նշանաւոր և երկու անուանի տրիբուններուն գործն էր, այսինքն Լիկինիոս Ստոլոնի և Լուկիոս Սեքստիոսի։ Պատրիկները տասն տարի շարունակ ժողովրդեան խնդիրը մերժեցին, ամէն միջոց գործածեցին և նոցա ձիգն 'ի դերև հանելու ջանացին։ Վերջապէս Լիկինեան օրէնքն ընդունուեցաւ։

Այսպէս ժողովուրդը ձեռք ձգեց քաղաքային հաւասարութիւն, օրինաց առջև հաւասարութիւն, և քաղաքական հաւասարութիւն, այսինքն, ամէն քաղաքացի իրաւունք պիտի ունենար կառավարութեան մասնակցիլ, և ամէն գործոց մէջ մտնել։ Այն ատեն (510էն մինչև 366) պատրիկներուն և ժողովրդեան մէջ տիրած ատելութիւնը ուրիշ կերպարանք առաւ. բայց վերջէն նորէն ծագեցան այս կռիւներն ուրիշ բարուրանօք և ուրիշ ձևով։ Որչափ ատեն որ Հռոմնեցիքն երկպառակութեամբ զբաղեցաւ յառաջ չգնաց, վասն զի արտաքին պատերազմներն նոյն եռանդով չէին մղած։ Բայց երբ այս երկու դաս քաղաքացւոց մէջ միաբանութիւն մտաւ, Հռոմայեցիք իրենց փառաւոր պատերազմներն սկսան, որպէս զի Իտալիոյ այլ և այլ գաւառներուն տիրեն։



## ԳԼՈՒԽ ԺԶ.

Գաղղիացիք ՚ի Հռոմ — մինչև Պիւռոսի պատերազմը։

(395—288)

Կամիլլոս. — Կեդրոնական Իտալիոյ ժողովրդոց մէջ՝ Ետրուրացիք ամենէն յառաջադէմ ու հարուստ ժողովուրդն էին, անտարակոյս ամենէն զօրաւոր ժողովուրդն ալ պիտի լինէր եթէ իր բազմաթիւ ու բազմամարդ քաղաքներն իրարու կապուած մնային։ Այս քաղաքներէն ամենէն ահարկուն Վէյա քաղաքն էր, գրեթէ Հռոմի չափ մեծ էր և նորա հետ միշտ պատերազմ կ՚ընէր։ Վէյացիք շատ անգամ յաղթեր էին Հռոմայեցւոց։ Ծերակոյտն որոշեց որ Վեյա քաղաքը բոլորովին նուաճէ. ուստի զայն պաշարել տուաւ, և որպէս զի պատերազմի գործողութիւնները չընդմիջին, հրաման հանեց որ այնուհետև զօրքը տէրութեան գանձէն թոշակ ընդունի։ Այսպէս հասարակ զինուորն ստիպուած չէր քաղաքը դառնալ ու իր արտը մշակել։ Վեյիոյ պաշարումը տաս տարի տևեց։ Վերջապէս հարկ եղաւ իշխանապետ մը կարգել. այս իշխանապետը Կամիլլոս եղաւ, որ քաղաքը հանելու համար ական մը փորել տուաւ և զայն նուաճեց։

Կամիլլոս Փալերիա քաղաքին ալ տիրեց, որ Վեյացւոց դաշնակից էր, ոչ այնչափ զէնքով որչափ իր վեհանձնութեամբը։ Այս քաղաքը

պաշարելու տաեն՝ Կամիլլոս տեսաւ որ օրին մէկը՝ վարժապետ մը տոհմիկ աշակերտներուն գլուխն անցած՝ իր բանակն եկաւ և առաջարկեց որ այն տղայքն իրեն յանձնէ, որպէս զի նոցա ծնողքն ստիպուին անձնատուր լինելու։ Կամիլլոս այս անհաւատարմութեան վրայ բարկանալով՝ հրամայեց որ վարժապետին ձեռքերը կռնակը կապեն և աշակերտներուն յանձնեն որ զանի ծեծելով քաղաքը դարձան։ Փալերիոյ բնակիչներն՝ Կամիլլոսի այս վեհանձն ընթացքին վրայ զմայլելով՝ անձնատուր եղան և Հռոմայեցւոց հետ հաշտուեցան։

Հռոմի ժողովուրդն այս յաղթութեանց լուրը մեծ ուրախութեամբ իմացաւ և ծերակոյտն ուզեց որ Կամիլլոս յաղթանակաւ Հռոմ մտնէ։ Ուստի այս անուանի զօրապետն կառով մ'որուն չորս սպիտակ ձի լծուած էր՝ Հռոմ մտաւ, բայց ժողովուրդն այս արքայի վայել հանդէսէն չախորժեցաւ, մանաւանդ երբ լսեց թէ Կամիլլոս Վէյիս քաղքին ճոխ աւարին տասանորդը պահեր է որ Ապոլոնի նուիրէ, ամբաստանեց զինքը որ նոյն կողոպուտին մէկ մասը գրաւեր է և դատաստանի կոչեց։ Բայց Կամիլլոս չուզեց դատաստանի սպասել ու կամովին աքսոր գնաց։ Երբոր իր հայրենի քաղքին դռնէն դուրս կ'ելնէր աստուածներէն խնդրեց որ Հռոմայեցիք իրենց այս ապերախտութեան վրայ զղջան։ Այս թշնամական ուխտն՝ որ Արիստիդէսին ըրած ուխտէն շատ տարբեր էր (եր. 81) կատարուեցաւ։ Նոր թշնամիներ Իտալիա արշաւելով Հռոմի դէմ կ'քալէին։

Գաղղիացւոց արշաւանքը. — Այս թշնամիներն էին Գաղղիացիք, որ բարբարիկ, մարտասէր ժողովուրդ մ'էր, ու այլ և այլ ցեղերէ կ'բաղկանար։ Այս ժողովրդեան մէկ մասն, որ հեռաւոր երկիրներ ասպատակել կ'սիրէր՝ Գաղղիայէն ելեր՝ և Ալպեան լեռներէն անցնելով Բօի դաշտերուն մէջ բնակեր էր։ Այս Բօ գետին եզերքը բնակող Գաղղիացիք ուզեցին Կեդրոնական Իտալիան իջնել։ Ապեննինեան լեռներէ անցան և եկան ետրուրական Կլուսիոն քաղաքէն. հողեր պահանջեցին, և երբոր տեսան որ Կլուսիոնի բնակիչներն իրենց խնդիրը կ'մերժեն՝ սկսան նոցա երկիրներն արշաւել։ Այն ատեն Կլուսիոնի բնակիչները Հռոմէն օգնութիւն խնդրեցին։ Հռոմայեցիք ալ Փաբիոսեանց ընտանիքէն երեք հոգի իբրև դեսպան ուղարկեցին որ միջնորդեն։ Սակայն այս փորձն ապարդիւն ելնելով՝ դեսպաններն Կլուսիոն մտան և նորա բնակիչներուն հետ միացան։ Անգամ մը յարձակում ընելու ատեն՝ դեսպաններէն մին գաղղիացի զօրապետ մը սպաննեց։ Այս սպանութիւնն ազգաց իրաւանց դէմ լինելուն՝ բարբարոսները հատուցում պահանջեցին Հռոմէն։ Ազդարար քուրմերը պնդեցին որ յանցաւորները թշնամեաց ձեռքը յանձնուին. բայց որովհետև Փաբիոսեանց ընտանիքը զօրաւոր էր և մեծ ազդեցութիւն ունէր, ծերակոյտն անպարտ հանեց յանցաւորները։

Բրեննոս. Հռոմի առումը. — Այն ատեն Գաղղիացիք՝ որոց գլխաւորն էր Բրեննոս, Հռոմի վրայ

քալեցին որ վրէժ լուծեն։ Երբ Ալլիա գետակին մօտ հասան, որ Հռոմէն քանի մը մղոն հեռու է, հռոմէական բանակին հանդիպեցան։ Այն ինչ պատերազմի սկսաւ որ Հռոմայեցիք բարբարոսաց զոռ ու գոչումէն սարսափած՝ փախուստ տուին, թշնամիներն նոցա ետևէն ընկան ու սաստիկ կոտորած մ՚ըրին այնպէս որ հազիւ բանակին մէկ մասը Հռոմ մտաւ։ Այս քաղաքը պաշտպանելը կարելի չէր. ուստի զօրաց գունդ մը միայն Կապիտոլիոնի միջնաբերդն ապաւէն փնտռեց, պէտք եղած պաշարն առնլով՝ մինչդեռ ժողովուրդը շրջակայ քաղաքներն ապաստան փնտռեց։ Քուրմերն ու բոլոր մեհենական անօթներն հին Պելասգեան Ակիւլլա քաղաքը փոխադրուեցան։ Միայն ծերակոյտի անդամներն՝ իրենց տուներուն առջև՝ փղոսկրէ աթոռներուն վրայ նստան։ Այսպէս քաղաքը գրեթէ թափուր ու ամայի մնացեր էր, երբ Բրեննոս և իր վայրենի զօրքը Հռոմի մօտեցան և՝ դուները բաց գտնելով զգուշութեամբ ներս մտան։ Սակայն տեսնելով ծերունիներն անշարժ նստած՝ կարծեցին թէ կուռց արձաններ են և ահ ու զարմանք զգացին։ Բայց զինուոր մը հետաքրքրութենէ՝ ձեռքը ծերունի Պապիրիոսին մօրուքին տարաւ որ շոյէ, և երբ գիտեց որ Պապիրիոս գաւազանը կ՚վերցնէ զարնելու, ինք թուրը քաշեց և զանի սպաննեց։ Այս եղաւ մեծ կոտորածի մը նշանը, և Գալլիացիք սկսան ջարդել, կողոպտել և քաղաքը կրակի տալ։

առնլու փորձ ըրին և քանի մ'անգամ վրան յարձակելէն ետև 'ի զուր, զայն պաշարեցին։ Մութ գիշեր մը՝ կարծելով թէ բերդապահները քնացած են՝ Բրեննոսի զինուորները բերդին ժայռէն վեր ելան և վերջին շրջապատէն անցնելու վրայ էին երբոր Հերայի նուիրուած սագեր սկսան կարկաչել այնպէս որ միջնաբերդին պաշտպաններէն՝ Մանլիոս՝ կ'արթննայ և պարսպին վրայ ելնելով յարձակողները կ'գահավիժէ։ Միւս բերդապահները Մանլիոսի օգնութեան հասան և այսպէս Կապիտոլիոնն ազատեցաւ։

Հռոմի թշնամի ժողովուրդներն առաջ ուրախացեր էին տեսնելով Հռոմայեցւոց հասած չարիքը, բայց երբոր Գալլիացիք սկսան իրենց երկիրներն ալ ասպատակել՝ սարսափեցան։ Նոյն միջոցին տարագիր Կամիլլոս քանի մը գունդեր ժողվելով գալլիացի հրոսակի մը վրայ ինկաւ ու կոտորեց։ Այս յաջողութենէ սիրտ առնելով Հռոմայեցիք Կամիլլոսն իշխանապետ անուանեցին։ Կամիլլոս մերժեց այս իշխանութիւնն, վասն զի միայն ծերակոյտն իրաւունք ունէր իշխանապետ մը կարգելու։ Այն ատեն նորատի զինուոր մը գաղտնի Հռոմ գնաց և հրաման բերաւ ծերակոյտէն որ Կամիլլոսի աքսորին վճիռը կ'կտրէր և զանի իշխանապետ կ'անուանէր։

Սակայն Կապիտոլիոնի բերդապահները սովին չդիմանալով ստիպուեցան անձնատուր ըլնելու։ Գալլիացիք 1000 լիտր ոսկի պահանջեցին որ քաղաքէն դուրս ելնեն երթան։ Հռոմայեցիք յանձն առին. բայց տեսնելով որ ոսկին կշռելու ատեն թշնամին խարդախութեամբ

առնել, դանդաղեցան։ Բրեննոս թուրը հանեց և կշիռքին մէջ նետելով «Վա՜յ յաղթուողին» պոռաց գոռոզաբար։ Նոյն միջոցին Կամիլլոս իր բանակով Հռոմ կ՚մտնէ և իբրև իշխանապետ կ՚յայտնէ թէ առանց իր հաւանութեան դաշինք մը չկրնար արժէք մ՚ունենալ։ «Հռոմայեցիք, կ՚ըսէ նա, սովորած են երկաթով ազատել իրենց հայրենիքը և չէ թէ ոսկիով»։ Այն ատեն կռիւը կ՚սկսի, Գալլիացիք բոլորովին կ՚յաղթուին և խոյս տալով Իտալիոյ հիւսիսային կողմերը կ՚քաշուին։

Հռոմ աւերակ էր և իր տիրապետութիւնը նորէն կործաներ էր այս գալլիական արշաւանքէն ետև։ Իր տէրութիւնը վերականգնելու համար գրեթէ կէս դար պէտք եղեր էր։ Կամիլլոս իր հայրենեաց վերաշինութեան համար աշխատեց եղաւ. ուստի Հռոմի Երկրորդ Հիմնադիր անունը ստացաւ։ — Մանլիոս Կապիտոլինոսի ազատարարն՝ Կապիտոլինոս կոչուեցաւ։ Բայց երբոր ժողովրդեան պաշտպան կանգնելով սկսաւ Կամիլլոսը վար զարնել որ իշխանութեան հասնի, պատրիկները զինքն ամբաստանեցին որպէս թէ թագաւորական գահը վերահաստատելու միտք ունի և Տարպեան ժայռէն վար նետեցին, այն ժայռէն որ եօթը տարի առաջ ինք Գալլիացիքը գահավիժեր էր։

Սակայն Գալլիացիք նորէն Հռոմայեցւոց դէմ յարձակեցան և այս կռիւներուն մէջ հռոմայեցի կտրիճներ այլ և այլ քաջութիւններով երևելի եղան։ Անգամ մը գալլիացի զինուոր մ՚որ տարապայման հասակ մ՚ունէր, հռոմէական բանակին դիմացն ելաւ և ձայն տուաւ որ քաջ եղողն իրեն հետ մենամարտելու ելնէ։ Վալերիոս անուն արի զինուորն այս հրաւէրն ընդունեց։ Երբոր իրարու դէմ կ՚կռուէին, կ՚ըսեն թէ անգղ մը Գալլիացիին սաղաւարտին վրայ իջաւ և իր կտուցովն ու թևերովն այնքան զարկաւ որ հսկայն յաղթուեցաւ։ Հետևապէս Վա-

լերիոս Կորվինոս մականունը տրուեցաւ (լատինական գօրվուս բառէն որ ագռաւ ըսել է)։ — Ուրիշ Հռոմայեցի մ'ալ՝ Մանլիոս անուն՝ մենամարտելով Գաղղիացի մը սպաննեց և նորա մանեակն առաւ. ուստի զանի Մանլիոս Տորքուատոս (մանեկաւոր) անուանեցին։

Դարձեալ կ'պատմուի թէ այն ատենները՝ երկրաշարժ մը պատահելով՝ Հռոմի հրապարակը մեծ վիհ մը բացուեցաւ, և թէ Հռոմայեցի պատանի մը, Կուրտիոս անուն՝ քուրմերուն հանած պատգամը կատարելու համար՝ իր ձիովը նետուեր է վիհը զրահաւորէն և անմիջապէս վիհն իր վրայ գոցուեր է։

Սամնիացւոց ու Լատինացւոց դէմ պատերազմը. — Սամնիացիք կամ Սամնիոնի բնակիչներն պատերազմասէր ժողովուրդ մ'էին, որ Ապենեան լեռներուն ամենէն բարձր տեղերը (այժմ Աբրուցզա) կ'բնակէին։ Շարունակ մօտակայ երկիրները, և մանաւանդ Կամպանիա կ'ասպատակէին։ Այս երկրին գլխաւոր քաղաքը Կապուան էր, որ մեծ անուն ունէր իր կլիմային քաղցրութեան և բնակիչներուն թուլամորթութեան կողմէ։ Կապուա տեսնելով որ պիտի չկրնայ Սամնիացւոց յարձակումներուն դէմ դնել, Հռոմի պաշտպանութեան ներքև մտաւ։ Այս եղաւ պատճառ երկարատև պատերազմի մ'որ Սամնիտական պատերազմ կոչուեցաւ։ Երբեք Հռոմ այսպիսի հզօր ժողովրդոց դէմ մաքառած չունէր, վասն զի Սամնիացիք քաջութեան կողմէ Հռոմայեցիներէն վար չէին մնար և այնպիսի զօրապետներ ունէին որ Հռոմայեցի զօրապետներու կ'նմանէին։ Ասկից զատ՝ Սամնիական երկիրն՝ որ Տիրենեան ծովէն մինչև Ադրիական ծովը կ'տարածուէր՝ աւելի ընդարձակ էր քան Հռո-

մէջտեղն երկիրը։ Այս երկու ժողովուրդները քաջ դիտէին որ իրենց բաղդն այս պատերազմէն կախումն ունէր, ուստի կատաղաբար իրարու դէմ պատերազմեցան և թէև այս պատերազմը սաստիկ դադար առաւ, դարձեալ յիսուն տարիէ աւելի տևեց։ Յաջողութիւնը երբեմն մէկ կողմն ու երբեմն միւս կողմը կ'դառնար։ Սակայն քիչ քիչ Հռոմայեցիք վրայ պիտի ելնէին իրենց մարտական ճարտարութեամբն՝ երբ Լատինացիք այս պարագաներէն օգուտ քաղելով գլուխ քաշեցին։

Լատինացւոց գանգատն այս էր որ Հռոմայեցիք իրենց դաշնակիցներու վրայ բռնութիւն կը բանեցընէին, և կ'պահանջէին որ Հռոմայեցւոց հետ կառավարութեան գործոց հաւասարապէս մասնակից ըլլին, նոյն իրաւունքը վայելեն և իրենցմէ ընտրուի մէկ հիւպատոսն ու ծերակոյտին կէսը։ Հռոմայեցիք նոցա խնդիրը մերժեցին, և ժամանակ մը Սամնիտացւոց հետ հաշտելով իրենց բոլոր ոյժը Լատինացւոց դէմ դարձուցին։

Մանլիոս Տորքուատոս և Դեկիոս Մուս. — Հռոմայեցիք Լատինացւոց դէմ պատրաստուեցան և Վեզուվ լերան ստորոտը դրին իրենց բանակը, ուր կ'հրամայէին Մանլիոս Տորքուատոս և Դեկիոս Մուս հիւպատոսները։ Երկուքն ալ դիւցազնաբար վարուեցան այս կռուին ժամանակ։ Որովհետև Լատինները լեզուով ու զէնքով շատ նման էին Հռոմայեցւոց՝ Մանլիոս ապսպրեց զօրացն որ կարգ կանոն պահեն և առանց իր հրամա-

նին չշարժին ։ Այնչափ Մանլիոսի որդին Տիտոս տեսնելով որ լատին զօրականներէն մին զինք մենամարտի կ՚հրաւիրէ՝ բանակէն դուրս նորա դէմն ելաւ և զանի սպաննելէն ետև՝ առած կողոպուտն իր հօրը վրանը բերաւ և սմա ընծայեց իբրև իր քաջութեան նշան ։ Բայց Մանլիոս զինուորական կարգն անթերի պահելու և ուրիշներու օրինակ տալու համար հրամայեց որ իր որդին սպաննեն ։ Հռոմէական բանակն անհնարին վիշտ զգաց այս անգթութեան վրայ և այս դիւցազն երիտասարդին յուղարկաւորութիւնը մեծ հանդիսով կատարեց ։

Հռոմայեցւոց և Լատինացւոց մէջ արիւնահեղ պատերազմ մը պիտի սկսէր ։ Պատգամ ելեր էր՝ թէ որ բանակին զօրավարն որ ինքզինք զոհ ընէ՝ նորա ժողովուրդը յաղթութիւնը պիտի տանի ։ Դեկիոս Մուս՝ տեսնելով որ Հռոմայեցիք կ՚սկսին տկարանալ՝ քրմապետին խորհըրդովը՝ սպիտակ հագած՝ ձին հեծաւ և կայծակի պէս թշնամեաց մէջ նետուելով՝ ընկաւ մեռաւ ։ Լատինացիք յաղթուեցան և Հռոմ իր իշխանութիւնն այս անգամ հաստատապէս տարածեց բոլոր մօտակայ ժողովրդոց վրայ ։

Պոնտիոս Հերեննիոս . Կաւդեան Երկժանիք . — Քիչ մ՚ետք՝ Սամնիացիք վերստին սկսան պատերազմը ։ Հռոմէական բանակն անտառուտ բարձր լեռներէ պատած ձորէ մը պիտի անցնէր որ միայն երկու կիրճ ունէր, Կաւդեան Երկժանիք անուամբ, Կաւդիոն քաղաքին մօտ գտնուելուն ։ Երբ Հռոմայեցիք՝ իրենց Վետուրիոս և Պոստումիոս

Հիւպատոսներուն առաջնորդութեամբ այս ձորը մտան՝ որոգայթի մը մէջ բռնուեցան՝ վասն զի միւս կիրճն ահագին ժայռերով գոցուած գտան այնպէս որ պէտք էր կամ անձնատուր լինիլ կամ մեռնիլ։ Պոնտիոս մարդ ղրկեց իր ծերունի հօրն և հարցուց թէ ինչպէս վարուի թշնամիներուն հետ։ Հայրը պատասխանեց. «կամ բոլորն ալ սպաննէ կամ պատուով ետ դարձուր զամենքը. կամ թշնամիները ջնջէ կամ բարեկամ ըրէ զայնս»։ Պոնտիոս միջին ճամբայ մը բռնել ուզեց։ Հռոմայեցի զօրաց կեանքը խնայեց. բայց պատանդներ առնլէն ետև՝ հիւպատոս և զինուոր՝ գրեթէ մերկ՝ լծէ անցուց, մինչդեռ Սամնիացիք նոցա դէմ թշնամանք և հեգնութիւններ կ՚արձակէին։ Հռոմայեցի զինուորներն ամօթապարտ Կապուա քաղաքը գիշերով մտան։ Սակայն Հռոմի ծերակոյտն այս ամօթալի դաշնակցութիւնը մերժեց և զայն կնքող զօրապետները Պոնտիոսի դարձուց որպէս զի իր վրէժը նոցա վրայ թափէ։ Այն ատեն Սամնիացի զօրապետն այս հատուցումն արհամարհելով պահանջեց որ կամ բոլոր հռոմէական բանակն Կոդեան երկքժանիքը ղրկուին և կամ դաշնադրութիւնն անթերի պահուի։ Ծերակոյտն այս առաջարկութեան պատասխան չտուաւ այլ նորէն պատերազմն սկսաւ։

Պապիրիոս Կուրսոր. — Այս պատերազմին մէջ Հռոմայեցիք վրէժխնդրութեամբ վառուած՝ թշնամեաց յաղթեցին Պապիրիոս Կուրսոր հիւպատոսին առաջնորդութեամբը, Ապուլիան նուաճեցին և

այս անգամ Սամնիտացիքը լծէ անցուցին։ Այս կատաղի կռուին վրայ՝ միւս ժողովուրդներն ալ շարժելով Ետրուրացիք Սամնիտացւոց օգնութեան հասան. Հռոմ իր զօրութիւնն աւելցուց։ Ետրուրացիք և Ումբրիացիք Վադիմոն լճին մօտ պարտուեցան։ Սամնիոն քաղաքը կրկին աւերակ դարձաւ։ Սամնիտացիք իրենց հայրենիքէն հալածուելով՝ Իտալիոյ հիւսիսային ժողովուրդներն ոտք հանեցին բայց դարձեալ յաղթուեցան Ետրուրացւոց, Ումբրիացւոց և Գալլիացւոց հետ. կրտսեր Դեկիոսի արիութեամբն որ իր հօրն օրինակին հետևելով ինքզինքն իր հայրենեաց ազատութեան համար զոհեց։ Այնուհետև այլ և այլ ժողովրդոց Հռոմի դէմ ըրած նիզակակցութիւնը կ'կործանի. բոլոր նիզակակից ժողովուրդները կ'հպատակին Սամնիտացւոց հետ և այսպէս կ'վերջանայ պատերազմն որով Հռոմ կեդրոնական Իտալիոյ բոլորովին կ'տիրէ։



## ԳԼՈՒԽ ԻԷ.

Միջանկեալ պատերազմը — Մինչև Փիւնիկեան պատերազմանց

(283—264)

Տարենտոն. — Հռոմայեցիք միջին Իտալիոյ տիրելէն ետև՝ իրենց աչքն հարաւային Իտալիոյ,

վրայ դարձուցին, ուր յոյն գաղթականներ կը բնակէին և Կապուայի բնակիչներուն պէս հանգիստ ու մեղկ կեանք մը կ՚վարէին։ Իտալիոյ այս մասը Մեծն Յունաստան կ՚կոչուէր։ Իր ամենէն մեծ ու զօրաւոր քաղաքը Տարենտոն էր։ Սպարտայի գաղթականութիւն մը, որ բոլորովին իր հայրենի արիասրտութենէ զուրկ էր։ Հռոմայեցիք առենօք դաշինք դրեր էին Տարենտացւոց հետ այնպէս որ բնաւ ցռկանաւ մը մօտակայ ծովածոցը չպիտի ղրկէին։ Այս դաշինքը մոռնալով Հռոմ մօտակայ փոքրիկ քաղքի մ՚օգնելու համար՝ քանի մը նաւերու տորմիղ մը ճամբայ հանեց որ գնաց Տարենտոնի նաւահանգիստն երկաթ նետեց։ Ժողովուրդն՝ այս տեսնելով բողոքեց, հռոմէական ցռկանաւերը ընկղմեց և նաւաստին ջարդեց։ Այս լուրն առնելուն՝ Հռոմ դեսպաններ ղրկեց և հատուցում պահանջեց։ Տարենտացիք դեսպանները կ՚անարգեն և մինչև անգամ մէկը կ՚համարձակի Հռոմայեցիի մը զգեստներն աղտոտել՝ բոլոր խուժանին առջև ծաղր ու ծանակ ընելով։ «Խնդացէք հիմա՝ որչափ կամիք, կ՚պոռայ Հռոմայեցին, վերջէն պիտի լաք երբ այս աղտերն ձեր արիւնովը լուալու սկսիք»։

Պիւռոս Իտալիա կ՚անցնի. — Այս խօսքը տեսակ մը յայտարարութիւն էր պատերազմի։ Տարենտացիք որ վատասիրտ էին և միանգամայն լրբենի, Եպիրոսի Թագաւորը՝ Պիւռոս՝ իրենց օգնութեան կանչեցին։ Այս իշխանն՝ որ զինուորական փառք և յաղթանակներ կ՚փնտռէր, այս

հրաւէրը շուտ մ՚ընդունեց և յարմար առիթ սպասեց Հռոմայեցւոց հետ չափուելու ։ Իր բարեկամը՝ Կինէաս, որ հնարագէտ քաղաքագէտ մ՚էր, ջանաց նորա միտքը փոխել տալու ։ «Հռոմայեցիքը նուաճելէն ետև՝ ի՞նչ ընելու միտք ունիս, հարցուց Պիւռոսի» ։ — «Իտալիան պիտի նուաճեմ» ։ — «Ապա՞» ։ — «Սիկիլիան» ։ — «Եւ ապա՞» ։ — Կարքեդոնը, Ափրիկէն և բոլոր աշխարհը» ։ — «Վերջը ի՞նչ պիտի ընես» ։ — «Ապա պիտի հանգչինք և հանգիստ կեանք պիտի վարենք» ։ — «Բայց, յարեց Կինէաս, ո՞վ կ՚արգիլէ մեզ այժմէն հանգչիլ և վայելել, և ինչո՞ւ համար կ՚ուզես այս վայելքն արիւնահեղութեամբ գնել» ։

*Հերակլէայի ճակատամարտը.* — Պիւռոս չանսաց Կինէասի այս իմաստուն խորհրդին ։ Իտալիա անցաւ՝ իր հետը տանելով մեծ բանակ մը և փիղեր ։ Տարենտացիք խոստացեր էին **300,000** զինուոր պատրաստելու ։ Երբ Պիւռոս Տարենտոն հասաւ և զինուոր մ՚անգամ չգտաւ, քաղաքին բաղանիքն ու թատրոնները գոցեց և նորա զբօսասէր բնակիչները ստիպեց որ զինուին. շատերը խոյս տուին ։ Սակայն Հռոմայեցիք Լեվինոս հիւպատոսին առաջնորդութեամբ կ՚մօտենային ։ Պիւռոս նորա դէմ ելաւ. Երկու բանակներն Հերակլէայի մօտ, Տարենտոնէն քիչ մը հեռու տեղ՝ ճակատեցան ։ Պիւռոս յաղթեց, այս յաղթութիւնն իր փիղերուն կ՚պարտաւորէր, որ Հռոմայեցւոց մէջ խառնակութիւն ձգեցին ։ Կռիւն այնքան կատաղի եղաւ որ թագա-

ւորը գոչեց. «Եթէ ուրիշ այսպիսի յաղթանակ մը տանիմ, Եպիրոս պիտի դառնամ առանց բանակի»։

*Կինէաս հաշտութեան կ'առաջարկէ*. — Պիւռոս կարծեր էր թէ դիւրաւ պիտի յաղթէ Հռոմայեցւոց՝ Իտալիայի ժողովրդոց օգնութեամբ։ Բայց երբ անօգնական մնաց և հռոմէական քաջամարտիկ զօրքը տեսաւ, արժան դատեց հաշտութիւն առաջարկել։ Ուստի Կինէասը Հռոմ ուղարկեց որ ծերակոյտին հետ բանակցի։ Կինէաս շատ ընծաներ կ'տանէր իր հետը ծերակոյտի անդամներուն և նոցա կիներուն համար, բայց չկրցաւ մէկը շահիլ։ Իր ճարտասանութեամբն աւելի դիւրաւ համոզեց և ծերակոյտը խաղաղութիւնն ընդունելու վրայ էր՝ երբ կոյր ծերունի մը՝ Ապպիոս Կղօդիոս՝ ատեանը մտաւ։ Երկար ատենէ 'ի վեր՝ քաղաքական գործերէ հեռու կ'ապրէր նա. բայց երբ ծերակոյտին մէջ անցած դարձածն իմացաւ՝ դեսպակով մը ժողովին եկեր էր։ «Հռոմ, գոչեց նա, չկրնար Պիւռոսի հետ խաղաղութեան վրայ խօսիլ մինչև որ նա Իտալիայէն դուրս չելնէ»։ Այս դոռոզ խօսքերէն Հռոմայեցիք սիրտ առին, որ անմիջապէս հրամայեցին Կինէասին որ նոյն օրը Հռոմէն ելնէ երթայ։ Կինէաս 'ի դարձին կ'ըսէր Պիւռոսին. «Ծերակոյտը թագաւորներու ժողով մ'երևցաւ ինձ»։

*Փաբրիկիոս. Բենեւենտի կռիւը*. — Պիւռոս տեսնելով որ խաղաղութեան համար ըրած ջանքն

ձան, զայն ցիր ու ցան ըրին. Ինքն ևս իր երկիրը գնաց։ Բայց այս իշխանն որ անհանդարտ և բաղդախնդիր բնաւորութիւն մ'ունէր, չէր կրնար խաղաղ կեանք մ'անցրնել։ Ցունաց կուիւներուն մէջ մտաւ և քաղքի մը պաշարման ժամանակ՝ կնկան մը նետած քարէն սպաննուեցաւ։ Իսկ Տարենտոն Հռոմայեցւոց իշխանութեան ներքև մտաւ, և քիչ ատենէն բոլոր Հարաւային Իտալիա նոյն վիճակին ունեցաւ։

Հռոմ. զօրութիւնը. — Հռոմէական հասարակապետութեան ամենէն գեղեցիկ ժամանակն այն դարերն են երբ Սամնիտացւոց, Պիւռոսի և ապա երկու Փիւնիկեան պատերազմունքը կ'պատահին։ Այն ատեն Հռոմայեցւոց կենցաղավարութիւնը պարզ, բարք ու վարքն անաչառ էին, և այնպիսի հաստատուն առաքինութիւններ ունէին որ մեծ ժողովուրդներ յառաջ կ'բերէին. զինուորներն ոչ միայն կարգապահ այլ արիասիրտ էին և հետևապէս անպարտելի կ'դառնային. ամենուն սրտին մէջ հայրենասիրական եռանդը կ'վառէր, որով ազգերն արտաքին յարձակումներու կարող են դիմադրել։ Ամեն տեղ միութիւն կ'տիրէր, վասն զի հաւասարութիւն կար ամեն տեղ. պատրիկութիւնն, այսինքն տոհմական ազնուապետութիւնը պատիւ ունէր, վասն զի առանձին շնորհներ չէր պահանջեր և միայն տաղանդով ու հայրենասիրութեամբ փառաց հասնելու կ'փափաքէր։ — Հռոմէական սահմանադրութիւնն շատ իմաստուն և կենսատու սրամադրութիւններ ունէր. հիւպատոսութեամբ, հրամանատարութեան մէջ միութիւն կար. ծերակոյտով՝ խորհրդոց մէջ փորձառութիւն. ժողովրդով՝ գործի մէջ զօրութիւն։ Օրէնքը ժողովրդեան յարգ կ'ազդէր, կառավարութիւնը՝ կ'ազդէր վստահութիւն։ Կառավարութիւնը լոկ մէկ նպատակ ունէր. տէրութեան օգուտն ու հասարակապետութեան մեծութիւնը։

անարդիւն մնաց՝ նորէն պատերազմի պատրաստուեցաւ։ Յանկարծ Հռոմի վրայ քալելով՝ դրացի ժողովուրդներն ապստամբեցընել և քաղաքին տիրելու փորձ մ'ըրաւ, բայց ընդունայն. վասն զի Լատինացիք օգնութիւն չտուին և Պիւռոս ստիպուեցաւ նահանջել։ Հռոմայեցիք Փաբրիկիոս անուն մարդը ղրկեցին Պիւռոսի որ գերիներուն փրկանքին վրայ խօսի։ Եպիրոսի թագաւորն ամեն հնար 'ի գործ դրաւ որ այս պատգամաւորը որսայ, որ աղքատ այլ վեհանձն ու առաքինի մարդ մ'էր։ Օր մը նամակ մը ստացաւ Պիւռոսի բժշկէն որ կ'առաջարկէր այս իշխանը թունաւորել։ Փաբրիկիոս այս վատութեան վրայ բարկանալով՝ նամակը Պիւռոսի ղրկեց ըսելով թէ այս թագաւորն ոչ բարեկամն և ոչ թշնամին գիտէ ընտրել։ Պիւռոս այս վեհանձնութեան վրայ սքանչանալով՝ առանց փրկանքի ետ ղրկեց Հռոմայեցի գերիները և Փաբրիկիոս, որ հիւպատոս կարգուեր էր, փոխարէնն ընելու համար, նոյնչափ Տարենտացի և Սամնիացի գերիներ Պիւռոսի դարձուց։

Նոյն միջոցին Սիրակուսացիք Պիւռոսն օգնութեան կոչեցին Կարքեդոնացւոց դէմ։ Պիւռոս Սիկիլիա անցաւ, քանի մը յաղթութիւններ տարաւ բայց իր դաշնակիցներուն հետ գժտելով՝ նորէն Իտալիա դարձաւ (Երես 18)։ Այն ատեն վերջին պատերազմ մ'ալ մղեց Հռոմայեցւոց դէմ 'ի Բենեվենդ, որք արդէն փիղերուն սովորած լինելով՝ բնաւ չվախցան և նոցա վրայ բոցավառ սլաքներ տեղացին։ Այս զարհուրած կենդանիներն Պիւռոսի բանակը զար-

ձան, զայն ցեր՝ ու ցան ըրին. Ինքն ևս իր երկիրը գնաց։ Բայց այս իշխանն որ անհանդարտ և բաղդախնդիր բնաւորութիւն մ՚ունէր, չէր կրնար խաղաղ կեանք մ՚անցընել։ Ցունաց կռիւներուն մէջ մտաւ և քաղքի մը պաշարման ժամանակ՝ կնկան մը նետած քարէն սպաննուեցաւ։ Իսկ Տարենտոն Հռոմայեցւոց իշխանութեան ներքև մտաւ. և քիչ ատենէն բոլոր Հարաւային Իտալիա նոյն վիճակին ունեցաւ։

Հռոմի վեհութիւնը. — Հռոմէական հասարակապետութեան ամենէն գեղեցիկ ժամանակն այն դարերն են երբ Սամնիտացւոց, Պիւռոսի և առաջ երկու Փիւնիկեան պատերազմունքը կ'պատահին։ Այն ատեն Հռոմայեցւոց կենցաղավարութիւնը պարզ, բարք ու վարքն անաչառ էին և այնպիսի հաստատուն առաքինութիւններ ունէին որ մեծ ժողովուրդներ յառաջ կ'բերեն. զինուորներն ոչ միայն կարգապահ այլ արիասիրտ էին և հեռատեսը անպարտելի կ'դառնային. ամենուն սրտին մէջ հայրենասիրական եռանդը կ'վառէր, որով ազգերն արտաքին յարձակումներու կարող են դիմադրել։ Ամեն տեղ միութիւն կ'տիրեր, վասն զի հաւասարութիւն կար ամեն տեղ. պատրիկութիւնն, այսինքն տոհմական ազնուապետութիւնը պատիւ ունէր, վասն զի առանձին շնորհներ չէր պահանջեր և միայն առաջնորդով ու հայրենասիրութեամբ փառաց հանելու կ'փափաքէր։ — Հռոմէական սահմանադրութիւնն շատ իմաստուն և կենսատու տրամադրութիւններ ունէր. հիւպատոսութեամբ, հրամանատարութեան մէջ միութիւն կար. ծերակոյտով՝ խորհրդոյ մէջ փորձառութիւն. ժողովրդով՝ գործի մէջ զօրութիւն։ Օրէնքը ժողովրդեան յարգ կ'ազդէր, կառավարութիւնը՝ կ'ազդէր վստահութիւն։ Կառավարութիւնը լոկ մէկ նպատակ ունէր. տէրութեան օգուտն ու հասարակապետութեան մեծութիւնը։

Այս ժամանակն որ ճշմարիտ հայրենասիրութեան ժամանակն է, միանգամայն զինուորական ճշմարիտ փառաց ժամանակն է։ Հռոմ ապագային մէջ աւելի մեծ երկրակալութիւններ պիտի ընէ. բայց երբէք այնքան դիւցազնական պատերազմներ չէ ըրած որքան Սամնիտացւոց և Փիւնիկեան պատերազմաց մէջ։ Այն ատեն ոչ միայն իր բնական տիրապետութիւնը պաշտպանեց Իտալիոյ մէջ, այլ նոյն իսկ իր գոյութիւնը։ Վերջէն միայն երկրակալութեան ծարաւն և անյագ փառասիրութիւն մը գոհ ընելու նպատակաւ պատերազմներ մղեց։

Հռոմի զինուորական և քաղաքական կազմակերպութիւնը. — Հռոմի զինուց փառքը մասնաւորապէս իր զինուորական կազմակերպութեան արդիւնքն էր։ Զինուորական ծառայութիւնն մինչև 46 տարեկան մարդու համար պարտաւորիչ էր. բայց երբ մարտը վերջանար զինուորն իր տունը կ'դառնար։ Քաղաքացի մը չէր կրնար բնաւ դատաւորի պաշտօն վարել եթէ տասն տարի զինուորական ծառայութիւն ըրած չլինէր։ Հռոմէական բանակն լէգէոններէ կ'բաղկանար։ Սովորաբար 3000 հետևակ և 300 ձիաւոր կ'պարունակէր լէգէոնն. վերջէն մինչև 6000 հետևակի և 600 ձիաւորի հասաւ։ Իւրաքանչիւր լէգէոն 10 վաշտ (300էն 600 հոգի) կ'բաժնուէր. վաշտը՝ 3 դասակ (100էն մինչև 200 հոգի). դասակն՝ 2 հարիւրեակ (50էն 100 մարդ)։ Այսպէս լէգէոնը կ'կազմուէր 10 վաշտէ, 30 դասակէ և 40 հարիւրեակէ։

Հռոմէական տիրապետութիւնն որ զինու զօրութեամբ ծագեր էր, ճարտար քաղաքականութեամբ մը հաստատութիւն գտեր էր։ Հռոմ գիտէր զիջումներ ընել յարմար ատեն յաղթուածներուն։ Շատ քաղաքներ քաղաքապետութեան իրաւունք ունէին, այսինքն՝ եթէ նոցա բնակիչներն Հռոմ հաստատուէին, Հռոմայեցի քաղաքացիներուն բոլոր իրաւունքը կ'վայելէին։ Կային ուրիշ քաղաքներ ալ, որ ինքնօրէն կ'կոչուէին, և իրենց ներքին վարչութիւնն ու այլ և այլ արտօնութիւններ կը վայելէին։ Վերջապէս ուր որ Հռոմ տիրէր՝ գաղթակա-

նութիւններ ալ կ'հաստատէր, այսինքն օտար բնակիչներ կամ հին զինուորներ կ'ուղարկէր նուաճեալ երկիրներն որ յաղթուողներէն հողեր կ'առանային: Ուստի Հռոմէական գաղթականութիւններն տեսակ մը զինուորական պահակոցներ էին որ ապստամբութեանց առաջն առնլու կ'օգնէին: Այս զանազան պահակոցներն երկայն զինուորական ճամբաներով կապուած էին, որով Հռոմայեցիք կարող կ'ըլլէին շուտ մը զօրք իջեցնել վտանգաւոր տեղերը: Այսպէս ճշմարիտ պատուարներ էին գաղթականներն Հռոմի համար, որոց եռեւէն կրնար դիմադրաւել թշնամիներուն: Մանաւանդ այս պատուարին շնորհիւն է որ Հռոմ Պիւռոսի դիմացաւ և Աննիբալին բոլոր յարձակումներուն դէմ դնելու սիրտ յաջողի:

Հասարակապետութեան ժամանակ Հռոմի քաղաքական դրութիւնը. — Հռոմի հասարակապետութիւնը կէս մը ժողովրդապետութիւն և կէս մը ազնուապետութիւն էր: Հռոմի պատմութեան մէջ երկու դասու, այսինքն ազնուական և ռամիկ դասուն կռիւներն մեծ և նշանաւոր տեղ կը բռնեն: Այս պայքարին մէջ հասարակ ժողովուրդը դար ու կէս շարունակ դիմադրեց պատրիկներուն և յաղթանակը տարաւ: Այս յաղթութիւնը բնական և անհրաժեշտ էր. վասն զի 'ի բնէ Հռոմ հանրապետական էր: Թագաւորներու ժամանակն անգամ բուն վեհապետութիւնը ժողովրդեան ձեռքն էր: Երբոր թագաւորութիւնը կործանեցաւ՝ ժողովուրդը ճշմարիտ վեհապետ մնաց և դարէ դար այս վեհապետական իշխանութիւնը մեծցաւ:

Հռոմի ժողովուրդն իր վեհապետութիւնն ազգային ժողովներու միջոցաւ կ'գործադրէր: Դատաւորներ և պաշտօնաւորներ կ'ընտրէր, ծանր ու կարեւոր գործոց մասին վճիռ կ'տար: Այս ժողովներն Արեսեան դաշտը կ'գումարուէին, որ ընդարձակ հրապարակ մ'էր Տիբեր գետին մօտ, ուր Հռոմայեցիք իրենց մարմնամարզական ու զինուորական վարժութիւնները կ'կատարէին: Սոքա կ'ընտրէին ամէն բարձր պաշտօնականներն, ինչպէս հիւպատոս, իշխանապետ և այլն:

սահմանուած էին։ Իրենց պաշտօնն էր ռամկանութիւն, Հասարակային շինուածոց պահպանութիւն և Հասարակաց խաղերուն կարգադրութիւն։ Որովհետև այս խաղերն իրենց ծախքովը կ՚ըլլէին մեծ մասամբ և շատ մեծագին էին, վերջէն երկու նոր շինուածապետ ևս կարգեցին պատրիկներէն առնլով։ Այն ատեն երկու տեսակ շինուածապետներ եղան, պատրիկ շինուածապետներ և ժողովրդային շինուածապետներ։ Առաջինները յատկապէս մեծ հանդէսները կարգադրելու պաշտօն ունէին, որ ատեն ահագին ծախքեր կ՚պատճառէին. բայց իրենց համար այս ծախքերն ժողովրդեան սիրտը շահելու միջոց մ՚էին որպէսզի համարակալութեան հասնին։

Տրիբունները առաջ երկու հոգի էին, ապա հինգ, վերջը տասն հոգի եղան։ Այս պաշտօնաւորները հաստատուեցան ժողովուրդն ազնուականաց հարստահարութեան դէմ պաշտպանելու համար։ Իրենց անձը նուիրական և անբռնաբարելի էր։ Ի սկզբան բնաւ իրաւունք չունէին ծերակոյտին վճիռներն ուղղակի ջնջելու, բայց կարող էին միայն բարեխօսել քաղաքացիի մը համար որ զինուորական ծառայութեան կամ տուրքի մը ենթարկուելու վտանգի մէջ կ՚գտնուէր։ Այս պարագայից մէջ տրիբունն դատաւորին վճիռը կ՚արգիլէր պարզապէս Վէտօ (արգելում) բառն արտասանելով։ Իրաւ է որ զօրաժողովի կամ հարկերու մասին ծերակոյտին ըրած որոշումներն այս արգելքով առ ոչ ինչ կ՚գրուէին, բայց քիչ քիչ տրիբուններուն իշխանութիւնը մեծցաւ և իրենց միջամտութեան իրաւունքով կամ Վէտօյով կարող եղան մինչև անգամ ծերակոյտին բոլոր վճիռներն, նոյնպէս վարչութեան ամեն գործողութիւններն ուղղակի արգիլել։ Իրաւունք ստացան նաև ծերակոյտն 'ի ժողով գումարելու։ Ի վերջէ տրիբունութիւնն Հռոմի ժողովրդեան ամենէն կարևոր պաշտօնավարութիւնը դարձաւ։ Ստէպ շատ մեծ ծառայութիւններ մատոյց Հասարակապետութեան, մանաւանդ առաջին դարերու մէջ. սակայն վերջէն տրիբուններուն փառասիրութեամբն հռոմէական փառաւոր հանրապետութիւնն անժգալի ռամկապետութիւն մը դարձաւ, որով մե-

ծանր անկարգութիւններ տեղի ունեցան և միապետութեան հաստատուելուն պատճառ եղան։

Գուէսթորները յատկապէս ելից ու մտից մատակարարութեան պաշտօնը կ'վարէին։ Նախ երկու հոգի էին, վերջէն իրենց թիւն մինչև քսան հասաւ։ Ոմանք Հռոմ կ'մնային, մէկ քանին հիւպատոսներուն հետ բանակը կ'երթային, ուրիշներ ալ՝ փոխ—հիւպատոսներուն հետ գաւառները կ'մնային։

Երբոր Հռոմայեցիք Իտալիայէն դուրս աշխարհակալութիւններ ըրին, նուաճեալ երկիրները նահանգներու բաժնեցին։ Երկար ատեն այս գաւառները կառավարողները եղան հիւպատոսներն և մանաւանդ իրաւատեսները։ Սակայն երբ հետզհետէ գաւառներուն թիւը շատցաւ, յատուկ կողմնակալներ կարգեցին, որ փոխ—հիւպատոս կամ փոխ—իրաւատես կոչուեցան, վասն զի իբրև տեղակալ հիւպատոսի և իրաւատեսի կ'վարէին իրենց պաշտօնը։ Այս պաշտօնները կառավարելու համար՝ պէտք էր նախ հիւպատոս կամ իրաւատես եղած ըլլալ։ Փոխ—հիւպատոսին կամ փոխ—իրաւատեսին հետ միշտ գանձապետ մը կ'գտնուէր՝ որ գաւառին ելմտական գործերով կ'զբաղէր։

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Փիւնիկեան պատերազմունք—մինչև Մակեդոնիոյ նուաճումը։

### (264—194)։

Պատերազմին սկիզբը. — Առաջին Փիւնիկեան պատերազմին պատճառը Մամերտացիք եղան (եր. 19)։ Սոքա վարձկան զինուորներ էին որ

Հռոմայեցւոց օգնութիւնը խնդրեցին Կարքեդոնացւոց և Սիրակուսայի Հիերոն թագաւորին դէմ. Հռոմայեցիք զօրք ղրկեցին Միկիլիա և ստիպեցին Հիերոն թագաւորն հաշտութեան։ Բայց Միկիլիայէն Կարքեդոնացիքը վանելու համար, պէտք էր նոցա ծովեզրեայ քաղաքներն առնուլ և նաւատորմիղ մ'ունենալ։ Այս նպատակին հասնելու համար՝ ծերակոյտն ամէն ջիգ թափեց։ Կարքեդոնացի նաւ մը ծովեզրը նաւաբեկեր էր. զայն օրինակ առնլով՝ Հռոմայեցիք 120 հատ նաւ շինեցին երկու ամսուան մէջ՝ և որպէս զի թշնամւոյն ծովային ճարտարութիւնն ապարդիւն մնայ՝ Դուիլիոս հիւպատոսն իր նաւերուն առաջքին վրայ ագռաւ անուն գործիք մը դնել տուաւ։ Այս գործիքը տեսակ մը շարժական կամուրջ մ'էր որ յանկարծ թշնամի նաւուն վրայ կ'ընկնէր և կ'ստիպէր որ ճակատ առ ճակատ պատերազմի՝ ինչպէս ցամաքի վրայ։ Կարքեդոնացիք՝ որ կարծէին թէ ծովային պատերազմի մէջ անյաղթելի են, յաղթուեցան, շատ մարդիկ ու նաւեր կորուսին Լիպարեան կղզիներուն մօտ։ Այս յաղթութեան լուրը մեծ խնդութիւն պատճառեց Հռոմի մէջ՝ և Հռոմայեցիք անսովոր պատիւներ ըրին Դուիլիոսի, որ հրապարակին վրայ յաղթական կոթող մ'ունեցաւ և երբ իրիկունները դուրս ելնէր՝ իր առջևէն ջահընկալներ և նուագածուներ կ'երթային։

**Ռեգուլոս Կարքեդոնի առջև**. — Ծովու ու ցամաքի վրայ ուրիշ յաղթանակներ տանելէն ետև՝ ծերակոյտն աւելի յանդուգն գործի մը ձեռն-

արկեց ։ Ռեգուլոս Հիւպատոսին մեծ բանակ մը և նաւատորմիղ մը յանձնեց որ Ափրիկէ անցնի և Կարքեդոնը նուաճէ ։ Ռեգուլոս 'ի սկզբան կը յաջողի , բազմաթիւ քաղաքներ , մինչև անգամ Թունուզ անձնատուր կ'ըլլին և շատ գերի ու կողոպուտ ձեռք ձգելէն ետև՝ Կարքեդոնը կը պաշարէ ։ Սակայն երբ իր պաշտօնին պայմանաժամը հասաւ Ռեգուլոս ուզեց հրաժարիլ ։ Իմացեր էր որ իր արտը մշակելու համար բռնած ագարակապանը կովերովն ու արօրովը խոյս տուեր է , և կ'վախնար որ կինն ու որդիքը չքաւորութեան մէջ չմնան ։ Ծերակոյտը պատասխանեց որ իր դաշտը պիտի մշակուի , և ընտանիքը տէրութեան գանձէն պիտի խնամուի , ուստի զանի նորէն իր պաշտօնին մէջ վերահաստատեց ։ Բայց Կարքեդոն՝ նեղն ընկած՝ ուզեց հաշտութիւն ընել . միայն Ռեգուլոսի պայմանները այնքան ծանր են որ չեն ընդունուիր ։ Նոյն միջոցին՝ սպարտացի զօրապետ մը՝ Քսանթիպ անուն՝ յոյն վարձկան զինուորներով հասաւ , Կարքեդոնացւոց սիրտ տուաւ , նոցա զինուորները քանի մը կռիւներու մէջ մարզեց . հռոմէական բանակին պաշար գալու արգիլեց և վերջապէս հնարքով մը զայն դաշտի մը մէջ ձգելով՝ յաղթեց և բազմաթիւ զինուորներու հետ Ռեգուլոսն ալ գերի բռնեց ։ Այնուհետև Կարքեդոնացիք Պալերմօի մօտ ծովային պատերազմի մէջ յաղթուելով՝ ուզեցին Հռոմայեցւոց հետ հաշտուիլ . ուստի Ռեգուլոսն՝ որ բանտն էր չորս տարիէ 'ի վեր՝ Հռոմ ղրկեցին որ խաղաղութեան վրայ բանակցի և գերիներու փո-

խանակութիւն առաջարկէ, այս պայմանաւ որ եթէ չյաջողի՝ նորէն վերադառնայ։ Ռեգուլոս խօսք տուաւ, և գնաց Հռոմ։ Սակայն երբ ծերակոյտին առջևն ելաւ, այս նշանաւոր հայրենասէր մարդը, իր անձնական շահն ու ընտանիքը մոռնալով՝ յորդորեց ծերակոյտն որ պատերազմը շարունակէ Կարքեդոնացւոց դէմ։ Յետոյ՝ իր տուած խօսքին հաւատարիմ, Ռեգուլոս շուտ Աֆրիկէ դարձաւ՝ մերժելով իր ընտանեաց մօտ քանի մ՚օր անցընելու։ «Ես իմ անձիս տէրը չեմ, ըսաւ, և խօսք տուի դառնալ իմ պաշտօնս աւարտելէն ետև»։ Կ՚ըսեն թէ երբ Ռեգուլոս Կարքեդոն մտաւ՝ սոսկալի տանջանօք սպաննուեցաւ, թէև այս դէպքը բոլորովին ստուգուած չէ։

Այնուհետև կռիւն երկար տարիներ տևեց։ Կարքեդոնացիք Ամիլքար Բարքասն զօրաց սպարապետ կարգեցին, որ Աննիբալի հայրն էր։ Այս Ամիլքար բաւական ատեն հռոմէական զօրաց դիմադրեց և նշանաւոր յաղթութիւններ տարաւ։ Սիկիլիոյ Էրիքս քաղաքն առաւ՝ որ շատ բարձր ու ամուր դիրք մ՚ունէր, և նոյն տեղէն սաստիկ հռոմէական զօրաց մեծ վնասներ հասուց։ Այն ատեն՝ Հռոմ մեծ ճիգ մ՚ըրաւ. քաղաքացիք հանգանակութեամբ նոր նաւատորմիղ մը շինել տալու ելան։ Լուտատիոս Կատուլոս հիւպատոսը Եգատեան կղզիներուն մօտ փառաւոր յաղթութիւն մը տարաւ՝ այնպէս որ Հռոմայեցիք նորէն ծովուն տէր եղան։ Ամիլքար այսպէս Սիկիլիոյ մէջ փակուած մնալով՝ խաղաղութիւն առաջարկեց, որ վերջապէս կնքուեցաւ։ Կարքե-

դոն Սիկիլեան Հռոմայեցւոց թողուց և պատերազմի ծախքը վճարեց։ — Այսպէս լմնցաւ Փիւնիկեան առաջին պատերազմը, որով Հռոմէական պետութիւնն իր սահմաններն Իտալիայէն անդին տարածեց։

Երկրորդ Փիւնիկեան պատերազմը. — Կարքեդոնացւոց անուանի զօրապետ՝ Աննիբալ՝ Ամիլկար Բարկասի որդին՝ պատերազմական մեծ հանճար և անվեհեր բնաւորութիւն մ'ունէր։ Մանկութենէ չարքաշութեան վարժած ըլլալով իր մարմինը ցուրտի, տաքի և ամեն տեսակ նեղութեանց կ'տոկար։ Աննկուն, յանդուգն և հնարագէտ էր Աննիբալ և Հռոմայեցւոց դէմ անչափ ատելութիւն ունէր։ Թէև իր բանակն ազը և այլ ազգաց վարձկաններէ կ'բաղկանար, սակայն այնպէս լաւ գիտէր նոցա հետ վարուիլ որ ամենքը զինք կ'պաշտէին։ Իր թշնամիներն անգամ կ'սքանչանային նորա հնարագիտութեան և արիութեան վրայ։

Սագոնդոնի առումը. — Աննիբալ դեռ քսան հինգ տարեկան էր՝ երբոր Կարքեդոնացի զօրաց հրամանատար եղաւ։ Իր միակ փափաքն ու փառասիրութիւնն էր Հռոմի հասարակապետութիւնը կործանել։ Իր հայրենակիցներէն շատերը կռիւներէ տաղտկացած ըլլալով խաղաղութիւնն անվրդով պահել կ'ուզէին։ Այս բանս Աննիբալի գործին չէր գար։ Ուստի միտքը դրաւ պատերազմի գրգիռ մը գտնել և գնաց Սպանիոյ Սագոնդոն քաղաքը պաշարեց որ Հռոմի

դաշնակից էր ։ Հռոմայեցի դեսպաններ եկան և բողոքեցին նորա դէմ որ դաշնադրութեանց դէմ կ'վարուի ։ Աննիբալ այդ դեսպանները Կարքեդոն ղրկեց ծերակոյտին և Սագոնդոնի պաշարումն յառաջ տարաւ, այնպէս որ ութ ամիս յուսահատօրէն կռուելէն ետև քաղաքն անձնատուր եղաւ ։ Բնակիչներն իրենց ինչքը փայտակոյտի մը վրայ դիզեցին, և կրակ տալով՝ շատ մարդիկ բոցերուն մէջ նետուեցան . Սագոնդոնը հիմնայատակ ըրաւ Աննիբալ ։ Երբ այս լուրն առին Հռոմի դեսպաններն՝ որ դեռ Կարքեդոն էին՝ հատուցում խնդրեցին ։ Պահանջեցին որ Աննիբալն իրենց ձեռքը յանձնեն, որ խաղաղութեան դաշանց դէմ վարուեր էր ։ Ծերակոյտն ինչ ընելիքը չգիտէր ։ Այն ատեն դեսպաններէն մին՝ Փաբիոս՝ իր պատմուճանին ծայրը վերցուց և ըսաւ . «Ահա այս պատմուճանիս մէջ ձեզի խաղաղութիւն կամ պատերազմ կ'բերեմ, ընտրեցէք ։ — Դու ընտրէ, գոչեց ծերակոյտը ։ — Լաւ ուրեմն, ես ձեզի պատերազմ կ'բերեմ» պատասխանեց Փաբիոս և պատմուճանին ծայրը թօթուեց ։

Ալպեանց անցքը . — Արդարև պատերազմը սկսաւ, որու նմանն քիչ կայ հին պատմութեան մէջ ։ Երկու կողմէ մի և նոյն եռանդով պատրաստութիւններ կ'տեսնուին ։ Աննիբալ բանակ մ'ունէր 60,000 հոգւոյ և քառասունի չափ փիղեր ։ Իբերոս գետէն և Պիրէնեան լեռներուն մէջէն կ'անցնի և Հռենոսի եզերքը կը հասնի, մինչդեռ Հռոմայեցիք կարծեն թէ դեռ

նա Սպանիա է , և Ալպեան լեռներու ստորոտը կ՚մօտենայ , անդադար թշնամիներու դիմադրելով և կիրճերէ ու անդունդներէ արգիլուելով ։ Սակայն Աննիբալ այս ամեն խոչնդոտներու յաղթելով՝ կ՚հասնի Փոքր Ս. Պեռնարի կամ Սընէր գագաթը ։ Իր զօրքն որ սաստիկ յոգնած էր՝ երկու օր կ՚հանգստանայ ։ Լեռին գագաթէն վար իջնելու համար աւելի մեծ դժուարութեանց կը հանդիպի ։ Ահագին ձիւնի կոյտեր իր ճամբան կ՚գոցէին . մարդիկ ու ձիեր կ՚սահէին և անդունդը կ՚գլորէին ։ Անգամ մը՝ ժայռեր ու ձիւներ իբրև պատուար իր առջևն ելան և հարկ եղաւ երեք օր սպասել և ամեն հնարք 'ի գործ դնել անցք մը բանալու համար ։ Կարքեդոնացիք սկսեր էին վհատիլ . վերջապէս վերջին զառիթափներն հասան և Աննիբալ իր զօրաց Իտալիոյ դաշտերն և Հռոմի ճամբան ցոյց տուաւ խնդութեամբ ։ Ահա այսպէս կատարեց Աննիբալ հին ժամանակուան ամենէն նշանաւոր մէկ արշաւանքը ։ Սակայն Կարքեդոնացի զօրապետն իր բանակին գրեթէ կէսը ճամբան կորուսեր էր ։

**Առաջին յաղթութիւններ** . — Բօի դաշտին ժողովուրդներն՝ որ քիչ առենէ 'ի վեր՝ Հռոմի հպատակեր էին , իբրև ազատարար ընդունեցան Աննիբալը ։ Երկու հիւպատոսներն փութով հասեր էին որպէս զի անոր ճամբան կտրեն Ալպեան լեռներէն իջնելու առենը ։ Բայց մին՝ Կորնէլիոս Սկիպիոն հիւպատոսը՝ յաղթուեցաւ և Տէսինի գետին մօտ կարեվէր վէրք մ՚առաւ . միւսն՝ մեծ ճակատամարտի մը մէջ Տրեբիա գե-

տին եղերքը բոլորովին յաղթուեցաւ։ — Հետևեալ տարին Աննիբալ Ապենինեան լեռներէն անցաւ մեծ դժուարութեամբ։ Հիւանդութիւններէն բանակին մեծ մասը կորաւ, ինքն ալ աչքին մէկը կորոյս։ Երբոր Ետրուրիա հասաւ Տրազիմենեան լճին մօտ՝ Ֆլամինիոս հիւպատոսին հանդիպեցաւ, որ անձնապաստան զօրապետ մ'էր և Աննիբալի հնարքով կիրճերու մէջ ընկաւ։ Հռոմայեցիք չորս կողմէն պաշարուելով՝ բոլորովին յաղթուեցան։ Տրազիմէնի փառաւոր յաղթութիւնը Հռոմի ճամբան կ'բանար Աննիբալի առջև։ Բայց Կարքեդոնացի զօրապետը բաւական զօրք չունէր, կամ կ'ուզէր որ միջին Իտալիոյ բնակիչներն Հռոմի դէմ ապստամբեցընէ, ուստի դէպ 'ի Սամնիոն և Ապուլիա գնաց։

Փաբիոս դանդաղկոտ. — Այս ձախորդութիւններէն ետք՝ Հռոմի ծերակոյտն իշխանապետ անուանեց նշանաւոր պատրիկ մը, Փաբիոսն, որ դանդաղկոտ կոչուեցաւ, վասն զի՝ ժամանակ շահելու և քիչ քիչ թշնամին տկարացընելու համար միջոցներ կ'փնտռէր և մեծ ճակատամարտէ կ'զգուշանար։ Աննիբալի հեծելազօրէն վախնալով՝ բարձր տեղեր բանակը կ'դնէր, ամեն ատեն յարձակումներ կ'ընէր ու կ'քաշուէր, շարունակ թշնամին կ'նեղէր և փոքր առ փոքր կը կոտորէր։ Պարապ տեղն Աննիբալ կ'ջանար բաց դաշտի մէջ զանի հնարքով մը բերել ձգել, պարապ տեղը Կարքեդոնացի զինուորներն Հռոմայեցիքը կ'նախատէին ու կ'ծաղրէին, Փաբիոս փոյթ չէր ըներ և իր զգուշաւոր ընթացքը կը

շարունակէր։ Օրին մէկն իր ճարտար շարժումներով՝ Կարքեդոնացիքը կիրճի մը մէջ ձգեց այնպէս որ դուրսին պիտի լինէր զայնս ջնջել, եթէ Աննիբալ իր հնարագիտութեամբն նոյն յուսահատ վիճակէն ազատելու ճար մը չգտնէր։ Մի շատ եզներու եղջիւրներէն խուրձեր կապեց բունկցուց և Հռոմայեցւոց վրայ քշեց։ Կենդանիներն բոցերէն կատղելով՝ դէպ 'ի կիրճը վազեցին և ահ ու սարսափ ազդեցին, այնպէս որ Փաբիոս իր դիրքը ձգեց և ստիպուեցաւ թողուլ որ Կարքեդոնացիք խոյս տան։

Կաննեայ ճակատամարտը։ — Հռոմի ժողովուրդը կ'գանգատէր որ պատերազմը կ'երկարէր, Աննիբալ օր ըստ օրէ կ'յառաջանար, և Փաբիոսն իբրև երկչոտ ու վատ կ'ամբաստանէր։ Վեց ամսէն ետք՝ իշխանապետն իր պաշտօնէն քաշուեցաւ և այն ատեն ժողովուրդը Պօղոս Էմիլիոս հիւպատոսին պաշտօնակից ընտրեց ստորին կարգէ մարդ մը՝ Տերենտիոս Վարոն անուն։ Առաջինը կ'ուզէր որ Փաբիոսին ընթացքը բռնէ, Աննիբալի հետ վճռական կռուի մը չբռնուի, մինչդեռ երկրորդն՝ որ մնապարծ և անձնապաստան էր, կ'փափաքէր ճակատ տալ, պարծենալով որ կրնար մէկ հարուածով թշնամին խորտակել։ Ամեն մէկ հիւպատոս կարգաւ մէկ օր կ'հրամայէր զօրաց։ Երբոր Վարոնի կարգն եկաւ՝ բանակն առաւ ու գնաց Կաննեայ աւանին մօտ՝ ընդարձակ դաշտի մը վրայ զայն յարդարեց։ Աննիբալի ուզածն ալ այս էր։ Շուտ մը իր զօրքը շարեց և պատերազմն սկսաւ։ Երկու

կողմէն կատաղօրէն կռուեցան երեք ժամ ։ Վարոնի զօրքը գրեթէ բոլորովին ջնջուեցաւ․ 70000 Հռոմայեցի պատերազմի դաշտին վրայ ընկան, և բազմաթիւ գերի բռնուեցան ։ Թէև Կարքեդոնացիք այս պատերազմին մէջ ալ Հռոմայեցւոց չափ զօրք չունէին, սակայն իրենց հեծելազօրը գերազանց էր ։ Պօղոս Էմիլիոս այս պարտութեան վրայ ինքզինք սպաննեց․ իսկ Վարոն փախաւ ։

Կաննեսի ճակատամարտը չարաշուք օր մ'եղաւ Հռոմի համար, ինչպէս եղեր էր Ալլիայի ճակատամարտը (եր. 209) ։ Այս պարտութեան լուրը Հռոմ հասնելուն՝ բոլոր Հռոմայեցիք սոսկալի վհատութեան մէջ ընկան, շատերը խոյս տալու կ'պատրաստուէին, բայց վերստին հայրենասիրական եռանդը բոլոր սիրտերը բորբոքեց․ կուսակցութիւններն իրարու միացան, և երբոր Վարոն՝ այս աղէտից հեղինակն՝ իր մնացած զօրքը ժողվելով Հռոմ վերադարձաւ՝ բոլոր ծերակոյտը զայն դիմաւորեց և շնորհակալ եղաւ նմա որ հասարակապետութեան ազատութեան վրայ դեռ յոյսը չէր կտրած ։ Հետևապէս ամեն միջոց 'ի գործ դրուեցաւ թշնամին վանելու ։ Հռոմայեցիք վախցան որ Աննիբալ Հռոմի վրայ չքալէ ։ Կ'ըսեն թէ իր զօրապետներէն մին առաջարկեր է նոյն իրիկունը քաղքին վրայ յարձակիլ և իր հեծելազօրով զայն առնուլ ։ Բայց Աննիբալ որ շատ կ'ճանչէր իր հակառակորդաց հայրենասիրութիւնն ու արիութիւնն, այդ առաջարկութիւնը վտանգաւոր սեպեց ։ Իր նպատակն էր հիւսիսային Իտալիան

Հռոմի դէմ ոտք հանել։ Անկից զատ՝ իր բանակը տկարացած յոգնած էր ու հանգստանալու պէտք ունէր։ Ուստի զայն Կապուա տարաւ ձմեռն անցընելու համար։

*Մարկելլոս. Սիրակուսայի առումը.* — Կարքեդոնական բանակը Կապուա քաղքին զուարճութեանց մէջ իր արիութիւնը կորոյս։ Աննիբալ Կարքեդոնէն օգնութիւն խնդրեց. Սպանիայէն զօրք ղրկուեցաւ իրեն, բայց Հռոմայեցիք թող չտուին որ այն օգնութիւնն Աննիբալի հասնի։ Այն ատեն Կարքեդոնացի զօրապետը հայրենիքէն յոյսը կտրած՝ իտալացի ժողովրդոց դիմեց, բայց սոքա ևս իրեն աջակից չեղան։ Սիրակուսա՝ Հիէրոն թագաւորին մահուանէ ետք՝ Կարքեդոնի նիզակակից եղաւ, նոյնպէս Մակեդոնիոյ Փիլիպպոս թագաւորը խոսք տուաւ Աննիբալի օգնել։ Բայց Մարկելլոս հռոմայեցի հիւպատոսը Սիրակուսան պաշարեց։ Արքիմեդէս երևելի երկրաչափն ու բնագէտն այս քաղաքն երեք տարի պաշտպանեց։ Արքիմեդէս մեքենաներ հնարելով թշնամիներուն վրայ նետեր ու քարեր կ՚թափէր, հայելիներ իրարու մօտ շարելով հեռուէն նոցա նաւերը կ՚այրէր։ Բայց վերջապէս, Հռոմայեցիք Սիրակուսան առին և բոլոր բնակիչները սուրէ անցուցին։ Մարկելլոս հրամայեր էր որ Արքիմեդէսը խնայեն, որ երկրաչափական խնդիր մը լուծելու զբաղած միջոցին՝ սպաննուեցաւ։ Մակեդոնիոյ Փիլիպպոս թագաւորին կողմէ գալիք օգնութիւնն ալ ապարդիւն մնաց Աննիբալի համար։ Այս իշխանն այն-

պէս դանդաղ կերպով պատերազմի պատրաստութիւններն ըրաւ՝ որ Հռոմայեցիք իրմէ Ճարպիկ բրդան և Լիւրիկէ հանելով, նորա բանակը զարկին և 'ի փախուստ դարձուցին, իր նաւատորմն այրեցին եւս։

**Փաբիոս դանդաղկոտ. Կապուայի և Տարենդոնի առումը.** — Նոյն միջոցին Աննիբալ հարաւային Իտալիոյ մէջ կ'մաքառէր Փաբիոս դանդաղկոտի դէմ, որ աւելի բազմաթիւ զօրաց կ'հրամայէր։ Կապուա քաղաքը դեռ Կարքեդոնացւոց ձեռքն էր։ Հռոմայեցիք եկան այս քաղաքը պաշարեցին. Աննիբալ ամեն ճիգը թափեց որ զայն ազատէ։ Մի անգամ Տարենտոնն առաւ, ուրիշ անգամ մ'երկու հիւպատոսները վանեց։ Մինչև անգամ Հռոմ քաղաքն առնլու համար յանկարծ նորա վրայ քալեց, բայց չկրցաւ բան մը ընել և ստիպուեցաւ ետ դառնալ։ Այս պարտութեան վրայ Կապուան ալ կորոյս։ Հռոմայեցիք սոսկալի վրէժխնդրութեամբ վարուեցան Կապուացւոց հետ։ Բոլոր մեծամեծները մահուան դատապարտեցին, ժողովուրդն ալ իբրև գերի ծախեցին։ Տարենտոն ալ նոյն բաղդն ունեցաւ։ Փաբիոս դանդաղկոտն այս քաղաքը նորէն առնլով բոլոր բնակիչները գերի վարեց։

**Ասդրուպալի պարտութիւնը.** — Թէև այսպէս Աննիբալ օրէ օր կ'տկարանար, բայց Հռոմայեցւոց դէմ իր պայքարն անդուլ կ'շարունակէր։ Անգամ մը Մարկելլոսն որոգայթը ձգեց, այս զօրապետն՝ որ **Հռոմի սուսերը** կ'կոչուէր, և

զայն սպաննեց ։ Վերջապէս Աննիբալի եղբայրն Ասդրուպաղ Սպանիայէն օգնական զօրք բերելու յաջողեցաւ՝ Գալլիայէն և Ալպեան լեռներէն անցնելով իրեն պէս, բայց Իտալիոյ հիւսիսային կողմը՝ Մետաւրոս գետին եզերքն Հռոմայեցւոց հանդիպելով՝ յաղթուեցաւ և պատերազմին մէջ ընկաւ մեռաւ ։ Հռոմայեցիք նորա գլուխն Աննիբալի բանակը նետեցին ։ Կարքեդոնացի զօրապետն իր վերջին յոյսն ալ 'ի դերև ելած տեսնելով սրտաց պաղութեամբ. «Ահա կ'տեսնեմ որ Կարքեդոնի բաղդին յաղթել կարելի չէ» ։ Սակայն դարձեալ նա կռիւը կը շարունակէր դիւցազնաբար ։

Զամայի ճակատամարտը. — Այսպէս Աննիբալ անդադար կռուելու ատեն Իտալիոյ մէջ՝ Կոռնելիոս Սկիպիոն Սպանիան կ'նուաճէր և Կարքեդոնացւոց իշխանութիւնն այն տեղ կործանելէն ետև՝ այս նորահասակ և արիասիրտ զօրապետն առօք փառօք Հռոմ կ'դառնար ։ Ժողովուրդն իսկոյն զայն հիւպատոս կ'անուանէ. Այն ատեն Սկիպիոն կ'առաջարկէ ծերակոյտին որ Ափրիկէ անցնի և Կարքեդոնը զարնէ. այս արշաւանքն ընելով կ'ուզէր ստիպել Աննիբալն որ Իտալիայէն ելնէ ։ Բայց ծերակոյտն այս յանդուգն ձեռնարկութեան հաւանութիւն չտուաւ ։ Այլ միայն թողուց որ Սկիպիոն Սիկիլիա անցնի և արշաւանքը պատրաստէ ։ Սկիպիոն շատ մը կամաւոր զօրք և Կաննեսի փախստականները ժողովեց ու բանակ մը կազմեց ։ Հետևեալ տարին Ափրիկէ անցաւ, և Նումիդացւոց Մասինիսա

իշխանին աջակցութեամբ Կարքեդոնացւոց յաղթեց։ Կարքեդոնի ծերակոյտը վտանգը տեսնելով՝ ահ ու դողի մէջ ընկաւ և իսկոյն հրաման ղրկեց Աննիբալի որ զօրքն առնէ և հայրենիքն ազատելու երթայ։ Աննիբալ իր փառաց ասպարէզն ակամայ թողուց և Կարքեդոն դառնալու փութաց։ Սակայն պատերազմ մղելէն առաջ Սկիպիոնի հետ տեսութիւն ըրաւ որպէս զի հաշտութեան վրայ բանակցի նորա հետ։ Հռոմայեցի զօրապետն այնպիսի ծանր պայմաններ առաջարկեց որ Աննիբալ մերժեց։ Ահա այն ատեն այն սոսկալի ճակատամարտը տեղի ունեցաւ Զամայէ դաշտերուն վրայ՝ որու ելքն երկու մեծ ժողովրդեան ապագան պիտի վճռէր։ Աննիբալ յաղթուելով՝ Կարքեդոն քաշուեցաւ, որմէ իր մանկութենէ 'ի վեր հեռացեր էր Իտալիոյ տիրելու յուսով։ Յորդորեց իր քաղաքացիքն որ յաղթականին ծանր պայմանները ընդունին։ Խաղաղութիւնը կնքուեցաւ։ Կարքեդոնացիք պարտաւորեցան Սպանիան Հռոմայեցւոց թողուլ, նոյնպէս իրենց պատերազմիկ նաւերն ու փիղերը, և տարեկան տուրք մը վճարելէն զատ՝ Մասինիսայի իրենց երկրէն մաս մը տալ։ Անկից զատ՝ խոստացան պատերազմ չընել առանց Հռոմայեցւոց հրամանին (201)։ Երբ Սկիպիոն Հռոմ դարձաւ՝ մեծ փառօք ընդունուեցաւ ու Ափրիկեցի պատուանունը ստացաւ։



## ԳԼՈՒԽ ԻԹ.

### Մակեդոնիոյ կործանումը — Փոքր Ասիոյ նուաճումը։

### (194—133)

**Շանագլուխի ճակատամարտը.** — Մակեդոնիոյ Փիլիպպոս Գ թագաւորն Աննիբալի կողմը բռնելով նմա օգներ էր։ Հռոմայեցիք այս թագաւորը պատժել ուզելով Յունաց հետ միացան և Մակեդոնիա արշաւեցին։ Փիլիպպոս Շանագլուխ ըսուած դաշտին մէջ՝ Փլամինինոս հիւպատոսէն յաղթուեցաւ և ծանր պայմաններով նորա հետ հաշտութիւն ըրաւ։ Այս պայմաններով Փիլիպպոս թագաւորը կ'պարտաւորէր Յունաստանէն զօրքը քաշել, պատերազմի ծախքը վճարել, իր նաւատորմը Հռոմայեցւոց յանձնել և առանց ծերակոյտին հրամանին՝ պատերազմ չհրատարակել։ Այս դաշնադրութեան ուժով՝ Յունաստան Մակեդոնացւոց իշխանութենէ կ'ազատէր։ Ծերակոյտը Յունաց սիրտը շահելու համար՝ Իսթմեան խաղերուն ատեն հրովարտակ մը կարդալ տուաւ որով հանդիսապէս Յունաստանի անկախութիւն կ'շնորհէր։ Երբ Յոյներն այս հրովարտակը լսեցին, այնչափ ուրախութիւն զգացին որ Փլամինինոսի գլուխը ծաղիկներ ու պսակներ թօլորեցին։ Բայց քիչ ատենէն Յոյները տեսան որ միայն տիրապետ փոխեր էին։

Մեծն Անտիոքոսի պարտութիւնը. — Զամապլու-խի Ճակատամարտն Աննիբալի բոլոր յոյսերը ցրուեց, վասն զի այս զօրավարը Հռոմի դէմ կռուիլ ընդրէն սկսելու կ՚պատրաստուէր, եւ անհաշտ թշնամիին դէմ Արեւելքի բոլոր ազգերը գրգռելու կ՚փափաքէր, ինչպէս որ երբեմն բոլոր Արեւմտեան ժողովուրդները նորա դէմ հանելու փորձ փորձեր էր: Մակեդոնիոյ թագաւորէն յոյսը կտրելով՝ Ասորւոց՝ Մեծն Անտիոքոս թագաւորին գնաց նորա աջակցութիւնը խնդրելու համար: Երբ Հռոմ՝ Աննիբալի այս գաղտնի պատրաստութիւնները լսեց՝ դեսպաններ ուղարկեց Կարքեդոն եւ նորա գլուխը պահանջեց: Մեծ զօրավարը փախաւ, Անտիոքոսի մօտ ապաւէն փնտռեց եւ այս թագաւորը յորդորեց որ Մակեդոնիոյ Փիլիպպոս թագաւորին հետ նիզակակցի եւ Իտալիոյ վրայ յարձակի: Սակայն Անտիոքոս այս խորհուրդին անսալու տեղ՝ Ետոլիացւոց օգնութեան գնաց: Այս Ետոլիացիք կը պարծենային թէ իրենց ձեռօք Հռոմայեցիք Յունաստանի տիրեցին, եւ որովհետեւ այս ծառայութեան փոխարէնը չէին ստացած, այլ եւ այլ տեղեր յարձակեր եւ մանաւանդ Սպարտայի վըրայ քալեր էին: Երբ տեսան որ Հռոմ իրենց դէմ զօրք կ՚ղրկէ՝ Անտիոքոսէն օգնութիւն խընդրեցին: Այս թագաւորը Յունաստան անցաւ, բայց Մակեդոնիոյ թագաւորին հետ ալ գժտելով՝ ինքզինք զեղխութեան տուաւ, այնպէս որ Հռոմայեցիք Յունաստան հասան եւ Թերմոպիլէի մօտ Անտիոքոսի յաղթեցին: Անտիոքոս Ասիա փախաւ: Սկիպիոն հիւպատոսն՝ իր Ափրիկեցի եղ-

քօր հետ նորա եւանէն ընկաւ և նարէն յաղթեց։ Այս յաղթութեան վրայ Անտիոքոս ստիպուեցաւ Փոքր Ասիան Հռոմայեցւոց թողուլ։ Իսկ Սկիպիոն Ասիացի կոչուեցաւ։

Փիլոպեմենի և Աննիբալի մահը. — (183) Հռոմ այնպէս ցոյց տուաւ որ Յունաստանի ազատութիւնը կ'ուզէ պահել, սակայն գաղտնի Յոյները իրարու դէմ կ'գրգռէր և նոցա մէջ երկպառակութիւն կ'ձգէր։ Այն տեն Աքայեան դաշնակցութեան գլուխը կ'գտնուէր անուանի Փիլոպեմէն՝ Արատոսի արժանի յաջորդը (եր. 160). իր ամեն ջիգը թափեց որ բոլոր Պելոպոնէսը Աքայեան դաշնակցութեան հետ կապէ, սակայն չյաջողեցաւ։ Սպարտացիք և Մեսսենացիք դէմ կ'կենային։ Երբ անգամ մ'այս վերջիններուն հետ կ'պատերազմէր՝ Փիլոպէմէն ձիէն վար ընկաւ և թոյն խմելու դատապարտեցաւ։ Այս Փիլոպէմէն Յունաց վերջինը կոչուեցաւ։

Աննիբալ նոյն տարին մեռաւ։ Պիւթանիոյ թագաւորին ապաւիներ էր. բայց այս թագաւորը վախցաւ զանի երկայն ժամանակ պահպանելու, և Հռոմայեցի զինուորներու ձեռքը պիտի յանձնէր զանի, երբ Աննիբալ թոյն առնելով ինքզինք սպաննեց։ Այսպէս Փիլոպէմէն և Աննիբալ մեռնելէն ետև՝ Հռոմ ազատեցաւ իր ամենէն մեծ թշնամիներէն։

Պերսէոսի պարտութիւնն 'ի Պիւդնա. — (169) Սակայն Փիլիպպոս Գ. դեռ կ'սպառնար Հռոմայեցւոց և նորէն պատերազմի պատրաստութիւն-

ներ կ'առնէր։ Հռոմի դէմ ունեցած ոխը գըրգռելու համար ամեն օր նորա հետ ըրած դաշնադրութիւնը կարդալ կ'տար իր առջևը։ Իր անդրանիկ որդին սպաննել տուաւ, վասն զի Հռոմայեցւոց կուսակից էր և իր գահն երկրորդ որդւոյն Պերսևոսի թողուց. բայց Պերսևոս իր հօրը պէս սաստիկ կ'ատէր Հռոմայեցիքն և գանի գրգռեր էր անդրանիկ եղբայրը սպաննելու։ Քիչ ատենէն վերստին պատերազմն սկսաւ։ Պերսէոս բոլորովին յաղթուեցաւ 'ի Պիւդնա Պօղոս Էմիլիոս հիւպատոսէն (Կաննեայի Ճակատամարտին մէջ մեռնողին որդին) և իբրև գերի Հռոմ տարուելով՝ բանտ նետուեցաւ, ուր 'կամաւ անօթի մնաց ու մեռաւ։ Հռոմայեցիք Պերսէոսի կուսակից բոլոր Յոյներն Իտալիա տարին բանտարկեցին. այս տարագիրներուն մէջ կ'գտնուէր և Պոլիբիոս նշանաւոր պատմիչը։ Քանի մը տարի ետք՝ բաղդախնդիր մարդ մը (Անդրիսկոս) ձայն հանեց թէ ինք Պերսէոսի որդին է, ու Մակեդոնիան գրգռեց Հռոմի դէմ. բայց Մետելլոս զօրավարը նորա վրայ քալեց յաղթեց և Մակեդոնիան Հռոմէական գաւառ դարձաւ։

Աքայեան դաշնակցութեան կործանումը. — Յոյները հասկցան որ Հռոմայեցիք իրենց դէմ պիտի դարձընեն զէնքն և պիտի նուաճեն, սակայն իրենց աղէտալի երկպառակութիւններն բոլորովին ակարացուցին Աքայեան դաշնակցութիւնը։ Այս դաշնակից յոյները միայն զէնք առին բռնաւորներուն դէմ և Կորնթոսի մօտ մեծ պատերազմ մղեցին։ Աքայեցիք մօտակայ լեռ-

ծանել Կարքեդոնը» ։ Քիչ ատենէն այս չարա-գուշակ խորհուրդը կատարելու առիթը պատահե-ցաւ ։ Կարքեդոնացիք Մասինիսայի դէմ պատե-րազմելու սկսան. Հռոմի ծերակոյտը գործքեց ըսելով թէ վերջապէս դաշնադրութեան դէմ կը վարուի Կարքեդոն. վասն զի առանց իր հաւա-նութեան պատերազմ կ'մղէ ։ Կարքեդոն պարապ տեղ Հռոմի հնազանդեցաւ և պատերազմի պատ-ճառ եղողները պատժեց ։ Հռոմէական բանակ մ'Ափրիկէ եկաւ և Երրորդ Փիւնիկեան պատերազմն սկսաւ.

Հիւպատոսները հրամայեցին որ Կարքեդոնա-ցիք իրենց բոլոր պատերազմական զէնքերն ու մթերքը յանձնեն. Կարքեդոն այս հրամանը կատարեց ։ Այն ատեն հռոմայեցի դեսպանները ելան և խեղճ բնակչաց իմաց տուին որ իրենց քաղաքը պիտի կործանի. ուստի ելնեն ծովէն տասը մղոն հեռու տեղ մ'երթան բնակին ։ Այս բարբարոս հրամանին վրայ՝ Կարքեդոնացիք սաս-տիկ զայրացան և երդում ըրին իրենց քաղքին աւերակներուն տակ մեռնիլ քան թէ վատաբար զայն թշնամւոյն յանձնել ։ Սակայն զէնք չու-նէին. գիշեր ցերեկ աշխատելով զէնք պատ-րաստեցին. բոլոր քաղաքը ահագին մը զինարան դարձաւ. ամեն տուն, պալատ, տաճար՝ գոր-ծարան եղաւ. պատերազմի մեքենաներ շինելու համար շէնքեր քակեցին որպէս զի փայտ ու եր-կաթ ճարեն. կանայք անգամ իրենց մազերը կտրեցին որ աղեղներու լար շինեն ։ Այն ատեն յուսահատական կռիւ մը սկսաւ ։ Առաջ Հռո-մայեցիք յաղթուեցան և պաշարականաց բանակը

բոլորովին պիտի ջարդուէր՝ եթէ տրիբունի մը ճարտարութեամբ չազատէր։ Այս տրիբունն, որ Պօղոս Էմիլիոսին որդին էր և Սկիպիոն Ափրիկեցիին որդեգիրն, Սկիպիոն Էմիլեան կոչուեցաւ։ Ժողովուրդը տեսնելով որ նա միայն պիտի կարող լինի Կարքեդոնացւոց յաղթել՝ զինք հիւպատոս անուանեց, թէև այս պաշտօնին պահանջած տարիքը չունէր։

Կարթագենի առումն ու կործանումը. — **(146)** Սկիպիոն ծովէն ու ցամաքէն պաշարեց Կարքեդոնը։ Ահագին պատ մը քաշեց և քաղքին ցամաքի հետ ունեցած հաղորդակցութիւնը կտրեց, նոյնպէս ամբարտակ մը կանգնել տալով նաւահանգիստը գոցեց։ Կարքեդոնացիք ժայռը ծակեցին և նոր նաւատորմիղ մը հանեցին, որ քիչ մնաց Հռոմայեցւոց նաւերը պիտի ջնջէր։ Բայց վերջապէս քաղքին մէջ սով ընկաւ և մեծ կոտորած մ՚ընելուն՝ Կարքեդոնացիք թուլցան և թշնամին պարիսպներէն անցաւ քաղաքը մտաւ։ Բայց կռիւն ասով չլմնցաւ. Կարքեդոնացիք իրենց տուները քաշուեցան այնպէս որ Հռոմայեցիք զատ զատ ամեն մէկ փողոց և տուն պաշարելէն ետև՝ կարող եղան առնել։ Վեց օր և վեց գիշեր պէտք եղաւ Հռոմայեցւոց որպէս զի բոլոր քաղքին տիրանան. ՚ի վերջէ քաղաքը կրակի տուին և բոլոր ժողովուրը կին, տղայ և ծեր բոցերուն մէջ նետուելով մեռան։ Միայն Պիւրսա միջնաբերդը մնացեր էր. Ասդրուպաղ՝ Կարքեդոնացի սպարապետն՝ քանի մ՚օր ևս ինքզինք պաշտպանեց տաճարին մէջ, սակայն

վերջապէս վհատեցաւ. խոյս տալով գնաց յաղթականին ոտքն ընկաւ և շնորհ խնդրեց։ Միջնաբերդին պաշտպանները՝ տեսնելով որ իրենց զօրավարը մեռաւ, տաճարը կրակի տուին և բոցերուն մէջ նետուեցան։ Ասդրուպալի կինն, իր ամուսնոյն վատութեան վրայ զայրանալով իր երկու զաւակները սպաննեց և ինքն ալ կրակը նետուեցաւ։

Երբոր Կարքեդոնի առման լուրը Հռոմ հասաւ անպատմելի ուրախութիւն պատճառեց։ Ծերակոյտը հրամայեց որ քաղաքը հիմնովին կործանեն և անբնակ թողուն։ Ուստի քաղաքը կրակի տուին. հրդեհը տասն հինգ օր տեւելէն ետև՝ Կարքեդոնէն կոյտ մը մոխիր միայն մնաց. Կ՚ըսեն թէ նոյն ինքն Սկիպիոնի սիրտը շարժեցաւ այս ահաւոր տեսարանը դիտելով և յիշեց Հոմերի այն տողը. «Տրոյան ալ օրին մէկն իր թշուառ օրը պիտի տեսնէ» որով Հռոմի վախճանը կ՚գուշակէր։ Կարքեդոնի կործանումն Կորնթոսի կործանման տարին պատահեցաւ։ Ափրիկէ հռոմէական գաւառ դարձաւ։ Սկիպիոն Էմիլեան Երկրորդ Ափրիկեցի մականունը ստացաւ։

## ԳԼՈՒԽ Լ.

### Սպանիոյ նուաճումը — Փոքր Գրակքոսեանք։

### (133—121)

Ապստամբութիւն ՚ի Սպանիա. — Հռոմայեցիք Ափրիկէի տիրելէն ետև՝ Սպանիան ալ նուա-

ձեցին։ Սպանիացիք Հռոմայեցւոց օգներ էին որպէս զի իրենց երկրէն Կարքեդոնացիքը վռնտեն։ Բայց երբ տեսան որ Հռոմայեցիք իրենց վրայ տիրապետելու կ՚ջանան, նոցա լուծը թօթափելու համար ոտք ելան։ Այն ատեն կռիւ մը սկսաւ որ գրեթէ կէս դար տեւեց։ Սպանիացիք դիւցազնաբար պաշտպանեցին իրենց հայրենիքն և շարունակ նոցա վրայ յարձակումներ ընելով իրենց լեռները կ՚քաշուէին։ Վիրիաթ Լուսիտանացւոց իշխանն (արդի Փորթուկալը բնակող ժողովուրդը) Հռոմայեցւոց բոլոր զօրաց դէմ դնելով միշտ յաղթական ելաւ։ Հռոմայեցիք զանի սպաննել տուին նենգութեամբ և յաջողեցան Լուսիտանիան նուաճելու։

Նումանթիոյ առումը. — (133) Երբոր Վիրիաթ մեռաւ՝ Նումանթիա քաղաքը Հռոմայեցւոց դէմ պայքարը շարունակեց։ Հռոմ հետզհետէ բանակներ ղրկեց այս քաղաքին դէմ, բայց բոլորն ալ յաղթուեցան։ Մինչև անգամ հիւպատոս մը Նումանտացւոց քաջութեան չկրնալով դիմադրել՝ ստիպուեցաւ ամօթալի հաշտութիւն ընել և նոցա անկախութիւնը ճանչել։ Բայց Ծերակոյտն այս դաշնադրութիւնը մերժեց։ Վերջապէս Հռոմայեցիք ստիպուեցան Կարքեդոնի յաղթական Սկիպիոնի դիմել։ Սկիպիոն քաղաքը պաշարեց և նորա մէջ սով ձգելով առաւ։ Սակայն Նումանտացիք զիրար ջարդեցին յաղթականին ձեռքը գերի չըլլալու համար։ Նումանթիան հիմնայատակ ըրին Հռոմայեցիք Կարքեդոնի պէս։ Սպանիա՝ բոլորովին ճարը հատած՝ Հռոմի լուծը կրեց։

Համմայեցւոց Ճարէը Լ'Էֆոխոսէ. Կասիոն Համառօտակը.— Հռոմայեցիք՝ Կարքեդոնը, Կորնթոսն ու Նումանտիան աւերէն ետք՝ նոր տեսակ կեանք մը վարելու կ'սկսին, և իրենց առաջին բարեմասնութիւնները կ'կորսնցնեն։ Կարքեդոնի առումէն մի դար ետք՝ բոլոր քաղաքակիրթ ժողովուրդները կ'նուաճեն և ընդարձակ պետութիւն մը կը հաստատեն, Այս պետութիւնն իր արիական զինուորներուն և հայրենասէր քաղաքացիներուն գործն էր։ Բայց երբոր հետզհետէ Հռոմ կ'մեծնայ իր նախկին պարզութիւնը կ'կորսուի և ահագին հարստութեանց կ'տիրանայ։ Ճոխութիւն, հեշտութիւն, շռայլութիւն կ'տիրեն ամեն տեղ։ Իրաւ է որ Հռոմ, մեկ կողմէ՝ քաղաքակիրթ աշխարհի մայրաքաղաքը դառնալով՝ իր յաղթած ժողովրդոց մտաւորական գանձերը ժառանգեց և Յունաստանի քաղաքակրթութիւնն իր մէջը մտցուց, բայց միւս կողմէ՝ Արևելքի հետ յարաբերութիւն հաստատելով՝ նորա թոյլ բարքն ընդունեց և ապականութեան մէջ ընկաւ։ Նոյն իսկ մեծ մարդիկ այս ապականութենէ ազատ չմնացին։ Երկու Սկիպիոններն անգամ իբրև կաշառակեր ամբաստանուեցան տրիբուններուն կողմէ։ Երբոր Սկիպիոն Ափրիկեցիէն հաշիւ պահանջեցին, փոխանակ ինքզինքն արդարացընելու՝ դատաստանէ փախաւ։ Դարձեալ ժողովուրդն ամբաստանեց զինքն որ առակի համար Անտիոքոսի հետ հաշտուեր էր։ Սկիպիոն իր կուսակիցներն առնելով՝ հրապարակը գնաց, ամպիոնն ելաւ և ըսաւ. «Տրիբուններ, այս օրն էր որ Աննիբալի և Կարքեդոնացւոց յաղթեցի։ Ուստի պէտք է Կապիտոլիոն երթալ և աստուածոց մեր երախտագիտութեան նուէրը մատուցանել»։ Եւ ժողովուրդն ետևէն գնաց՝ տրիբուններն առանձին թողլով։ Բայց որովհետև շարունակ յարձակումներ կ'կրէր, Սկիպիոն գիւղ մը քաշուեցաւ և իր շիրմին վրայ այս խօսքը գրել տուաւ. «Ապերախտ հայրենիք, իմ ոսկորներս չպիտի ունենաս»։ Իսկ Սկիպիոն Ասիացին ալ տուգանքի դատապարտուեցաւ և իր ստացուածքը ծախեց որ վճարէ։ Սկիպիոններն յունական գրականութեան և բարուց մեծ սէր ունէին, մինչդեռ Կա-

տոն հռոմէական հին չարքաշ և ժուժկալ կենաց կատակից էր։ Իր բոլոր ճիգը թափեց որ հին սովորութիւնները վերահաստատէ։ Երբ համարակալ եղաւ իր ձեռքէն եկածն ըրաւ որ ժողովրդեան մէջէն շռայլութիւնն ու պերճութիւնը ջնջէ, բայց չկրցաւ յաջողիլ։ Հռոմ հարստանալով՝ աւելի ևս ապականեցաւ։

*Մեծ երկպառակութիւն ազնուականաց և ժողովրդեան մէջ. Հարուստներն ու աղքատները.* — Հռոմի ըրած աշխարհակալութիւններն ուրիշ կարևոր փոփոխութիւններ ալ բերին։ Նոր ազնուականութիւն մը հաստատուեր էր, որ կ'պարունակէր բոլոր հարուստ ընտանիքները։ Նոյնպէս ժողովուրդն ալ փոխուեր էր։ Անընդհատ պատերազմաց պատճառաւ Հռոմայեցի և Լատին ժողովուրդները գրեթէ ջնջուեր էին։ Այն ատեն Հռոմի ժողովուրդը մեծ մասամբ՝ միայն հին գերիներէ կ'բաղկանար, որ աշխարհիս ամեն կողմերէ կ'գային։ Այս ժողովուրդը բնահռոմէական հին բնաւորութիւնը չունէր, և ազնուականաց ատելի էր։ Անկից զատ՝ բնաւ կալուած մը չունէր. երկրագործներու դասն անհետ եղեր էր, հետևապէս ժողովրդեան բարեկեցութիւնը։ Մէկ խօսքով Հռոմի մէջ միայն հարուստ ու աղքատ կային։ Աւելի զարմանալին այս է որ այս աղքատ դասը չէր ուզեր աշխատիլ՝ կ'պահանջէր որ ազնուականաց պէս ինքն ալ աշխարհակալութեանց պտուղը վայելէ։ Կ'ուզէր որ կառավարութենէ ստանայ սնունդ, զուարճութիւն, մէկ խօսքով հաց և կրկէսի խաղեր կ'պահանջէր։

*Իտալացւոց ստորին վիճակը.* — Իտալացւոց վիճակն աւելի գէշ էր։ Իրենց արիւնն Հռոմի համար թափեր էին պատերազմներու մէջ այլ Հռոմի քաղաքացի չէին։ Բայց ոչ ժողովուրդն և ոչ ազնուականները չէին ուզեր նոցա տալ քաղաքացիութեան իրաւունք։ Իտալացիք շատ դժգոհ էին, և այս դժգոհութիւնն մեծ խռովութեանց պատճառ պիտի լինէր։ Գաւառները բնակող ժողովուրդներն ալ Իտալացւոց վիճակէն աւելի յոռի վիճակ մ'ունէին։ Հռո-

մայեցի կուսակալներ ամեն կերպով գաւառները կ'կեղեքէին, և երբոր գաւառացիք Հռոմ կ'բողոքէին իրենց բողոքն անլսելի կ'մնար։

Ստրուկներուն ըմբոստութիւնը. — Բայց ամենէն թըշուառ դասը ստրուկներու դասն էր։ Ուստի շատ անգամ կ'ապստամբէին։ Այս ապստամբութեանց մէջ ամենէն սոսկալին Սիկիլիա կղզին պատահածն է, որ Գերեաց քաղաքային պատերազմունք կ'կոչուին։ Մին Նումանտիա առնուած ատենը պատահեցաւ (133) միւսը Կիմբրացւոց արշաւանքին ատենը (101)։ Այն ատեն այս կղզւոյն հազարաւոր գերիները գլուխ քաշեցին և քանի մ'անգամ Հռոմայեցւոց յաղթեցին։ Բայց վերջապէս ջնջուեցան։ Կ'ըսուի թէ այս երկու պատերազմներուն մէջ մէկ միլիոն գերի ընկան մեռան։ Բռնուածները Հռոմ ղրկուեր էին վայրենի կենդանիներու որս լինելու, որոց դէմ կ'մաքառէին կրկէսին մէջ՝ ժողովուրդը զուարճացնելու համար։ Բայց գերիներն այս տանջանաց չենթարկուելու համար զիրար սպաննեցին։

Քաղաքային պատերազմներուն պատճառները. — Այսպէս Հռոմէական հասարակապետութեան մէջ խռովութեանց շատ պատճառներ կային։ Մէկ կողմէ ժողովրդեան արիւնով ձեռք ձգուած երկիրներն սակաւաթիւ հարուստ մարդիկ կ'յափշտակէին, միւս կողմէ անթիւ մարդիկ աղքատութեան մէջ կ'տառապէին. Իտալացիք դժգոհ էին, իսկ գաւառներու բնակիչներն յետին թշուառութեան մէջ ընկած լինելով՝ իրենց ազատութիւնը ձեռք ձգելու համար առիթ մը կ'փնտռէին։ Այսպիսի ապականեալ ընկերութիւն մը չէր կրնար երկար տեւել։ Ուստի քիչ ատենէն քաղաքային պատերազմներ ծագելով Հռոմէական հասարակապետութեան կործանման պատճառ պիտի լինէին։

# ԳԼՈՒԽ ԼԱ.

Գրակքոսեանք — Կիմբր Ամբրոնաց արշաւանքը։

(133—101)

Տիբերիոս Գրակքոս. Ագրարական օրէնք. — Հռոմի ժողովուրդը յետին ծայր թշուառ էր, ազնուականները զայն կ'հարստահարէին. իսկ Իտալացիք Հռոմի քաղաքացի լինել կ'ուզէին։ Այս ծանր վիճակին դարման մը բերել պէտք էր. Երկու եղբայրներ՝ Տիբերիոս և Կայիոս Գրակքոս, որ Գրակքոսեանք կ'ըսուին, ժողովրդեան թշուառութեան վերջ տալու համար ամեն ջանք ըրին։ Սոքա ազնուական ցեղէ էին (Սեմպրոնիա)։ Դեռ մանուկ էին՝ երբոր որբ մնացին, սակայն իրենց մօրը Կոռնելիայի ձեռօք ընտիր դաստիարակութիւն մը առացան։ Կոռնելիա՝ Աֆրիկեցի Սկիպիոնի աղջիկն և շատ ազնիւ զգացումներու տէր կին մ'էր։ Հայրենասիրական ջերմ հոգի ունէր և իր ամուսնոյն ու զաւակաց չափազանց անձնուէր էր։ Երբ իր էրիկը Սեմպրոնիոս Գրակքոս մեռաւ՝ Եգիպտոսի Պտղոմէոս թագաւորն ուզեց նորա հետ միանալ. բայց Կոռնելիա այս ամուսնութիւնը մերժեց՝ իր երկու զաւակները լաւ կրթելու համար։ Եւ արդարև Կոռնելիա իր զաւակներուն համար ամեն խնամք տարաւ, և անուանի դասատուներու յանձնեց որ կրթուին։ Օր մը Կապուացի երևելի տիկին

մը բոլոր գոհարեղէն զարդերն ցոյց տալով՝ կ՚աղաչէ որ Կոռնելիան ալ իր գոհարները ցուցընէ։ Կոռնելիա իր զաւակները ներկայացընելով ըսաւ. «Ահա աղքատ են իմ գոհարեղէններս ու զարդերս»։ Գրակցութեանց շատ երևելի եղան, և ժողովուրդն իր տառապանաց դարմանն իրենցմէ կ՚սպասէր։ Անդրանիկը՝ Տիբերիոս՝ անուշ, հեզ բնաւորութիւն մ՚ունէր, և համեղաբար ու խոհական միտք մը։ Քաջ գիտէր թէ ժողովուրդն որչափ թշուառ ու ողորմելի էր և հռոմէական օրէնքն որչափ խանգարուած էր։ Մտածեց որ այն անգործ ու ծոյլ խուժանն՝ որ հրապարակը կ՚թափառէր, բարեկարգելու համար պէտք էր աշխատութեան միջոցներ գըտնել, և վճակելու համար հողեր տալ։ Տէրութիւնն անբաւ երկիրներ ունէր՝ զոր աւագանին գրաւեր էր։ Տիբերիոս միտքը դրաւ այս յափշտակուած հողերն առնել և աղքատներուն բաշխել։ Այս նպատակին հասնելու համար Ա-[illegible] օրէնք մ՚առաջարկեց. այս օրէնքով հարուստներն իրենց կալուածքէն չէր զրկեր. մանաւանդ որ տէրութեան հողերէն 500 արտավար տեղ կ՚ձգէր նոցա ձեռքն և իրենց ամէն մէկ որդւոյն համար 250 արտավար. միայն աւելորդ հողերը կ՚պահանջէր աղքատներուն մէջ բաժնելու համար։

Ինչպէս Սպուրիոս Կասսիոսի ժամանակ՝ (եր. 200) ազնուականներն դարձեալ սոյն օրէնքին դէմ կեցան։ Ուրիշ տրիբուն մ՚ալ որսացին, այս է Օկտաւիոսն, որ Տիբերիոսի առաջարկութիւնը չընդունեց։ Երբ տրիբուն մը բան մ՚ա-

առաջարկէր՝ պէտք էր որ տասն տրիբուններն համամիտ գտնուէին նոյն բանին վրայ։ Տիբերիոս բոլոր ճիգը թափեց որպէս զի իր պաշտօնակիցը համոզէ և աղաչեց որ ժողովրդեան իրաւանց պաշտպան կենայ։ Բայց Օկտաւիոս՝ որ մինչև այն ատեն նորա բարեկամն ու խորհրդակիցն էր, անհամոզելի մնաց։ Տիբերիոսին ճարը հատնելով բուռն միջոցներ գործածելու ստիպուեցաւ։ Ժողովուրդը գրգռեց որ Օկտաւիոսը պաշտօնէ վար ձգէ, և այս բանս Հռոմի օրինաց հակառակ էր, վասն զի տրիբուններն անբռնաբարելի էին՝ ըստ օրինի։ Սակայն Ագարական օրէնքը հաստատուեցաւ։

Տիբերիոս կ՚ուզէր որ ուրիշ զեղծմունքներ ալ ջնջէ. բայց որովհետև ազնուականները կը դիմադրէին միշտ և իր կեանքը վտանգի մէջ էր, խնդրեց որ տարի մ՚ևս տրիբունի պաշտօնը վարէ։ Ծերակոյտն յայտնեց թէ օրէնքը չներեր որ քաղաքացի մը երկու տարի վրայէ վրայ տրիբուն լինի, և Տիբերիոսն ամբաստանեց որպէս թէ Սահմանադրութիւնը կործանելով թագաւոր լինելու միտք ունի։ Երբոր ընտրութեան օրը հասաւ, դաշտային բնակիչներն իրենց աշխատութեան պատճառաւ չկրցան Հռոմ գալ և խուժանն ալ Տիբերիոսը չպաշտպանեց՝ թէև նորա օգտին համար կ՚աշխատէր։ Իսկ ազնուականներն որոշեցին բռնութեամբ արգիլել Տիբերիոսի ընտրութիւնը։ Ուստի երբ այս ժողովրդասէր մարդն՝ հրապարակը գալով սկսաւ ժողովուրդն յորդորել՝ ազնուականներն իրենց զերլինները զինեցին և նորա դէմ ուղարկեցին։

Տիբերիոս վտանգը տեսաւ ու զայն ժողովրդեան յայտնելու համար ձեռքը գլուխը տարաւ։ Ազնուականներն իսկոյն գուշեցին թէ Տիբերիոս արքայական թագ կ՚պահանջէ և դացին ծերակոյտին իմաց տուին։ Այն ատեն Սկիպիոն Նազիկա քրմապետը, Տիբերիոսի ազգականն բայց անհաշտ թշնամին, ոտք ելաւ և հրամայեց Սկիպիոն Սկեվոլա հիւպատոսին որ երթայ բռնաւորը բռնէ։ Բայց այս հիւպատոսը չուզեց բռնութիւն բանեցընել։ Այն ատեն Նասիկա կատաղօրէն դուրս ցատկեց պոռալով. «Քանի որ հիւպատոսը մեզ կ՚մատնէ, Հասարակապետութիւնն ազատել ուզողները թող իմ ետևէս գան»։ Ծերակոյտի անդամներն նորա ետևէն կ՚վազեն, նստարանները կ՚խորտակեն, իրենց ձեռքն անցածը զէնք կ՚ընեն և թշնամիներուն վրայ կ՚քալեն։ Տիբերիոսն և իր մի շատ կուսակիցները կ՚սպաննեն և Տիբերիս գետը կ՚նետեն։ Այսպէս մեռաւ Հռոմի հանրապետութեան գերազնիւ դիւցազուններէն Տիբերիոս Գրակքոս, իր երեսուն տարուան հասակին մէջ։ Սակայն Սկիպիոն Նասիկա ժողովրդեան ատելութիւնը գրգռեց իր վրայ և Ասիա ղրկուելով՝ իր սրտին ցաւէն մեռաւ։

**Կայիոս Գրակքոս.** — Սակայն ազնուականաց այս յաղթանակը շատ կարճ տևեց։ Ժողովուրդն աւելի կատղեցաւ նորա դէմ, իր պաշտպանին մահուան վրայ ցաւ զգաց և որոշեց որ այնուհետև ամեն քաղաքացի կարող լինի հետզհետէ քանի մը տարի տրիբունութեան պաշտօն վա-

րել։ Քիչ ատենէն Տիբերիոսի եղբայրը՝ Կայիոս Գրակքոսը տրիբուն ընտրեց։ Կայիոս աւելի հանճարեղ, աւելի ճարտասան էր քան իր եղբայրն, նոյնպէս աւելի փառասէր էր և յեղափոխական։ Ոչ միայն Ագարակային օրէնքը վերահաստատեց, այլ և ժողովրդեան ցորեն բաժնել տուաւ, և զանազան բարեկարգութիւններ ըրաւ՝ որով շատ սիրելի եղաւ ժողովրդեան։ Ուզեց նաև քաղաքացիութեան իրաւունք տալ Իտալացւոց։ Այս առաջարկութիւնը Հռոմի ժողովրդեան ծանր գալով՝ չընդունուեցաւ, վասն զի չէր կամեր նա իր վայելած իրաւունքն Իտալիոյ միւս բնակիչներուն հետ բաժնել։

Ազնուականներն այս պարագայէն օգուտ քաղելով՝ ամեն փոյթ տարին որ Կայիոսի վարկը կոտրեն։ Իր պաշտօնակիցներէն մէկը որոշեցին, որ՝ ամեն անգամուն որ Կայիոս առաջարկութիւն մը կ՚ընէր, ինքն ալ ծերակոյտին կողմէն խորհուրդ մը կ՚առաջարկէր որ ժողովրդեան աւելի օգտակար էր։ Այս կռիւներէն ձանձրանալով Աֆրիկէ գնաց որ Կարքեդոնի աւերակներուն վըրայ հռոմէական նոր գաղթականութիւն մը հաստատէ։ Իր թշնամիքը զինք մեղադրեցին որ թշնամի քաղաք մը վերականգնել կ՚ուզէր։ Երբ Հռոմ վերադարձաւ, ժողովուրդն իրմէ երես դարձուց։ Պարապ տեղը՝ երրորդ անգամ տրիբուն ընտրուելու առաջարկեց. նորէն չընտրուեցաւ։ Քիչ ատենէն սոսկալի կռիւ մը ծագեցաւ Կայիոսի և ծերակոյտի կուսակիցներուն մէջ։ Ազնուականներն որոշեցին զանի սպաննել տալ. Նա ոխերիմ թշնամի մ՚ունէր Ոպիմիոս ա-

նուն, որ Ավէնտին լեռը գնաց՝ ուր Կայիոս կը գտնուէր իր կուսակիցներովը, և ձայն հանեց թէ ծերակոյտին կողմէ անցնողը պատժէ պիտի ազատի: Այն ատեն Կայիոսի մի շատ կուսակիցները ցրուեցան, իր մէկ քանի բարեկամները մինչև ցմահ պատերազմեցան և երբ անուանի Գրակքոսեանը տեսաւ որ իրեն ազատում չկայ՝ անտառ մը փախաւ, ուր թշնամիներն սկսան զինք հալածել: Կայիոս նոցա ձեռքը չընկնելու համար հրամայեց իր հաւատարիմ գերիին որ զինք սպաննէ: Գերին կատարեց այս հրամանը, և ապա ինքզինքն ալ սպաննեց: Իսկ Ոպիմիոս՝ Կայիոսի գլուխը բերողին նորա ծանրութեամբը ոսկի խոստացած լինելով՝ վատաղգի մարդ մը նորա գլուխը կտրեց, ուղեղը պարպեց և կապար լեցուց որ ծանր կշռէ, և փոխարէն շատ ոսկի առաւ:

Բայց ժողովուրդը միշտ յարգեց իր իրաւանց այս երկու ջերմ պաշտպանները և նոցա համար արձաններ կանգնեց: Կոռնելիա արիութեամբ կրեց իր երկու որդւոյ կորուստն և մեծ յարգ ու պատիւ ստացաւ: Այնուհետև գիւղը գնաց բնակեցաւ: Իր կենդանութեան ժամանակ արձան մը կանգնեցին իր յիշատակին այս արձանագրով. «Կոռնելիա, Գրակքոսեանց մայրը»:

**Յուգուրթայի պատերազմը.** — Այն ատենները Նումիդիոյ (Ափրիկէ) վրայ կ'տիրէին Մասինիսայի երեք թոռները, որոց մին Յուգուրթա՝ իր երկու հօրեղբօր որդիքը սպաննել տալով՝ նոցա բաժինն ալ գրաւեց՝ թէև Հռոմի պաշտ-

պանութեան ներքև էին ։ Հռոմայեցիք դեսպաններ ղրկեցին Յուգուրթայի դէմ բողոքելու , սակայն Յուգուրթա , կաշառք տալով դեսպաններին որսաց և անպատիժ մնաց ։ Հռոմի ժողովուրդը զայրանալով ստիպեց ծերակոյտն որ Նումիդիոյ բռնակալին դէմ բանակ մ՚ուղարկէ ։ Բայց զօրավարներն ալ կաշառ առնլով նորա հետ հաշտութիւն ըրին ։ Երբ այս լուրը Հռոմ հասաւ ժողովուրդը յետին ծայր կատաղեցաւ և տրիբուն մը հրաման ղրկեց Յուգուրթայի որ Հռոմ գայ զինք արդարացընէ (110) ։ Նումիդիոյ յանդուգն թագաւորը շուտ մը Համբայ ելաւ և Հռոմ եկաւ ։ Սակայն այն տեղն իր ոսկիով տրիբուն մ՚որսաց և երբ ամբաստան տրիբունն հրամայեց որ իրեն դէմ եղած ամբաստանութեանց պատասխանէ , կաշառակեր տրիբունն ալ թոյլ չտուաւ որ թագաւորը խօսի ։ Շատ չանցաւ Յուգուրթա սպաննել տուաւ Մասինիսայի մէկ ազգականն ալ որ Հռոմ կը գտնուէր ։ Սակայն այսչափ անօրէնութիւն անպատիժ չպիտի մնար ։ Ծերակոյտը պատուիրեց Յուգուրթայի որ Հռոմէն հեռանայ ։ Երբոր Համբայ ելաւ , կ՚ըսեն թէ այս իշխանը պոռաց. «Կաշառակե՛րդ քաղաք , եթէ գնող մը գտնէիր , անձնատուր պիտի լինէիր» ։

Յուգուրթա Նումիդիա դառնալուն՝ բացէ ՚ի բաց Հռոմայեցւոց դէմ պատերազմ հրատարակեց ։ Հռոմայեցիք բանակ մը ղրկեցին Ափրիկէ , բայց յաղթուեցաւ և սուրի տակէ անցաւ ։ Ծերակոյտն՝ որ ՚ի սկզբան մեծ բանի տեղ չէր դրած այս պատերազմն՝ սկսաւ խռովիլ և Մե-

տելլոս զօրավարն՝ որ անկաշառ և խստաբարոյ մարդ մ'էր, Նումիդիա ուղարկեց. Մետելլոս զօրաց մէջ կարգ կանոն դրաւ, թշնամին հարուածեց և նորա ետևէն ընկաւ, թէև չկրցաւ կռուոյն վերջ տալ: Իր տեղակալներէն մին էր Մարիոս՝ որ երևելի էր իր պատերազմական տաղանդին և ազնուապետութեան դէմ ունեցած ատելութեանը համար: Մարիոս՝ որ անյագ փառասիրութիւն մ'ունէր, իր զօրավարն ամբաստանեց որպէս թէ պատերազմը կ'երկարաձգէ և խնդրեց որ զինք հիւպատոս անուանեն, խոստանալով Յուգուրթան շուտով նուաճելու եթէ Հռոմի ժողովուրդն իր խնդիրն ընդունի: Մարիոս իր փափաքին հասաւ, և հիւպատոս ընտրուելով Յուգուրթային յաղթեց, որ Մաւրիտանիա իր աներոջը քովը ապաւէն փնտռեց: Բայց վերջապէս Յուգուրթա՝ Հռոմայեցի Սիլլա զօրականին ձեռքն յանձնուելով Մարիոս զանի շղթայակապ Հռոմ տարաւ: Հռոմայեցիք զանի գնդանի մը մէջ նետեցին, ուր անօթութենէ մեռաւ:

Կիմբրացւոց և Տևտոններուն արշաւանքը. — Այն ժամանակը Հիւսիսէն՝ Կիմբրացի և Տևտոն ըսուած բարբարոս ժողովուրդներ՝ որ գերմանական ցեղէ էին, Պալթիկ ծովուն կողմերէն իջնելով Իտալիա արշաւելու կ'սպառնային: Սոքա Գերմանիայէն անցան և ուրիշ ժողովուրդներ ալ իրենց միացընելով Գալլիա ապատակեցին և ամեն տեղ քանդ ու աւեր ըրին: Հռոմայեցիք արդէն հարաւային Գալլիայի տիրեր և Էքս ու

Նարբեան քաղաքները հիմներ էին ։ Ուստի բանակներ ղրկեցին բարբարոսաց դէմ որպէս զի իրենց երկիրները պաշտպանեն ։ Սակայն՝ երբոր Կիմբրացւոց և Տևտոններուն բարձր հասակը, հերակլեան ոյժը, մորթէ զգեստները, ահագին վահանները, երկար թուրերն և ծանր լախտերը տեսան ահ ու սարսափ զգացին ։ Հինգ հիւպատոսներ իրենց զօրօք հետզհետէ զարնուելով այս բարբարոսաց հետ յաղթուեցան ։ Հելվետացիք՝ որ Կիմբրացւոց միացեր էին, Կասսիոս հիւպատոսին յաղթեցին և նորա բանակը թուրի տակէ անցուցին (107) ։

**Մարիոս** . — Երբոր Հռոմայեցիք իմացան բարբարոսաց յաղթութիւնները մեծ յուսահատութեան մէջ ընկան ։ Յիշեցին Գալլիացւոց արշաւանքը, Ալլիայի ճակատամարտը (երես 209) Հռոմի հրդեհը ։ Սակայն բարբարոսները փոխանակ Ալպեան լեռներէն անցնելու և Իտալիա մտնելու՝ Պիրէնեան լեռներէն անցան և Սպանիա գացին պատերազմելու համար ։ Այն ատեն Հռոմ քիչ մը սիրտ առաւ և իր պատրաստութիւնը տեսնելու ժամանակ գտաւ ։ Ծերակոյտը զօրք ժողվեց, ժողովրդեան խնդրովը՝ Մարիոսն Ափրիկէէն կանչեց, հայրենեաց բաղդը նորա ձեռքը յանձնեց, և օրինաց հակառակ զանի հետզհետէ հինգ անգամ հիւպատոս անուանեց։ Այս բանս դեռ պատահած չէր բնաւ հասարակապետական իշխանութեան ժամանակ ։

Մարիոս ժողովրդեան յոյսն 'ի դերև չհանեց։ Իր զօրքը կրթեց և ծանր աշխատութեանց վար-

ժեցուց։ Վերջապէս քանի մը տարի ետք՝ Տեւտոնեանք՝ Սպանիայէն գալով՝ գունդ գունդ բաժնուեցան. Կիմբրացիք Հելվետիայէն անցան որպէս զի Իտալիա իջնեն, մինչդեռ Տեւտոնները չիտակ Մարիոսի վրայ քալեցին։ Հիւպատոսը Ռոնի և Իզէրի գետերուն կողմերն իր բանակն ամրացուց և Տեւտոնեանց յարձակումներուն դիմադրեց։ Այն ատեն այս բարբարոսներն Ալպեան լեռներէն անցնելով՝ Իտալիա մտնել ուզեցին և կ'ծաղրէին Հռոմայեցիքն հարցնելով թէ արդեօք իրենց կանանց ըսելու բան մը չունին։ Մարիոս թողուց որ մեկնին և քանի մ'օր ետք՝ նոցա ետևէն ընկաւ և Էքս քաղաքին մօտ սոսկալի ջարդ մը տուաւ նոցա։ Յետոյ՝ իր Կատուլլոս պաշտօնակցին միանալու գնաց և նորա հետ բարբարոսները բոլորովին ջարկաւ կոտորեց Վերչելլի դաշտին վրայ։ Բարբարոսաց կանայք անգամ կատաղօրէն կռուեցան այս պատերազմներուն մէջ և որպէս զի գերի չըլլին, իրենց զաւակները սպաննելէն ետև՝ ինքզինքնին ալ սպաննեցին (101)։

Այսպէս վերջացաւ գերմանական այս առաջին արշաւանքը՝ որ Իտալիոյ սարսափ ազդեր էր։ Մարիոս այս յաղթութեամբ անմահ անուն մը ստացաւ. զինք՝ «Հռոմի երրորդ հիմնադիրն» անուանեցին։

Հանրապետական խառնակութիւնը կ'յաղթանակէ. Իր գլխաւորը, Մարիոս, Սատուռնինոս և Տրուսոս. — Գրակքոսեանց իշխանութենէ ետք՝ Հանրապետական կուսակցութիւնը ժամանակ մ'իր ազդեցութիւնը կորսյս։ Բայց երբ որ Յուգուրթայի և Կիմբրացւոց պատերազմաց մէջ ազ-

նաւապետութեան գլխաւորներն այլ և այլ աղօրինաւոր գործեր ըրին՝ իրենց համարումը կորուսին։ Իրաւ է որ մեծամեծներուն ամբաստանութիւնը ժողովրդեան զայրոյթ պատճառեց։ Սակայն՝ երբոր Մարիոս իր գլխաւորը՝ Մետելլեան աղաչեց որ իրեն հրաման տայ Հռոմ երթալ հիւպատոսութեան պաշտօնը խնդրելու, Մետելլոս արհամարհական պատասխան մը տուաւ։ «Քեզի համար դեռ շատ կանուխ է հիւպատոսութեան պաշտօնին հասնելու, քանի որ իմ որդիս բաւական տարւոյ պիտի լինի զայն խնդրելու»։ Մարիոս անհաշտ աչօք կ'դիտէր ազնուականաց ընթացքը և ժողովրդեան կողմը բռնեց՝ նորա պաշտպանը լինելով։ Իտալացիք ալ մեծ յոյս ունէին նորա վրայ քանի որ Վերկէլլի պատերազմի դաշտին վրայ 1000ի չափ Իտալացւոց քաղաքացիութեան իրաւունք տուաւ։ Երբ յանդիմանութիւն լսեց այս գործին համար, որ ժողովրդեան վեհապետութեան կ'դպչէր կ'ըսէին, Մարիոս պատասխանեց. «Զինուց շառաչիւնն արգիլեց որ օրէնքը լսեմ»։ Նոյնպէս կ'ամբաստանուէր Մարիոս, որպէս թէ Սահմանադրութիւնը ջնջել և բարձրագոյն իշխանութիւնը ձեռք ձգելու համար՝ ամեն տարի հիւպատոս կ'լինէր։

Երբոր Մարիոս Կիմբրացւոց պատերազմէն դարձաւ, արդէն վեց անգամ հիւպատոս եղեր էր՝ ազնուականաց դիմադրութեան չնայելով։ Իրեն աջակից էր՝ շատ ժողովրդասէր մարդ մը, այս է Սատուռնինոս տրիբունը, որ Գրակքոսեանց խորհուրդներն 'ի գործ դնելու ելաւ։ Բայց այս մարդն՝ իրեն հետ առնելով խումբ մը մարդասպաններ՝ ամեն տեսակ բռնութիւններ կ'կատարէր։ Նոյն ինք Մարիոս այս մարդէն վախցաւ. ազնուականներուն միացաւ, և Սատուռնինոսին ու իր խումբին վրայ յարձակելով ձերբակալեց և հրաման տուաւ ազնուական երիտասարդներուն որ զայնս քարկոծեն։ Այս ընթացքը Մարիոսի փառքը կորեց, և նա հասարակաց գործերէն ատեն մը հեռանալու համար Ասիա գնաց։ Այն ատեն ազնուականներն առիթ գտան գլուխ վերցնելու և Մարիոսի կուսակիցները հալածելու։ Պարապ տեղ, Տրուսոս երիտասարդ ազնուական մը ջանաց երկու կուսակցութիւնները

հաշտեցնելու, և առաջարկեց աղքատներուն հող տալ և իտալացւոց քաղաքացիութեան իրաւունք։ Ազնուական դասն այս առաջարկութիւնները մերժեց և Տրուսոս սպաննուեցաւ։ Քանի որ այս հաշտութեան փորձը 'ի դերև կ'ելնէր՝ քաղաքական պատերազմը անհրաժեշտ կ'երևէր։



## ԳԼՈՒԽ ԼԲ.

Քաղաքային պատերազմ — Փոքր Պոմպէոս։

(90—72)

Ընկերական պատերազմը. Մարիոս և Սիլլա. — Թէպէտ Հռոմ արտաքին մեծ վտանգէ մ'ազատեր էր, սակայն ներքին վտանգները չէին անցած։ Ծերակոյտը միշտ Իտալացիքը ստրկութեան մէջ կ'ուզէր, և ազնուականներն շարունակ կ'նեղէին ստորին ժողովուրդները։ Վերջապէս Իտալացիք չկրնալով դիմանալ Հռոմի ազնուականաց խրոխտ և անգութ վարմունքին՝ պահանջեցին որ իրենց քաղաքացիութեան իրաւունք տրուի, քանի որ Հռոմի ազատութեան համար իրենց արիւնը թափեր էին։ Տրիբուն մը՝ Լիւիոս Տրուսոս նոյն պահանջումն իրաւացի գտաւ, բայց օր մը՝ ամբոխին մէջ՝ դաշունի հարուած մ'ընդունելով մեռաւ։ Մարդասպանն անպատիժ մնաց։ Երբ Իտալացիք իրենց այս ախոյեանին մահն իմացան, սաստիկ կատղեցան և սաս-

կալէ ընկերական պատերազմ սկսաւ, որու մէջ երբեմն Իտալացիք երբեմն Հռոմայեցիք յաղթական կ'ելնէին: Լատին պատրիկ մը կ'ըսէ թէ՝ «Այս կռուին մէջ երեք հարիւր հազար Իտալացիք ընկան»: Գերիներն անգամ այս Իտալական դաշնակցութեան միացան, որոց մէջ նշանաւոր եղան Սամնիացիք: Հռոմի հասարակապետութեան պէս՝ ծերակոյտ մը և երկու հիւպատոս հաստատեցին: Այն ատեն Հռոմի ծերակոյտն Մարիոսը զօրաց գլուխը դրաւ որպէս զի պատերազմին վերջ տայ: Բայց Մարիոս՝ որ արդէն մի շատ Իտալացւոց քաղաքացիութեան իրաւունք տուեր և զինուոր գրեր էր, թոյլութեամբ մղեց պատերազմն և վերջապէս իր ծերութիւնն ու տկարութիւնը պատճառ բռնելով ասպարիզէն քաշուեցաւ: Այն ատեն Հռոմի ազնուականներն զօրաց հրամանատար ըրին Սիլլան, որ Մարիոսին հին տեղակալն ու ոսոխն էր: Սիլլա շուտով վերջացուց ընկերական պատերազմը, և ծերակոյտը խոհեմութիւն դատեց քաղաքացիութեան իրաւունք խոստանալ այն Իտալացւոց որ զէնքը վար դնելու յանձնառու եղան:

Սակայն Սիլլա՝ որ պատրիկ էր, իր զինուորական տաղանդով Մարիոսի համբաւը նսեմացուց: Այն միջոցին Տիգրան և Միհրդատ Հռոմայեցւոց դէմ սոսկալի պատերազմ կ'մղէին: Ծերակոյտը Սիլլան Ասիա ուղարկեց զօրքով որպէս զի Միհրդատը զսպէ, որ բոլոր Արևելք Հռոմի դէմ հանելու կ'փափաքէր: Արդէն Փոքր Ասիոյ տիրեր էր, և այն ատեղ գտնուող

բոլոր Հռոմայեցիքը մէկ օրուան մէջ սպաննել
տուեր էր։ Այս սոսկալի կոտորածէն ետեւ՝ Մի-
հրդատ Յունաստան անցաւ մեծ բանակով մը,
եւ մէ շատ յունական քաղաքներ, ինչպէս նաեւ
Աթենք, Նորա կողմն անցան։ Երբոր Մարիոս
իմացաւ որ Սիլլա Միհրդատի դէմ երթալու
համար հիւպատոս եւ հրամանատար կարգուեր
է, իր ախորժութիւնը մոռցաւ, եւ յաջողեցաւ
Սիլլան պաշտօնէ ձգել տալով Նորա հրամա-
նատարութիւնն իր վրայ առնուլ։ Սիլլա ստի-
պուեցաւ Հռոմէն խոյս տալ, բայց քիչ մ՚ետքը՝
բանակին գլուխն անցած՝ Հռոմ մտաւ եւ՝ Մա-
րիոսի գլուխը բերողին վարձ խոստանալէն զատ՝
Նորա բոլոր կուսակիցները հալածեց եւ ծերա-
կոյտին Նախորդ իշխանութիւնը վերահաստա-
տեց։ Մարիոս փախուստ տուաւ. Սիլլա Նորա
ետեւէն մարդ ղրկեց որ բռնեն։ Երկար ատեն
մեծ վտանգներու մէջ թափառելէն ետեւ՝ Նա-
ւակ մը մտաւ եւ ծովեզերք ելաւ ու Մինթուր-
նոսի ճահիճներուն մէջ պատսպարան մը փնտռեց.
սակայն Սիլլայի ձիաւորները գտան զինք եւ տա-
րին քաղաքը բանտը դրին։ Քաղաքապետը օ-
տարական Գալլիացի մը ղրկեց բանտը որ Մա-
րիոսը սպաննէ։ Երբ Գալլիացին բանտը կը
մտնէր սուրը ձեռքը, Մարիոս՝ սոսկալի նայ-
ուածք մը ձգելով Նորա վրայ, ըսաւ. «Ա՛յ
թշուառական, ինչպէս պիտի համարձակիս կա-
յիոս Մարիոսը սպաննելու»։ Այս անունն ու
ահեղ ձայնը սարսափ կ՚ազդեն բարբարոսին, որ
պոռալով կ՚հեռանայ. «Ես չեմ կարող սպաննել
Մարիոսը»։ Այն ատեն բոլոր քաղաքացիք ստի-

պեցքին քաղաքապետն որ Մարիոսին փախուստը դիւրացընէ։ Այս անուանի մարդը Ափրիկէ կը հասնի։ Բայց անդ ևս հանգիստ չգտներ։ Գաւառապետն հրամայեց նմա որ նաւ մտնէ և Հռոմի երկիրներէն հեռանայ։ Մարիոս այս հրամանին վրայ սաստիկ վշտանալով զայն բերող տեգաւորին բան մը չպատասխանեց։ Սակայն երբ կրկին հարցուց թէ գաւառապետին ինչ պատասխան տայ, Մարիոս ըսաւ. «Գնա ըսէ քեզ ղրկողին, որ Մարիոսը Կարքեդոնի աւերակներուն վրայ նստած տեսար»։ Բայց դարձեալ Մարիոս ստիպուեցաւ Միջերկրական ծովուն կղզիներուն մէջ ապաւէն մը փնտռել՝ մինչև որ Հռոմէն յաջող լուրեր ստացաւ։

Մարիոսի և Սիլլայի մահաւճիռները. — Նոյն միջոցին՝ Իտալիոյ մէջ գործերն ուրիշ կերպարան կ'առնուին։ Սիլլա Յունաստան կ'գտնուէր։ Իր բացակայութեան ատեն՝ ժողովուրդը նորէն գլուխ վերցուց Կիննայի առաջնորդութեամբ՝ ազնուականաց դէմ։ Այս լուրը լսելուն՝ Մարիոս վերադարձաւ. իր բոլորտիքն առին անթիւ փախստականներ և Իտալացիներ, որոց հետ Կիննայի միացաւ և Հռոմի վրայ քալելով զայն պաշարեց ու առաւ։ Մարիոս անխնայ վրէժ լուծեց ազնուականներէն։ Իր կատաղի զինուորները Հռոմը կողոպտեցին և անդադար բնակիչները կոտորեցին։ Ինք փողոցները կ'պտըտէր իր արբանեակներովը, որ հրաման ունէին սպաննել այն մարդիկն որոց չէր բարևեր։ Այս մարդասպաններն՝ որոց մեծ մասը փախստական ստրա-

սաւորներ էին, սոսկալի անգթութիւններ գործեցին իրենց վաղեմի տէրերուն ապարանքին մէջ ։ Աւազանին, նոյնպէս ամենէն նշանաւոր ատենակալները ջարդեցին և նոցա դիակները փողոցները թողուցին, որ շուներուն և գիշակեր թռչուններուն ճարակ ըլլային ։ Կ'երևէր թէ Հռոմ այս արիւնալի օրերն նուաճեալ ազգերուն հասուցած չարեաց փոխարէնը կ'ընդունէր ։

Մարիոս և Կիննայի մահը. — Իր վրէժը յագեցընելէն ետև՝ Մարիոս եօթներորդ անգամ ինքզինք հիւպատոս ընտրել տուաւ ։ Այսպէս իր երիտասարդութեան ատեն եղած գուշակութիւնը կատարուեցաւ* ։ Մարիոս այս գուշակութեան աւելորդապաշտութեամբ կ'հաւատար ։ Սակայն իր ըրած կոտորածներուն յիշատակն և Սիւլլայէն ունեցած վախը զինք կ'շփոթէին, և այս երկուքը փարատելու համար ինքզինք արբեցութեան տուաւ և քիչ ատենէն մեռաւ ։ Իր պաշտօնակիցը Կիննա՝ առանց ընտրութեան՝ երկու տարի հետզհետէ հիւպատոս եղաւ ։ Իտալացւոց պաշտպանութեամբ արդէն հասարակապետութեան տէրը կ'կարծէր ինքզինք՝ երբոր իր զինուորները զինք սպաննեցին ։ Սակայն ժողովրդային կուսակցութեան ահաւոր թշնամին փութով Հռոմ կ'դառնար ազնուականաց վրէժը լուծելու համար ։

* Իր վերարկուին մէջ բոյն մ'ինկեր էր, կ'ըսէր Մարիոս, որու մէջ եօթ հատ արծուի ձագ կայ եղեր. հաւահմայները գուշակեր են որ եօթն անգամ հիւպատոս պիտի ընտրուի ։

Սիւլլա իշխանապետ. — Երբոր Հռոմի մէջ հանրապետական կուսակցութիւնն ամեն տեսակ անիրաւութիւններ կ'գործէր, Սիւլլա Միհրդատին դէմ կռիւը կ'շարունակէր։ Այս կռիւը շատ տարիներ տեւեց։ Նախ Սիւլլա Աթէնքը պաշարեց և վերջապէս առաւ։ Բոլորովին զայն պիտի կործանէր բայց նորա վաղեմի մեծութիւնը յարգելով խնայեց. և ինչպէս որ ինք կ'ըսէր. «Մեռելոց 'ի պատիւ կենդանիները չկոտորեցի»։ Յետոյ երկու անգամ մեծ յաղթութիւններ տարաւ Միհրդատի զօրաց վրայ և Յունաստանէն վանեց։ Ապա՝ Ասիա անցաւ և Միհրդատը ստիպեց հաշտութիւն ընելու։ Անգթաբար պատժեց այն քաղաքներն որ Միհրդատի կողմը բռներ էին, շատերն ալ կործանեց. բնակիչներն իրենց գերի վարեց կամ մահուան դատապարտեց։

Հանրապետական կուսակցութեան պարտութիւնը. — Սիւլլա իր զինուորներն առատութեամբ հատուցեր էր, ուստի բոլորն ալ իրեն համար հոգի կ'տային։ Երբոր Իտալիա դարձաւ՝ իր հրամանին կ'սպասէր բանակն որ Հռոմի վրայ քալէ։ Հանրապետական պարագլուխներն ամեն տեղ յաղթուեցան, և Սիւլլա մայրաքաղաքին դուռը հասաւ։ Հռոմ իր դռները յաղթականին բանալէն առաջ՝ հանրապետական կամ՝ Մարիոսի որդւոյն առաջնորդութեամբ՝ նորէն սկսաւ սոսկալի կոտորած մը. ամենէն երեւելի ատենակալներն ծերակոյտի պալատին մէջ սպաննուեցան։ Այս կոտորածին հեղինակները խոյս տուին։ Երբոր Սիւլլա նոցա ետեւէն ընկ-

նելով կ'կատղէր և կ'շնչէր ։ Սամնիացի զօրավար մը՝ բոլոր Իտալացի և հանրապետական կուսակիցները գումարելով Հռոմի վրայ քալեց արդէն ալ կործանել «Այս գայլերու որջին», ինչպէս որ ինք կ'ըսէր ։ Հռոմ կործանելով կարծէր թէ բոլոր Իտալիոյ բռնակալները պիտի ջնջէ ։ Ալլիայի ճակատամարտէն 'ի վեր երբեք Հռոմ այսպիսի վտանգի մը հանդիպած չէր ։ Սակայն Սիլլա յարմար ատեն քաղաքին օգնութեան հասաւ ։ Ահռելի պատերազմ մը տեղի ունեցաւ Հռոմի առջև ։ Երկու կողմէն կատաղութեամբ կռուեցան բոլոր օրն և մինչև անգամ գիշերուան մէկ մասը ։ Հռոմայեցւոց զօրքն սկսաւ փախուստ տալ ։ Սիլլա յուսահատութեամբ կ'պոռար. «Ո՛ անգութ բաղդ, քանի՜ քանի անգամ զիս յաղթող կանգնելէն ետև՝ հիմակ միթէ հայրենեացս դրան առջևը ամօթապարտ պիտի ձգես» ։ Բայց վերջապէս Սիլլա յաղթեց. Հռոմ ազատեր, բայց հանրապետութիւնը կորսուեր էր ։

Մահավճիռին ցանկերը. — Սիլլա Հռոմ մտաւ և իսկոյն ինքզինքն իշխանապետ անուանել տուաւ, այսինքն Հռոմի տէրն ու վեհապետն եղաւ ։ Այն ատեն դեռ չտեսնուած կոտորած մը սկսաւ ։ Սիլլայի դէմ ով որ գտնուեր էր մահուան դատապարտուեցաւ, և ամեն ոք իրաւունք ունեցաւ այսպիսիները սպաննելու ։ Մահավճիռներու ցանկեր շինեցին, որոց մէջ մահապարտներուն անունները կային ։ Ամեն օր՝ նոր ցանկ մը կ'պատրաստուէր և կ'ծանուցուէր ։ Ոչ ալ-

զականի և ոչ բարեկամի կ՚խնայէին. եղբայրն իր եղբօր, որդին իր հօր դէմ կ՚զինուէր։ Մեռնողներուն ինչքն իշխանապետին կուսակիցներն իրենց մէջ կ՚բաժնէին. իր բարեկամներն և մինչև անգամ գերիներն այս անօրէնութեամբ հարստացան։ Այսպէս Կրասոս այնքան մեծ հարստութիւն դիզեց որքան ունէր Կրեսոս։ Այս իրաւ է որ Սիլլայի արբանեակները մահապարտներուն ցանկերուն մէջ իրենց թշնամիները կ՚անցընէին, նոյնպէս այն հարուստ մարդիկն որոց հարստութեան աչք ունէին։ Անծանօթ մարդ մ՚իր անունը նոյն ցանկին մէջ տեսնելով գոչեց. «Վա՜յ ինձ, Ալբա ունեցած տունս իմ գլուխս պիտի ուտէ»։ Եւ իրաւ ի՛ քանի մը քայլ առնելէն ետև՝ այս մարդը սպաննուեցաւ։ Շարունակ վեց ամիս՝ բռնաւորին սպասաւորներն անխնայ սպաննեցին։ Այս հալածանքը Իտալիոյ ուրիշ երկիրներու մէջ ալ տեղի ունեցաւ։ Ամբողջ քաղաքներ կործանեցան և բնակիչներն իբրև գերի ծախուեցան։ Իսկ Սամնիտացիք բնաջինջ եղան, այս պատճառանօք թէ Հռոմ ապահովութիւն չպիտի գտնէր՝ մինչև որ սոյն պատերազմասէր ժողովուրդը բոլորովին չկորնչէր։

**Սիլլայի օրէնք.** — Այսպէս Սիլլա հանրապետները բոլորովին կործանելէն ետև՝ նոր օրէնքներ հաստատեց որպէս զի կառավարութիւնն ազնուականաց ձեռքն աւանդէ. ծերակոյտին իշխանութիւնն աւելցուց, իսկ տրիբուններուն իշխանութիւնը տկարացուց։ Վերջապէս իր 100,000

զօրաց երկիրները բաշխեց բոլոր Իտալիոյ մէջ՝ և այսպէս բազմաթիւ զինուորական գաղթականութիւններ հաստատեց, որպէս զի Հռոմի տիրապետութիւնը թերակղզւոյն մէջ ամրապնդեն ։

Սիլլայի հրաժարումը. — (79) Երկու տարի կար որ Սիլլա իբրև բացարձակ տէր կ՚կառավարէր, երբոր օր մը՝ ժողովրդեան իմացուց որ իշխանութենէ պիտի հրաժարի. ամենքը զարմացան։ Նոյնպէս յայտարարեց Սիլլա որ եթէ մէկը պահանջում մ՚ունէր, պատրաստ էր պատասխանելու։ Ժողովուրդը խոր լռութեամբ ընդունեց այս յայտարարութիւնը, ահաւոր իշխանապետը բեմէն վար իջաւ, ամբոխին մէջէն անցաւ և հանդարտութեամբ իր տունը գնաց։ Պատանի մը միայն համարձակութեամբ սկսաւ Սիլլան պարսաւել ու նախատել։ Սիլլա պաղարիւնութեամբ պատասխանեց. «Այդ ընթացքովդ պատճառ պիտի լինիս որ ուրիշ անգամ իշխանապետ մ՚իր պաշտօնէն չհրաժարի»։ Իր գիւղը (Կումա) քաշուեցաւ Սիլլա, և տարիէ մ՚ետք՝ սոսկալի հիւանդութենէ մը մեռաւ։ Մարմինը կենդանութեան ժամանակ փտեցաւ ու որդնոտեցաւ։ Իր դիակը Հռոմ փոխադրեցին և փառաւոր յուղարկաւորութեամբ թաղեցին։ Ինք կանխաւ իր ձեռօք գրեր էր տապանագիրն այսպէս. «Երբէք մարդ մը Սիլլային չափ բարիք չէր ըրած իր բարեկամներուն, և ոչ այնքան չարիք՝ իր թշնամիներուն»։

նշանաւորն ու փառաւորն՝ Պոմպէոսն էր, որ՝ իր զինուորական արիութեան համար՝ շուտով Մեծ մականունը ստացաւ։ Քսան տարեկան էր՝ երբ բանակ մը կազմեց և Սիլլայի միացաւ։ Թէև իշխանապետին կուսակից էր, բայց ատեն ատեն նորա կ՚ընդդիմանայր։ Դեռ պատանի մ՚էր, երբ խնդրեց որ յաղթանակաւ Հռոմ մտնէ։ Սիլլա մերժեց։ Այն ատեն Պոմպէոս համարձակեցաւ ըսելու. «Թո՛ղ Սիլլա զգուշանայ. նոր ելնող արևն աւելի պաշտողներ ունի քան թէ մարը մտնող արևը»։ Իշխանապետն այս խօսքին վրայ զարմանալով Պոմպէոսին խնդիրը կատարեց, երկու անգամ կրկնելով. «Թո՛ղ յաղթանակէ, թո՛ղ յաղթանակէ»։ Երբ Սիլլա մեռաւ՝ Պոմպէոս ազնուական դասուն գլուխը համարուեցաւ։ Բայց որովհետև հաշտարար բնաւորութիւն ունէր և ժողովրդականութիւն կը սիրէր, ժողովրդեան կողմը դարձաւ։

Սերտորիոսի ապստամբութիւնն 'ի Սպանիա. — Այնպէս կ՚կարծուէր թէ հանրապետները բոլորովին սպառեր էին, սակայն դեռ շունչ ունէին։ Հռոմի ժողովուրդն և Իտալացիք ճարտար պարագլուխ մը կ՚ուզէին ունենալ որպէս զի Սիլլայի հաստատած օրէնքը տապալեն։ Գաւառները բազմաթիւ տարագիրներ կ՚թափառէին և կ՚ջանային բնակիչները Հռոմի դէմ՝ ապստամբեցընել։ Բայց իրենց հայրենեաց թշնամիներուն հետ միանալով չէր որ հանրապետները պիտի կարենային յաղթել։ Սոցա մէջ կար մարդ մը Սերտորիոս անուն՝ որ Մարիոսի ընկերն էր

և Սպանիա տիրեր էր : Այն տեղ ժողովրդեան համարումը գրաւեց և հռոմայեցի կուսակալներուն դէմ գրգռեց, նոցա յաղթեց և ժամանակ մը բոլոր Թերակղզին նուաճեց : Կը մտածէր ան կախ հասարակապետութիւն մը հաստատելու Սպանիոյ մէջ : Սակայն իրեն դէմ ընտիր զօրապետներ ղրկեցին Հռոմէն . Սերտորիոս նոցա հետ կռուեցաւ վանեց : Պոմպէոսն ալ 'ի սկզբան նոյն ձախորդութիւնը կրեց : Բայց երբոր Սերտորիոսի տեղակալներէն մին զինք սպաննեց՝ ապստամբութիւնը դադրեցաւ : Պոմպէոս կ'պարծենար թէ ինք Սպանիան նուաճեց, թէև իրօք մատնութեան հետեւանքն էր այս յաղթութիւնը :

**Սուսերամարտից ապստամբութիւնը.** — Պոմպէոս Սպանիայէն դառնալու ատեն՝ տեսաւ որ նոր քաղաքային կռիւ մը ծագեր էր Իտալիա և նորա վերջ տուաւ : Շատ մը Գալլիացի և Թրակիացի սուսերամարտ գերիներ՝ որ հանդիսի օրեր ժողովրդեան առջև սուրերով կ'խաղային և պատերազմի ուժեղ գերիներ էին, Կապուա քաղքէն խոյս տալով՝ իրենց ընկերներն ազատելու խորհուրդ ըրեր էին : Ի սկզբան հազիւ վաթսուն հոգի էին այս փախստական գերիները, քիչ ատենէն 70.000 հոգի եղան և Վեսուֆ լեռին վրայ բանակ կազմեցին : Այս բանակին պարագլուխն էր Սպարտակոս, Թրակիացի հին զինուոր մը : Սպարտակոս երկու հռոմէական հիւպատոսներու զօրքը յրուեց և մտածեց Հռոմի վրայ քալել ու զայն կործանել :

Ծերակոյտը Կրասոսը ղրկեց նոցա դէմ շատ զօրքով։ Սպարտակոսի բանակին մէջ գժտութիւն ծագելով՝ բոլորովին պարտուեցան Հիւսիսային Իտալիոյ կողմերը։ Սպարտակոս տեսեր էր որ կամ յաղթել կամ մեռնիլ պէտք էր։ Երբոր իր ձին բերին որ հեծնէ, սուրը քաշեց և զայն սպաննեց, ըսելով. «Եթէ յաղթեմ, ընտիր ձիեր պիտի գտնեմ. իսկ եթէ յաղթուիմ, ի՞նչ պիտի ընեմ ձին»։ Այս ճակատամարտին մէջ արիաբար կռուելով ընկաւ իրեն հետ 40,000 զինուոր։ Այս կոտորածէն ազատող քանի մը գունդեր ուզեցին Ալպեան լեռները հասնիլ, բայց Պոմպէոսի հանդիպելուն և բոլորովին ջնջուեցան։ Թէև սուսերամարտից բուն յաղթողը Կրասոս էր, բայց սնափառ Պոմպէոս ծերակոյտին գրեց. «Կրասոս Սպարտակոսի յաղթեց, բայց ես պատերազմին արմատը կտրեցի, այնպէս որ նորէն չպիտի ծագի»։ Ի դարձին Հռոմ՝ Պոմպէոս յաղթանակն ընդունեց, մինչդեռ Կրասոս պարզ նուիրմունք մը, այսինքն երկրորդ կարգի յաղթանակ մը։

Պոմպէոս ծովահէնները կը ջնջէ։ — Կրասոս՝ սաստիկ սրդողեցաւ Պոմպէոսի դէմ։ Իրաւ է որ երկուքն ալ հիւպատոս եղան, սակայն քիչ ատենէն Պոմպէոս՝ որ շատ փառասէր էր և ազնուական ցեղէ, ժողովրդեան կողմն անցաւ և նորա սիրտը գրաւելու համար Սիլլայի դրած օրէնքը ջնջեց, որով տրիբուններուն իշխանութիւնը տեղմը էր։ Ժողովուրդն՝ որ անչափ

գլխացած կ'անուանէր Պոմպէոսը, հրովարտակ հանեց որ լիազօր իշխանութիւն տրուի Պոմպէոսի Ասիա երթալ երկու նշանաւոր պատերազմաց վերջ տալու համար։ Ծերակոյտը պարապ տեղ դէմ կեցաւ՝ վտանգաւոր համարելով այնքան զօրութիւն տալ Պոմպէոսի, որ դարձեալ ուրիշներուն տարած յաղթութեանց պտուղը քաղելու պիտի երթար։

Ծովահէններու պատերազմը. — Շատ տարիներէ 'ի վեր՝ Կիլիկիոյ կողմերը ծովահէններ ելնելով Փոքր Ասիոյ եզերքը կ'կողոպտէին։ Երթալով սոքա շատցան եւ մինչեւ Միջերկրականի քաղաքներուն աւազակութիւններ ընելու սկսան։ Իտալիոյ քաղաքները, եւ նոյն իսկ Հռոմի նաւահանգիստը, Ոստիա մտան ու թալլեցին։ Նշանաւոր մարդիկ կ'յափշտակէին եւ մեծ գումարներ՝ իբրեւ փրկանք ընդունելէն ետեւ՝ կ'արձակէին։ Հռոմայեցիք քանի մ'անգամ փորձ փորձեցին այս ծովահէնները ջնջելու, ընդ ունայն։ Թէեւ կ'յաղթեն, սակայն այս աւազակներուն ատեն մը թաքչելէն ետեւ՝ նորէն իրենց որջերէն կ'ելնէին եւ իրենց ասպատակութիւնները կ'շարունակէին։ Ժողովուրդը Պոմպէոսի մեծ նաւատորմիղ մը եւ շատ զօրք տալով՝ այս ծովահէններուն դէմ ղրկեց։ Երեք ամիսուան մէջ Պոմպէոս այս աւազակները հալածեց ջնջեց Միջերկրական ծովէն։

Միհրդատի դէմ երկրորդ պատերազմը. — Նոյն միջոցին էր որ Միհրդատ նորէն Հռոմայեցւոց

դէմ կուրին սկսաւ։ Լուկուլլոսէն յաղթուելով Տիգրանին քով փախաւ։ Լուկուլլոս Հայաստան մտաւ և Տիգրանին ալ յաղթեց (Ա մասն եր. 192). և երբ Տէգրանակերտն առնլէն ետև՝ Արտաշատ քաղաքն ալ պաշարելու գնաց՝ իր զօրաց մէջ խռովութիւն ելնելով ստիպուեցաւ ետ քաշուիլ։ Այս ատեններս էր որ Պոմպէոս ծովահէններու կուրին աւարտելէն ետև՝ ուզեց նաև Միհրդատայ դէմ երթալ։ Եւ երբ Հայաստան մտաւ, Լուկուլլոս իր հրամանատարութիւնը նմա յանձնեց և նեղանալով ըսաւ. «Պոմպէոս վատ գիշատիչ թռչուն մ'է, որ կոտորածին հոտն առնլով՝ ուրուրդին ետևէն կ'երթայ և ուրիշներուն կոտորած զօրաց դէմ կ'պատերազմի»։ Այնուհետև Լուկուլլոս Հռոմ դարձաւ իր դիզած անբաւ հարստութիւնը վայելելու և շռայլ ու ճոխ կեանք մը վարելու համար։

Պոմպէոս շատ տարի Ասիա մնաց, այլ և այլ յաղթութիւններ տանելով։ Սակայն Միհրդատը չէր կրնար բռնել։ Տիգրան՝ Հռոմի հետ հաշտուելով՝ երեսն դարձուցեր էր այս արիասիրտ զօրապետէն, որ Կովկասի լեռներն ապաւէն փնտռեց։ Պոմպէոս նորա ետևէն ընկաւ, և պահ մը կարծեց թէ թշնամին մեռած է։ Սակայն Միհրդատ յանկարծ Սև ծովուն հիւսիսային կողմն (Խրիմ) երևցաւ մեծ բանակով մը և միտքը դրաւ Իտալիա արշաւել՝ բոլոր Եւրոպայի հիւսիսային բարբարոս ազգերն իրեն միացրնելով։ Բայց իր զօրքն ու դաշնակիցներն այսպիսի յանդուգն խորհուրդ մը կատարելու մերժեցին և ապստամբեցան։ Իր որդին անգամ

Փառնակ՝ գլուխ քաշեց, զինք բերդի մը մէջ պաշարեց։ Ծերունին Միհրդատ՝ վախնալով որ Հռոմայեցւոց ձեռքը գերի չընկնի, ինքզինքն սպաննեց (63)։

Պոմպէոս՝ Պոնտոսը, Բիւթանիան, Ասորիքն ու Փիւնիկէն նուաճեց և Հռոմէական պետութեան սահմանները մինչև Եփրատ տարածեց՝ Մեծն Հայաստանը Տիգրանին թողլով։ Վերջապէս Իտալիա դարձաւ, և ինչպէս կ'կարծուէր թէ Հռոմի հասարակապետութիւնը պիտի կործանէ և ինքնիշխան տէր պիտի ըլլայ; սակայն Պոմպէոս գոհ եղաւ միայն փառաւոր յաղթանակ մ՝ ընելով ի Հռոմ, որու ժողովուրդն աննկարագրելի խանդով ընդունեց զինք և երկրորդ Աղեքսանդր անուանեց։

Կատիլինա և Կիկերոն։ — Երբոր Պոմպէոս Արևելքի պատերազմը կ'առաջնորդէր և զինուորական քաջութեամբ ժողովրդեան մէջ ու համարումն կ'գտնէր, ուրիշ ազնուական մը՝ Կատիլինա անուն, դաւադրական միջոցներով համբաւ ստանալու կ'ջանար։

Գրակքոսեանց ժամանակէն 'ի վեր՝ ժողովրդեան ազնուական և ռամիկ դասերուն մէջ անդադար էին երկպառակութիւնները։ Փառասէր մարդիկ շահուած այս կռիւները կ'գրգռէին, որ ստէպ արիւնահեղութեամբ կ'վերջանային։ Իրաւ է որ քանի մը հայրենասէր մարդիկ երկու կուսակցութիւնները հաշտեցընելու փորձ կը փորձէին, բայց իրենց քաջ ջիգը գրեթէ ապարդիւն կ'մնար։ Օրէն ազնուական մը՝ Տրո-

զօր իշխանութիւն՝ տայ ծովապետականներու և Միհրդատի դէմ մղած պատերազմաց մէջ։

Սակայն Սիկերոն՝ ճշմարիտ հասարակապետական մը ըլլալուն՝ չէր կրնար Պոմպէոսի փառասէր խորհուրդները քաջալերել։ Կ՚փափաքէր ամեն պարկեշտ և պատուաւոր քաղաքացիներէ կուսակցութիւն մը կազմել, որպէս զի կարող ըլլայ հասարակապետութեան շահերը պաշտպանել, Պոմպէոսի պէս փառասէր մարդիկ զսպել և Կատիլինայի պէս խռովարարները խորտակել։ Քաղաքային կռիւներն, մանաւանդ Մարիոսի և Սիլլայի մահավճիռներն բոլորովին խանգարեր, վատթարեր էին Հռոմայեցիքը։ Ոչ միայն խաժամուժին մէջ՝ որ ազատագրեալներէ և օտարականներէ կ՚բաղկանար, այլ և ազնուական կարգին մէջ այնպիսի գեհիկ մարդիկ կային, որ զուրկ էին հայրենասիրութենէ և ամեն պատուաւոր զգացումէ։ Սոցա կարգէն էր և Կատիլինա, որ թէև ազնուական տոհմէ էր, բայց վատանուն, մոլի և պարտքի մէջ թաղուած էր։ Այս մարդն Հռոմի ամեն տեսակ վատազգի անձերու հետ միանալով՝ սոսկալի դաւակցութիւն մը կազմեց։ Իր նպատակն էր մայրաքաղաքը կրակի տալ, ծերակոյտի անդամները ջարդել, հասարակապետութիւնը կործանել և Սիլլայի զինուորական իշխանապետութիւնը վերահաստատել։ Սիլլայի վաղեմի զինուորներն որ հեռաւոր քաղաքներ ցրուած էին, այս դաւադրութեան մէջ մտցուց։ Սոքա՝ քաղաքային պատերազմը նորէն սկսան՝ և առ ու աւար առնելու յուսով ծախեր էին իրենց տրուած հողերը։

Այս դաւաճանութեան մէջ մաս ունէին մեծ պաշտօնաւորներ և ազնուականներ։ Կատիլինա մինչև անգամ Հիւպատոսութիւնը պահանջելու ելաւ, բայց չկրցաւ յաջողիլ։ Ազնուական դասը մօտալուտ վտանգը տեսնելով՝ մարդ մը փնտռեց որ տէրութիւնն այս վտանգէն ազատէ։ Եւ որովհետև Կիկերոն իր ճարտասանութեամբն ու հայրենասիրական գործունէութեամբը կարող էր շատ բան ընել յօգուտ հայրենեաց, նորա դէմ ունեցած հակակրութիւնը մոռցաւ և զանի Հիւպատոս անուանել տուաւ։

Եւ իրաւի՝ Կիկերոն սկսաւ գաղտնի դիտել Կատիլինայի ընթացքը և նորա չար խորհուրդներն երևան հանել։ Սիլլայի հին զինուորներն Ետրուրիոյ մէջ գլուխ քաշեցին Կատիլինայի դրդմամբ, թէև սա նոյն միջոցին կ՚յանդգնէր ծերակոյտին ներկայ գտնուիլ որպէս զի ինքզինք արդարացընէ։ Այն ատեն՝ Կիկերոն չկրնալով իր զայրոյթը զսպել, դաւաճանին դիմակը վար առաւ, և չորս նշանաւոր ճառերով, որ Կատիլինեան կ՚կոչուին, ամբաստանեց զանի և նորա սև խորհուրդներն այնպիսի վեհութեամբ նշաւակեց որ Կատիլինան ժողովէն դուրս ելաւ պոռալով. «Կրակ ու բոց կ՚փչէք ինձի դէմ, փոյթ չէ, ես աւերակներու տակ պիտի մարեմ այդ կրակը»։ Եւ անմիջապէս գնաց Ետրուրիա, ապստամբութեան գլուխն անցաւ։ Կիկերոն միւս գլխաւոր դաւակիցները բռնել տուաւ և ծերակոյտին ձեռօք մահուան դատապարտեց։ Իսկ մնացած դաւաճաններն ալ յուսահատ մնացին և չկրցան գլուխ քաշել։ Քիչ մ՚ետք՝ նոյն

ինք Կատիլինա պատերազմի մը մէջ, զոր հասարակապետութեան դէմ կ'մղէր, սպաննուելով մեռաւ։ Ազնուականները հայր հայրենեաց անուանեցին Կիկերոնն 'ի նշան երախտագիտութեան։

Պոմպէոս, Կեսար և Կրասոս. — Երբոր Պոմպէոս Ասիայէն վերադարձաւ, Կատիլինայի դաւադրութենէ քիչ մ'ետք՝ տեսաւ որ պէտք էր շահիլ մարդ մ'որ թէև իր զինուորական փառքը չունէր ու ժողովրդեան յարգը չէր վայելեր, սակայն տաղանդովը իրմէ վեր էր և արդէն սկսեր էր ժողովրդեան աչքը մտնել։ Այս մարդը՝ Յուլիոս Կեսարն էր, Մարիոսի ազգականն՝ որ կ'փափաքէր տէրութեան ամենէն մեծ զօրապետն ու ժողովրդեան պարագլուխը լինիլ։ Իրաւ է որ Կեսար՝ իր երիտասարդութեան ժամանակ վարած կեանքովը չէր յուսացուեր որ օրին մէկն այնպիսի բարձր աստիճանի պիտի հասնի։ Անառակ, անպատիւ և պարտուց մէջ թաղուած էր։ Սակայն Սիլլա լաւ գիտեր էր զանի։ Տասն եօթ տարու էր Կեսար՝ երբ մի անգամ նորա հրամանին դէմ կեցաւ. իշխանապետը հրամայեց որ զանի սպաննեն։ Այն ատեն բոլոր ազնուականները խնդրեցին որ Կեսարը խնայէ։ Բաւական ատեն մերժելէն ետև՝ Սիլլա ըսաւ. «Ձեր խնդիրը կ'կատարեմ, բայց քաջ գիտցէք որ այս պատանեկին վրայ մի շատ Մարիոսներ կ'տեսնեմ»։ Այնուհետև Կեսար իր յանդգնութեան նոր նշան մը տուեր էր. Փոքր Ասիոյ ծովահէններ զինք բռներ և

քսան տաղանդ փրկանք խնդրեր էին որ ազատ թողուն ։ Կեսար սկսաւ ծիծաղիլ ըսելով. «Դուք չգիտէք թէ ինչ տեսակ գերի բռնած էք. ձե-զի յիսուն տաղանդ (250,000 ֆր.) պիտի տամ, բայց քաջ գիտցիք որ երբոր ազատիմ ձեզ կա-խել պիտի տամ» ։ Եւ իրօք իր խօսքը պահեց։

Կեսար ոչ միայն զօրապետ այլ մեծ ատենա-բան, գրագէտ և քաղաքագէտ էր. շատ հան-ճար ունէր և բնութեամբ ազնուասիրտ ու զօ-րեղ ։ Օրին մէկը Կեսար՝ դեռ պատանի էր, երբ Աղեքսանդրի մէկ արձանին առջև կեցած կ՚լար ։ Պատճառը հարցուցին և նա պատաս-խանեց. «Իմ տարիքս ունեցած ատեն՝ Աղեք-սանդր բոլոր աշխարհ նուաճեր էր, մինչդեռ ես դեռ բան մը չըրի» ։ Գիշեր մը նոյն իսկ Կապիտոլիոնի դրան առջև Մարիոսի արձանը վերականգնեց ։ Այս յանդուգն գործը տեսնելով ժողովուրդը շատ գովեց զինքը, իսկ ազնուա-պետական դասը նորա դէմ զայրացաւ, նա մա-նաւանդ երբոր Կեսար Կատիլինայի դաւակիցնե-րը պաշտպանեց, և ժողովրդեան համարումն ա-ւելի ևս գրաւեց ։

---

## ԳԼՈՒԽ ԼԳ.

Առաջին եռապետութիւն — մինչև Կեսարայ մահը ։

(60—45)

**Առաջին եռապետութիւն.** — Պոմպէոս Ասիա-յէն դառնալուն՝ քիչ քիչ ժողովրդեան կողմը

քունեց երբոր տեսաւ որ ազնուականներն, մանաւանդ Կիկերոն, Կատոն և Լուկուլլոս իրեն կ'հակառակին և չեն ուզեր Ասիա ըրած կարգադրութիւններն ընդունիլ։ Այն ատեն երկու զօրաւոր մարդոց հետ միացաւ, այս է Կեսար ու Կրասոս և տեսակ մը ընկերութիւն կազմեց, որ եռապետութիւն կ'կոչուի, որով երդում ըրած էին ամեն ազգային գործոց մէջ իրարու աջակցիլ և միասին գործել։ Այսու հետև այս երեք մարդիկն հասարակապետութիւնը կառավարեցին և երկու ընկերակիցներուն շնորհիւ Կեսար հիւպատոս անուանեցաւ։ Ազնուականները պարապ տեղն իրենց մէկ մարդը՝ Բիբուլոս նորա ընկեր տուին։ Կեսար քանի տեղ չդրաւ իր պաշտօնակիցն և ինք մինակը կառավարեց այնպէս՝ որ ծաղրաբանները սկսան ըսել իրաւամբ «Յուլիոսի և Կեսարայ հիւպատոսութիւնը»։ Եռապետները ժողովրդեան ձեռօք բոլոր հռոմէական պետութեան գլխաւոր նահանգներն իրենց մէջ բաժնեցին։ Նախ Կեսար Գալլիան առաւ. Պոմպէոս վերջէն Սպանիան ստացաւ, իսկ Կրասոս՝ Ասորիքը։ Բայց Պոմպէոս տեղակալներու ձեռօք Սպանիան կառավարեց և նախադաս սեպեց Հռոմ մնալ, ուր իբրև իշխանապետ կ'տիրէր։ Կրասոս՝ որ՝ թէև անքաւ հարստութեան տէր, Ասիա անցաւ աւելի ևս գանձեր դիզելու։ Բայց Հայոց ու Պարթևաց դէմ պատերազմի երթալով Միջագետաց մէջ յաղթուելով սպաննուեցաւ։ Կեսար Գալլիա անցաւ։

Կեսարայ յաղթանակները Գալլիոյ մէջ. — (58–

50) Բուն Գալլիա արդի Փրանսան էր, բայց մինչև Հռենոս կ'տարածուէր. ուստի իր մէջ կ'պարունակէր Հելվետիան և Պելժիքան: Բնակիչներն էին Գալլիացիք կամ Կելտացիք, որ անկախ և իրարու թշնամի բազմաթիւ ժողովուրդներէ կ'բաղկանային: Այս ազգը պատերազմ կը սիրէր և սաստիկ հեռաւոր երկիրներ կ'արշաւէր. այսպէս մինչև վերին Իտալիա տարածուեր էր, որու Հռոմայեցիք յայսկոյս Ալպեանց անունը տուեր էին՝ բուն Գալլիայէն զանազանելու համար, որ Գալլիա յայնկոյս Ալպեանց կ'կոչուէր: Թէև այս երկիրը կէս բարբարոս էր, քաղաքակրթութեան մէջ քիչ մը յառաջ գացած էր: Իր քուրմերն որ Դրուիդ կ'կոչուէին, ժողովրդեան վրայ մեծ ազդեցութիւն ունէին:

Արդէն Հռոմայեցիք Գալլիոյ հարաւային կողմերն իրենց տէրութեան մէկ գաւառը դարձուցեր էին, որմէ յառաջ եկած է Բրօվանս անունն, որ այժմ Փրանսայի հարաւ-արևելեան մասին կ'տրուի: Հռոմայեցիք կ'փափաքէին բոլոր Գալլիան նուաճել և այս նպատակին դիւրաւ հասան, այլ և այլ ժողովրդոց մէջ տիրած կռիւներուն պատճառաւ: Այս պարագայից մէջ՝ Հելվետացիք՝ իրենց քաղաքներն ու գիւղերը կրակի տալէն ետև՝ իրենց լեռնոտ երկիրը թողուցին Գալլիոյ հարաւային արգաւանդ դաշտերը գաղթելու համար: Կեսար շուտ մը իր գաւառը պաշտպանելու վազեց, Հելվետացիքը զարկաւ վանեց և իրենց հայրենիքը վերադառնալու ստիպեց:

Այնուհետև Կեսար իր զէնքը Գերմանացւոց

դէմ դարձուց։ Կիմբրացւոց արշաւանքէն 'ի վեր՝ Հռոմ այս մեծ ազգէն շատ կ'վախնար։ Այս ազգն աւելի բարբարոս էր քան Գալլիացիքն և շարունակ նոցա երկիրը կ'ասպատակէր։ Կեսար Գալլիան բոլորովին նուաճելու համար տեսաւ որ նախ Գերմանացիքը Հռենոսէն անդին քշել պէտք էր։ Ուստի Կեսար բոլոր զօրութեամբը ջանաց իրենց գլխաւորներէն մին՝ Արիովիստոսը վանել՝ որ Գալլիա եկեր հաստատուեր էր։ Յետոյ Պելժիքացիքը հպատակեցուց, նոյնպէս Հռենոսի բոլոր ձախ ափունքը։ Այն ատեն այս գետէն անցաւ, չէ թէ Գերմանացիքը լծին տակ առնելու դիտմամբ, այլ միայն նոցա աչքը վախցնելու համար։ Նոյն նպատակաւ էր որ Կեսար երկու անգամ Բրիտանիա արշաւեց, որու բնակիչները նոյնպէս Կելտացիք էին։ Առաջին անգամ իր նաւատորմիղն ալէկոծութենէ կորսուեցաւ, սակայն երկրորդ անգամ յաջողեցաւ ստիպել Բրիտոններն որ իրեն տարեկան տուրք մը վճարեն։

Քիչ ատենէն Կեսար բոլոր Գալլիոյ տիրեց. սակայն այս տիրապետութիւնը բոլորովին ապահով չէր։ Քանի մ'անգամ նուաճած ժողովուրդներն ապստամբեցան, և Կեսարայ զօրաց մեծ կոտորած տուին։ Սակայն այս նշանաւոր զօրապետը միշտ ապստամբները կ'զսպէր։ Ի վերջէ Գալլիացի ժողովուրդները՝ տեսնելով որ իրենց երկպառակութեան պատճառաւ օտարին լուծը կ'կրեն, բոլորը միասին նիզակակից եղան։ Իրենց իշխանն էր Վերկինգետորիքս, որ մեծ արիութեամբ կռուելէն ետև՝ յաղթուելով Ալե-

ղնա (Պուրկօնը) քաղաքը քաշունելու ստիպուեցաւ։ Կեսար շուտ մը հասաւ և միւս քաղաքը պաշարեց։ Անհամար պատերազմողներ Գալլիոյ ամէն կողմէ վազեցին որպէս զի իրենց եղբայրներն ազատեն և Հռոմայեցւոց չորս դին առին։ Բայց Կեսար այս ահագին բանակին յաղթեց և Ալեզիա քաղաքն անձնատուր եղաւ։ Այս վճռական յաղթութեամբ Կեսար Գալլիան խաղաղցուց և հռոմէական գաւառ դարձուց։

**Կեսարի ընթացքը Գալլիոյ մէջ.** — Կեսար ութ տարուան մէջ գալլիական արի ժողովուրդը զսպեց և պատերազմէն ետք՝ բնակիչներուն սիրտը շահելու համար՝ շատ անուշութեամբ վարուեցաւ։ Իրաւ է որ կռուին ժամանակ՝ յաղթած ժողովրդոց հետ շատ խստութեամբ վարուեցաւ, բայց անգամ մը յաղթական ելնելէն ետև՝ բռնութեան միջոցներ չգործածեց, ծանր հարկեր չդրաւ, ինչպէս որ սովոր էին ընել Հռոմայեցի կուսակալները։ Ուստի Գալլիացիք ալ հռոմէական օրէնքն ու քաղաքակրթութիւնը շուտով ընդունեցին և տէրութեան պատուարն եղան Գերմանացւոց արշաւանքին դէմ։

Այսպէս Կեսար փառաւոր կերպով իրեն յանձնուած պաշտօնը կատարեց. բայց իր անձնական նպատակին ալ հասեր էր. Պոմպէոսէն աւելի մեծ փառք ստացեր և քաջամարզ, անվեհեր բանակ մը կազմեր էր, որով իր փառասիրական խորհուրդներն 'ի գործ դնելու ալխոտի յաջողէր։

**Կիկերոնի աքսորն ու վերադարձը.** — Երբոր Կեսար Գալլիոյ մէջ զօրութիւն և համբաւ կ'ըստանար, անիշխանութիւնը Հռոմի մէջ կ'տիրէր և այլ և այլ կուսակցութիւններ իրարու դէմ կ'մաքառէին։ Ծերակոյտն անկարող էր այս անկարգութիւնները զսպելու։ Ժողովուրդը սաս-

տիկ զայրացած էր Կիկերոնի դէմ, վասն զի Կատիլինայի զաւակիցները պատժել տուեր էր չէ թէ ատեաններուն այլ ծերակոյտին ձեռօք։ Կլոդիոս տրիբունն՝ որ բուռն ռամկավար մ՚էր, աքսորել տուաւ Կիկերոնն՝ որ իբրև հայրենեաց հայր հռչակուեր էր։ Եռապետները թոյլ տուին որ ժողովուրդն այս անկարգութիւնները շարունակէ մի միայն ծերակոյտին զօրութիւնը կոտրելու համար. սակայն երբ Պոմպէոս տեսաւ որ Կլոդիոս օր ըստ օրէ իր բռնութիւնները կ՚աւելցընէ, նորա հետ պժտեցաւ և Կիկերոնն աքսորէ վերադարձուց։ Այս մեծ ճարտասանին վերադարձը փառաւոր կերպով կատարուեցաւ։

Ծերակոյտն ու Պոմպէոս կ՚հաշտուին. — Երբոր Կրասոս մեռաւ, եռապետութիւնը դադրելով՝ երկու ոսոխները, Պոմպէոս և Կեսար՝ կառավարութեան սանձը ձեռք ձգելու համար սկսան իրարու դէմ մրցիլ։ Կեսար Գալլիայէն անդադար դրամ կ՚ուղարկէր Հռոմ որպէս զի կուսակիցներ շահի և ժողովրդեան աչքը մտնէ։ Երբոր Պոմպէոս տեսաւ որ ժողովուրդն իրմէ երես կ՚դարձընէ և իր ոսոխին կողմը կ՚ծռի, ազնուականներուն հետ միացաւ։ Ծերակոյտն ալ քաջ հասկըցաւ վերջապէս որ Պոմպէոսէն պէտք ունի, թէ՛ քաղքին անդորրութիւնը վերահաստատելու, թէ Կեսարայ զինուորական զօրութեան դէմ դնելու համար։

Պոմպէոս հիւպատոս կ՚ըլլայ. — Նոր նոր խռովութիւններ ծագելով Հռոմի մէջ՝ ծերակոյտը

Պոմպէոսի աջակցութեան դիմելու ստիպուեցաւ։ Միլոն՝ Կիկերոնի բարեկամը, և կատաղին Կլօդէոս՝ զինեալ խումբերու գլուխն անցած՝ օր մը Հռոմի մօտ իրարու հանդիպեցան. այն ատեն արիւնալի կռիւ մը պատահելով Կլոդիոս սպաննուեցաւ։ Երբոր ժողովուրդը լսեց այս հայրենասէր պարագլխուն մահը, մայրաքաղաքին մէջ սոսկալի խռովութիւն մը տեղի ունեցաւ։ Խուժանը ծերակոյտին պալատն այրեց. ծերակոյտն անմիջապէս Պոմպէոսը միայն հիւպատոս անուանեց՝ նորա գրեթէ միապետական իշխանութիւն տալով։ Այս փառասէր մարդը վերջապէս իր նպատակին հասեր էր, ինք միայն իշխանութեան գլուխն անցեր էր, առանց բռնութեան և ծերակոյտին որոշմամբ։ Այսպէս հին ռամկավարներն անգամ՝ տեսակ մը թագաւորութեան դիմելու պարտաւոր էին, պետութիւնն ազատելու համար։ Պոմպէոս ալ ազնուականաց յոյսը պարապ չհանեց, խռովարարները զսպեց և քաղաքին մէջ բարեկարգութիւնը հաստատեց։

*Երկրորդ քաղաքական պատերազմ. Փարսաղայի ճակատամարտը.* — Պոմպէոս՝ թէև կերպ մ'իշխանապետ՝ միշտ կ'նախանձէր Կեսարայ փառաց վըրայ և քաջ գիտէր որ քանի Կեսար հզօր բանակի մը գլուխը մնար՝ ինք հանդիստ չպիտի վարէր իր իշխանութիւնը։ Ուստի իր խորհրդով ծերակոյտը՝ Գալլիոյ պատերազմին վախճանը պատճառ բռնելով հրաման ղրկեց որ իր պաշտօնէն հրաժարի և զօրքը ցրուէ, այն միջոցին որ Պոմպէոս Կապուայի մէջ զօրաժողով կ'ընէր

և պատերազմի պատրաստութիւն կ՚տեսնէր։ Սակայն ժողովրդեան մի քանի տրիբուններն Կասսիոս և Անտոնիոս, որ Կեսարայ ոսկիով կաշառուեր էին, ծերակոյտին հրամանին դէմ դրին և պահանջեցին որ Պոմպէոս ալ իր իշխանութենէ հրաժարի․ նոյնպէս ժողովուրդը կ՚պնդէր որ երկու ոսոխներն ալ հեռանան քաղաքային գործերէ․ բայց և ոչ մին ուզեց հրաժարիլ և հետևապէս հասարակապետութիւնը մեծ վտանգի մէջ էր։ Այն ատեն Կիկերոն կ՚գրէր․ «Մին հրամայող չուզեր, միւսը չհանդուրժեր որ իրեն հաւասար մարդ մը գտնուի․ Կեսար գահն ելնելու կ՚փափաքի, Պոմպէոս կ՚ուզէ ստիպել որ իրեն տան»։ Իսկ Կատոն կ՚ըսէր․ «Եթէ Պոմպէոս յաղթանակէ, Հռոմէն կ՚տարագրիմ․ եթէ Կեսար յաղթէ, ինքզինքս կ՚սպաննեմ»։

Ծերակոյտը Պոմպէոսի կողմը բռնեց, վասն զի սա հասարակապետութեան պաշտպան կ՚երևէր․ և երբ Կիկերոն հարցուց թէ բաւական զօրք ունի՞ Կեսարայ դէմ դնելու․ «Բաւական է ինձ, ըսաւ նա, ոտքս գետինը զարնել, իսկոյն լէգէոններ պիտի ելնեն»։ Պոմպէոսի կուսակից տրիբունները ծերակոյտէն վռնտուելով՝ Կեսարայ մօտ փախան։ Այն ատեն Կեսար՝ իբրև ժողովրդեան իրաւանց պաշտպան ինքզինք ցոյց տուաւ, և իր զօրաց առջև յանդիմանեց ծերակոյտին ապերախտ ընթացքը Գալլիոյ յաղթականին դէմ, այնպէս որ բոլոր զօրականները զայրացան և ըսին որ պատրաստ են երթալ Հռոմ և հասարակապետութիւնը պաշտպանել։

Այն ատեն Կեսար իր բանակն առնլով՝ Գալ-

լիայէն Ճամբայ ելաւ և Իտալիա մտաւ անարգել։ Երբոր Ռուբիկոն գետակին ափունքը հասաւ իր զօրքը կեցուց ու մտածեց, վասն զի վճիռ ելած էր որ նոյն գետակէն անցնող զօրապետը հայրենեաց թշնամի պիտի համարուի։ Վերջապէս Կեսար «Բաղդն այսպէս կ՚ուզէ» գոչեց, Ռուբիկոնէն անցաւ և շիտակ Հռոմի վրայ քալեց։ Ամեն տեղ Իտալացի ժողովուրդն իբրև ազատարար զինքն ընդունեց։ Հռոմի ազնուականներն այս լուրն առնլով՝ ահ ու դողի մէջ ընկան։ Պոմպէոս ծերակոյտին հետ Հռոմէն ելաւ և Եպիրոս փախաւ. մինչդեռ Կեսար կը մտնէր քաղաքը և բոլոր ժողովրդեան կողմէ խնդութեամբ կ՚ընդունուէր։ Բայց որովհետև Պոմպէոս շատ լէգէոններ ունէր Սպանիա՝ Կեսար իսկոյն այն տեղ գնաց։ «Պիտի երթամ, ըսաւ, առանց զօրապետի բանակի մը դէմ կռուիլ, և ապա առանց բանակի զօրապետի մը վրայ պետի յարձակիմ»։ Իրօք յաղթեց Կեսար, Սպանիան հնազանդեցուց և Հռոմ դառնալով՝ ժողովրդեան կողմէ իշխանապետ ընտրուեցաւ։ Այն ատեն մտածեց իր թշնամին զարնել, որ մեծ բանակ մը կազմելու յաջողեր էր։ Թեսալիոյ դաշտերուն մէջ՝ Փարսալոյ մօտ Ճակատ տուին իրարու դէմ։ Պոմպէոսի հետ գտնուող մեծամեծներն արդէն յաղթութեան վրայ այնքան վստահ էին որ այլ և այլ պաշտօններ իրարու կ՚բաժնէին, որպէս թէ Հռոմ լինէին։ Կեսար իր հին և վարժ զօրաց ապսպրեց որ երեսի զարնեն, քաջ գիտնալով որ ազնուական նորատի Հռոմայեցիք վէրք առնլով տձևնալէն աւելի կը

վախնային քան թէ պարտութեան մ'աղաէն։ Պոմպէոս բոլորովին յաղթուեցաւ և Եգիպտոս խոյս տուաւ՝ յուսալով որ Պտղոմէոս թագաւորին մօտ ապահով պատսպարան մը կ'գտնէ։ Բայց այս թագաւորը զանի սպաննել տուաւ՝ ցամաքն ելնելու միջոցին՝ այսպէս Կեսարայ աչքը մտնելու յուսով, որու ղրկեր էր Պոմպէոսի մատանին և գլուխը։

Կեսարայ Եգիպտական պատերազմը. — Փարսաղայի Ճակատամարտէն ետք՝ Կեսար Պոմպէոսին ետեւէն ընկաւ ու Աղեքսանդրիա հասաւ։ Իր ոսոխին մահուան վրայ արտասուք թափեց, և ոչ միայն մարդասպանները չվարձատրեց, այլ և Պտղոմէոսը ստիպեց որ իր քոյրը Կղէոպատրան իրեն գահակից ընէ։ Սակայն ժողովուրդը գլուխ քաշեց և Կեսար՝ որ հազիւ քանի մը հազար զինուոր ունէր, շատ մեծ վտանգէ անցաւ։ Եգիպտական բանակը զինքն արքունի պալատին մէջ պաշարեց։ Այս կռուին ժամանակ՝ եգիպտական նաւատորմը կրակ առաւ և նոյն կրակն Պտղոմէոսեանց գրատունն ալ բռնկելով մոխիր դարձուց։ Վերջապէս իրեն օգնութեան հասան զօրքեր և կարող եղաւ Պտղոմէոսի բանակը հարուածել, և նոյն ինք Պտղոմէոս խոյս տալու ատեն՝ Նեղոսի մէջ խեղդուեցաւ։

Եգիպտոսի գահը Կղէոպատրայի թողլէն ետեւ՝ Կեսար իր զէնքը Միհրդատի որդի՝ Փառնակէն դէմ դարձուց, որ առիթ գտեր էր իր տէրութիւնն ընդարձակելու։ Ահա այն ատեն գրեց այն նամակն որ շատ նշանաւոր է. «Եկայ,

տեսայ, յաղթեցի (Veni, vidi, vici)։ Քիչ մը ետք՝ Պոմպէոսի կուսակից հանրապետականներն ալ Աֆրիկէ, Թափսոսի ճակատամարտը կորուսին։ Այս կուսակցութեան ամենէն անուանի պարագլուխն էր Կատոն համարակալին եղբօրորդին Կատոն, որ Ուտիկէ փակուեր էր. բայց Ուտիկէ քաղաքն իր դռները յաղթական Կեսարայ բանալուն վրայ՝ Կատոն ինքզինք սպաննեց, և այնուհետև «Ուտիկեցի Կատոն» անունը ստացաւ։ Վերջապէս Պոմպէոսի կուսակցութեան յետին կտորներն ալ Սպանիոյ մէջ ջնջուեցան նշանաւոր պատերազմի մը մէջ (Մունդա) ուր կատաղօրէն կռուեցան։

Կեսար կայսր. — Կեսար 'ի դարձին Հռոմ մեծ պատիւներ ստացաւ։ Ժողովուրդը զինք բարևեց իբրև հայրենեաց հայր և իշխանապետ անուանեց։ Կեսար ոչ միայն ցկեանս տրիբուն, քրմապետ եղաւ, այլ և կայսեր տիտղոսն առաւ, այս է իմբերադօր, հրամանատար։ Մինչև այն ատեն այս տիտղոսը յաղթական զօրապետի մը կը տրուէր, և միայն պատուանուն մ'էր։ Բայց Կեսարէն ետք՝ կայսր՝ պետութեան տէր, զինուորական և քաղաքական իշխանութիւնը վարող վեհապետ նշանակեց։ Թէպէտ Հռոմի մէջ ամեն հասարակապետական ժողով և օրէնք մնացին, միշտ ծերակոյտ և հիւպատոսներ կային, բայց ծերակոյտը կայսեր հլու խորհուրդն էր և ամեն պաշտօնաւոր ու դատաւոր նորա իշխանութեան ներքև մտան։ Ժողովրդեան ժողովն իր առջի ազդեցութիւնը կորոյս և միայն իշխան-

պետին վճիռները վաւերելու ծառայեց։ Հասարակապետութիւնն ունայն ստուեր մը դարձեր էր, Հռոմի կառավարութիւնն իրօք միապետական եղեր էր։

Կեսարու կառավարութիւնը. — Կեսար ժողովուրդը քիչ քիչ միապետութեան վարժեցուց և առանց խռովութիւն գրգռելու կառավարութեան ձևը փոխեց։ Փառաւոր յաղթանակներով իր տարած յաղթութիւնները հռչակեց, և շքեղ հանդէսներ, հացկերոյթներ տուաւ ժողովրդեան, և առատ ցորեն ու դրամ բաժնեց։ Շատ տարիներ այս հանդէսները, խաղերն և խնջոյքները տեղի ունեցան և ժողովուրդը հրապուրուելով թոյլ տուաւ որ իր ազատութիւնն ու իրաւունքը ձեռքէն առնու։ Ստոյգ է որ Կեսար այս բարձր իշխանութեան արժանի եղաւ. ինք Մարիոսի և Սիլլայի պէս բուռն միջոցներ չգործածեց և կուսակցութեան մարդ չուզեց լինիլ։ Ընդ հակառակն՝ Հռոմը տակն ու վրայ ընող անկարգութիւնները վերջ առին իր օրովը։ Երկրագործութիւնն ու վաճառականութիւնը ծաղկեցան. Հռոմ քաղաքը հոյակապ շէնքերով զարդարեց։ Գրակքոսեանց ժամանակէն ինչ պահանջումներ որ ունէին Իտալացիք կատարուեցան։ Գաւառները պաշտպանեց Կեսար անկուշտ կողմնապետներու դէմ։ Ինք գրականութեան և ուսման ալ սէր ունէր։

Իր ժամանակը կարգի դրուեցաւ տօմարը, որ Յուլեան կոչուեցաւ. իր անունովը՝ Քուինտիլիս ըսուած ամսոյն անունն ալ յուլիս (Յուլիոս)

դրին ։ Վարբրոն անուն գիտուն մարդուն ձեռօք ընդարձակ մատենադարան մը շինելու սկսաւ, և ուրիշ մեծ խորհուրդներ ունէր կատարելու երբ իր մահը վրայ հասաւ ։

---

## ԳԼՈՒԽ ԼԵ.

### Կեսարայ մահը — մինչև Օգոստոս ։

### (45—31)

Բրուտոսի և Կասսիոսի դաւակցութիւնը. — Այսպէս Կեսար Հռոմի հասարակապետութեան գլուխն անցեր էր և թագաւոր լինիլ կ'փափաքէր ։ Սակայն Հռոմայեցիք կ'ատէին այս անունը, չէին ուզեր որ իրենց հանրապետական օրէնքը ջնջուին ։ Շատ ջանաց Կեսար որ ժողովրդեան քուէովը զահն ելնէ, բայց 'ի զուր ։ Օրին մէկը՝ հանդիսի մը մէջ՝. իր բարեկամը Մարկոս Անտոնիոս երկու անգամ փորձ փորձեց նորա գլուխը դնելու արքայական թագը, բայց ժողովուրդն սկսաւ սաստիկ տրտունջներ հանել, և երբ Կեսար այնպէս ձևացուց որ Անտոնիոսի ընծայքն իրեն հաճելի չէր և թագը մերժեց, բոլոր ամբոխը ծափ զարկաւ ։ Սակայն հետևեալ օրը տեսան որ Կեսարայ արձաններուն գլուխը թագեր դրեր էին. տրիբուններն ալ բարկանալով այս ան-

կարգութիւնն ընողները բռնեցին և պատժեցին։ Այն ատեն Կեսար տրիբունները պաշտօնէ ձգեց։ Իր այս ընթացքէն կասկածներն աւելցան։ Հին հասարակապետականներ կային Հռոմի մէջ որ Կեսարայ վարած վեհապետական իշխանութիւնն ու ծերակոյտին նուաստութիւնը տեսնելով սաստիկ վշտացեր էին։ Սոքա դաղտնի միանալով որոշեցին որ թոյլ չտան Կեսարայ թագաւոր լինելու։ Ուստի Կասսիոս և Բրուտոս դաւադրութիւն մը կազմեցին։ Վերջինն Ուտիկէի Կատոնին փեսան էր և կարծես թէ նորա առաքինութիւններն ու ազատասիրութիւնը ժառանգեր էր։ Բայց որովհետև Կեսարայ կողմէ շատ երախտիք տեսեր էր, երկար ատեն այս դաւադրութեան մէջ մտնելու վարաներ էր։ Շատ անգամ Բրուտոս իր նստարանին վրայ տոմսակներ կ՚գտնէր, որոց մէջ գրուած էր. «Բրուտոս, կ՚քնանաս. ո՛չ, դու Բրուտոս չես»։ Վերջապէս Բրուտոս յանձն առաւ դաւակիցներուն միանալ։

Սակայն իշխանապետին այլ և այլ կողմէ ազդարարութիւններ կ՚գային որ զգուշանայ։ Կեսար մտիկ չըրաւ. «Հռոմ, կ՚ըսէր նա, աւելի պէտք ունի իմ կեանքս պահպանելու քան թէ ես»։ Դաւադիրներն իրենց խորհուրդն ՚ի գործ դնելու օրը որոշեցին, այս է մարտի 15ին։ Նոյն օրը Կեսար ծերակոյտին երթալու համար տունէն ելաւ, թէև վհուկներն արգիլեր էին դուրս ելնելու։ Ճամբան մարդու մը հանդիպեցաւ որ իրեն թուղթ մը յանձնեց. այս թղթով դաւադրութիւնը կ՚իմացընէր։ Կեսար ժամանակ

չկրնար զայն կարդալու և գրպանը դրաւ։ Երբ որ ծերակոյտը մտաւ և աթոռը նստաւ, դաւակիցները նորա բոլորտիքն առին և մէկն առաջ անցնելով՝ խնդրեց որ իր աքսորեալ եղբայրն աքսորէն ետ կանչէ։ Միւս դաւադիրներն ալ միաբան աղաչել․ Կեսար մերժեց նոցա խնդիրը, և ոտք ելաւ ըսելով․ «Ձեր ըրածը բռնաբարութիւն է»։ Նոյն պահուն դաւակիցներն իւրենց դաշոյնները քաշեցին և ամեն կողմէն զարկին։ Կեսար ջանաց ինքզինք պաշտպանել, բայց երբոր տեսաւ որ Բրուտոս դաշոյնը վերցընելով զարնել կ'ուզէ․ «Եւ դու ալ, որդեակ իմ» ըսաւ հառաչելով և գլուխը ծիրանիովը ծածկեց։ Դաւակիցներէն քսան երեք հարուած ընդունելով՝ Կեսար մինչև Պոմպէոսի արձանին մօտը հասաւ և ինկաւ մեռաւ այն արձանին տակն (48)։

**Երկրորդ եռապետութիւն․ Ոկտաւիանոս, Անտոնիոս և Լեպիդոս․** — Դաւակիցները կարծեր էին որ բռնաւորը սպաննելով՝ հասարակապետութիւնը կարող պիտի լինին հաստատելու, բայց քիչ ատենէն յայտնի եղաւ որ եթէ ազատութեան ոգին քանի մը մարդոց սիրտը կ'վառէր, ժողովրդեան սրտին մէջ մարեր էր։ Եւ յիրաւի՝ երբոր ժողովուրդը Կեսարայ մահն իմացաւ[illegible]ակաց․ Ծերակոյտը փախաւ, իսկ դաւակիցները թուր 'ի ձեռին փողոցն ինկան և յորդոր կարդացին որ հասարակապետութիւնը վերստին հիմնեն։ Ոչ ոք լսեց նոցա ձայնը։ Ընդ հակառակն՝ ամենքը կ'ոգևորէին Կեսարայ մահուան վրայ,

և Մարկոս Անտոնինոս, որ հիւպատոս էր, խռովանին զայրոյթը դաւակիցներուն դէմ գրգռելու համար այլ և այլ միջոցներ գործածեց։ Երբոր Կեսարայ մարմինը փայտակոյտին վրայ դրին, Անտոնինոս դամբանական ճառ մ'արտասանեց, նորա վրայ գովեստ կարդաց․ բրած քաբէքը յիշեց և 'ի վերջէ նորա պատառուն և արիւնլուայ ծիրանին ժողովրդեան ցոյց տուաւ։ Այն ատեն ամբոխը փայտակոյտը վառելու փութաց, բոցավառ խարոյկներ առաւ և դաւակիցներուն տուներն այրելու վազեց։ Արդէն Կեսարայ ձգած կտակն ժողովրդեան բարկութիւնը մարդասպաններուն դէմ գրգռած էր. վասն զի նա այս կտակով քաղաքացւոց ստակ, փառաւոր պարտէզներ կ'թողուր. Բրուտոսն' իր Ոկտաւիանոս քեռորդւոյն խնամակալ կ'անուանէր։ Սակայն Բրուտոս և Կասիոս իրենց ընկերներուն հետ խոյս տուին։ Անտոնինոս կ'յուսար Կեսարայ յաջորդել, բայց ծերակոյտը՝ Կիկերոնի դրդմամբ՝ նորա դէմ կեցաւ։ Ահա այն ատեն մեծ, անուանի ճարտասանն այս վատ և փառասէր մարդուն դէմ ազդու ճառեր արտասանեց զոր Փիլիպպեան անուանեց (Դեմոսթենէսին՝ Փիլիպպոս թագաւորին դէմ արձակած ճառերուն անուամբ)։

Նոյն միջոյին Ոկտաւիանոս Յունաստանէն Հռոմ կ'դառնար։ Պատանի մ'էր 19 տարեկան, վատոյժ, նիհար, առ երևոյթս երկչոտ, այլ խորագէտ և յետին ծայր փառասէր։ Երբ Հռոմ հասաւ զինուորները զինք խնդագին ընդունեցան իբրև յաջորդ իր քեռույն։ Անտոնինոս՝ որ Հռո-

մէն ելեր էր, ջանաց Ոկտաւիանոսը ժողովըր-
դեան աչքէն հանել։ Բայց սա հանրապետական
դասուն միացաւ և Կիկերոնի պաշտպանութիւնը
խնդրեց։ Ապա ծերակոյտին խնդրանօք՝ զօրքն
առաւ և Անտոնիոսի դէմ քալեց որ Մուտինա
քաղաքը պաշարելու վրայ էր։ Անտոնիոս յաղ-
թուեցաւ։ Այն ատեն Ոկտաւիանոս հիւպատո-
սութիւնը խնդրեց, բայց ծերակոյտը մերժեց և
ուզեց զանի զօրաց հրամանատարութենէ ալ
ձգել։ Կեսարայ ժառանգորդն անմիջապէս բա-
նակին գլուխն անցնելով՝ Հռոմի վրայ քալեց,
զայն առաւ և բոլոր զօրքը վարձատրեց։ Ետ-
տոյ լսելով որ Անտոնիոս և Լեպիդոս մեծ բա-
նակով՝ Իտալիոյ հիւսիսային կողմէ՝ Հռոմ կը
դիմեն իրեն դէմ պատերազմելու, նոցա առաջն
առաւ և իր քեռւոյն վրէժը լուծելու համար՝
նոցա հետ հաշտուեցաւ և միասին Երկրորդ Եռա-
պետութիւնը հաստատեցին։

Մահամերձները. Կիկերոնի մահը. — Երբոր ե-
ռապետներն իրարու հետ դաշն դրին՝ սկսան
Մարիոսի և Սիլլայի հալածանքն ու մահավճիռ-
ները նորոգել, այնպէս որ իրարու զոհեցին բա-
րեկամ և ազգական։ Ամեն մէկն իր թշնամի-
ները ցանկին մէջ գրել կ՚տար և Ոկտաւիանոս
ակամայ ստիպուեցաւ նոյն ինք Կիկերոնն Անտո-
նիոսի վրէժխնդրութեան մատնել։ Երբ այս
մեծ ճարտասանն իր գիւղի տունէն խոյս կ՚տար՝
մարդասպանները վրայ հասան և զինք սպաննե-
ցին։ Գլուխն ու աջ ձեռքը եռապետին տարին,
որ վայրագ ուրախութիւն մը յատնեց զայն տես-

նելով, իսկ իր կինն Գուլվիա ասեղով մը ծակծկեց նորա լեզուն, որ Փիլիպպեան ճառերն արտասաներ էր։

Փիլիպպեան ճակատամարտը. — Անտոնինոս, Լեպիդոս և Ոկտաւիանոս՝ թէև իշխանութեան տէր էին Պետութեան, սակայն տակաւին քանի մը զօրաւոր թշնամիներ ունէին որ հանրապետական բանակի մը գլուխն անցած՝ Մակեդոնիայէն Փիլիպպէ քաղաքը կ'գտնուէին։ Ասոնք էին Բրուտոս ու Կասիոս։ Անդուլ եռապետներն Մակեդոնիա անցան իրենց թշնամիները զարնելու։ Բրուտոս պատերազմին յաջողութեան վրայ տարակոյս ունէր։ Գիշեր մը, կ'պատմէ Պլուտարքոս, առանձին կարդալու ատեն՝ իր վրանը մտաւ սոսկալի ուրուական մը։ «Ո՞վ ես դու», հարցուց նա, «ի՞նչ կ'ուզես ինձմէ»։ — Բրուտոս, պատասխանեց ուրուականը, ես քու չար ոգիդ եմ, Փիլիպպէի դաշտերուն մէջ զիս պիտի տեսնես»։ Իրաւի երկու անգամ ճակատ տուին։ Առաջին անգամ Բրուտոս Ոկտաւիանոսին յաղթեց, մինչդեռ Կասիոս Անտոնինոսէն յաղթուելով ինքզինք սպաննեց, վասն զի կարծեր էր թէ բոլորովին կորուսին ճակատամարտը։ Քանի օր ետք՝ երկրորդ պատերազմը տեղի ունեցաւ, և Բրուտոսի զօրքը յաղթուելով՝ թշնամւոյն ձեռքը գերի չիյնալու համար՝ իր սրովը ինքզինք սպաննեց։ Այս վախճանն ունեցան վերջին երկու Հռովմայեցիք, ինչպէս որ անուանեցին։ Իրօք՝ այսուհետև ազատութեան համար պատերազմող չմնաց, այլ միայն իշխանութեան համար (42)։

Եռապետները տէրութիւնն իրենց մէջ բաժնեցին։ Անտոնինոս Արեւելքն առաւ, և Ոկտաւիանոս Արեւմուտքը. իսկ Լեպիդոսի նախ Ափրիկէ բաժին ընկաւ, բայց վերջէն այդ բաժինն ալ առաւ ձեռքէն Ոկտաւիանոս և միայն իր վերայ քրմապետութեան պաշտօնը ձգեց։ Հեշտասէր Անտոնինոս Արեւելք գնաց և սկսաւ ժողովուրդները կեղեքել և ինքզինք զուարճութեանց տալ։ Կիլիկիոյ Տարսոն քաղաքը գտնուած ատենն՝ հրաման ղրկեց Եգիպտոսի Կղէոպատրա թագուհւոյն որ գայ զինքն արդարացնէ, վասն զի Բրուտոսի և Կասիոսի կողմը բռներ էր։ Կղէոպատրա՝ իբրև թագուհի եկաւ չէ թէ իբրև դատապարտ։ Կիւդնոս գետէն ներս մտաւ նաւով, որու քիթը ոսկիէ, առագաստները ծիրանիէ, և թիակներն ալ արծաթապատ էին, որ քանի ալիքը կ'պատռէին սրինգի և քնարի ձայներ կ'հանէին։ Թագուհին ոսկեթել վրանին տակ նստած էր և չորս կողմը հոտաւէտ խունկեր կ'ծխէին։ Անտոնինոս այս տեսարանէն հրապուրուելով՝ Կղէոպատրա թագուհւոյն մի շատ հաճէական պատուներ բաշխեց և վերջապէս իր կինն՝ ազնիւ Ոկտաւիան թողլով՝ Եգիպտոսի թագուհւոյն հետ ամուսնացաւ։ Անտոնինոս ծիրանի պատմուճան հագեր, գլուխը թագ դրեր էր, և արդէն ինքզինք Արեւելքի վեհապետ կ'կարծէր։

Ակտիոնի ճակատամարտը. — Երբոր Անտոնինոս Եգիպտոսի մէջ շուայտ ու անարգ կեանք մը կ'վարէր, Ոկտաւիանոս Իտալիան անդորրելու

նոսի ձեռքը գերի չմնայ ։ Այնուհետև Եգիպտոս հռոմէական գաւառ դարձաւ ։

Հասարակապետութեան վախճանը. ինքնակալութեան հիմնարկութիւնը. — Փարսալայի ճակատամարտը Հասարակապետութիւնը մահացուց. Ակտիոնի ճակատամարտը ինքնակալութիւն հաստատեց ։ Հռոմի ժողովրդեան ազատասէր զգացմունքը, գաղափարները, բարքը վարքը հետզհետէ փոխուեր էին, Գրակքոսեանց ժամանակէն 'ի վեր՝ միապետութեան դարձեր էին ։ Իրաւ է որ՝ ինչպէս Յուլիոս Կեսարայ առեն՝ հին օրինաց ձևը պահուեր էր, ժողովուրդը կ'կարծէր թէ առաջուան պէս վեհապետական իշխանութիւն կ'վարէր, ծերակոյտը տէրութեան գործերու վրայ կ'խորհրդածէր, սակայն իրօք կայսրն էր բուն վեհապետը, հասարակապետութիւնը դադրեր՝ տեղը հռոմէական ինքնակալութիւնն անցեր էր, որ Ե դարէ աւելի տևեց ։



## ԳԼՈՒԽ ԼԶ.

### Օգոստոս — մինչև Տիբերիոս ։

(31 Ք. Ա. — 14 Ք. Ե.)

Օգոստոս ինքնակալ. — Ակտիոնի պատերազմէն ետք՝ Օգոստոս գրեթէ բոլոր հին աշխարհի տիրապետութիւնը ձեռք ձգեց ։ Հռոմայեցիք իբրև Աստուած զինք պաշտեցին և նորա տաճար մը կանգնեցին ։ Թէպէտ մարմնովին տկար ,

և իր իմաստուն կառավարութեամբ ժողովուրդը շահելու կ'ջանար։ Նոյնպէս Պոմպէոսի որդին՝ Սեքստոսի կ'յաղթէր, Միջերկրական ծովուն ասպատակները կ'վանէր, իր զօրաց հողեր կ'բաշխէր, Հռոմի մէջ նոր նոր շէնքեր կ'կանգնէր, ճամբաներ կ'բանար, և գրեթէ իր քեռույն՝ Կեսարայ խորհուրդները կ'կատարէր։ Այն միջոցին՝ երբ Անտոնինոս ուզեց ծերակոյտին հաստատել տալ իր ըրած յիմարական գործերը, կռիւը ծագեցաւ։ Ոկտաւիանոս ամբաստանեց զինք, ըսելով թէ տէրութիւնը կ'կողոպտէ Կլէոպատրային համար, և այս թագուհւոյն դէմ պատերազմ հրատարակեց։ Երկու կողմէն ահագին պատրաստութիւններ տեսան։ Կլէոպատրա յորդորեց Անտոնինոսն որ ծովու վրայ պատերազմի։ Երկու եռապետներուն նաւատորմիղներն Ակտիոնի հրուանդանին մօտ (Յունաստան) զարնուեցան. Կլէոպատրա իր նաւերով ամենէն առաջ խոյս տուաւ, և վերջն Անտոնինոս իր զօրքը վատաբար թողլով Կլէոպատրային ետևէն գնաց Աղեքսանդրիա՝ միասին մեռնելու խոստանալով։ Երբոր Ոկտաւիանոս այս քաղքին մօտեցաւ՝ Անտոնինոս պարապ տեղն աղաչեց որ իրեն ներէ. և երբ իմացաւ թէ Կլէոպատրա մեռեր է, թէև այս լուրը սուտ էր, ինքզինք սպաննեց։ Թագուհին կ'յուսար որ Ոկտաւիանոսը կ'հրապուրէ, ինչպէս որ Կեսարն ու Անտոնինոսը շահեր էր, բայց տեսնելով որ նա անտարբեր կ'մնայ՝ իր արքայական հագուստները հագաւ, ոսկի անկողնին մէջ պառկեցաւ և ինքզինքը իժի մը խածնել տալով մեռաւ, որպէս զի Ոկտաւիա-

Նոսի ձեռքը գերի չմնայ: Այնուհետև Եգիպտոս հռոմէական գաւառ դարձաւ:

Հասարակապետութեան վախճանը. Ինքնակալութեան հիմնարկութիւնը. — Փարսալայի ճակատամարտը Հասարակապետութիւնը մահացուց. Ակտիոնի ճակատամարտը ինքնակալութիւն հաստատեց: Հռոմի ժողովրդեան ազատասէր ըղձացմունքը, գաղափարները, բարքը վարքը հետզհետէ փոխուեր էին, Գրակքոսեանց ժամանակէն 'ի վեր՝ միապետութեան դարձեր էին: Իրաւ է որ՝ ինչպէս Յուլիոս Կեսարայ ատեն՝ հին օրինաց ձևը պահուեր էր, ժողովուրդը կ'կարծէր թէ առաջուան պէս վեհապետական իշխանութիւն կ'վարէր, ծերակոյտը տէրութեան գործերու վրայ կ'խորհրդածէր, սակայն իրօք կայսրն էր բուն վեհապետը, հասարակապետութիւնը դադրեր՝ անոր հռոմէական ինքնակալութիւնն անցեր էր, որ 4 դարէ աւելի տևեց:



## ԳԼՈՒԽ ԼԶ.

### Օգոստոս — մինչև Տիբերիոս:

### (31 Ք. Ա. — 14 Ք. Ե.)

Օգոստոս ինքնակալ. — Ակտիոնի պատերազմէն ետքը՝ Օգոստոս գրեթէ բոլոր հին աշխարհի տիրապետութիւնը ձեռք ձգեց: Հռոմայեցիք իրենց Աստուած զինք պաշտեցին և նորա տաճար մը կանգնեցին: Թէպէտ մարմնովին տկար,

վճարոյժ էր Օգոստոս, բայց Տիբերիոս քաղաքագէտ մ'էր։ Ոչ Կեսարայ հանճարն և ոչ նորա զինուորական ձիրքն ունէր, սակայն կառավարելու արուեստը քաջ գիտէր։ Փառասէր, հաստատամիտ, համբերատար, Օգոստոս իր նպատակին հասնելու և պարզ մարդավար կերպերովն իր փառասիրութիւնը ծածկելու գաղտնիքը գիտէր։

Ոկտաւիանոս՝ իր մօրեղբօրը՝ Կեսարայ գործը դիւրաւ գլուխ հանեց և հասարակապետութիւնը միապետութեան դարձուց։ Արդէն ազատութեան պաշտպանները քաղաքային կռիւներուն մէջ հատեր էին. ժողովուրդը՝ հանրավարական և հայրենասիրական զգացումներն՝ որ Հռոմի մեծութեան պատճառ եղեր էին, կորուսեր էր։ Միայն կ'փափաքէր որ տէրութիւնը զինք կերակրէ և զբօսցընէ։ Հաց և խաղեր, այս էին սոյն վատթարացած ամբոխին աղաղակն ու փափաքը։

Ոկտաւիանոս՝ Հռոմայեցիքը չվիրաւորելու համար այնպէս կեղծեց թէ հասարակապետութիւնը կ'սիրէ։ Զուզեց բնաւ այնպիսի պատուանուն մ'առնուլ, որ կրնար կասկած տալ թէ ինք բռնապետ կ'ուզէ լինիլ, մանաւանդ զգուշացաւ Թագաւոր անունը կրելու, որմէ Հռոմայեցիք կը խորշէին։ Ամէն ազատական ձևերը պահեց, իրաւ, բայց Կեսարայ պէս բոլոր քաղաքական պաշտօններն ինք ստանձնեց։ Տրիբուն եղաւ, որով անբռնաբարելի կ'դառնար, փոխ–հիւպատոս, որով բոլոր գաւառներն կ'կառավարէր, Համբարակալ, հիւպատոս և այլն։ Բաւական սեպեց

Նմբերապետը տիտղոսն ընդունելու, որու Օգոստոս (փառաւոր) մականունը կցեց ծերակոյտը, մականուն մ'որ միայն դից կ'տրուէր։ Նոյնպէս Յուլիոս անունն առաւ և այնուհետև Օգոստոս Յուլիոս կամ պարզապէս Օգոստոս անուամբ կ'յիշուէր։

Կիննա. — Երբ մի անգամ իշխանութիւնը ձեռք ձգեց Օգոստոս, կարծես թէ Ոկտաւիանոս վրէժխնդիր եռապետը չէր։ Իր հին թշնամիները չհալածեց, վրէժ հանել չուզեց, այլ անուշութեամբ և չափաւորութեամբ վարուեցաւ ամենուն հետ։ Մի քանի անգամ իր կենաց դէմ դաւակցութիւններ եղան ընդ ունայն, և ամենէն ծանր ու երևելի էր այն դաւադրութիւնն որ պարագլուխ ունէր Կիննա՝ Պոմպէոսի թոռը։ Դաւակիցներէն մին մատնեց Կիննան, որ ձերբակալ եղաւ և մահուան դատապարտուեցաւ։ Օգոստոս սկսաւ մտածել իրեն դէմ եղած դաւաճանութեանց վրայ և ըսաւ. «Եթէ այսքան քաղաքացիք իմ մահս կ'ուզեն, միթէ ապրելու արժանի եմ։ Ե՛րբ պիտի լմննայ այս տանջանքը»։ Իր կինը՝ Լիվիա այս խօսքը լսելով՝ ըսաւ. «Ինչու համար բժիշկներուն պէս չես վարուիր. երբ կ'տեսնեն որ սովորական դեղերն անզօր են, հակառակ դեղեր կ'գործածեն։ Մինչև հիմա խստութիւնդ անօգուտ մնաց, այսուհետև վեհանձնութիւնը փորձէ»։ Օգոստոս այս խրատը բռնեց. Կիննան իր առջևը բերել տուաւ, ներեց և շատ բարիք ըրաւ։

Օգոստոսի դար. Ներքին կառավարութիւն. —

Օգոստոսի իշխանութիւնն երևելի եղաւ մանաւանդ այն պատճառաւ որ արուեստներն ու գրականութիւնը շատ ծաղկեցան՝ իր պաշտպանութեամբն և իր Մեկենաս բարեկամին սատարութեամբը։ Այսպէս Օգոստոսի դարը Հռոմի պատմութեան մէջ, Պերիկլէսի դարուն պէս էր։ Նոր նոր ճամբաներ և ջրանցք շինել տուաւ. ամեն քաղաքներու մէջ հոյակապ շէնքեր և այլ և այլ յիշատակարաններ կանգնեց։ Մանաւանդ Հռոմ քաղաքը բոլորովին այլափոխ եղաւ. փառաւոր տաճարներ, թատրներ, բաղնիքներ, մատենադարաններ քաղքին շքեղութիւն տուին։ Օգոստոս կ'ըսէր. «Աղիւսով շինուած գտայ այս քաղաքը և մարմարէ պիտի թողում»։

Օգոստոս ջանաց նաև գաւառները բարեկարգել, որոց քաղաքային կռիւները շատ չարիք հասուցեր էին։ Ուստի նոր վարչութիւն և օրէնք հաստատեց գաւառներուն, ուր ճամբաներ բանալ տալով առուտուրը ծաղկեցուց և բոլորն ալ մայրաքաղքին հետ կապեց։ Տուրքերը թեթևցուց, ատեաններ հաստատեց որ ամեն դատ արդարութեամբ տեսնեն։ Այսպէս Հռոմի տէրութեան հպատակները սկսան ապահովութիւն վայելել և իրենց իրաւունքն ու շահերն աւելի լաւ պաշտպանուեցան քան թէ Հասարակապետութեան ժամանակը։

Ամփոփումն. — Սակայն պէտք է նկատել որ եթէ մէկ կողմէ ժողովուրդն աւելի հանգիստ, անդորր վիճակ մը ստացաւ, եթէ ապահովութիւն և քաղաքային իրաւունքներ վայելեց, միւս կողմէ՝ իր քաղաքական իրաւունքը կորոյս, այնպէս որ չէր կրնար վարել այն հանրա-

վարժական պաշտօնները որոց համար երբեմն հոգի կ'առնէր: Այն ատեն կորաւ հայրենասիրութիւն և ազատասիրութիւն, որով Հռոմայեցին կ'ազնուանար: Իր բնութիւնը վատթարացաւ, կենսական ոյժը կորաւ, և բուն մասին այս վատթարութենէ յառաջ եկաւ հռոմէական տէրութեան և հին քաղաքակրթութեան անկումը:

Սահման կայսրութեան. — Օգոստոս՝ տէրութեան մէջ կարգ կանոն դնելէն ետև՝ Յանոսի անուանի տաճարը գոցեց, որ երկու դարէ 'ի վեր բաց մնացեր էր: Երրորդ անգամ կ'պատահէր այս բանս: Տեսնելով պետութեան ընդարձակութիւնն, չուզեց նոր աշխարհակալութիւններ ընել և նորա սահման որոշեց: Արևմուտքէն՝ Ովկիանոսը, հիւսիսէն, Հռենոս և Դանուբ, արևելքէն՝ Եփրատ, հարաւէն՝ Ափրիկէի անապատներն ու Ատլաս լեռները: Այս ահագին տէրութիւնը պաշտպանելու համար դրեթէ 300-000 հոգւոյ բանակ մը կ'բաւէր: Այսպէս 4 միլիոն Հռոմի քաղաքացիք 120 միլիոն մարդոց վրայ կ'իշխէին:

Բարբարոսները. Վարոսի պարտութիւնը. — Սակայն բարբարոս ժողովուրդներ հռոմէական տէրութիւնը կ'շրջապատէին և նորա բոլոր քաղաքաց վրայ յարձակելու կ'սպառնային: Սոցա մէջ ամենէն ահարկուներն էին Գերմանացիք՝ որ Հռենոս ու Դանուբ գետերէն անդին կ'բնակէին, և Պարթևներն, Եփրատէն անդին: Օգոստոս քանի մ'անգամ զօրք ղրկեց Գերմանիա, չէ թէ նոր երկիրներ գրաւելու միտք, այլ Հռենոսի մօտ բնակող ժողովուրդները քաղաքակրթելու

և բարբարոսներու արշաւանքին դէմ թումբ մը կանգնելու։ Թէև քանի մը Գերմանացի ժողովուրդներ հնազանդեցան Հռոմի, բայց երբ տեսան որ իրենց բնիկ լեզուն, սովորութիւնները կ'ուզէն փոխել, գլուխ քաշեցին իրենց պարագլուխ ունենալով՝ Հերման (կամ Արմինիոս) արիասիրտ և աշխատասէր երիտասարդը։ Վարոս հռոմայեցի զօրապետը նոցա դէմ գնաց բայց իր բանակին անտառի մը մէջ ջարդուեցաւ, և ինքն ալ յուսահատօրէն ինքզինք սպաննեց։ Այս ձախորդ լուրն առնլուն՝ Օգոստոս շատ ցաւ զգաց և ստէպ քունին մէջ կ'պոռար. «Վարոս, Վարոս, տուր ինծի իմ լեգէոններս»։

Օգոստոսի ընտանիքը. — Օգոստոս իր կենաց վերջին տարիներն ընտանեկան վիշտեր կրեց։ Իր Յուլիա աղջկան երկու տղայքն որդեգրեր էր, բայց սոքա մեռան և իրենց մայրն անկարգ վարմունք մ'ունենալուն՝ Օգոստոս ստիպուեցաւ զանի աքսորել։ Այն ատեն իր երկրորդ կնկան Լիվիայի որդին Տիբերիոն որդեգրեց։ Օգոստոս 44 տարի իշխելէն ետև՝ մեռաւ ծերութեան մէջ։

Օգոստոսի ընտանիքը կ'կազմէին իր Յուլիա աղջկան սերունդն և իր Ոկտաւիա քրոջ զաւակները։ — Յուլիա, Օգոստոսի դուստրը, աղջիկ մը թողուց Ագրիպպինա, որ Գերմանիկոսի հետ ամուսնանալով՝ որդի մ'ունեցաւ Կալիգուլա, և աղջիկ մը՝ որ նոյնպէս Ագրիպպինա կ'կոչուէր, որմէ ծնաւ Ներոն։ Ոկտաւիա, Օգոստոսի քոյրն՝ Անտոնիոսի հետ կարգուեր էր. երկու դուստր ունեցաւ. մին Տրուսոսի հետ ամուսնացաւ, որ Լիվիայի որդին և Տիբերիոսի եղբայրն էր, և երկու որդի ունեցաւ Գերմանիկ-

իոս եւ Կլոդիոս։ Առաջինն՝ Ագրիպպինան, Օգոստոսի թոռն՝ իրեն կին բրաւ, եւ երկրորդը՝ Մեսսալինան, որ Ոկտաւիայի երկրորդ աղջկէն ծներ էր։

Յիսուս Քրիստոսի ծնունդը. — Օգոստոսի իշխանութեան ժամանակ՝ Հռոմի հիմնարկութենէ 754 տարի ետք՝ Յիսուս Քրիստոս, փրկիչն աշխարհիս ծնաւ 'ի Հրէաստան։ Այնուհետեւ կ'սկսի Քրիստոսի թուականը, որով պիտի նշանակենք յետագայ դէպքերը։

## ԳԼՈՒԽ ԼԷ.

### Տիբերիոս — Մինչեւ Վեսպասիանոս։

### (14—69)

Տիբերիոս. — Շուրջ 55 տարի կայսրութիւնն Օգոստոսի ընտանեաց մնաց։ Իր յաջորդն եղաւ Տիբերիոս, որ առաջ իր քաղաքականութեան հետեւեցաւ եւ մեծ չափաւորութիւն ցուց։ Գերմանիա նորէն զօրք ղրկեց որպէս զի Վարոսի պարտութեան վրէժն առնու, եւ այս պատերազմին մէջ իր եղբօրորդին Գերմանիկոս յաղթող եղաւ։ Այս երիտասարդն իր պատերազմական հանճարովն ու իր ազնիւ բնաւորութեամբ զօրաց եւ ժողովրդեան սէրն ու համարումը գրաւեր էր։ Օգոստոսի թոռն՝ Ագրիպպինա՝ իրեն արժանի կողակիցն էր։ Սակայն իր տարած յաղթութիւններն եւ վայելած համբաւը Տիբերիոսի

նախանձը գրգռեցին։ Ուստի երբ Գերմանիկոս Հռոմ դարձաւ, Կայսրը զանի Արեւելք ուղարկեց։ Քանի մը տարի ետք՝ Գերմանիկոս մեռաւ, և կ'ըսուի թէ Ասորւոց կուսակալը Պիսոն՝ կայսեր հրամանով զանի թունաւորեր էր։ Ագրիպինա կինն՝ ինքն Հռոմ եկաւ որպէս զի նորա մահուան վրէժը պահանջէ, և Կայսրն բանտի մը մէջ սպաննել տուաւ Պիսոնն որ իր նենգութիւնն երեւան չելնէ։

Տիբերիոս՝ Օգոստոսի սերունդը բոլորովին ջնջել կ'ուզէր, որպէս զի ինք անվախ տիրապետէ։ Եւ իրօք բացարձակ իշխանութիւն մը վարեց և Հռոմի ժողովրդեան ատելի եղաւ։ Իր անօրէն հրամաններուն գործակատար ընտրեց՝ իր մէկ անզգամ մտերիմը Սէյանոս, որ կայսերական պահապան գունդ մը հաստատեց Պրէտորեան անուամբ, և ինք նորա հազարապետն եղաւ։ Այս Պրետորեան զօրքը վերջէն բռնակալութեան պաշտպանները դարձան։ Տիբերիոս մահուան դատապարտեց բոլոր այն մարդիկն որ իրեն կասկածելի կ'երեւէին, և այսպէս շատ պատուաւոր անձեր մեռան. Գերմանիկոսի բոլոր ընտանիքը բնաջինջ եղաւ։

Տիբերիոս իր կենաց վերջին տարիները Կապրէա կղզին (Նափոլիի ծովածոցին մուտքը) անցուց ցոփութեան մէջ։ Նոյն միջոցին կառավարութեան սանձը Սէյանոսի յանձնեց, և նորա ձեռօք 'ի գործ դրաւ բոլոր արիւնուշտ հրամանները։ Հռոմ սարսափի մէջ էր։ Սէյանոս կայսերութեան աչք ունէր և այս նպատակին համար կ'դաւադրէր։ Տիբերիոս իր այս պաշ-

տօնէին. դաւն երևան հանեց, զանի ծերակոյտին մէջ ձերբակալ ընել տուաւ և մահուան դատապարտեց։ Ժողովուրդը նորա դիակը պատառեց։ Սեյանոսի մատնութիւնն աւելի գրգռեցին Տիբերիոսի կասկածներն, այնպէս որ մինչև մեռնիլն իր անգթութիւնները շարունակեց։

Յիսուս Քրիստոսի մահը. — Տիբերիոսի անօրէն իշխանութեան քսաներորդ տարին էր որ Քրիստոսի մահը տեղի ունեցաւ։ Այն ատեն առաքեալները ցրուեցան և քրիստոնէական եկեղեցին հիմնեցին։ Վերջէն պիտի տեսնենք թէ քրիստոնէութիւնն ինչպէս յառաջ գնաց հռոմէական տէրութեան մէջ՝ հեթանոսութեան դէմ մաքառելով։

Կալիգուլա. — (37) Տիբերիոսի յաջորդեց Կալիգուլա, որ Գերմանիկոսի որդին էր, և Հռոմայեցիք մեծ խնդութեամբ տեսան նորա գահակալութիւնը։ Ի սկզբան նոր կայսրն ամենուն յոյսը պարապ չհանեց, սակայն քանի մ՚ամիս ետք հիւանդանալով՝ տեսակ մը խելացնորութիւն եկաւ վրան, և այնուհետև համարէ թէ կատաղի խենթ, արիւնռուշտ բռնաւոր մը դարձաւ։ Մեծ հաճոյք կ՚զգար երբոր մահուան վճիռներ կ՚արձակէր։ Օր մը փափաք յայտնեց որ Հռոմի ժողովուրդը լոկ գլուխ մ՚ունենար որպէս զի մէկ հարուածով զայն կտրէր։ Իր յիմարական գործոց մէջ նշանաւոր է Աշխոյժ ձիուն ըրած պատիւը, իր արձանն մեհեաններուն մէջ դնել տալն։ Ժողովուրդն այնքան վատթարացած էր որ չորս տարի այս հրէշին ըրածներուն հանդուրժեց. ՚ի վերջէ Պրետորեան զօրական մը զինք սպաննեց։

Կլօդիոս. — (41) Կալիգուլայի մահուանէն ետք՝ Պրետորեան գունդը պալատը մտաւ կողոպտելու և նոյն միջոցին զինուորին մէկը Կլօդիոսը տեսաւ, որ անկիւն մը քաշուած կ'դողդողար վախէն։ Իսկոյն զօրքը զանի կայսր հրատարակեց։ Կլօդիոս թէև ուսեալ՝ տկար ու ապուշ մարդ մ'էր և թոյլ կ'տար որ իր կիներն ու պալատականները զինք կառավարեն։ Իր Մեսալինա կինն՝ անկարգ կենաքով՝ վատ անուն մը ստացեր ու ամեն տեսակ անօրէնութիւններ կը գործէր։ Կլօդիոս զանի սպաննել տուաւ և Ագրիպինան իրեն կին բրաւ։ Այս կայսրուհին ալ փառասէր կին մ'էր, որ առջի էրիկէն ունեցած Ներոն որդին՝ Կլօդիոսի Բրիտանիկոս որդւոյն տեղը թագաւորել տալ ուզելուն, կայսրը թունաւորեց։

Ներոն. — (54) Ագրիպինա կ'յուսար որ Ներոն իր խորհրդովը պիտի կառավարէ տէրութիւնն, և իրաւ ի՝ առջի տարիներն՝ իրեն դաստիարակ՝ Սենեկա փիլիսոփային հսկողութեան տակ՝ կ'կարծուէր թէ լաւ կայսր մը պիտի լինի, և ինչպէս կ'խոստանար, Օգոստոսի օրինակին պիտի հետևի։ Օր մը մահավճիռ մը բերին որ ստորագրէ։ «Երանի թէ գիր գրել չգիտնայի» ըսաւ։ Սակայն քիչ ատենէն իր մօրն ու խնամակալներն լուծը թօթուեց և իր յոռի կիրքն ու վատ բնաւորութեան սոսկալի նշանները ցցուց այնպէս որ իր անունը մնաց պատմութեան մէջ անգութ բռնաւոր մը նշանակելու համար։ Այն ատեն նորոգուեցան Տիբերիոսի ու Կալիգուլայի գործած աղէտալի անօրէնութիւնները։ Ոչ աղ-

դահճի նմանեց և ոչ բարեկամի ։ Խնջոյքի մը վրայ իր եղբայրը՝ Բրիտանիկոսը՝ թունաւորել տուաւ ։ Նոյնպէս կինը սպաննեց բաղնիքի մէջ երակը բանալ տալով ։ Սենեկա և իր քեռորդին՝ Լուկանոս բանաստեղծն՝ իմանալով որ մահուան դատապարտուեր են, երակնին բանալով մեռան ։ Ներոն իր մայրն ալ, Ագրիպինան ծովամոյն ընելու փորձելէն ետև՝ գաղտնի սպաննել տուաւ ։

Այնուհետև Ներոն ինքզինքն ամեն տեսակ անկարգութեանց տուաւ և անհաւատալի յիմարութիւններ գործեց ։ Մինչև անգամ՝ իբրև դերասան՝ Հռոմի թատրին վրայ խաղաց ։ Մայրաքաղաքին մէկ մասը հրոյ ճարակ եղաւ, և ըսին թէ Կայսրը կամաւ ձգեր էր այդ կրակն որպէս զի իր պալատին աշտարակն ելած՝ այն ահռելի տեսարանը դիտէ, զուարճանայ ու Տրովիոյ հրդեհը երգէ ։ Ներոն այս հրդեհին իբրև հեղինակ ամբաստանեց քրիստոնեաները, որ՝ այս պարագային մէջ՝ սոսկալի տանջանքներ կրեցին ։ Սակայն ժողովրդեան գանգատները օր ըստ օրէ կ'աւելնային այսպիսի հրէշի մը դէմ որ տէրութիւնը կործանելու վրայ էր ։ Գալբա՝ Սպանիոյ հռոմէական բանակին զօրավարն, Հռոմի վրայ քալեց ։ Ներոն քաղքէն փախաւ և ինքզինք սպաննեց գոչելով . «Ափսո՛ս որ աշխարհ ինծի պէս երաժիշտ մը պիտի կորուսէ» ։ Ներոնի հետ կ'վերջանայ Օգոստոսի ընտանիքը ։

**Գալբա, Օթոն, Վիտելլիոս.** — (68) Գալբա՝ որ ծերունի զօրավար մ'էր, քաջասիրտ և

խստաբարոյ՝ ջանաց բարեկարգութիւն հաստատել թէ ժողովրդեան և թէ զօրաց մէջ, բայց քանի մ'ամսէն Պրետորեան գունդերը զինք սպաննեցին։ Այնուհետև կայսր կարգելու և ձգելու իշխանութիւնը զօրաց ձեռքն անցաւ, այնպէս որ մէկ տարուան մէջ երեք կայսրներ ընտրուեցան. Գալբային տեղ Ոթոն անուն մոլի և շռայլ մարդը դրին, որ Ներոնի վատանուն ընկերներէն մին էր։ Բայց նոյն միջոցին Գերմանիոյ լեգէոնները Վիտելլիոս զօրապետը կայսր անուանեցին։ Այս երկու կայսրներն Իտալիոյ մէջ իրարու դէմ ճակատեցան։ Ոթոն յաղթուելով ինքզինք սպաննեց. իսկ Վիտելլիոս սոսկալի որկրամոլի մ'անունը ձգեց և իր կեանքը զեղխութեամբ անցուց։ Բայց քիչ ատենէն՝ Վեսպասիանոս զօրավարն Արևելքի մէջ կայսր ընտրուելով՝ Վիտելլիոս կ'յաղթուի ու կ'գլխատուի։

Կայսերութեան վիճակը. — Օգոստոսի բոլոր յաջորդներն անարժան մարդիկ եղան։ Իրմէ ետք՝ կայսերութեան գլուխը միայն բռնաւորներ ու հրէշներ անցան։ Կայսերաց ահաւոր բռնապետութիւնն, իրենց անգթութիւնները, ցոփութիւնները բոլորովին ժողովուրդն ապականութեան մէջ ձգեցին։ Ամեն կողմը լրտեսներ ունէին, որ պարկեշտ ու պատուաւոր քաղաքացիները կ'մատնէին և ամենուն միտքն ու սիրտը կասկածներով և ահ ու դողով պաշարեր էին։ Ժամանակ մը՝ զինուորները տէրութեան ճշմարիտ տիրապետները դարձեր էին, իրենց զօրապետները կայսր կ'ընէին, այն պայմանաւ որ ամեն կողոպուտ իրենց մէջ բաժնեն և ամեն անկարգութեանց աչք գոցեն։ Վեսպասիանոս դահն ելնելով՝ կարծես թէ նոր թուական մը բացուեցաւ։ Խել մ'իշխաններ իրարու յա-

Ջորդներէն որ Բոսքէ ձայներ կ'կոչուին. առաջին երեքն նոյն ընտանիքէն են, այսինքն Փլաւեանց. միւսներն, որ որդեգրութեամբ իրարու կ'յաջորդեն, Անտոնինեանք կ'անուանին, այս ցեղին ամենէն երևելի կայսեր անուանովը։

## ԳԼՈՒԽ ԼԸ.

Վեսպասիանոս — մինչև զինուորական անիշխանութիւնը։

(69—192)

Վեսպասիանոս. — Այս կայսրն իր նախորդներուն չէր նմաներ. թէև աննշան, բայց իր զինուորական քաջասրտութեամբն և քաղաքական ձիրքովը շատ անուանի եղաւ։ Պարզասէր էր նա, արդարասէր և ազնուամիտ։ Շռայլութիւնը կ'ատէր և ագահ էր։ Արդէն շատ պատերազմներու մէջ անուն հանած էր։ Հրեաներն՝ Հռոմայեցւոց դէմ ապստամբեր էին։ Ներոն Վեսպասիանոսը ղրկեր էր որ երթայ զսպէ։ Վեսպասիանոս Երուսաղէմը պաշարեց, բայց երբոր զօրքը զինք կայսր հրատարակեց, իր Տիտոս որդւոյն թողուց պատերազմի հոգն ու ինք Հռոմ դարձաւ։

Վեսպասիանոս տէրութիւնը բարեկարգեց և զօրաց մէջ կարգ կանոն դրաւ։ Բուռն օրէնքը վերցուց, որով քաղաքացւոց կեանքը միշտ վտան-

գի մէջ էր ; և աւելորդ ծախքերն՝ որ իր նախորդներուն օրով, անէրութիւնը փլեր էին, բոլորովին արգիլեց։ Թէև այսր՝ Հռոմի մէջ փառաւոր շէնքեր կանգնեց, որոց մէջ նշանաւոր էր Կոլիզէ անուն ամփիթատրոնն, որու ահագին փլատակները դեռ ևս կ՚տեսնուին։

**Երուսաղէմի կործանումը.** — **Տիտոս** Երուսաղէմն առաւ։ Այս հռչակաւոր քաղաքը սոսկալի տառապանք կրեց պաշարման ժամանակ։ Հրէայք արիաբար կռուեցան, բայց դժբաղդաբար այս պզտիկ յամառ ժողովուրդն ներքին պառակտումներուն պատճառաւ տկարացեր էր։ Քիչ ատենէն սով ու սոսկալի ժանտախտ մը քաղաքին մէջ կ՚սկսին և բնակիչները կ՚կոտորեն։ Գտնուեցաւ մայր մ՚որ իր զաւակը սպաննեց որպէս զի ուտէ։ Վերջապէս քաղաքն անձնատուր եղաւ։ Կ՚ըսեն թէ Տիտոս ուզեց Երուսաղէմի փառաւոր տաճարը կրակէ զերծ պահել, բայց չկրցաւ իր զօրաց կատաղութիւնը զսպել, որ նոյն շէնքը կրակի տուին։ Քաղաքը բոլորովին կործանեցաւ։ Մէկ միլիոնէն աւելի հրէայք այս պատերազմին մէջ ջնջուեր էին։ Մնացողները գերի ընկան։ **Յովսէփ** պատմաբանն այս սոսկալի պատերազմը նկարագրած է։

**Սիվիլիս և Սաբինոս.** — Վեսպասիանոս տէրութեան ուրիշ կողմերը ծագած ապստամբութիւնները զսպեց։ **Բաթաւացիք**, որ Հռենոս և Մէօզ գետերուն քովերը բնակող Գերմանացի ժողովուրդ մ՚էին, գլուխ քաշեր էին՝ **Սիվիլիս**

անուն զօրապետին առաջնորդութեամբը ։ Սիվի-լիոս մօտակայ Գերմանացի ու Գալլիացի ժողո-վուրդներն ալ ապստամբեցուց ։ Վելլէտա անուն Գերմանացի մարգարէուհի մ՚իր գուշակութիւն-ներով կ՚քաջալերէր Սիվիլիոսն եւ կ՚յորդորէր իր հայրենակիցներն որ Հռոմի լուծը թօթուեն եւ իրենց ազատութիւնը ձեռք ձգեն ։ Սիվիլիոս քանի մ՚անգամ Հռոմայեցւոց յաղթեց, բայց վերջապէս ստիպուեցաւ նոցա հնազանդիլ ։ Նոյն ինք Վելլէտա գերի ընկաւ եւ զինք յաղթանա-կաւ Հռոմ տարին ։

Սակայն Գալլիացի իշխան մը Սաբինոս ա-նուն, Սիվիլիոսի գրգռմամբն շատ մը ժողովուրդ-ներ ոտք հաներ եւ ինք կայսեր անունն առեր էր ։ Բայց որովհետեւ Գալլիացիք երկպառակ վիճակի մէջ էին, չկրցան յաջողիլ իրենց անկախութեան տիրանալու ։ Սաբինոս յաղթուեցաւ, եւ որպէս զի Հռոմայեցւոց ձեռքը չընկնի, տունն այրեց եւ ձայն հանել տուաւ որ ինքն ալ բոցերուն մէջ կամովին նետուեր մեռեր էր ։ Սակայն ի-րօք քարայր մը գացեր ապաւէն գտեր էր ։ Իր հաւատարիմ կինն՝ Եպոնինա միայն գիտէր նորա պատսպարանն եւ պէտք եղածը կ՚հոգար ։ Սա-բինոս ինն տարի անյայտ մնաց, թէեւ զինք շա-րունակ կ՚փնտռէին ։ Վերջապէս երեւան ելաւ իր պատսպարանն, կնկանն այցելութեանց պատ-ճառաւ ։ Զինք բռնեցին եւ շղթայակապ Հռոմ տարին՝ նոյնպէս կինն եւ երկու երկուորեակ զա-ւակները զոր Եպոնինա քարայրին մէջ ծներ էր ։ Այս քաջասիրտ կինն Վեսպասիանոսի ոտքն ըն-կաւ եւ բոլոր ճիգը թափեց որպէս զի նորա գու-

թը շարժէ իր երկու զաւակները ներկայացընելով։ Թէեւ կայսեր սիրտը շարժեցաւ, բայց չներեց եւ ոչ միայն Սաբինոսն, այլ եւ Եպոնինան ու երկու զաւակները սպաննել տուաւ։

Վեսպասիանոս տէրութեան սահմաններն ընդարձակեց։ Բրիտաննիոյ կղզւոյն հարաւային մասը մինչեւ Կալեդոնիա (Սկովտիա) Ագրիկոլա զօրապետը նուաճեց, որ Տակիտոս անուանի պատմաբանին աներն էր եւ որու կենսագրութիւնը գրեց նա։

Տիտոս. — (79) Վեսպասիանոսի յաջորդեց իր որդին Տիտոս՝ որ իր իմաստուն կառավարութեան եւ անուշ բնաւորութեան համար՝ Մարդկային ազգին երջանկութիւն մականունը ստացաւ։ «Իմ օրս կորուսի» կ'ըսէր, երբոր օրն առանց բարիք մը ընելու անցընէր։ Դժբաղդաբար քիչ տեւեց այս ընտիր կայսեր իշխանութիւնը, որու ժամանակն Իտալիոյ մէջ ահաւոր պատուհասներ հասան։ Հրդեհներ, ողողումներ, ժանտախտ, մանաւանդ Վեսուվի բռնկելովը Կամպանիա գաւառին մէկ մասը մոխիրներու տակ թաղուեցաւ, նոյնպէս Հերկուլանոն ու Պոմպէա քաղաքները։ Անուանի Պլինիոս (երէց) բնագէտը իր հետաքրքրութեան զոհ եղաւ, վասն զի այս սոսկալի երեւոյթը մօտէն տեսնել ուզելով մուխէն խեղդուեցաւ։ Վերջի ատեններս այս երկու քաղաքները ծածկող մոխիրն եւ ուրիշ նիւթերը փորելով տուներն ու այլ եւ այլ առարկաներ գտան որ բոլորովին աւրուած չէին։

Դոմետիանոս. — (81) Տիտոսի եղբայրը Դո-

մետիանոս գահն ելաւ։ Անգութ և անզգամ բռնաւոր մ'էր նա, և եթէ սպաննելու մարդ չգըտնէր ճանճ կ'բռնէր և հերիւնով կ'ծակծկէր։ Ներոնին պէս տեսարաններ կ'ելնէր, խաղեր կ'շինէր և թշնամի էր խելացի մարդոց որ տէրութենէ վռնտուեցան։ Վերջապէս այս չարաբարոյ կայսրն սպաննուեցաւ։

Դոմետիանոսի՝ հետ կ'վերջանայ Փլաւիոսեանց ցեղը և նա երկոտասան կեսարաց յետինը կ'լինի։ Այս կարգէն են. Յուլիոս Կեսար, Օգոստոս, Տիբերիոս, Կալիգուլա, Կղաւդիոս, Ներոն, Գալբա, Օթոն, Վիտելլիոս, Վեսպասիանոս, Տիտոս, Դոմետիանոս։

Անտոնինեանք. Ներվաս. — Ծերակոյտը Ներվաս անուն ծերունին կայսր ընտրեց։ Այս կայսեր հետ կ'սկսի Անտոնինեանց տունը, որ մեծ փայլ ու բարօրութիւն ունեցաւ նոյն ցեղին չորս կայսրներու շնորհիւ։ Ներվաս իրեն որդեգիր ու գահակից ընտրեց Գերմանիոյ հրամանատար Տրայիանոսն որ ազնիւ և քաջ զօրավար մ'էր Սպանիացի։

Տրայիանոս. — (98) Տէրութեան ամենէն ընտիր զօրավարն ու քաղաքացին էր Տրայիանոս, որ առանց ընդդիմութեան կայսերական գահն ելաւ։ Հետիոտն մտաւ Հռոմ. իր Պլոտինա կինն՝ երբ պալատին աստիճաններէ վեր կ'ելնէր, դէպ 'ի ամբոխը դառնալով ըսաւ. «Այսպէս կը մտնեմ արքունիքը և այսպէս կ'ուզեմ դուրս ելնել»։ Տրայիանոս ամենուն հետ պարզութեամբ կ'վարուէր։ Ծերակոյտին իշխանութիւնը և հա-

սարակապետական օրէնքները վերահաստատուեցան. ուզեց որ արդարութիւնն ամեն տեղ տիրէ, մէկուն իրաւունքը չբռնաբարուի, և հրամայեց որ դատաստանի ներկայ չգտնուող մարդը՝ չդատուի. «Աւանն գլ, կ'ըսէր, աւելի լաւ է անպատիժ թողուլ յանցաւոր մը քան թէ անմեղ մը դատապարտել»։ Ոչ միայն ազնուասիրտ այլ մեծաշէն մարդ մ'էր Տրայիանոս։ Ամեն տեղ նոր նոր ճամբաներ շինեց ու նաւահանգիստներ բանալ տուաւ, մարմարէ կրկէս և գրատուն մը կանգնեց, նոյնպէս հռչակաւոր սիւնն, որ Տրայիանոսի սիւն կ'անուանի 'ի Հռոմ։

Այս կայսրն պատերազմներ ալ ըրաւ. Դակացւոց յաղթեց որ Դանուբի հիւսիսային կողմը կ'բնակէին և շատ գաղթականներ Դակիա (Վալաքիա) փոխադրեց։ Այս է պատճառն որ այն երկրին բնակիչներն այսօր լատիներէնի մօտ բարբառ մը կ'խօսին և այսպէս Ռումանիացի կը կոչուին։ Տրայիանոս Հայաստան ալ արշաւեց. բայց մեր Արտաշէս Բ թագաւորին սովորական հարկը տալու խոստանալով նորա հետ հաշտուեցաւ։ Այս արշաւանքին ժամանակ մեռաւ։

Ադրիանոս. — (117) Տրայիանոսի յաջորդեց իր եղբօրորդին Ադրիանոս, խաղաղասէր, ներողամիտ, գործունեայ և ուսումնասէր իշխանը։ Երբ գահն ելաւ՝ իր բոլոր թշնամեաց ներեց։ Օր մը մէկուն հանդիպելով ըսաւ. «Բարեկամ, թշնամիս էիր, ազատեցար ձեռքէս, վասն զի կայսր եղայ»։ Ադրիանոս շատ ուսեալ էր. իր տէրութեան գաւառները շարունակ կ'պտըտէր,

կուսակալներուն ընթացքը կ’քննէր, քաղաքներ կ’զարդարէր, և ամէն տեղ նոր նոր շէնքեր ու յիշատակարաններ կ’կանգնէր: Շատ սէր ունէր նաև դրականութեան և գիտութեան, և այս պատճառաւ գրագէտները քաջալերեց, արուեստներն ու վաճառականութիւնը ծաղկեցուց: Այնքան սուր յիշողութիւն ունէր որ անգամ մը կարդացած գիրքը կարող էր բերնուց ըսել. կ’պատմուի թէ իր բոլոր զինուորներուն անունները գիտէր:

Ադրիանոս ուզեց նաև Երուսաղէմ քաղաքը վերականգնել, որպէս զի այն տեղ տաճարներ շինէ և կռապաշտութիւնը մտցընէ: Բայց Հրէայք ոտք ելան և սոսկալի պատերազմ ծագեցաւ, որու մէջ շատերը բոլորովին կոտորեցան, և ապրողները տէրութեան մէջ ցիր ու ցան եղան:

Անտոնինոս. — (138) Ադրիանոսի որդեգիրն ու յաջորդը, Անտոնինոս, մեծանձն և առաքինի իշխան մ’եղաւ, ու Մարկոսին աղէկ հայր կոչուեցաւ: Իր իշխանութիւնը գործածեց միայն ժողովրդոց երջանկութեան և խաղաղութեան համար: Նա կ’ըսէր. «Նախադաս կ’համարիմ քաղաքացի մ’ազատել քան թէ հազար թշնամի սպաննել»: Ուստի բնաւ պատերազմ չմղեց և տէրութեան մէջ խաղաղութիւնը տիրեց: Թէև իր օրով նշանաւոր դէպքեր չպատահեցան, սակայն դարձեալ իր իշխանութեան յիշատակը ժողովրդոց սրտին մէջ անջնջելի մնաց և իր դար[illegible] իրաւամբ անուանեցաւ Անտոնինեանց դար, իր [illegible] տուն անուամբը.

Մարկոս Աւրելիոս. — (161) Այս կայսրն Անտոնինոսի փեսան էր։ Փիլիսոփայ մականունը ստացաւ, վասն զի ստոյիկեան Զենոնի իմաստասիրին վարդապետութեան կ'հետեւէր։ Իր նախորդ երեք կայսրներուն մեծագործութիւններն առաջ տանելու ջանաց։ Թէեւ խաղաղասէր էր Աւրելիոս, ստիպուեցաւ քանի մ'անգամ պատերազմ ընել Գերմանացւոց դէմ որ տէրութեան սահմանները կ'արշաւէին։ Երբոր անգամ մը Մարկոմաններուն դէմ կ'արշաւէր՝ Վիեննա քաղաքը գնաց և այն տեղ մեռաւ (180)։ — Աւրելիոսի մահուամբ Անտոնինեանց ցեղը կ'լմննայ նոյնպէս տէրութեան բարօրութիւնն ու երջանկութիւնը։ Իր աթոռը Կոմոդոս որդւոյն թողուց, որու ժամանակէն կ'սկսի հռոմէական տէրութեան քայքայումը։ Այս կայսրն ըմբիշ մ'էր բարձրահասակ ու կորովի և իր ժամանակը ստորնադասներու հետ կ'անցընէր։ Ներոնին և Գալիկուլային արժանի գործեր ըրաւ։ Վերջապէս այս հրէշին չարագործութեանց չդիմանալով հռոմայեցիք զինք սպաննեցին։

---

## ԳԼՈՒԽ ԼԹ.

Զինուորական անիշխանութիւն — մինչեւ Դիոկղետիանոս։

(193—284)

Հռոմէական տէրութեան վիճակը. — Երկրորդ դարուն վերջը սոսկալի անիշխանութիւն մը տիրեց բոլոր

Հռոմէական տէրութեան մէջ։ Զինուորներն սկսան ըստ հաճոյս կայսրներ դնել ու իջեցնել։ Երբեմն այլ և այլ հռոմէական բանակներ զատ զատ մեհապետներ կ'ընտրէին. Պրետորեան զօրքն մինչև անգամ աճուրդի հանեց գահն և ով որ աւելի վճարէր զայն նմա կը ծախէր։ Այս պատճառաւ կայսրութեան հեռաւորներն իրարու դէմ կ'կռուէին և այսպէս շարունակ քաղաքային պատերազմներ ու ահռելի անկարգութիւններ կ'պատահէին։ Իսկ երբոր յաղթող զօրապետը կ'յաջողէր գահն ելնելու՝ իր զինուորներուն բոլոր պահանջմունքը կ'կատարէր և անկարգութեանց աչք կ'գոցէր։ Եթէ ազգու կայսր մը զօրաց մէջ կարգ կանոն հաստատել ուզէր, անմիջապէս զինք կ'սպաննէին։ Այսպէս Կոմոտոսի յաջորդը Պերտինաքս, որ ձեռք զարկեր էր զօրքը բարեկարգելու, սպաննուեցաւ, իր խստութեան պատճառաւ։ Այնուհետև Պրետորեան զօրքը բոլոր տէրութիւնն աճուրդի հանեց և Դիդիոս Յուլիանոս ամեն մէկ զինուորին 6250 ղրուշ (6000 ֆրանք) տալ խոստանալուն՝ կայսր ընտրուեցաւ, բայց հազիւ երկու ամիս իր իշխանութիւնը վարեց։

Բարբարոսաց տիրապետութիւնը. Սեպտիմոս Սեւերոս. — Քաջասիրտ զօրական մ'էր Սեպտիմոս Սեւերոս աֆրիկեցին, որ Ասորւոց երկրին մէջ կայսր ընտրուեցաւ իր զօրաց կողմէ։ Հռոմ վրայ քալելով իր հակառակորդները զարկեց և Պրետորեան գունդը ցրուելով նոցա տեղ բարբարոս զինուորներ առաւ։ Յետոյ ջանաց բարեկար-

զ՚նել բանակն ու տէրութիւնը, սակայն ներքին անիշխանութենէ և արտաքին վտանգներէ նորա հիմունքը խախտեր էին։ Հիւսիսային բարբարոս ժողովուրդներ շարունակ կ՚ասպատակէին Հռոմայեցւոց սահմանները, Եփրատէն սկսեալ մինչև Հռենոս գետը։ Դժուարին էր այս յարձակումներուն դէմ դնել։ Ուստի երբ Սեվերոս մէկ կողմէն թշնամին կ՚վանէր, ուրիշ կողմէ կ՚արշաւէր այն։ Այս յուսահատական պատերազմին մէջ կայսրը մեծ արիութիւն գործածեց։ Պարթևաց դէմ քալեց, յաղթեց և Միջագետքն առաւ. ապա՝ տէրութեան միւս ծայրն անցնելով՝ Բրիտանիա արշաւեց, կղզւոյն լայնութեամբ մեծ պատ մը շինել տուաւ, որպէս զի Բրիտաններն Կալեդոնիոյ (Սկովտիա) բնակիչներուն արշաւանաց դէմ պաշտպանէ։ Եորք քաղաքն հիւանդանալով մեռաւ. «Ամեն բան էի, և ամեն բան ոչ ինչ է» կ՚ըսէր։ Իր սովորական նշանաբանն ըրած էր այս խօսքն զոր անձանձիր գործունէութեամբ կատարեց. «Աշխատինք»։

Կարակալլա. Ելիոգաբաղ. — Իր որդին Կարակալլա նշանաւոր եղաւ իր անգութ գործերովը։ Նախ եղբօրը՝ Գետայի հետ կառավարեց տէրութիւնը, բայց յետոյ զանի մօրը գիրկը սպաննեց։ Կ՚ուզէր որ անուանի օրինագէտ մը, Պապինիանոս՝ այս եղբայրասպանութիւնը ներբողէ. սակայն երբ Պապինիոս պատասխանեց թէ՝ աւելի դիւրին է եղբայրասպան լինել քան թէ այդ սպանութիւնն արդարացընել՝ զանի սպաննեց, սակայն ինքն ալ Պարթևաց դէմ գնալու ատեն՝ իր մէկ զօրականին սուրին տակն ընկաւ։

Արդէն հռոմէական գահուն վրայ Սպանիացի, Գաղղիացի, Ափրիկեցի կայսրներ ելեր էին, Կարակալլայի յաջորդը՝ Ելեօգաբաղ՝ Սիրիացի մ'էր Սեւերոսի ընտանիքէն։ Ասորւոց երկիրն արեգական քրմապետ եղեր էր թէև հազիւ տասն չորս տարու էր։ Երբ Հռոմ եկաւ, արևելեան ամենէն վատ սովորութիւններն ու շռայլութիւնն իր հետը բերաւ։ Մարդ չէր այս կայսրն այլ հրէշ մ'որ ապարանջաններով ու մանեակներով կ'զարդարուէր, իր երեսը ճերմակ կ'ներկէր, ոսկեթել պատմուճան կ'հագնէր, միմոսներ, գաճաճներ ունէր, ոսկիի և արծաթի փոշիի վրայ կ'քալէր։ Իր հետը բերած էր սև կոնաձև քար մը՝ որ իր աստուածն էր, և նորա համար տաճար մը շինել տալով Ավանտէնի բոլոր միւս աստուածներու արձաններն նորա բոլորտիքը շարեց։ Իսկ իր սեղանն անլուր կերակուրներ կ'երևէին։ Կանանց ծերակոյտ մը կազմեց, իր մայրը նախագահ կարգելով որպէս զի կանացի զգեստներուն ձևն որոշեն. իր ձին Ինչղատոս անուանեց և անհաւատալի որկրամոլութեան և ցոփութեան տիպար մ'եղաւ։ Ի վերջէ երբոր իր հօրեղբայրն Ալեքսանդր Սեվերոսը մեռցընել ուզեց, բանակին մէջ զինք զարկին սպաննեցին մօրը հետ և վիզէն քար մը կապելով Տիբեր գետը նետեցին։

Ալեքսանդր Սեվերոս. — Այս կայսրն իր մօրը ձեռօք հռոմէական կրթութիւն մ'առած էր, և թէև երիտասարդ՝ քանի մը տարի խաղաղութեամբ կառավարեց տէրութիւնն Ուլպիանոս օ-

ըէնտղէոսին խարհրդոյն և այլ և այլ բարեկարգութիւններ ըրաւ։

Այն միջոցին Արտաշէս Սասանեան պարսիկն Արշակունեաց իշխանութիւնը կործանելով՝ Նոր պարսկական տէրութիւն մը հիմնեց էր և Հռոմայեցւոց սահմանները կ'արշաւէր Ասիա։ Աղեքսանդր Սասանեանց դէմ գնաց, բայց իմանալով որ Գերմանացիք Հռենոսի կողմէն կ'իջնեն Հռոմի վրայ, վերադարձաւ և փոխանակ նոցա դէմ կռուելու՝ ստակով խաղաղութիւն հաստատեց։ Այս բանին վրայ՝ զօրքը՝ Մաքսիմինոս զօրավարին դրդմամբ՝ կայսրը սպաննեց։

Բռնաւորներ կայսրներ. Երեսուն բռնաւորներ. — Զինուորները կայսր անուանեցին Մաքսիմինոս որ Գոթացի մ'էր. եօթ ոտք բարձր հասակ ունէր, օրը քառասուն լիտր միս կ'ուտէր, քսան ութ ստոման գինի կ'խմէր և ձիու մ'ակռաներն բռնցքի կ'խորտակէր։ Այս հսկայն՝ որ տէրութիւնը կ'կողոպտէր ու կ'աւերէր, Հռոմ մահավճիռներ կ'ղրկէր, առանց քաղաքը մտնելու։ Զօրքը սպաննեց զինք։ Նորա հետ կ'սկսի դար մը կայսրներ, որ մեծաւ մասամբ բարբարոսներ էին, և հետզհետէ իրարու կ'յաջորդեն։ Քսան տարուան մէջ տասն երկու կայսր պսակես տերեցին։

Այս սոսկալի անիշխանութեան ժամանակ՝ բարբարոս ժողովուրդներ շարունակ տէրութեան սահմանները կ'արշաւէին. Մէկ կողմէ Գոթացիք (Գերմանացի ժողովուրդ մը) Սև ծովու եզերքը և Դանուբի բերանը կ'հաստատուէին ու

զօրապետներ կայսրութեան մէջ քիչ մը կարգ կանոն դրին և բարբարոսաց յարձակումները վանեցին։ Սոցա մէջ ամենէն երևելի հանդիսացաւ Աւրելիանոս, որ արիասիրտ էր և պատերազմասէր. Ալամաններն (գերմանական ժողովուրդ) որ Ալպեան լեռներէն իջնելով՝ Իտալիա կ'արշաւէին, վանեց նա, բայց աւելի մեծ անուն առաւ երբ Զենոբիա թագուհին, որ Պալմիրայի վրայ կ'տիրէր, գերի բռնեց։ Այս թագուհին Պտղոմէոսեանց ցեղէն իջած էր կ'ըսէր և իր իշխանութիւնն Ասորւոց երկրէն Եփրատ տարածեր էր. անուանի էր Պալմիրա քաղաքն՝ զոր անապատին մէկ օվասիսին մէջ շիներ էր և իր առևտրով ու հարստութեամբ խիստ հարուստ ու փառաւոր քաղաք մը դարձեր էր։ Աւրելիոս զայն կործանեց. նորա շքեղ աւերակները դեռ եւս ցոյց կ'տան թէ քանի հոյակապ և փառաւոր էր Պալմիրա։ Աւրելիոս՝ տէրութիւնը բարեկարգել ուզելուն՝ սպաննուեցաւ։

Շատ չանցաւ՝ բարբարոս ժողովուրդներ տէրութեան այլ և այլ սահմաններէն անցնելով սկսան ասպատակել։ Պրոբոս կայսրն նոցա դէմ գնաց և յաղթեց։ Ալամաններն՝ որ Հռենոսէն անցնելով՝ Գալլիա մտեր էին, բոլորովին քշուեցան։ Պրոբոս Գերմանացիներ զինուոր գրեց և իր բանակն առաւ, յուսալով որ կարող է բարբարոսները նուաճել բարբարոսներու ձեռօք։ Պրոբոս երկրագործութիւնն ու ճարտարութիւնը քաջալերեց. զօրքն ալ չարքաշութեան վարժեցընելու համար հասարակաց շէնքեր շինելու կ'զբաղեցընէր, գետեր բանալ կ'տար։ Սակայն

զինուորները գոհ չէին․ և երբ օր մը Պրոբոս ըսաւ թէ՝ պիտի գայ օր մ՚որ բանակէ պէտք պիտի չունենայ, զինք սպաննեցին ։

## ԳԼՈՒԽ Խ.

Դիոկղետիանոս — մինչև կայսերութեան վերջնական բաժանումը ։

(284—395)

Դիոկղետիանոս․ — Թէպէտ Պրոբոս բարբարոսները վաներ էր, բայց սոքա շարունակ յարձակումներ ընելով՝ կ՚սպառնային Իտալիա մտնել հաստատուիլ ։ Երբ Դիոկղետիանոս կայսերական աթոռն ելաւ՝ տէրութեան կառավարութեան մէջ մեծ փոփոխութիւն մը մտցուց ։ Տեսնելով որ այլ և այլ հռոմէական բանակներ իրենց կայսր կ՚ընտրեն, և թէ դժուարին էր մարդու մը կայսերութեան սահմանները պաշտպանել և բարբարոսները վանել, իրեն գահակից մ՚ընտրեց Մաքսիմիանոս անուն ։ Այս երկու վեհապետներն Օգոստոս տիտղոսն առին ։ Բայց վերջէն դիտելով որ իր և ընկերին իշխանութիւնը բաւական չէ տէրութիւնը պաշտպանելու, իր զօրավարներուն մէջէն ուրիշ երկու տեղակալ ընտրեց, այս է Կոստանդիանոս Քլորոս և Գալերիոս հօվիւը,

և այս երկու տեղակալները կեսար անուանեց։ Այսպէս երկու Օգոստոս և երկու Կեսար կային, որ տէրութեան գաւառներն իրենց մէջ բաժնեցին և կարող եղան թշնամեաց դէմ դնել։ Իւրաքանչիւրն իրեն յատուկ քաղաք մ'ընտրեց, և այսպէս Հռոմի տեղ՝ տէրութիւնը չորս մայրաքաղաք ունեցաւ, Նիկոմիդիա (յԱսիա) ուր Դիոկղետիանոս հաստատեց իր արքունիքն և արևելեան շուքն ու արարողութիւնները մուծուց, Միլան (յԻտալիա) ուր Մաքսիմինոս բնակեցաւ, Սիրմիոն (Լիւրիկէ) և Դրէվ կամ Արլ (Գալլիա)։ Սակայն Դիոկղետիանոս չկրցաւ բառնալ բոլորովին խռովութիւններն, որոցմէ տաղտկանալով հրաժարեցաւ կայսրութենէ և Սալոնա գիւղն (Դալմատիա) գնաց բնակելու (305)։ Իր ծերութիւնն այն տեղ հանգիստ անցուց պարտէզը մշակելով։ Իր գահակիցն, Մաքսիմինոս, որ նոյնպէս հրաժարեր էր, յորդորեց զինք որ նորէն գահն ելնէ, բայց Դիոկղետիանոս պատասխանեց. «Եթէ տեսնէիր իմ պարտիզիս պտուղները, պիտի այդպէս չյորդորէիր զիս որ նորէն կայսերական աթոռն ելնեմ»։

Հռոմէական տէրութեան անկումը և հին ընկերութեան քայքայումը. — Վերջին կայսրներն իրենց խելքովը ու գործունէութեամբ, մանաւանդ Դիոկղետիանոս իր հաստատած նոր կառավարութեամբ յաջողեր էին առեն մը կայսրութեան քիչ մը կենդանութիւն տալ. բարբարոսներն ընդհանրապէս սահմաններէն վանուեր էին, և կարծես թէ բարեկարգութիւնն ու խաղաղութիւնը հետզհետէ կ'հաստատուէին. սակայն այս վերհաստատութիւնն հիմնական չէր։ Բարբարոսները երթալով հաւաքական

տէրութեան մէջ մտնելու կ'ջանային, և Հռոմ զայնս վանելու բաւական ոյժ չունէր։ Վասն զի իր յատուկ զինուորներով չէր պաշտպաներ զայն, այլ օգնական բարբարոսներ վարձու բռներ էր և արտաքին բարբարոսներու դէմ կ'մաքառէր։ Ներսէն տէրութիւնն օրէ օր կ'քայքայէր։ Կայսերական կառավարութիւնն յետին ծայր հարստահարիչ էր. քաղաքներու բնակիչները ծանր տրոց տակ կ'ճնշուէին և յետին թշուառութեան մէջ էին։ Քաղաքային պատերազմներու պատճառաւ արտերն ու գիւղերը բոլորովին անշէն և ամայի մնացեր էին։ Բայց կայսերութեան կործանման բուն պատճառը բարուց ապականութիւնն էր։ Այսպիսի ապականակիր տէրութիւն մ'երկար ատեն չէր կրնար տևել։ Ուստի հռոմէական աշխարհն և իրեն հետ հին ընկերութիւնն կարծես թէ բոլորովին պիտի քայքայէին։ Ահա այն ատեն քրիստոնէութիւնն եկաւ մարդկութիւնն ազատելու և նմա նոր կեանք մը տալու։

Քրիստոնէութիւն. — Հռոմէական պետութեան ամենէն պայծառ ժամանակը կ'երևի քրիստոնէութիւնը։ Յիսուս Քրիստոս Օգոստոսի իշխանութեան ժամանակը ծնաւ։ Բայց այս իշխանութեան միջոցին՝ որ շատ փայլեցաւ, Փրկչին գալուստն անտես անցաւ։ Իր մահն ու յարութիւնն աւելի մեծ համբաւ հանեցին։ Քրիստոսի աշակերտները Հրէից յայտնեցին փրկութեան աւետիսը։ Հալածանքն անմիջապէս սկսաւ։ Բայց այդ հալածանքին պատճառաւ առաքեալները ցիր ու ցան եղան և Հրէաստանէն դուրս ելնելով Աւետարանը քարոզեցին, որ քիչ ատենէն բոլոր տէրութեան մէջ տարածուեցաւ։ Այս քարոզութիւնը մանաւանդ մեծ քաղաքներու մէջ ըրին, ինչպէս՝ Անտիոքոս, ուր Քրիստոսի ա-

շակերտները յառաջապէս քրիստոնեայ անունը ստացան, յԵփեսոս, Աթենք, Կորնթոս, Հռոմ և Աղեքսանդրիա։

*Հալածանք*. — Քրիստոնեաները կռապաշտ ժողովուրդներէն կ'զանազանէին իրենց հաւատքով ու գթասիրութեամբը. ամեն տեղ իրենց գաղափարները, զգացումներն և կենցաղավարութիւնը բոլորովին հակառակ էին հեթանոսաց աւելորդապաշտութեանց և բարուց հետ։ Այս նոր կրօնն իրենց հին դից դէմ նախատինք մը կ'համարէին կռապաշտներն և երբ կ'տեսնէին որ քրիստոնեաները կ'արհամարհեն իրենց նուիրական ու կոշտ աստուածները, սաստիկ կը զայրանային։ Այս նորակրօն մարդոց հոգևոր պաշտամունքէն բան մը չկրնալով հասկընալ՝ իբրև ամեն չարեաց հեղինակ կ'ամբաստանէին զայնս։ Ահա այսպիսի ամբաստանութեամբ մը քրիստոնեաները մեծ հալածանք մը կրեցին Ներոնի օրովը։ Այնուհետև քրիստոնէից դէմ հալածանքները շատցան, և մինչև Դիոկղետիանոսի ժամանակ տասն հալածանք եղաւ։ Կայսրները, որ սովորեր էին կոյր հնազանդութիւն մը տեսնել իրենց հպատակաց վրայ, մեծ զայրոյթ զգացին երբոր քրիստոնէից կողմէ ընդդիմութիւն տեսան և զայնս իբրև կրօնամոլ ամբաստանեցին։ Ասկից զատ անհաշտ աչօք կը դիտէին այն հասարակութիւններն, այն Եկեղեցիներն, ինչպէս որ կ'կոչուէին, որոց մէջ հաւասարութիւն կ'տիրէր և որ եղբայրասիրական ընկերակցութիւն մը կ'կազմէին։ Ուստի ոչ մի-

տյն ամենէն վատ այլ և ամենէն լաւ կայսրներ հալածեցին քրիստոնեաները։ Իրաւ է որ՝ ժողովուրդն աւելի մոլեգնութեամբ մարտիրոսաց արեան ծարաւի կ՚երևէր քան թէ ինքնակալները։ Եթէ սով մը, հասարակաց աղէտք մը, պատուհաս մը պատահէր, մոլեռանդ խուժանն խաղերուն ու հանդէսներուն մէջ կ՚պոռար․ Քրիստոնեաներն առիւծներուն նետեցէք։ Սակայն քանի մը կայսրներ աւելի քաղցրութեամբ վարուեցան քրիստոնէից հետ (Ադրիանոս, Անտոնինոս)․ Ալեքսանդր Սեվերոս՝ իր թերափներուն մէջ Քրիստոսի պատկերն ունէր։ Բայց որքան քրիստոնէութիւնը կ՚ծաղկէր, նոյնքան իր հակառակորդները կ՚կատղէին։ Դեկոսի իշխանութեան ժամանակ՝ քրիստոնէից դէմ սոսկալի եղաւ հալածանքը, մանաւանդ Դիոկղետիանոսի օրովը, այնչափ որ այն ժամանակը Մարտիրոսաց դար կոչուեցաւ։

Մարտիրոսներ․ — Թէև Քրիստոսի խոստովանողներն սոսկալի տանջանքներ կրեցին, թէև իրենց պաշտաման տեղերն կործանեցան, իրենց նուիրական գրեանքն բոցերու ճարակ եղան, սակայն այս ճշմարտութեան նահատակներն խոնդութեամբ կ՚կրէին ամեն տանջանք ու չարչարանք։ Անտարակոյս ոմանք իրենց կեանքն ազատելու համար կուոց զոհ կ՚մատուցանէին, սակայն սակաւաթիւ էին նոքա, մարտիրոսներու բազդատութեամբ։ Իսկ հալածանքէ ազատողները լեռներու կիրճերը, քարայրները կամ ստորերկրեայ գերեզմաննոցներ ապաւէն կ՚փնտռէին։

Մեծն Կոստանդիանոս. — Դիոկղետիանոս հրաժարելէն ետև՝ արիւնուշտ պատերազմ մը ծագեցաւ իր յաջորդներուն մէջ՝ որոց մին էր Կոստանդիանոս: Քրիստոնեայ մայր մ'ունէր նա, Հեղինէ անուն, և միւս կեսարաց դէմ մղած պատերազմին ժամանակ՝ օր մը երկնից երեսք լուսաւոր խաչ մը տեսնել կարծեց, որու վրայ գրուած էր. «Այս նշանաւ պիտի յաղթես»: Այս տեսիլին վրայ՝ խաչի ձևով դրօշ մը շինել տուաւ, և իրօք միւս գահակալներուն հետապնդէ յաղթեց և ինք միակ կայսր մնաց: Այն ատեն ոչ միայն հրովարտակով թոյլ տուաւ քրիստոնէից որ իրենց կրօնն ազատօրէն դաւանին, այլ և տէրութեան կրօնն ըրաւ զայն և շատ արտօնութիւններ շնորհեց քրիստոնէից:

Կոստանդիանոս՝ բոլոր հռոմէական պետութեան ինքնիշխան տէր դառնալով՝ այլ և այլ փոփոխութիւններ մուծց կառավարութեան մէջ: Տէրութիւնը չորս մասի բաժնեց. Արևելք, Լիւրիկէ, Գալլիա, Իտալիա: Իւրաքանչիւրն իրեն կուսակալն ունէր. բանակները ցրուեց որպէս զի ապստամբութեան առաջն առնու, և քաղաքներուն պաշտպանութեան համար աւելի պզտիկ զօրագունդեր սահմանեց: Տէրութեան գործերն այլ և այլ պաշտօնէից յանձնեց, որ իր խորհրդովը կ'շարժէին: Վերջապէս տեսնելով որ Հռոմ ազատութեան և հեթանոսութեան յիշատակներովն՝ իր հաստատած նոր միապետութեան համար յարմար մայրաքաղաք մը չէր, Բիւզանդիոնն ընտրեց, որ իր անուամբ Կոստանդնուպոլիս կոչուեցաւ: Այս քաղաքն՝ Ասիոյ և Եւ-

բոպէոյ մէջ անց՝ հեռաղհեան զարդացայ, և հիւսիսային ժողովրդոց արշաւանքէն ասեն մը հեռու և անվնաս մնաց ։

Կոստանդիանոսի երեք որդիք. — Կոստանդիանոս իր կենաց վերջին տարիները քրիստոնէական կրօնն ընդունեց, սոսկալի անդթութեան գործեր ընելէն ետև ։ Իր երեք որդիքը տէրութիւնն իրենց մէջ բաժնեցին ։ Կոստանդիանոս Բ Արևմուտքն առաւ, Կոնստանդ Միջին գաւառներն, և Կոստաս Արևելքը ։ Սոքա իրարու դէմ կռուելու սկսան, իրենց ցեղին բոլոր արու տղաքը սպաննեցին, և վերջապէս Կոնստանս ինքնիշխան տէր մնաց և իրեն գահակից ընտրեց Գալլոս և Յուլիանոս ազգականներն ։ Այս վերջինն՝ որ Գալլիա կ՚կառավարէր, Ֆրանկաց և Ալամանաց դէմ մեծ յաղթութիւններ տարաւ, Հռենոսէն անդին մղեց և չանաց իր սիրական Լուտէկ (Բարիզ) քաղաքն Գալլիոյ առաջին ծաղկած քաղաքն ընել ։

Յուլիանոս ուրացող. — Կոստասի մահուանէ ետք՝ Յուլիանոս կայսերական գահն ելաւ, և ուրովհետև քրիստոնէութեան հակառակ էր, հին կռապաշտութիւնը վերստին հաստատելու ջանաց, դից տաճարները բացաւ, հանդէսները նորոգեց, և այս պատճառաւ ուրացող կոչուեցաւ ։ Թէպէտ Յուլիանոս քրիստոնէից դէմ հալածանք չհանեց, սակայն ամեն հնարք ՚ի գործ դրաւ որպէս զի այդ նոր կրօնք ջնջէ, բայց ընդ ունայն ։ Պարսից Շապուհ Բ Թագա-

ւորին դէմ պատերազմելու ատեն մեռաւ Յուլիանոս , կարճատեւ իշխանութիւն մը վարելէն ետեւ։

Կայսերութեան բաժանումը. — Յուլիանոսի յաջորդեց՝ զօրաց ընտրութեամբ՝ Յովիանոս , որ միայն քանի մ'ամիս թագաւորեց։ Երկու եղբարք՝ Վաղէս ու Վալենտինիանոս աթոռն ելան և մին Արեւելքն ու միւսն Արեւմուտքն առաւ։ Այս կայսերաց իշխանութեան ժամանակ բարբարոսները նորէն սկսան արշաւել և վերջապէս կայսերութեան երկիրները բնակեցան։ Նոյնպէս այն ատեն սկսաւ Բարբարոսաց մեծ արշաւանքն որ Հռոմէական տէրութեան վերջ պիտի տար։ Բայց այս նշանաւոր դէպքը Միջին դարու պատմութեան սկիզբը պիտի տեսնենք։

## ԾՐԱԳԻՐ ԱՇԽԱՐՀԱԳՐԱԿԱՆ

ՀԻՆ ԻՏԱԼԻԱ. — Իտալիոյ սահմանն է՝ հիւսիսէն՝ Ալպեան լեռները. հարաւէն՝ Յոնիական ծովը. արեւելքէն՝ Ադրիական ծովը. արեւմուտքէն՝ Տիւրէնեան ծովը։

Իտալիա երեք գլխաւոր մաս կ'բաժնուէր.

ա) ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ԻՏԱԼԻԱ, որ կ'պարունակէր, Լէգուրիա — Գալլիա յայսկոյս Ալպեանց, ուր վերջէն Գալլիացի ժողովուրդներ բնակեցան, յայնկոյս Ալպեանց Գալլիայէն գալով.

բ) ՄԻՋԻՆ ԻՏԱԼԻԱ, որու հիւսիսային կողմը կը գտնուէին Ետրուրիա և Ումբրիա. — կեդրոնը, Պիկենոն,

## ՀՌՈՄԷԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹԻՒՆ

Հռոմի քաղաքակրթութիւնն այլ և այլ ժողովրդոց քաղաքակրթութեան արդիւնքն իւրացուց, մանաւանդ ալէն Արևելքի և Յունաստանի։ Ուստի աւելի այլազան, ճոխ, զօրաւոր է քան թէ յունական քաղաքակրթութիւնն, թէև քանի մը նկատմամբ անկէց վար է։

Գրականութիւն. — Երկրորդ Փիւնիկեան պատերազմէն ետք՝ Հռոմէական գրականութիւնը կ'սկսի փայլիլ։ Նոյն միջոցին երկու՛ նշանաւոր ողբերգակ բանաստեղծներ կ'ծաղկին, մին էր Պլօտոս և միւսը Տէրէնցիոս, որ շատ կծու կատակերգներ յօրինեցին։ Սակայն Հռոմի գրականութեան ոսկեդարը Կեսարեայ ժամանակը, մանաւանդ Օգոստոսի դարն է։ Այն ատեն անուանի մատենագիրներ գրականութեան այլ և այլ ճիւղերը կ'մշակեն, թէ արձակ և թէ ոտանաւոր գրելով։ Այս մատենագիրներուն գլուխը կ'համարուի Կիկերոն, որ բազմաթիւ դատագիրներ թողուց (Վերրեանք, Վերեսի դէմ) քաղաքական ճառեր (Կատիլինեանք, Փիլիպպեանք) հռետորական գործեր, իմաստասիրական գրուածներ և նամակներու հաւաքածոյ մը։ Կիկերոնի ոճը լատինական լեզուի տիպարը կ'սեպուի։

Ամենէն երևելի պատմաբաններն են, Սալլուստիոս, որ Յուգուրթայի պատերազմն ու Կատիլինայի դաւադրութիւնը պատմեց. Կեսար՝ որ Գալլիոյ պատերազմին և քաղաքային պատերազմին վրայ յիշատակագիրներ և մեկնութիւններ ձգեց. Տիտոս—Լիվիոս՝ որ Հռոմի բոլոր պատմութիւնը գրեց, որու մեծ մասը կորսուած է. Կոռնելիոս Նեպոս՝ որ հռչակաւոր Յունաց և Հռոմայեցւոց կենսագրութիւնը գրեց։

Օգոստոսի դարուն ամենէն անուանի բանահիւսներն են, Վիրգիլիոս՝ Ենէականին հեղինակը։ Այս Ենէականը դիւցազնական քերթուած մ'է, տասն երկու գիրք կ'պարունակէ, որոց մէջ Ենէասի արկածները կ'պատմէ՝ Տրոյից

կործանումէն և Լատինական գաւառներէն եւս· այսպէս Հռոմի հիմնարկութիւնը Տրովիոյ կործանման հետ կապուած էր։ Ովրատիոս, քնարերգակ բանաստեղծ, որ գեղօններ ու երգիծանքներ գրեց· Ովիդիոս, որ դիցաբանական վէպեր յօրինեց, Այլափոխութիւններ անուամբ։ Կատուլլոս, Տիբուլլոս, Պրոպերտիոս որ եղերերգներ յօրինեցին Փեդրոս, առակներ· Լուկրետիոս, բնութեան վրայ իմաստասիրական քերթուած մը։

Կայսերութեան ատեն շատ մատենագիրներ չերևցան· ասոնցմէ մէկ քանին հռչակաւոր են. Տակիտոս, որ Հռոմայեցի պատմաբաններուն մէջ ամենէն համբաւաւորն է։ Նա գրեց առաջին կայսերաց պատմութիւնը։ Սուետոնիոս գրեց նաև երկոտասան կեսարաց կենսագրութիւնը։ Կուինտոս Կուրտիոս Մեծն Աղեքսանդրի կեանքը պատմեց։ Սենեկա իմաստասէրը։ Պլինիոս Երէցը, բնագէտն և իր հօրեղբօրորդին Կրտսերն Պլինիոս, որ Տրայիանոսի վրայ կենսագրութիւն մը գրեց։ Կայսերական ժամանակի բանաստեղծներուն մէջ բաւական է յիշել, Լուկանոս, Սենեկայի եղբօրորդին, որ դիւցազնական քերթուած մը շինեց, Փարսալիայեն։ Պերսիոս և Յուբենալ, որ անուանի երգիծանքներ շինած են։ Մարտիալ, բազմաթիւ երգիծական քերթուածներ գրեց։

Արուեստք. — Հռոմի արուեստագիտական գործերն մեծութեան և փառաւորութեան յատուկ դրոշմ ունին։ Ոչ միայն Հռոմի և Իտալիոյ այլ տէրութեան ամեն կողմերն այս տեսակ շէնքեր կ'տեսնուէին։ Հռոմայեցիք քաղաքներ կանգնեցին, տաճարներ, թատրոններ, կոթողներ, բաղնիքներ, ջրանցքներ Սպանիոյ, Գալլիոյ, Հելվետիոյ մէջ, Հռենոսի և Դանուբի եզերքը։ Այս շինութեանց մէկ քանի աւերակները ցոյց կ'տան նոցա հինամեայ շքեղութիւնը։ Պէտք է յիշել Հռոմէական ճանապարհները իբրև ճարտարութեան նշանաւոր գործեր։ Ասոնք աւազով և քարի կտորուանքով շինուած էին, և կրաքար շաղախով միացած։ Այնպէս որ անոնք իրենց ամրութեան պատճառաւ մինչև մեր օրերը հասած են և

ամենուն զարմանք կ'պատճառեն։ Ոմանք շատ լայնարձակ էին և կրկին լճիկներ ունէին։

Օրէնսդրութիւն. — Հին ազգերուն մէջ Հռոմայեցիք իրենց օրէնսդրական գործերով շատ գերազանց կ'երևէին։ Հռոմէական օրէնք՝ Հռոմ նոր քաղաքակրթութեան վըրայ յարատև և յաջող ներգործութիւն մ'ունեցաւ։ Արդի քաղաքակիրթ ազգերն իրենց օրինագիրներուն մէջ հռոմէական օրէնսդրութեան սկզբունքն ընդունեցան, և նորա ուսումն անհրաժեշտ է Եւրոպիոյ ազգերուն այժմեան օրէնսդրական ընթացքն ըմբռնելու համար։

Հռոմայեցւոց կշռաւոր չափերը. — Հռոմայեցիք եր՞կայնութիւնք չափելու համար մարդու մարմնոյն այլ և այլ մասերը կ'գործածէին, ինչպէս ոտք, արմուկ, ափ, մատ, բթամատ։ Դեռ ևս հռոմէական ոտքին ճիշտ քանակութիւնն հաստատուած չէ։ Անտարակոյս յունական ոտքէն կարճ էր. գրեթէ 296 հազարամետր կ'հաշուեն. ոտքը 4 ափ էր, կամ 12 բթամատ կամ 12 մատ։

Հեռաւորութեան չափը քայլափոխն էր, այսինքն 5 ոտք։ Պարզ քայլափոխը երկուք ու կէս ոտք էր։ Երկար հեռաւորութիւններ չափելու համար Հռոմայեցիք մղոնը կ'գործածէին, որ 1000 քայլ էր, այսինքն 5000 ոտք։

Տարածութեան չափն էր ժուկէրօն կամ հռոմէական արտավարուածքը, որ գրեթէ 25 գաղղիական ար կ'առնէր։

Հռոմէական լիպրէն կամ ծանրութեան չափը հազիւ 327 կրամ էր։

Հռոմէական դրամ. — Պղնձէ գլխաւոր դրամն աս էր որ 'ի սկզբան գաղղիական 8 սանտիմին արժէքն ունէր, բայց վերջէն 5—6 սանտիմի իջաւ։ Գլխաւոր արծաթէ դրամն սեստերցոն էր։ Նախ սեստերցն երկուք ու կէս աս կ'առնէր, վերջէն 4 աս, այսինքն գրեթէ 20 սանտիմ։ Ոսկիէ գլխաւոր դրամն ոսկի դընիէն էր, որ 25 արծաթադընիէ կամ 100 սեստերս կ'առնէր, այսինքն գրեթէ 20 ֆրանք։

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՀԱՅՈՑ

## ԱՐՇԱԿՈՒՆԻՔ

### ԳԼՈՒԽ ԽԱ.

**Աբգար — Փոքր Արտաշէս Բ.**

**(8—95 Ք. Ե.)**

*Հայաստանի վիճակը.* — Հռոմայեցիք՝ որ գրեթէ բոլոր հին աշխարհի տէրերը էին՝ չկրցան բոլորովին նուաճել Պարթեւները։ Իրաւ է որ Անտոնիոս Հայաստանի տիրեց, բայց այս տիրապետութիւնը կարճատեւ եղաւ։ Անկից զատ՝ Արշամ՝ Տիգրանին եղբօրորդին՝ յաջողեր էր, Պարսից Արշէզ թագաւորին օգնութեամբ՝ Փոքր Հայոց և Ասորւոց մէկ մասին վրայ թագաւորել, և Վերին Հայաստանի մէջ ալ զատ թագաւորութիւն մը կազմուեր էր որու մի շատ իշխաններն Հայ էին, երբեմն Հռոմայեցւոց և երբեմն Պարսից պաշտպանութեան ներքև, մինչև որ Երուանդ թագաւորին օրովը Հայք իրենց բնիկ երկրին տիրացան և օտար տէրութեանց լուծը բոլորովին թօթուեցին։

*Աբգար.* — Արշամին յաջորդեր էր Աբգար Միջագետքի Մծբին քաղաքին մէջ, այն միջոցին

որ Օգոստոս կայսրն ալ Հռոմէական պետութեան վրայ կ'տիրապետէր , և Քրիստոս Հրէաստանի մէջ կ'ծնէր ։ Աբգար զգօն ու խոհական թագաւոր մ'էր ։ Շատ կ'փափաքէր բոլոր Հայաստանն իր իշխանութեան տակն առնուլ և Հռոմի հարկ չտալ ։ Բայց տեսնելով որ բաւական զօրաւոր չէր մեծ տէրութեան մը դէմ դնելու , յարմար առթի մը կ'սպասէր ։ Նոյն միջոցին Օգոստոս կայսր հրաման հանեց որ իր ընդարձակ տէրութեան մէջ աշխարհագիր ընեն և ամեն մեհեաններու մէջ իր արձանը կանգնեն ։ Գործակալներ եկան Հայաստան այս հրամանը կատարելու համար ։ Հերովդէս՝ Երուսաղէմի այս թագաւորն՝ պահանջեց որ իր պատկերին ալ կայսեր արձանին քովը դրուի ։ Աբգար մերժեց այս խնդիրն և նորա թշնամութիւնն իրեն դէմ գրգռեց ։ Հերովդէս վրէժ լուծելու համար իր եղբօրորդին՝ Յովսէփ զօրավարին պատուիրեց որ Պարթևաց դէմ քալելու առեն Հայաստան ալ արշաւէ և Աբգարը պատժէ ։ Յովսէփ զօրավարը յաղթուեցաւ և Հերովդէս աւելի մեծ բանակով մը Հայոց դէմ յարձակելու կ'պատրաստուէր երբ մահը վրայ գալով իր խորհուրդն անկատար մնաց ։ Նորա տեղ նստաւ Հերովդէս Չորրորդապետն՝ որ սաստիկ ատելութեամբ վառուած էր Հայոց դէմ ։

Երբոր Օգոստոս կայսեր Տիբերիոս կայսրը յաջորդեց՝ Աբգար Պարսից Արտաշիր թագաւորին հետ դեսպաններ ղրկեց Հռոմ որպէս զի նորա դաշնակցութիւնը շնորհաւորեն ։ Հռոմի մէջ դեսպանները կ'անարգուին ։ Աբգար այս

ընելով՝ ապստամբելու խորհուրդն 'ի գործ դնելու կ'պատրաստուի ։ Իր աթոռը Եդեսիա (Ուռհայ) փոխադրելով՝ զայն կ'ամրացնէ , բայց դարձեալ չյաջողիր ։ Վասն զի Արտաշիր Թագաւորին մահուանէ ետև՝ իր ազգւոց մէջ ժառանգական կռիւներ կ'ծագին և Աբգար Պարսկաստան երթալու կ'ստիպուի որպէս զի նոցա մէջ խաղաղութիւն հաստատէ ։

Ի դարձին Հայաստան՝ Աբգար իմացաւ որ Հռոմայեցիք կասկածներ առեր են իր ուղևորութեան վրայ՝ որպէս թէ Պարսից հետ դաշնակցելով՝ պիտի ապստամբէր ։ Այս կասկածներն աւելի հաստատուեցան երբոր Աբգար Արաբացւոց Արէտ Թագաւորին օգնեց Հերովդէս չորրորդապետին դէմ ։ Բայց Աբգար խոհեմութիւն սեպեց Հռոմի հետ. հաշտ մնալ և Ասորւոց կուսակալ՝ Հռոմայեցի Մարինոս իշխանին դեսպաններ ուղարկեց իր ընթացքն արդարացընելու համար ։ Դեսպաններն Մարինոսի հետ հաշտութեան դաշինքը նորոգելէն ետև՝ Երուսաղէմ անցան և ՓՐԿԻՉը տեսնելով՝ եկան նոցա ըրած հրաշքներն Աբգարին պատմեցին ։ Հայոց Թագաւորն՝ որ եօթը տարիէ 'ի վեր ծանր հիւանդութեամբ մը կ'տառապէր ; հրաւիրեց Քրիստոսն իր փոքրիկ քաղաքն որ զինքը բժշկէ և Հրէից ձեռքէն ազատի ։ Սակայն Քրիստոս Թովմաս առաքեալին միջոցաւ իմացուց Աբգարին թէ իր համբառնալէն ետև՝ իր աշակերտներէն մին պիտի ուղարկէ որպէս զի նորա ցաւերը դարմանէ և իրեններուն կեանք պարգևէ ։

Եւ իրաւի՝ Քրիստոս յառնելէն ետև՝ Թով-

մաս առաքեալը՝ նորա եօթանասուն երկու աշակերտներէն մին՝ Թադէոսը Եդեսիա ուղարկեց։ Թադէոս Աբգարը բժշկեց և քրիստոնէութիւնը քարոզեց։ Յետոյ Ադդէն՝ Թագաւորին խոյրարարն եպիսկոպոս կարգեց և ինք Վերին Հայաստան գնաց։ Այն ատեն Աբգար հրամայեց որ մեհեանները գոցեն և ամէն տեղ քրիստոնէական կրօնը դաւանին։ Նոյնպէս Տիբեր կայսեր, Պարթևաց Արտաշէս թագաւորին և Ասորւոց Ներսեհ թագաւորին գրեց որ Քրիստոսի կրօնն ընդունին. բայց պատասխան չստացած՝ մեռաւ Աբգար (36 Ք. Ե.)։

Անանուն. Սանատրուկ. — Աբգարու մահուանէն ետքը՝ Հայք երկու թագաւոր ունեցան. Անանուն, որ Աբգարու որդին էր և Սանատրուկ՝ նորա քեռորդին։ Առաջինն Եդեսիոյ մէջ կ'թագաւորէր, երկրորդն՝ Բագրատունեաց և Արծրունեաց օգնութեամբը բոլոր Միջագետքի վերայ կ'ուզէր տիրել։ Անանուն՝ թէև մեծաշէն թագաւոր մը, քրիստոնէութիւնը մերժեց, մեհեանները բանալ տուաւ և քրիստոնեաները հալածեց, նոյնպէս Ադդէ եպիսկոպոսը նահատակեց, որ մերժեր էր հեթանոս թագաւորին խոյր շինել։ Անանուն արքունական պալատը շինել տալու ատեն՝ իր վերայ սիւն մ'ընկնելով մեռաւ։

Անանունի մահուան վերայ Սանատրուկ իր փառասիրական նպատակին հասաւ. վասն զի Եդեսացիք դեսպան ղրկելով առաջարկեցին որ իրենց վերայ թագաւորէ, այս՝ պայմանաւ որ քրիստոնէութիւնը պահպանէ։ Սանատրուկ՝ թէև

խոստացաւ Եղեսացւոց փափաքը կատարել, բայց իր խօսքը չպահեց և մինչև անգամ Թադէոս առաքեալն ու իր Սանդուխտ դուստրը նահատակեց։ Այս անգթութիւնները բաւական չհամարելով՝ Աբգարու ընտանիքը սրէ անցընել տուաւ, որպէս զի իր աթոռին վրայ հաստատ մնայ։

Սանատրուկ Մծբին քաղաքը շինել տուաւ, որ երկրաշարժէ փլեր էր և ուրիշ շինութիւններու համար՝ ալ իր գանձը վատնեց։ Մծբին քաղքին հրապարակն արձան մը կանգնել տուաւ, ձեռքը դրամ մը բռնած, յայտնել ուզելով թէ բոլոր ունեցածը վատներ ու միայն դրամ մը մնացեր էր։ Այս թագաւորն որսի կացած լինելով՝ պատահմամբ նետէ մը զարնուեցաւ մեռաւ։

Երուանդ. — Սանատրուկի ժամանակ Երուանդ անուն մեծայաղթ ու քաջասիրտ զօրավար մը մեծ համբաւ ստացեր էր իր արիական գործոց համար և մինչև անգամ նախարարներու կարգն անցեր էր։ Մօրը կողմէ Արշակունի էր Երուանդ, որ յաջողեր էր իր վեհանձն ու անուշ բնաւորութեամբը մեծամեծներու սիրտը գրաւել։ Երբ Սանատրուկ մեռաւ հնար փնտռեց արքայական աթոռն ելնելու և նախարարներն իրեն աջակից գտաւ։ Բայց հազիւ թէ պահն եկաւ որ իր փառամոլութիւնը ցցուց։ Հրամայեց որ Սանատրուկի բոլոր որդիքը սպաննեն որպէս զի գահն իր ցեղին մնայ։ Բաղրատունիք այս յափշտակութեան դէմ կեցան և բռնակալը չպսակեցին թագաւոր, ինչպէս որ օրէնքը կ'պահան-

ջէր։ Սմբատ Բագրատունին յաջորդեց. Սանատրուկի Արտաշէս որդին կոտորածէն ազատել և բաւական ժամանակ ծպտեալ շրջելէն ետև՝ Պարսկաստան՝ Դարեհ թագաւորին արքունիքը տանիլ։

Երբոր Երուանդ իմացաւ որ Արտաշէս ազատեր ու Դարեհի պաշտպանութեան ներքև կը գտնուի՝ սաստիկ նեղացաւ և զանի ձեռք ձգելու միջոց մը մտածեց։ Պարսից թագաւորին գրեց որ Արտաշէս Սանատրուկի որդին ու Արշակունի չէ, այլ մարի տղայ մը և խնդրեց որ զանի Հայաստան ղրկէ։ Բայց Դարեհ նորա խօսքը մտիկ չըրաւ։ Այն ատեն Երուանդ գուշակեց որ Արտաշէս իր Հայրենի աթոռը ձեռք ձգելու համար օրին մէկն իրեն դէմ պիտի զինի, ուստի ջանաց ուրիշ դաշնակիցներ գտնել։ Հռոմի պաշտպանութիւնը ստանալու համար Միջագետքը նոցա թողուց և ինք Վերին Հայաստանի Արմաւիր քաղաքը փոխադրեց իր աթոռը։ Եւ որովհետև այս քաղաքն ամուր չէր՝ Երասխ գետին ափունքը՝ բլրի մը վրայ պարսպապատ քաղաք մը կանգնեց և անունն Երուանդաշատ դրաւ, յուսալով որ անկից պիտի կարենայ դիմադրել թշնամիներուն՝ երբոր նեղը մնէ։

Երուանդ ժողովրդեան սէրը շահելու համար՝ նորա բարօրութեան հոգ տարաւ. ուրիշ քաղաքներ ալ շինեց, ինչպէս Բագարան, Ախուրեան (Արփաչայ) գետին մօտ, և Երուանդակերտ։ Բագարանի մէջ դնել տուաւ բոլոր կռոց արձաններն և իր Երուազ եղբայրն քրմապետ կարգեց։

Երբոր Երուանդ իր գահն ամրացընելու միջոցները կ՚մտածէր, Արտաշէս և իր դայեակը՝ Սմբատ՝ անգործ չէին կենար Պարթևաստանի մէջ։ Քաջութեան գործերով Դարեհ թագաւորին և նախարարներուն յարգն ու համարումը ստացեր էին։ Այն ատենները Դարեհ Աղուանից ու Ալանաց դէմ պատերազմ կ՚մղէր։ Սմբատ՝ իր արիութեամբն այս կռիւներուն մէջ մեծ անուն առաւ և թագաւորը նորա ծառայութիւնները վարձատրելու համար՝ նախարարներուն խորհրդով՝ գունդ մը զօրք տուաւ Սմբատին որպէս զի Հայաստան երթայ և Արտաշէս պատանին իր հայրենական գահը նստեցընէ։ Սմբատ Ճամբայ ելաւ դէպ ՚ի Ուտի գաւառն։ Հայք խնդութեամբ իմացան որ իրենց օրինաւոր գահաժառանգը Հայաստան կ՚դառնար, մինչդեռ Երուանդ անմիջապէս ամեն պատրաստութիւնները տեսաւ դիմադրելու համար։ Մի շատ նախարարներ Ուտէացւոց երկիրը ղրկեց որ Սմբատայ անցքն արգիլեն, և ինքն Ախուրեան գետին մօտ իր բանակը կազմելու փութաց։ Այլ և այլ կողմէ զօրք ժողվեց. իր զօրաց մէկ մասը Վիրք և Գամիրք էին, հայ զինուորներն ակամայ կ՚ծառայէին նմա։ Իր բոլոր յոյսը Միջագետքի հռոմէական լէգէոններու վրայ էր, որ պատերազմի դաշտը գալու կ՚ուշանային։ Ուստի Երուանդ բոլոր ճիգը թափեց որ հայ նախարարներն պարգևներով իր կողմը պահէ, ինչպէս որ շահեր էր Մուրացանաց նախարար Արգամն, տալով նմա երկրորդ գահն, զոր Տիգրան իր ձեռքէն առնլով՝ արդէն Միհրդատին

շնորհեր էր։ Սակայն այս ամէն ջանքն ընդունայն էին. վասն զի երբ Սմբատ Ուտի գաւառը հասաւ և դէպ 'ի Գեղամայ ծովակը դիմեց՝ բոլոր Հայ նախարարներն Արտաշէսի կողմն անցան և շիտակ Երուանդի բանակին վրայ քալեցին։ Սմբատ միայն Արգամին զօրքէն կ'վախնար։ Ուստի նմա մարդ ղրկեց Արտաշէսի կողմէ և առաջարկեց որ Երուանդէն բաժնուի, խոստանալով միշտ նոյն պատւոյն մէջ պահելու զինք։ Ի վերջէ երկու բանակները կ'ճակատին և կ'ըսկսին կռուիլ. Արգամ իր տիգաւոր զօրքով Արտաշէսի կողմն անցաւ, իրեն հետևեցան և ուրիշ նախարարներ, այնպէս որ Երուանդ միայն վարձկան զինուորներովը մնաց։ Բուռն եղաւ պատերազմը, երկու կողմէ կատաղութեամբ կռուեցան, և քանի մը տաւրացի զինուորներ՝ որ մեծ պարգևներ ընդունելով Երուանդի խօսք տուեր էին Արտաշէսը սպաննել, նորա վրայ յարձակեցան որ զարնեն, բայց պարապ տեղը. վասն զի՝ Արտաշիսի սննտուի որդին՝ Գիսակ՝ վազեց նոցա դէմ և մեծ վտանգէ ազատեց դահաժառանգ պատանին։ Սակայն ինքն ալ սուրի հարուած մ'ընդունելով դէմքին կէսը կորսընցուց և մեռաւ։

Երուանդ՝ տեսնելով որ իր զօրքը յաղթուելով կ'ցրուի, դէպ 'ի Երուանդաշատ գնաց ապաւէն մը փնտռելու։ Նորա ետևէն հասաւ Սմբատ իր զօրքովն և քաղաքը պաշարեց։ Հետևեալ աւուրն՝ Արտաշէս ալ հասաւ նոյն տեղն և նորէն կռուելու սկսան։ Վերջապէս քաղաքացիք անձնատուր եղան և Արտաշէսի զօրքը

քաղաքը մտնելուն՝ պալատը վաղեց, ուր Երուանդ պահուեր էր ։ Զինուոր մը զանի գտնելով՝ իր վաղրով զարկաւ սպաննեց ։

Այսպէս վերջացաւ Երուանդին իշխանութիւնն որ 20 տարի տեւեց ։ Արտաշէսի հրամանաւ փառաւոր շիրիմ մը կանգնեցին Երուանդին, մօրը կողմէ Արշակունի ըլլալուն համար ։

## ԳԼՈՒԽ ԽԲ.

Արտաշէս Բ — մինչև Խոսրով Մեծ.

(85—210)

Արտաշէս. — Սմբատ՝ այս փառաւոր յաղթութենէ ետք՝ Արտաշէսին գլուխը թագ կապեց, զոր Սանատրուկին գանձատունէն գտեր էր, և զանի հայրենի գահը նստեցուց ։ Արտաշէս՝ որ տարագրութեան և հալածանաց մէջ փորձառու և ուշիմ պատանի մ՚եղեր էր, մեծ թագաւորի վայել բարեմասնութիւններ ցցուց ։ Արշակունի թագաւորներու մէջ գրեթէ ամենէն երևելին եղաւ ։ Մեծանձն, հայրենասէր ու աշխարհաշէն էր, և իր բոլոր իշխանութիւնը գործածեց որպէս զի Հայաստանը ծաղկեցնէ և ժողովուրդն երջանիկ ընէ ։

Այն ինչ աթոռն ելաւ՝ որ նախ վարձատրեց

իրեն օգնական և աջակից զինուորները ։ Առատ պարգևներ տուաւ մար ու պարթև զօրաց և իրենց տեղը դարձուց ։ Արդամն , ինչպէս որ արդէն խոստացեր էր , իրեն երկրորդն ըրաւ . նոյնպէս արտօնութիւն տուաւ նմա յակնթակապ պսակ , գինդ , կարմիր կօշիկ , ոսկի դգալ ու պատառաքաղ գործածել , որ պատւոյ նշաններ էին ։ Սմբատն՝ որու պարտաւոր էր իր գահը , բարձր պաշտօններու հասուց ։ Ոչ միայն նորա թագաւորութեան իրաւունքը հաստատեց այլ և բոլոր հայկական զօրաց սպարապետ կարգեց ։ Գիսակայ որդի՝ Ներսէսը՝ նախարարներու կարգն անցուց՝ Դիմաքսեան անուամբ ։

Ցետոյ Սմբատին հրամայեց որ Երուանդին Երուազ եղբայրն՝ որ Բագարան քրմապետ էր՝ սպաննէ և նորա տեղն իրեն սիրելի Մոգպաշտէ անուն մարդը դնէ ։ Սմբատ այս հրամանը կատարեց և Երուազին բոլոր ինչքը գրաւելով թագաւորին բերաւ ։ Արտաշէս այս ամէն գանձն Պարթևաց թագաւորին ուղարկեց , որ իրեն այնքան բարիք ըրած էր ։ Արտաշէս Արտաշատ քաղաքը նորոգելով իր աթոռն անդ փոխադրեց , նոյնպէս Բագարանի բոլոր կուռքերը ։

Այնուհետև Արտաշէս սկսեր էր Հայաստանը բարեկարգել՝ երբ Ալանաց ազգն՝ ուրիշ կովկասեան լեռնաբնակ բնակիչներու հետ միանալով՝ Կուր գետէն անցաւ և Հայաստան արշաւեց ։ Արտաշէս զօրքը ժողվելով՝ վանեց այս աւազակներն , Ալանաց թագաւորին որդին գերի բռնեց և թշնամիները Կուր գետէն անդին քշեց ։ Ալանք ուզեցին հաշտութիւն ընել Արտաշէսին

հետ որ յանձն չառաւ։ Այն ատեն Սաթինիկ՝ Ալանաց թագաւորին աղջիկն՝ բլրի մը վրայ ելաւ և աղաչեց՝ Թարգմանի միջոցաւ՝ որ իր եղբայրն ազատ թողու։ Հայոց թագաւորն Սաթինկան համեստ ու վայելուչ ընթացքին հաւնելով՝ ուզեց զանի կնութեան առնուլ, և միտքը Սմբատին յայտնեց։ Սմբատ իսկոյն պատգամաւոր ղրկեց Ալանաց թագաւորին, և հաշտութիւն հաստատելով Արտաշէս Սաթինկան հետ ամուսնացաւ։

Արտաշէս ուրիշ հոգ չունէր այլ միայն Հայաստանը զարգացընել։ Այս նպատակին հասնելու համար՝ երկրագործութիւնն ու վաճառականութիւնը քաջալերեց. անշէն տեղեր գաղթականներ հաստատեց, հաղորդակցութեան միջոցներն աւելցուց, ճամբաներ բանալ, գետերու վրայ կամուրջներ ձգել տուաւ, ծովակներու մէջ նաւակներն սկսան երթևեկել։ Օրէ օր յաջողութիւն, առատութիւն սկսան տարածուիլ ամեն տեղ։ Հայաստանի մէջ ափ մը տեղ չկար որ մշակուած չլինէր, մինչև անգամ լեռներու վրայ։ Ամեն տեղ սահմանաքարեր հաստատեց, կ'ըսէ Խորենացին։ Արտաշէս արուեստներն և ուսմունքն առաջ տանելու համար այլ և այլ հիմնարկութիւններ ու վարժարաններ հաստատեց, նոր նոր քաղաքներ հիմնեց ու զարդարեց, ուսումնական մարդիկը քաջալերեց։

Այս կարգադրութիւններն իրենց արդիւնքն ունեցան։ Ժողովուրդն անդորրութեան և բարօրութեան մէջ կ'ապրէր և թէպէտ Արտաշէս երջանիկ էր ժողովրդեան սիրոյն այլ դժբաղդ՝

տունին գործոց մէջ։ Այս դժբաղդութեան պատճառն իր Արտաւազդ, Վրոյր, Մաժան, Տիրան, Զարեհ և Տիգրան որդիքն էին, որ իրարու և այլոց դէմ նախանձով վառուած՝ միշտ խռովութիւն կ'հանէին։ Ամենէն գոռոզ, ինքնահաճ և նախանձոտն էր Արտաւազդ՝ Սաթինկան առաջին որդին։ Արգամն ամբաստանեց նա յանիրաւի իր հօրն առջև՝ որպէս թէ թագաւոր լինելու կ'դաւադրէ, և զանի սպաննել տուաւ, որ մի միայն նորա վայելած իշխանութիւնն ինքն առնու։ Այս բաւական չհամարելով ուզեց Սմբատն ալ սպաննել տալ որպէս զի ասպարապետութիւնը ձեռք ձգէ։ Սմբատ՝ վեհանձնութեամբ հրաժարեցաւ իր պաշտօնէն և գնաց Տմորիք (Կորդուաց երկիր) գաւառը բնակեցաւ։ Այն ատեն Արտաւազդ Սմբատին տեղն անցաւ։ Միւս եղբայրներն սկսան նորա վրայ նախանձիլ ու խռովիլ։ Արտաշէս այս շփոթութեանց վերջ տալու համար ամեն մէկ որդւոյն զատ զատ պաշտօն յանձնեց։ Մաժանը քրմապետ կարգեց և Անի ամրոցն ուղարկեց որ Արամազդայ մեհեանը պաշտօն վարէ. Վրոյրն՝ որ զգօն մարդ էր՝ արքունի պալատին հազարապետ ըրաւ։ Իսկ բանակը չորս մաս բաժնեց. արևելեանն Արտաւազդին յանձնեց, արևմտեանը Տիրանին, հիւսիսայինը Զարեհին և հարաւայինը Սմբատին։ Այսպէս իր տէրութեան և տան մէջ կարգ կանոն հաստատելէն ետև՝ Արտաշէս միտքը դրաւ Հռոմայեցւոց սովորական հարկը չվճարել։ Այս որ իմացաւ Հռոմի կայսրը Տրայիանոս՝ զօրքն առած՝ Փոքր Հայաստան մտաւ և

Տիրանի յաղթելով մինչև Բասեան գաւառը հասաւ։ Այն ատեն Հայոց արևելեան և հիւսիսային զօրքը միանալով՝ Արտաւազդի և Զարեհի առաջնորդութեամբ հռոմէական բանակին դէմ քալեցին և չկրցան դիմադրել մինչև որ ալևոր Սմբատ իր հարուային դնդով օգնութեան եկաւ և Հռոմայեցիքն Հայաստանէն դուրս վանեց, մինչև Կապադովկիա։ Թէպէտ Հայք այս յաղթութեան վրայ Հռոմի հարկ տալէն ատեն մը դադրեցան, բայց վերջէն բոլորը մէկէն վճարեցին։ Վասն զի Տրայիանոս կայսրը նոր բանակով Ասիա անցաւ, և ոչ միայն Հայոց օրինակին հետևելով նշկահող եգիպտացի ու հրէայ ժողովուրդը զսպեց այլ և Պարթևաց վըրայ քալեց։ Արտաշէս ընծաներով Հռոմի կայսեր սիրտն առաւ և հետը հաշտուեցաւ, անվճար հարկերը վճարելով։

Արտաշէս Բակուրակերտ աւանին (Մարանդ գաւառ) մէջ հիւանդանալով մեռաւ։ Փառաւոր եղաւ իր թաղման հանդէսը։ Բոլոր Հայաստան՝ որ իր ձեռօք կերպ մ'ազգային միութիւն հաստատեր էր, լացաւ այս իմաստուն և մեծաշէն թագաւորին վրայ։ Անբաւ բազմութիւն մը կ'ուղեկցէր իր դագաղին որ ոսկիէ էր։ Կ'ըսեն թէ իր գերդաստանէն շատ մարդիկ անհնարին վիշտ զգալով կամովին ինքզինքնին սպաննեցին։

**Արտաւազդ.** — Արտաշէսին յաջորդեց Արտաւազդ անդրանիկ որդին, որ գահն ելնելուն՝ Տիրան եղբօրմէն զատ՝ բոլոր միւս եղբայրներն ու քոյրերն Արարատեան նահանգէն հանեց և

Աղիովիտ ու Առբերանի գաւառներն ուղարկեց՝ նշանակութեան արժանի գործ մը չըրաւ. նա և իր իշխանութիւնը շատ կարճ տևեց։ Օր մը ձիով որսի ելած լինելով Մասիս լեռը՝ յան-կարծ փոսի մը մէջ ընկաւ ու անյայտ եղաւ։ Գողթան երգիչներն և Հայ պառաւ կիներն այլ և այլ առասպելներ կ'պատմէին այս արկածին վրայ, զոր իբր թէ Արտաշէսի տուած անէծքին հետևանքը կ'համարէին (131)։*

Տիրան. — Արտաւազդ որդի չունէր, ուստի իրեն յաջորդեց Տիրան եղբայրն, որ զբօսանք սիրող թագաւոր մ'եղաւ և թողլ կեանք մը վարեց Չրմէս աւանը, (Եկեղիք)։ Երբ ձիւնոտ օր մը կ'ճամբորդէր ձիովը հիւսի մը տակը մնաց և մեռաւ։

Տիգրան. — Տիրանին եղբայրը Տիգրան Հայոց գահն ելնելով՝ Հռոմայեցւոց հնազանդիլ չու-զեց՝ իր նախորդներուն պէս, և Պարսից Պերոզ

* Արտաշէսի թաղման տեղն՝ երբ Արտաւազդ դիտեր է որ շատ մարդիկ կ'սպաննուին կամովին իր հօրը գե-րեզմանին մօտ, ըսեր է. «Դու գացիր և բոլոր մարդիկը հետդ տարիր, մինթէ ես աւերակներու վրայ թագաւո-րեմ»։ Այս գանգատին վրայ՝ զանի անիծած լինի այս-պէս.

Եթէ դու յորս հեծցիս
Յազատն 'ի վեր 'ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք (ոգիները)
Տարցին յազատն 'ի վեր 'ի Մասիս։
Անդ կացցես, և զլոյս մի՛ տեսցես։

թագաւորին հետ՝ Փոքր Ասիա արշաւեց։ Բայց այն տեղ տիրող թագուհւոյ մը ծուղակն ընկաւ և երբ Հռոմի Մարկոս Աւրելիոս կայսեր գահակից՝ Լուկիոս Վերոս՝ բազմաթիւ զօրքով եկաւ Փոքր Ասիա որ Հայոց դէմ պատերազմի, իմացաւ որ Տիգրան գերի բռնուեր է. նորա վրայ գթաց ու ազատեց։ Այնուհետև այնպիսի սերտ բարեկամութեամբ կապուեցաւ նորա հետ որ իր ազգականներէն Ռոփէ աղջիկը նմա կնութեան տուաւ։

Յետոյ Տիգրան Հայաստան դարձաւ և ջանաց տէրութիւնը բարեկարգելու։ Իր քրմապետ Մաժան եղբօրը յիշատակին՝ բագին մը շինել տուաւ նորա գերեզմանին վրայ՝ և հրամայեց որ նորա մէջ եղած զոհերով անցաւորներն ու օտարները կերակրուին (195)։

Վաղարշ. — Տիգրանի որդին Վաղարշ ժիր, արիասիրտ ու աշխարհաշէն թագաւոր մ'եղաւ։ Այլ և այլ քաղաքներ շինեց, ինչպէս Վաղարշաւան քաղաքը՝ որ իր ծնած տեղն էր, Բասենու գաւառին Մուրց գետին Երասխի հետ խառնուելու վայրը, Վաղարշապատ՝ որ նախ Վարդգէսի աւանն էր, Վաղարշակերտ քաղաքը՝ Ծաղկոտն գաւառի, որ հիմակ Ալաշկերտ կ'կոչուի։ Իր աթոռը Վաղարշապատ փոխադրեց։

Վաղարշ աւելի ևս պիտի շէնցընէր Հայաստանն եթէ թշնամիները զինք հանդարտ թողուին։ Արևմտեան կողմէ Հռոմի Սեվերոս կայսեր լէգէոններն Հայոց երկիրն արշաւելու կ'ըսպառնային, հիւսիսային կողմէ Խազրաց ու Բաս-

լոց ազգերն Ճորայ կապանէն անցնելով՝ Հայաստանի վրայ կ'քալէին։ Այս դժուարին վիճակին մէջ՝ Վաղարշ յարմար դատեց Սեվերոսի հետ հաշտուիլ և նմա շատ ընծաներ ուղարկեց։ Յետոյ իր բոլոր զօրութիւնը ժողվելով հիւսիսային ազգերուն դէմ գնաց՝ որ արդէն Կուր գետէն անցնելով Հայոց սահմաններն ապատակելու սկսեր էին։ Վաղարշ սոսկալի ջարդ մը տալով թշնամիները հալածեց Ճորայ կապանէն անդին, բայց ինքն ալ այս պատերազմին մէջ նետահար սպաննուեցաւ։

## ԳԼՈՒԽ ԽԳ.

### Խոսրով Մեծ — Մինչև Խոսրով Բ.

### (210—343)

Խոսրով. — Վաղարշ իրեն արժանի որդի մը յաջորդ թողուց, Խոսրովը, որ ոչ միայն Հայաստանը հիւսիսային ժողովրդոց արշաւանքէն ազատելու՝ այլ և իր հօրը մահուան վրէժը լուծելու համար Կովկասու լեռներու հիւսիսային կողմէն Ճորայ դռնէն անցաւ և Սկիւթացի ցեղերուն յաղթեց։ Այն տեղ յոյն գրով արձան մը կանգնեց իր տէրութեան իբրև սահմանի նշան, և այն թշնամիներէն հարիւրին մէկ պատանդ առնելով Հայաստան դարձաւ։

Նոյն միջոցին Հռոմ. Կարակալլա կայսրը կ'ուզէր բոլոր Հայաստանը նուաճել և այս նպատակաւ հռոմայեցի Թէոկրիտոս զօրավարը Հայոց դէմ ուղարկեց շատ զօրքով որոց Վաղարշ մեծ ջարդ մը տալով յաղթեց և ամուհետև Հայաստանի ներքին բարեկարգութեան հոգ տարաւ ։ Այն ատեններ Պարթևաց վրայ կ'իշխէր Արտաւան, որ Արշակունի էր և Խոսրովին ջերմ բարեկամը ։ Սասանեան Արտաշիր Պարսից իշխանն ապստամբելով Արտաւանը սպաննեց և նորա տեղ գահն ելաւ ։ Այս լսելով Խոսրով սաստիկ բարկացաւ և իր զօրքը գումարելով Արտաշրի վրայ քալեց և զանի մինչև Հնդկաստան վանեց ։ Արտաշիր դիտելով որ անկարող է զօրութեամբ դիմադրել Խոսրովին՝ մտածեց նենգութեամբ սպաննել տալ զանի ։ Ուստի իր նախարարներուն հետ խորհուրդ ըրաւ և առաջարկեց որ Խոսրովը ջնջելու հնար մը գտնեն, և ըսաւ որ եթէ վերստին Պարթևաստանի տիրէ Խոսրովը սպաննողին թագաւորական պատիւ պիտի տայ ։

Այն ատեն Պարթևաց Սուրէնեան ցեղէն Անակ նախարարն այս առաջարկութիւնն ընդունեց և Հայաստան եկաւ՝ այնպէս ձևացընելով որ Արտաշրի ձեռքէն կ'փախչի ։ Խոսրով որ այն միջոցին իր ձմերանոցը՝ Խաղխաղ քաղաքը կը գտնուէր, շատ պատւով ընդունեց Անակն իր արքունիքն ։ Գարնան Վաղարշապատ դարձան միասին և այն տեղ ծնաւ Անակին որդին Գրիգոր, որ Լուսաւորիչն եղաւ ։ Խոսրով նորէն կը պատրաստուէր Պարսկաստան երթալ և Պար-

թեւաց ցեղէն թագաւոր մը կարգել, երբ օր մը որսի գացած լինելով, Անակ իր սեւ խորհուրդը կատարել ուզեց: Ուստի Անակ առանձին կանչեց Խոսրովը՝ կարեւոր բան մ՚ըսելու պատրուակաւ, զանի սպաննեց, եւ իսկոյն ձին դարձուց ու սկսաւ փախչիլ: Բայց Հայոց նախարարները նորա ետեւէն ընկան եւ Արտաշատ քաղքի մօտ Հասան բռնեցին զանի եւ Երասխ գետին մէջ նետելով խեղդեցին:

Խոսրով մեռնելու ատեն՝ Հրաման տուաւ որ Անակին ցեղը սրէ անցընեն: Այս կոտորածէն միայն Գրիգոր (Լուսաւորիչ) ազատեցաւ զոր Կեսարիա տարին. Իսկ Արտաշիր իր նպատակին Հասաւ: Վերստին Պարսկաստան միանալով Հայաստանը նուաճելու եկաւ: Բաւական ատեն Հայ նախարարներն Արտաշրի զօրութեան դէմ դնելէն ետեւ՝ Հնազանդելու ստիպուեցան (280): Այսպէս Հայաստան Սասանեանց իշխանութեան ներքեւ ընկաւ:

Տրդատ Հռոմ մէջ. — Երբոր Արտաշիր Հայաստանի տիրեց, Անակին որդին Գրիգոր Կեսարիա քաղաքը կ՚սնուէր եւ քրիստոնէական կրօնին մէջ կ՚վարժուէր. իսկ Արտաւազդ Մանդակունին Տրդատը Հռոմ տանելով՝ Լիկիանոս կայսրին մօտ դրեր էր:

Տրդատ Հռոմ մէջ միտքն ու մարմինը կը կրթէր ու կ՚մարզէր: Արդէն անուանի եղեր էր իր մարմնական ոյժին կողմէ եւ Ողիմպիական խաղերուն մէջ՝ մրցանակներ առեր էր: Ձի հեծնել ու զէնք շարժել սովորական խաղերն էին:

բերաւ ։ Եւ Տրդատ՝ այս հաւատարմութեան փոխարէն՝ զանի Հայոց աշխարհի հազարապետ կարգեց ։ Սպարապետ ըրաւ Արտաւազդ Մանդակունին, որ իրեն դայեակն էր ։ Տրդատ Երիզայի մէջ Անահիտ դիցուհւոյն շնորհակալութեան զոհեր մատուցանելէն ետեւ՝ յառաջ անցաւ և Արտաշիրի յաջորդ՝ Շապուհ Պարսից թագաւորը բոլորովին վռնտեց Հայաստանէն ։ Այս Պարսից երկիրն ալ արշաւեց և մինչև Տիզբոն գնաց։ Երբ Հայաստան դարձաւ՝ Ալանաց Աշխադար թագաւորին Աշխէն աղջկան հետ ամուսնացաւ ։ Հեթանոսութեան ջերմ պաշտպան էր Տրդատ և հրաման տուեր էր ամենուն որ կռոց պաշտօնն միշտ կատարեն և քրիստոնեաները հալածեն ու չարչարեն ։ Սակայն դէպքերն այնպէս բերին որ ոչ միայն Տրդատ քրիստոնեայ եղաւ այլ և իր օրովը Հայաստանի մէջ բոլորովին արմատ բռնեց քրիստոնէութիւնն ։ Եւ այս հրաշքը գործողն եղաւ Ս. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ ։

Ս. Գրիգոր Լուսաւորիչ. — Ինչպէս արդէն գիտենք՝ Անակին որդին էր Ս. Գրիգոր Լուսաւորիչ։ Երբոր Խոսրովին հրամանով Անակին ընտանիքը կոտորեցին՝ Եւթաղ անուն մարդ մը՝ Անակին մէկ եռամեայ որդին գաղտնի պահեց և տարաւ նորա սանտուհին հետ (Սոփիա) Կեսարիա տարաւ, ուր քրիստոնէութիւնն այն ատեն կ'ծաղկէր ։ Փախստական մանուկը Քրիստոսի կրօնին մէջ մեծցաւ, Գրիգոր անուամբ, և իր կրթութիւնն աւարտելէն ետեւ՝ Մարիամ անուն աղջիկն իրեն կին առաւ ։ Այս ամուսնութենէ ծնաւ

Վրթանէս և Արիստակէս : Սակայն Գրիգորի աչ-
նիւ ու առաքինի հոգին հանգիստ չէր : Խմա-
ցեր էր իր հօրը՝ Անակին գործած ոճիրն և այն
աղտն անձնական ծառայութեամբ սրբելու կը
փափաքէր : Ուստի իր կողակցէն հաւանութեամբ
քակեց ամուսնական կապը : Մարիամ կուսա-
նոցը մտաւ , իսկ Գրիգոր Հռոմ գնաց ու Տըր-
դատին քովը մնաց : Նախախնամութիւնը մեծ
ազգ մը լուսաւորելու զինք սահմանած էր :

Երբոր՝ Տրդատ Հայաստան դառնալով տա-
րած յաղթութեանց վրայ Անահիտ դիցուհւոյն
զոհ կ՚մատուցանէր՝ ամենուն պատուիրեց որ նոյն
պաշտօնը կատարեն : Գրիգոր մերժեց . Տրդատ՝
բարկանալով՝ զանի չարչարել տուաւ , և երբ
լսին իրեն թէ նա Անակի որդին է , հրամայեց
որ Գրիգորը Արտաշատ բերդը տանին և մահա-
պարտներու սահմանուած խոր վիրապը նետեն .
իսկ Քրիստոսը դաւանողներու դէմ մահ սպառա-
նայ : Ս . Գրիգոր շատ տարի մնաց նոյն վիրա-
պին մէջ , և բարեպաշտ կին մ՚ամեն օր հաց
կ՚տանէր կ՚նետէր որ նահատակը կերակրի :

Հռիփսիմեան կուսանք . — Այն ատենները (300)
մի շատ կուսանք , որոց գլուխն էին Հռիփսիմէ
և Գայիանէ , Հռոմէն խոյս տալով՝ Հայաստան
եկեր և Վաղարշապատի մօտ , այգիի մը հնձա-
նին մէջ բնակեր էին : Երբոր Դիոկղետիանոս
կայսրն՝ որ Հռիփսիմէի հետ կարգուիլ կ՚ուզէր ,
իմացաւ որ նա Հայաստան փախեր է , իսկոյն գրեց
Տրդատին որ զանի իրեն դարձընէ : Բայց Տըր-
դատ՝ Հռիփսիմէի գեղեցկութեան զարմանալով

ուզեց զանի կին ընել։ Հռիփսիմէ դէմ կեցաւ և սորա վրայ Թագաւորը հրամայեց որ զանի տանջեն, նահատակեն իր ընկերներովը, ինչպէս որ հրամանը կատարեցին։ Բայց Թագաւորը մեծ տրտմութեան և սուգի մէջ ընկաւ և վրան տեսակ մը խելացնորութիւն գալով՝ սկսաւ անտառները թափառիլ՝ վայրի կենդանիներու պէս։ Նոյն պատիժը կրեցին և ուրիշ նախարարներ։

Այն ատեններն Տրդատին Խոսրովիդուխտ քոյրն երազ մը տեսաւ։ Այս երազին մէջ հրեշտակ մը կ՚հրամայէր որ Գրիգորը խոր վիրապէն հանեն որպէս զի խելագար Թագաւորը բժշկէ։ Այս երազը մի քանի անգամ կրկնուելուն՝ Օտա Ամատունի նախարարը գնաց Գրիգորը խոր վիրապէն հանեց։ Երբ Վաղարշապատ կ՚գային, Տրդատ ուրիշ նախարարներու հետ՝ նորա դիմացն ելաւ։ Ս. Գրիգոր Աստուծմէ բժշկութիւն խնդրեց նորա համար և իրօք Տրդատ զգաստացաւ։ Յետոյ գնաց նահատակ կուսանաց մասունքը ժողվեց ու վկայարան մը շինել տալով նորա մէջ ամփոփեց։

Այնուհետև Տրդատ ու նախարարներն քրիստոնեայ եղան։ Ս. Գրիգոր սկսաւ Աւետարանը քարոզել՝ Տրդատ Թագաւորին հետ շատ տեղեր պտըտելով, և կռատուններ կործանեց։ Եկեղեցիներ (Էջմիածնայ տաճարը) վանքեր ու դըպրոցներ հաստատեց որպէս զի տղայք քրիստոնէական ոգւով դաստիարակուին, և կոչում ունեցողներն եկեղեցւոյ պաշտօնեայ կ՚ձեռնադրէր և այլ և այլ կողմեր կ՚ղրկէր որ ժողովուրդը հովուեն։

Այսպէս քրիստոնէական լոյսը տարածելով Հայաստանի մէջ՝ Ս. Գրիգոր Լուսաւորիչ կոչուեցաւ, և բոլոր Հայոց կաթողիկոս եղաւ։ Այն միջոցները Նիկիոյ տիեզերական ժողովը լինելով՝ որպէս զի Արիոս անուն եպիսկոպոսի մէկ նոր վարդապետութիւնը դատեն, Ս. Գրիգոր ալ հրաւիրուեցաւ որ նոյն ժողովին երթայ ներկայ գտնուի։ Բայց ՚ինք յանձն չառաւ, և իր տեղն ուղարկեց իր որդին Արիստակէսը, որ ժողովին կանոններն առաւ Հայաստան վերադարձաւ։ Ս. Գրիգոր Արիստակէսին դառնալէն ետև՝ իր հոգևոր իշխանութենէ հրաժարեցաւ և Մանեայ այրը քաշուեցաւ ճգնելու համար։ Նոյն տեղը մեռաւ, և հովիւներ նորա մարմինը թաղեցին։ Վերջը նորա ոսկորտիքը Թորդան տարին։

Տրդատին պատերազմները. — Պարսից Շապուհ թագաւորը Տրդատէն վրէժ լուծելու և նորէն Հայաստանի տիրելու համար՝ պատերազմ հրատարակեց։ Հիւսիսային Սկիւթացի ժողովուրդները գրգռեց որ Հայաստան արշաւեն, նոյնպէս Սլկունեաց նախարարութեան Սլուկ նահապետը յորդորեց որ Տրդատին դէմ ապստամբի։ Հայոց թագաւորը շուտ մը զօրքը ժողվեց և նախ հիւսիսային ասպատակներու դէմ քալեց։ Յաղթեց Բասլաց Գեդուհոն թագաւորին. սակայն այս պատերազմին մէջ քանի մ'երևելի հայ նախարարներ ընկան, ինչպէս նաև Արտաւազդ Մանդակունին, որ հայոց աշխարհի ընդհանուր սպարապետն էր։ Տրդատ թշնամի Սկիւթացիքը մինչև Հոնաց երկիրը վանելով Հայաստան կ'վերա-

գառնար, երբոր ապստամբ Սղուկ նահապետին մահուան լուրն իմացաւ։

Մամիկոն. — Այս նահապետը՝ Ամատունեաց Օտա նախարարը սպաննելով՝ գացեր Տարոն գաւառին Ողական ամրոցն ամրացեր՝ և Սեմ լեռին բնակիչներն թագաւորին դէմ ոտք հաներ էր, չթողլով որ նոյն կողմի մարդիկ ուրիշ գործի պատրաստին։ Այն միջոցին Տրդատ հիւսիսային ժողովրդոց հետ կռուի բռնուած ըլլալով բոլոր նախարարներուն իմաց կ'տայ թէ՝ ով որ Սլկունեաց նահապետը բռնէ իրեն բերէ, նորա պիտի տայ ապստամբին բոլոր գիւղերն ու դաստակերտներն։ Մամիկոն Ճենացին* այդ գործն իր վրայ կ'առնու և թագաւորին ձեռքէն փախածի պէս կ'երթայ Սղուկը կ'գտնէ և նորա մօտ բաւական ատեն մնալէն ետև՝ յարմար առիթ մը գտնելով զինքն ու բոլոր ընտանիքը կ'սպաննէ և Ողական ամրոցին կ'տիրէ։ Տրդատ՝ Տարոն գաւառը Մամիկոնին կ'ընծայէ և նորա ընտանիքը նախարարութեանց կարգը կ'անցընէ, և այս կ'լինի Մամիկոնեանց նախարարութիւնը։

* Խորենացին կ'պատմէ թէ՝ Ճենաց թագաւորին մէկ մեծ նախարարն էր Մամիկոն, որ յանկարծ մահուան դատապարտուած ըլլալով՝ Պարսկաստան Արտաշիր թագաւորին կ'ապաւինի ընտանեօք։ Ճենաց թագաւորն Արտաշիրէն խնդրեց որ Մամգունն իր ձեռքը տայ. սակայն Արտաշիր մահուան վրայ՝ Շապուհ Մամգունը Հայաստան կ'ղրկէ որ իր զօրաց մէջ ծառայէ։ Երբոր Տրդատ Պարսիկները Հայաստանէն վանեց, Մամգուն չուզեց Պարսկաստան երթալ և իր արիութեան համար նախարարաց կարգն անցաւ։

Տրդատի մահը. — Ս. Գրիգոր լուսաւորիչ մեռնելէ ետք՝ Տրդատ քրիստոնէութիւնը տարածելու համար ամեն ճիգ ըրաւ և գործով ու խօսքով կ'յորդորէր նախարարներն որ նորա մէջ յարատեւեն։ Սակայն տեսնելով որ մեծամեծներն ու ժողովուրդն իր յորդորները մտիկ չեն ըներ, գահէն կ'հրաժարի և Մանեայ այրը կը քաշուի։ Նախարարները կ'աղաչեն որ իր իշխանութիւնը նորէն շարունակէ և երբ Տրդատ յանձն չառնուր՝ զանի կ'թունաւորեն։

## ԳԼՈՒԽ ԽԳ.

### Խոսրով Բ — Տիրան Վաղարշակ։

### (343—391)

Քաղաքային պատերազմ. — Որչափ ատեն որ Տրդատ թագաւորեց՝ իր հզօր ձեռօք անզուսպ նախարարները հնազանդութեան մէջ պահեց. սակայն երբ մեռաւ նա՝ սոսկալի խառնակութիւն մը, տեսակ մը քաղաքային պատերազմ պատահեցաւ, այնպէս որ մէկ կողմէ անհաշտ նախարարական ցեղեր (Բզնունիք, Մանավազեանք, Որդունիք) անհնարին կատաղութեամբ իրարու դէմ կռուելով բնաջինջ եղան, միւս կողմէ՝ Փայտակարանի ու Աղուանից կողմնակալ արշա-

Այս որ իմացաւ Պետրոս Ղաղաւհ Թագաւորը՝ սաստիկ նեղացաւ որ Հայերն օրէ օր Կ. Պոլսոյ արքունեաց հետ կ'միանան, և կարծելով թէ մեր Հայրենիքն անիշխան ու անպաշտպան վիճակի մէջ կ'գտնուի, յարմար առիթ սեպեց իր Ներսեհ եղբայրը զօրքով Հայաստան ղրկելու որ զայն նուաճէ ու թագաւորէ ։ Բայց Կամսարական Արշաւիր արթուն կ'հսկէր, և Հայ նախարարները իրենց բանակն արդէն կազմեր էին Մասող դաշտին վրայ, երբ Ներսեհ նորա դէմ ճակատելով՝ չարաչար կ'յաղթուի և պարտուած կ'դառնայ ։ Թէև շատ մեծ նախարարներ ինկան այս պատերազմին մէջ, բայց Հայոց զօրքը Հայրենիքը պաշտպանեց մինչև Տիրանին գալը և այսպէս նորէն փորձով տեսնուեցաւ որ երբ ժողովուրդ ու նախարարք միաբանութեամբ շարժէին արտաքին թշնամիներու դէմ՝ անպարտելի կ'մնային ։

Տիրան Բ. — Վերջանալէն Ս. Վրթանէսի հետ Տիրան Հայաստան դառնալուն՝ իր հօրը գահն ելաւ, դրացի ժողովրդոց հետ հաշտութիւն հաստատեց, նաև Պարսից հետ՝ քիչ մը հարկ խոստանալով՝ ինչպէս որ արդէն Յունաց ալ կ'վճարէր ։ Սակայն Տիրան 'ի բնէ թոյլ ու մալէ էր և միայն Ս. Վրթանէսեան պատուհասներուն իր յոռի բնութիւնը կ'զսպէր ։ Ուստի երբ նա մեռնելով Յուսիկ կաթողիկոսական աթոռն ելաւ, Տիրան իր ընթացքը փոխեց և վատ ու անխորհուրդ գործերովն թէ Հայոց և թէ դաշնակից ազգերու ատելի եղաւ ։

**Տիրան Յուլիանոսին կ'օգնէ.** — Այն ատենները Շապուհ Բ Հռոմայեցւոց դէմ պատերազմի պիտի ելնէր. ուստի Տիրանին հետ պինդ պահեց բարեկամութիւնը և մինչև անգամ նմա օգնեց՝ որպէս զի վանէ Կովկասու ասպատակներն՝ որ ձորայ կապանէն անցնելով՝ եկեր Աղուանից սահմանները հասատատուեր էին։ Թէև Տիրան՝ թէ Պարսից և թէ Հռոմայեցւոց դաշնակից լինելով՝ դժուարին վիճակի մէջ պիտի գտնուէր՝ եթէ նոցա մէջ պատերազմ բացուէր, սակայն կրնար չէզոք դիրք մը պահել և ոչ մէկուն թշնամութիւնն իր վրայ գրգռել։ Բայց այսպէս չըրաւ. երբ Յուլիանոս ուրացող՝ Կոստանդ կայսեր յաջորդը, Պարսկաստանի վրայ կ'քալէր. Տիրան նորա զօրաց օգնեց որ Եփրատ գետէն անդին անցնին։ Յուլիանոս կ'ուզէր որ Տիրան զօրքովը իրեն միանայ, բայց նա մերժեց և միայն գունդ մը տուաւ նմա Ռշտունեաց Զօրա նախարարին հրամանին տակ, նոյնպէս իր երրորդ որդին Տրդատն և Տիրիթ թոռն իբրև պատանդ յանձնեց։

**Յուսիկ հայրապետին նահատակութիւնը.** — Յուլիանոս պատանդները Բիւզանդիոն ուղարկեց և իր պատկերը Տիրանին տուաւ որ եկեղեցիներուն մէջ կախէ։ Տիրան Ծոփաց գաւառը հանելով պատկերն արքունի եկեղեցին կանգնել ուզեց։ Ս. Յուսիկ այս տեսնելով՝ պատկերը թագաւորին ձեռքէն կորզեց և ոտքին տակ կոտր կոտր ըրաւ։ Տիրան Յուլիանոսէն վախնալով՝ հրամայեց որ ծեծեն մահու չափ Ս. Յուսիկն՝

սրտու խրատներէն ու յանդիմանութիւններէն ար-
դէն տաղտկացեր էր. Ս. Հայրապետին մարմի-
նը Թորդան գեղը տարին և իր հօրը՝ Ս. Վրթա-
նէսին՝ գերեզմանին մէջ թաղեցին։

Ռշտունի Զօրան. Տիրանի կրած պատիժը. — Երբոր նախարարներն ու Ռշտունի Զօրան Ս. Յուսիկի մահն իմացան, Տիրանին դէմ զայրացան։ Զօրա՝ որ Յուլիանոսի օգնական զօրաց հրամանատարն էր, մերժեց անօրէն թագաւորին հրամանը կատարել և իր գունդն առնելով Տմորիք քաշուեցաւ, մինչև որ միւս նախարարաց ընելիքն իմանայ։ Այն ատեն Յուլիանոս գիր գրեց Տիրանին պատուիրելով որ Զօրան իր բոլոր ցեղովը ջնջէ։ Տիրան այս հրամանը կատարեց և Զօրայի տեղ Սաղամոն Անձաւայ իշխանը Հարաւային գունդին զօրապետ կարգեց, և Փառնասէհը՝ կաթողիկոս։

Շապուհ յաղթեց Յուլիանոսին, որ սպաննուեցաւ, և նորա զօրքը մինչև Հայաստան հալածեց։ Յետոյ նամակ գրեց Տիրանին և խաբէութեամբ հրաւիրեց իր մօտ, որպէս զի նորա անհաւատարմութիւնը պատժէ։ Շապուհ կշտամբեց զանի իր զօրաց առջև և նորա աչքերը փորել տուաւ։ Այսպէս կ'ըսէ Խորենացին. Խաւարեցաւ Տիրան, որ Հայաստանի լոյսը խաւարեցուցեր էր, Յուսիկին արեւը մարեր էր (364)։

Արշակ Բ. — Նոյն միջոցին Շապուհ հռոմէական զօրութիւնը կտրելով՝ ուզեց Հայաստանի

ըսելն թագաւորին թէ այն օրէրը Գնէլ առնելի շատ երէ որսացեր էր Շահապիվանի կալուածոց մէջ։ Արշակ սաստիկ նեղանալով հրաման ըրկեց Գնէլին որ իրեն որսի տեղ պատրաստէ, և ինքն ալ շուտ մը Ճամբայ ելաւ որ՝ եթէ ամեն բան պատրաստ չգտնէ՝ Գնէլը պատժէ։ Սակայն երբ հասաւ Արշակ տեսաւ որս գտաւ և՝ նախանձէ շարժեալ՝ իր զինակիր Վարդանին ձեռօք Գնէլը նետով սպաննել տուաւ։ Արշակ այս սպանութիւնը դիպուածի տալով Գնէլի մահուան վրայ շատ վիշտ ցցուց, թէև ամեն մարդ գիտէր թէ նորա նենգութեամբ Գնէլը զարնուեր էր։ Ս. Ներսէս այս բանիս համար անիծեց Արշակն, որ զղջալու տեղ, Փառանձեմն՝ որ անզգամ կին մ'էր, իրեն կին առաւ և անկից Պապ անուն որդի մ'ունեցաւ։ Իսկ Փառանձեմ, անօրէն քահանայի մը ձեռօք, հաղորդութեան թոյն խառնել տալով Օլիմպիադային խմցուց ու սպաննեց։

**Ս. Ներսէսի բարեկարգութիւնները.** — Երբոր Ներսէս Բիւզանդիոնէն Հայաստան դարձաւ՝ բոլոր իր նախորդներուն դրած կարգ. կանոնները նորոգեց։ Եկեղեցականներ ու աշխարհականներ գումարեց և ժողով կազմելով՝ կանոններ հաստատեց և բարեպաշտական գործեր ընելու յորդորեց։ Ամեն գաւառներու մէջ հիւանդանոցներ շինել տուաւ, ու աղքատ և բորոտ մարդիկ նոցա մէջ պատսպարեց. նոյնպէս հիւրատուններ հաստատեց, որպէս զի Ճամբորդ և պանդուխտ մարդիկ բնակին, և վանքեր՝ ուր որբեր ու ծերեր պատսպարին և կրօնաւորներն ուսում

տորմին։ Մերձաւոր խնամութիւններ վերցուց, նոյնպէս ընչից մուտքերու համար վարձուոր բալկաններ գործածելու հեթանոսական սովորութիւնը։

Տիգրանակերտի առումը. — Շապուհ հիւսիսային ազգերու դէմ պատերազմ աւարտելէն ետև՝ միտքը դրաւ վրէժ հանել Արշակէն որ հարկը դադրեցուցեր ու Հռոմայեցւոց միացեր էր։ Բայց Արշակ յաջողեցաւ օգնելով Շապուհին հաշտուիլ նորա հետ որ իր զօրքով Հռոմայեցւոց դէմ քալեց։ Երբ Տիգրանակերտ քաղաքը հասաւ, ներս մտնել ուզեց, բայց քաղաքացիք դուները գոցեցին, և պարսիկ դեսպանները վռընտեցին։ Ուստի Շապուհ քաղաքը պաշարեց։ Հայք մեծ ջարդ մը տուին Պարսից։ Այն ատեն Շապուհ իր ճամբան շարունակեց և Յունաց (Հռոմայեցւոց) դէմ պատերազմ ընելէն ետև՝ նորէն Տիգրանակերտ դարձաւ և յոյն գերիներու ձեռօք զայն առնելով՝ բնակիչներուն մէկ մասը ջարդեց և մէկ մասը գերի տարաւ Պարսկաստան։

Արշակաւան. — Արշակ ոչ միայն իր խաբէական ընթացքով օտար ազգերը Հայաստանի դէմ թշնամացուց այլ և իր ազգաւեր գործերով բոլոր նախարարներն իրեն դէմ զայրացուց, մանաւանդ երբ աւան մը շինել տուաւ, Արշակաւան անունով, և հրաման հանեց թէ այն տեղ գացող բնակողը՝ ինչ չարիք որ գործած ըլնի, պատիժէ ազատ պիտի մնայ։ Այս հրամա-

Հայրապետը յանձն կ'առնու և կ'յաջողի, միայն Մերուժան Արծրունին և Վարդան Մամիկոնեան անհաշտ կ'մնան և Շապուհին քովը կ'երթան։

**Ս. Ներսէսի աքսորը.** — Այսպէս Ս. Ներսէս խաղաղութիւն հաստատեց և այս հաշտութեան պայմանն էր որ Արշակ արդարութեամբ վարուի նախարարներուն հետ, և սոքա հաւատարմութեամբ ծառայեն։ Եւ որովհետև Թէոդոս զօրապետը Հայաստան կ'արշաւէր որ Արշակէն վրէժ լուծէ, Ս. Ներսէս նորա մօտ գնաց և աղաչեց որ ետ կենայ այս արշաւանքէն, Հայոց վնաս չհասցընէ, վասն զի Արշակ պատրաստ էր հարկերը վճարել կայսեր և իր որդին Պապն ու նախարարներուն որդիքը պատանդ տալ։ Թէոդոս զօրավարը Ներսէսի խնդիրը չմերժեց, բոլոր պատանդներն առաւ, և առաջարկեց սուրբ Հայրապետին որ ինքն ալ կայսեր ներկայանայ և նորա սիրտն առնու։ Ս. Ներսէս նամակ մ'ալ տարաւ Արշակին կողմէն, որով իր ընթացքն արդարացընել կ'ուզէր։ Բայց կայսրն ոչ նամակը կարդաց և ոչ Ս. Ներսէսը տեսաւ, այլ հրամայեց որ զանի աքսորեն և պատանդներն ալ սպաննեն։

Այն ատեն Կ. Պօլսոյ եպիսկոպոսն էր Մակեդոն, որ կայսեր շատ սիրելի էր։ Արիոսեան քանի մ'աղանդաւորներ գացին Ս. Ներսէսի ըսին որ եթէ իրենց աղանդն ընդունի Մակեդոն կարող է զինք ազատել։ Ս. Ներսէս այս պայմանը չընդունեց և աքսոր գնաց։ Իսկ Պապ և միւս պատանդներն իրենց կեանքն ազատելու

համար հաւանեցան՝ և Մակեդոնի բարեխօսութեամբ՝ կայսրն ետ տուաւ իրենց դէմ արձակած մահուան վճիռը։ Իսկ Ս. Ներսէսն աքսոր տանող նաւն ալեկոծութեան հանդիպելով՝ անապատ կղզի մ'ընկաւ խորտակեցաւ։ Ս. Ներսէս ութ ամիս մնաց այն ամայի վայրը՝ և ծառերու արմատներ ու ծովեզրն ընկած ձկներ ուտելով կ'ապրէր։

**Արշակ իր ուխտը կը դրժէ.** — Մինչդեռ Ս. Ներսէս Հայաստանի և Արշակին համար կ'աշխատէր ու ամայի կղզիի մը մէջ կ'տառապէր, Հայոց անօրէն թագաւորն սկսեր էր նորէն իր անզգամութիւնները։ Չէր մոռցած իր ոխն Արշակաւանը կործանողներուն դէմ և շատ նախարարներ կոտորեց, մանաւանդ Կամսարականաց ցեղը բոլորովին ջնջեց։ Միայն Արշաւրի որդին Սպանդարատ ազատեցաւ և Յունաստան փախաւ։ Այս չարիքը տեսնելով՝ Բագրևանդայ եպիսկոպոսը՝ Խադ, որ Մեծին Ներսէսի կողմէ վերակացու դրուեր էր, սաստիկ յանդիմանեց թագաւորը, որ անմիջապէս հրաման տուաւ բռնել անվեհեր եպիսկոպոսը քարկոծել։ Բայց Խադին ազգականներն՝ (Ապահունի իշխաններ) որ կորովի ու քաջ մարդիկ էին, եպիսկոպոսն ազատելով՝ իրենց գաւառը տարին։

**Արշակին մահը.** — Նախարարները զզուեր էին Արշակին ընթացքէն և նորա բռնութենէ ազատելու համար՝ Պարսից Շապուհ թագաւորին գացին որ դարման մը գտնեն։ Շապուհ սիրով

ի՛ընդունի այս փախստականները, և գունդ մը զօրք տալով Ալանոզան Պահլաւ զօրավարին, որ Արշակին ազգակից էր, սորա դէմ կ'ուղարկէ նախարարներուն հետ։ Հայոց Թագաւորին ճարը հատած՝ կ'աղաչէ Պարսից զօրավարն որ իրեն ժամանակ տայ Յունաց երկիրը փախչելու, բայց չյաջողիր և կ'ստիպուի անձնատուր լինել և Պարսից դուռը դնալ։ Շապուհ՝ Արշակն իր քովը պահեց և հրամայեց որ Փառանձեմ Թագուհին և նախարարներուն կիներն ալ Պարսկաստան տանին։

Նախարարներն այս հրամանն իմանալով սաստիկ զայրացան. Հայաստան դառնալով պարսից գունդին վրայ յարձակեցան, և զայն վանելէն ետև՝ իրենց ընտանիքն առին՝ ոմանք ամուր տեղեր ապաւէն փնտռեցին, այլք Յունաց երկիրը խոյս տուին։ Փառանձեմ Թագուհին ալ Արտագերս բերդը քաշուեցաւ և լուր տուաւ իր Պապ որդւոյն, որ Կ. Պոլիս էր, շուտով օգնութեան հասնիլ։ Իրաւ է որ արդէն մի շատ նախարարներ Պարսից կրօնն ընդունէր էին որ մեծ փառք ու պատիւ ստանան։ Սոցա մէջ էին և Մերուժան Արծրունին ու Վահան Մամիկոնեան։ Շապուհ իր ոխը Արշակէն առաւ և շղթայակապ Անյուշ բերդն ուղարկեց։ Մեծ բանակ մ'ալ տուաւ ուրացող նախարարներուն, որ եկան Արտագերէց բերդը պաշարեցին, որ թէև անառիկ էր, բայց բերդակալները կամովին անձնատուր եղան։ Պարսիկ զօրքը բերդը մտան և Փառանձեմին հետ շատ դերի ու գանձ Պարսկաստան տարին և զայնս սպանեցին։ Արշակ լսելով այս ամեն ա-

զէնքը՝ որոց ինքն էր պատճառ, ինքզինքը սպաննեց։

Մերուժան Հայաստան կ'արշաւէ. — Երբ Արշակ մեռաւ (382) Շապուհ Մերուժանը շատ զօրքով Հայաստան արձակեց։ Արդէն իր քոյրը, Որմիզդուխտն նորա հետ կարգեր էր, և Պարսկաստանի մէջ շատ եկեղեցիներ պարգևեր էր։ Այս անգամ խոստացաւ բոլոր Հայաստանի թագաւոր կարգել զինք եթէ յաջողի նախարարները զսպել և Հայերն արևապաշտ ընել։

Մերուժան Հայաստան գալով՝ բոլոր ձիգը թափեց որ քրիստոնէութիւնը ջնջէ, և այլ և այլ միջոցներ գործածեց։ Եպիսկոպոսներն ու քահանաները Պարսկաստան աքսորեց, շատ գիրքեր այրեց, արգիլեց յունարէն լեզուին ուսումն և պատուիրեց որ անոնք պարսկերէն սորվին, և Յունաց հետ հաղորդակցութիւնը դադրեցընէ։ Նոյնպէս հրաման ըրեց փախստական նախարարներուն որ Հայաստան դառնան և նոցա կիներն իբրև պատանդ պահեց բերդերու մէջ։

Պապ. — Երբոր Թէոդոս Բիւզանդիոնի գահն ելաւ, աքսորեալներու հետ Ս. Ներսէսն ալ ազատարէն ետ դարձուց և իր քովը պահեց։ Հայրենասէր հայրապետը Հայաստանի մէջ պատահած չարիքն ու սոսկալի անիշխանութիւնն իմանալով՝ աղաչեց Թէոդոս կայսրն որ Պապը թագաւորեցընելու համար իրեն օգնէ։ Կայսրը նորա աղաչանքը լսեց, և Տերենտիանոս զօրավարը

զօրքով Հայաստան ուղարկեց։ Անմիջապէս Պապին հետ բոլոր տարագիր նախարարները, և Սպարապետ Կամսարականը Մեծն Ներսէսի միասին, հասան Հայաստան, ուր ամբարիշտ Մերուժան կ'աւրէր, և զանի վռնտեցին։ Սակայն այս անգամ ուրացողն իր կատղութիւնը նախարարներուն կանանց վրայ թափեց և խոյս տալու ատեն հրաման ղրկեց բերդապահներուն որ զանոնք կախեն և գիշատիչ թռչուններուն կեր թողուն։

Ձիրաւի ճակատամարտը։ — Շապուհ լսելով որ Պապ՝ Թէոդոս կայսեր օգնութեամբ Հայաստան մտեր է, Պարսից բանակին զօրապետ կարգեց Մերուժանն ու Հայաստան ուղարկեց։ Թէոդոս ալ Պապին օգնական բանակը զօրացուց և այսպէս երկու կողմէն եկան Ձիրաւ դաշտին վրայ ճակատեցան։ Ս. Ներսէս Նպատ լեռն ելաւ և մինչև պատերազմին վերջն աղօթք ըրաւ որ Աստուած Հայաստանը պահպանէ։ Առաւօտուն պատերազմը կ'սկսի, արևուն ճառագայթները հայ զինուորներուն աչքին զարնելուն՝ չէին կարող լաւ նշան առնել։ Յանկարծ ամպ մ'եկաւ և արևը ծածկեց, և սաստիկ հով մը սկսաւ փչել Պարսից բանակին դէմ, այնպէս որ մեծ նեղութիւն կ'պատճառէր թշնամւոյն։ Այս բարեգուշակ նշաններէ սիրտ առնելով՝ հայ և յոյն զինուորներն աւելի արիութեամբ կ'պատերազմին. Սպարապետն թշնամեաց բանակին կեդրոնը Ղենկայ Շէրգէզ թագաւորը տեսնելով որ մեծ կոտորած կ'ընէր, կայծակի պէս նորա վրայ կը

յարձակի եւ կ'սպաննէ . իսկ Մուշեղ Մամիկոնեան Աղուանից (Ուռնայր) իշխանը կ'վիրաւորէ ։ Վերջապէս Պարսից բանակը սոսկալի ջարդ մը կրելէն ետեւ՝ կ'ցրուին եւ կ'փախչին ։ Սակայն Մերուժանին ձին վիրաւորուած ըլլալուն՝ չկրնար շուտով խոյս տալ եւ Սմբատ սպարապետն ետեւէն հասնելով՝ զանի կ'բռնէ Կոգայովիտի Ճամբուտին մօտ ։ Սմբատ չուզեց զանի Մեծն Ներսէսի տանիլ՝ մտածելով որ թերեւս նորա ներողամտութեամբ ազատի Մերուժան , այլ նոյն տեղուանքը վրանաբնակ մարդիկ տեսաւ՝ որ երկաթէ շամփուրով միս կ'խորովէին , առաւ հրաշէկ շամփուրը , բոլորեց պսակի ձեւով եւ Մերուժանին գլուխը դնելով՝ ըսաւ . «Կ'պսակեմ քեզ , Մերուժան , քանի որ Հայոց թագին աչք ունէիր . եւ այս ընելով իմ հայրենական պաշտօնս կ'կատարեմ» ։

**Պապին անկարգ կեանքն ու վախճանը** ։ — Արշակին արժանի որդին եղաւ Պապ , որ իր անօրէն ու ազգաւեր գործերովը մի քանի արշակունի վատ թագաւորներուն շարքին մէջ ամենէն նշանաւոր տեղը կ'բռնէ ։ Երբոր իր հօրը գահն ելաւ Պապ , իր չար ոգին ծածկեց , կեղծաւորութեամբ քիչ մ'ատեն վարուեցաւ , խոստանալով Ս. Ներսէս հայրապետին արդարութեամբ կառավարել Հայաստանն , որ արդէն քայքայուելու սկսեր էր ։ Ս. Ներսէս հաւտաց Պապի խոստումներուն , նախարարները ժողվեց եւ յորդորեց որ թագաւորին հետ կապուին եւ հաւատարմութեամբ հայրենեաց ծառայեն ։ Պապ իր հօրը գրաւած կա-

լուածները նախարարներուն դարձուց, և Սպանդարատ Կամսարականը վարձատրեց։ Այսպէս ժամանակ մը խաղաղութիւնը տիրեց Հայաստանի մէջ, բայց Պապ ամեն ուխտ ու խոստում շուտով մոռցաւ և ծածուկ անկարգ կեանք մը վարելու սկսաւ, այնպէս որ Ս. Ներսէս զինք ստէպ կ՚յանդիմանէր։ Անզգամ թագաւորը նորա խրատներէն ձանձրացած՝ գաղտնի թոյն խմցուց նմա և այնուհետև արձակ համարձակ իր մոլութեանց մէջ ընկաւ։ Շահակ անուն մարդը կաթողիկոս ըրաւ առանց Կեսարիոյ եպիսկոպոսէն ձեռնադրել տալու, և երբ լսեց թէ Թէոդոս կայսեր տէրութեան մէջ խռովութիւն ծագեր է, յարմար առիթ սեպեց գլուխ քաշել, առանց իր ոյժը չափելու։ Նախ Տերենտիոս զօրավարին զօրքը Հայաստանէն հալածեց և ապա պատերազմի մեծ պատրաստութիւն տեսաւ։ Սակայն Տերենտ նոր զօրք ստանալով Թէոդոս կայսեր կողմէ՝ վերստին Հայաստան դարձաւ, և յարձակելով Հայոց բանակին վրայ՝ որու կը հրամայէր Գնէլ Անձևացեաց նախարարը՝ մեծ ջարդ տուաւ, և Պապն ալ գերի բռնեց։ Պապ աղաչեց որ Տերենտ զինք չսպաննէ այլ կայսեր ներկայացընէ։ Ուստի շղթայակապ եղաւ նա Թէոդոս կայսեր առջեն, որ հրամայեց սակրով գլխատել Հայոց թագաւորը։



## ԳԼՈՒԽ ԽԵ.

Վարազդատ — Վերջին Արշակունեաց իշխանութեան խորտակումը։

(391—438)

*Վարազդատ.* — Թէոդոս կայսրը Պապին տեղ արշակունի երիտասարդ մը՝ *Վարազդատ* անուն, Հայոց վրայ թագաւոր կարգեց։ Այս Վարազդատ մարմնեղ, սրտոտ էր ու նշանաւոր նետաձիգ։ Շապուհին երեսէն փախչող նախարարներուն հետ Բիւզանդիոն գացած և անդ շատ քաջութեան գործեր ըրած էր։

Խորենացին կ'պատմէ թէ՝ երբ Վարազդատ Հայաստան կ'երթար՝ թագաւորութեան աթոռը նստելու՝ *Դարանաղեաց* գաւառին մէջ աւազակներու հանդիպելով նոցա յաղթեց և Եփրատ գետէն անդին վանեց։ Աւազակները գետին կամուրջը կ'կտրեն ու ջուրը կ'նետեն։ Վարազդատ վրայ կ'հասնի և այնպէս ուժով կ'ցատկէ որ քսան երկու կանգուն լայն գետէն անդին կ'անցնի։ Աւազակները կ'զարհուրին և իրենց զէնքը թողլով Վարազդատին անձնատուր կ'լինին։

*Վարազդատ Հայքէն կ'աքսորուի.* — Վարազդատ 'ի բնէ խրոխտ և ամբարտաւան լինելով չէր ուզեր ուրիշին լուծը կրել և հետեւապէս

յոյն զօրապետներուն հրամանին տակը գանուիլ։ Ուստի միտքը դրաւ Պարսից Շապուհ Թագաւորին հետ դաշնակցիլ և Թէոդոս կայսրէն ապստամբիլ։ Այս նպատակաւ խնդրեց որ Պարսից Թագաւորն իր մէկ դուստրն իրեն կնութեան տայ։ Այս բանս իմանալով Թէոդոս՝ հրաման ուղարկեց Վարազդատին որ Կ. Պօլիս դառնայ։ Վարազդատ յուսաց որ ինքզինքը կրնայ արդարացընել և ելաւ կայսեր գնաց. բայց Թէոդոս չուզեց տեսնել զանի և անմիջապէս Թուլէ կղզին աքսորել տուաւ։

Արշակ Գ. Վաղարշակ Բ. — Պապին երկու որդիքը՝ Արշակ Գ և Վաղարշակ Բ պատանդ կ'մնային Բիւզանդիոն։ Թէոդոս կայսրը տեսնելով որ դժուարին է զսպել Հայերն որ միշտ կ'ապստամբէին, և երբեմն Պարսից հետ կ'միանային իրեն դէմ, մտածեց Հայաստանի Թագաւորութիւնն երկու մաս բաժնել, որպէս զի աւելի դիւրաւ տիրէ և քիչ քիչ մեր հայրենիքը կործանէ։ Այս նպատակաւ Պապին երկու որդիքը Թագաւոր կարգեց. Արշակն Հայաստանի արևելեան մասին մէջ բնակեցուց և նորա աթոռը Դուին քաղաքը (Արարատ) հաստատեց. իսկ Վաղարշակն արևմտեան մասին մէջ, և նորա աթոռն Երիզա (Եկեղիք) քաղաքը դրաւ։ Հայաստան, որ արդէն ներքին և արտաքին կռիւներով սաստիկ տկարացեր էր, այս բաժանմամբ իր կործանման դիմեց։ Սակայն Շապուհ Բ, Պարսից Թագաւորն այս կարգադրութենէ գոհ չէր և միայն Թէոդոսի զօրութենէ վախ-

նալուն՝ յարմար առթի մը կ'սպասէր որ Հայաստանէն կտոր մ'ալ ինք գրաւէ։ Գրեթէ նոյն միջոցին հռոմէական պետութիւնն ալ երկու մաս կ'բաժնուէր, Մեծն Թէոդոսի մահուանէ ետք, արեւմտեան և արեւելեան կայսրութիւն, որու վրայ տիրեց Արկադէոս և որ քիչ քիչ յունական տէրութիւն մ'եղաւ։

Վաղարշակ՝ Հայաստանի արեւմտեան մասին թագաւորը՝ հազիւ թէ տարի մը թագաւորեց ու մեռաւ։ Այս պարագաներէն օգուտ քաղելով՝ Շապուհ՝ Արկադէոսի հետ հաշտութիւն ըրաւ, և պահանջեց որ Հայաստանի արեւելեան մասին վրայ ինք իշխէ և իր կողմէ թագաւոր դնէ։ Երբ Արկադէոս այս պայմանն ընդունեց, Արշակ աւելի լաւ սեպեց Դուին քաղքէն ելնել և իր աթոռը Երիզա փոխադրել, յուսալով որ քրիստոնեայ տէրութեան մը պաշտպանութեան տակ աւելի հանգիստ կրնայ թագաւորել։ Շատ նախարարներ Արշակին հետեւեցան, իրենց կալուածները թողլով։

Խոսրով Գ. — Շապուհ Հայերը շահելու համար Արարատայ մէջ Խոսրով անուն արշակունի մարդ մը թագաւոր դրաւ և թուղթ գրեց Արշակայ հետ գացող նախարարներուն որ իրենց տեղը դառնան, սպառնալով որ իրենց ինչքը պիտի գրաւէ, եթէ մերժեն։ Շատերն այս հրաւէրն ընդունեցին և իրենց երկիրները վերադարձան, վասն զի Արշակէն դժգոհեր էին, ինչպէս նաև Սահակ Բագրատունէն. իսկ ոմանք, Սաքէն Խորխոռունի, Վահան Առաւեղեան և Աշխա-

Չալուր Դժնդակեան, թէև Յունաց մասին մէջ կալուած ունէին, գաղտնի փախան և Սմբատին ծանէն գացին, իրենց հետ առնլով և Արշակին գանձերն, զոր Խոսրովին տարին։ Արշակ պահանջեց գանձերն և երբ Խոսրով մերժեց տալու, երկու համազգի թագաւորներու մէջ կռուն սկսաւ։

Երևէլի ճակատամարտը. — Այս պատերազմին մէջ՝ ոչ Շապուհ Խոսրովին օգնեց և ոչ Արկադէոս՝ Արշակին, այլ թողուցին կամաւ որ Հայերն զիրար կոտորեն և կործանին։ Երկու հայ թագաւորներ օգնութենէ անյոյս՝ զօրք կը ժողվեն և իրարու կ՚հանդիպին Վանանդ գաւառին, Երևէլ դաշտին մէջ։ Արիւնահեղ կ՚ըլլայ պատերազմը։ Արշակին բանակը կ՚յաղթուի, իր սպարապետը Դարա Սիւնին կ՚մեռնի և ինք թագաւորը վիրաւոր մը հազիւ կարող կ՚ըլլայ խոյս տալ և ինքզինք Եկեղեաց գաւառը նետել, իր զօրապետ՝ Գազաւոն Կամսարականին շնորհիւ, որ նորա փախուստը դիւրացուց՝ երկար ատեն Խոսրովի զօրաց սպարապետ՝ Սահակ Բագրատունիին դէմ դնելով։ Արշակ հիւանդանալով քիչ ատենէն մեռաւ (399)։

Խոսրով Գ առանձին կ՚իշխէ. — Երբ Արշակ մեռաւ, Յունաց Արկադէոս կայսրն արևմտեան Հայաստանի վրայ յատուկ հայ թագաւոր չդրաւ, այլ յոյն կոմսերու ձեռօք կառավարեց։ Այս բանիս վրայ նախարարները նեղացան, և ուզեցին Արարատի թագաւորին քով երթալ։ Ուս-

տի Թուղթ գրեցին Խոսրովին ; և Գաղաւոն կամ-սարականին ձեւօք իրենց փափաքը յայտնեցին , պայման դնելով որ անցեալ կռիւները մոռցուին , Թագաւորն անյիշաչար լինի , իրենց հայրենի կալուածներն ետ տայ և յունաց բաժնին մէջ գըտնուող նախարարներուն իրաւունքը պաշտպանէ ։ Արտաշատի Թագաւորն այս պայմաններն ընդունեց և հետևապէս Գաղաւոն՝ իր հետն առնլով բոլոր նախարարները՝ նորա կողմն անցաւ ։ Այն ատեն Խոսրով Յունաց մասին հարկն ալ առլու խոստանալով՝ բոլոր Հայաստանն իր իշխանութեան տակը միացուց , Արկադ կայսեր հաւանութեամբը ։

Խոսրով Երկրորդ [illegible] ՆՂ. — Նոյն միջոցին Հայոց Ասպուրակէս կաթողիկոսը մեռաւ , և Խոսրով՝ Ս. Ներսէսի որդին , Սահակ Պարթևը նորա տեղը դրաւ ։ Երբոր Շապուհ իմացաւ որ Խոսրով Արկադ կայսեր հետ բարեկամութեան դաշն դրեր և առանց իր հաւանութեան Ս. Սահակը կաթողիկոսական աթոռը հաներ է , կակած առաւ , քանի մը քսու նախարարներու դրդմամբ՝ որպէս թէ Հայերն ապստամբելու միտք ունին , և դեսպան ղրկեց Հայ Թագաւորէն բացատրութիւն խնդրելու և յանդիմանելու ։ Խոսրով՝ իր դժուարին և փափուկ վիճակը չկշռելով Շապուհին դեսպաններն անարգանօք ետ դարձուց , և Արկադ կայսրէն օգնութիւն խնդրեց բայց չստացաւ ։ Իսկ Շապուհ լսելով որ Խոսրով իր հրամանն ոտքի տակ առեր է , իսկոյն իր Արտաշիր որդին Հայաստան ուղարկեց որպէս

ցի տուներուն հետ հաշտ մնալով քիչ մը խաղաղութիւն վայելեց և կարող եղաւ ուսմանց մէջ զարգանալ ու յառաջադիմել, սակայն իր արքայական աթոռն այնքան քայքայեր էր որ չէ թէ միկ այլ շատ Վռամշապուհներու կարօտ էր որպէս զի սօտալուտ կործանումէ ազատ մնար։

Վռամշապուհին առաջին հոգն եղաւ Նախարարներուն իրարու կապել և ամենուն հաւատարմութիւնն ապահովել. Նոյնպէս ջանաց Պարսից Արտաշիր թագաւորին յաջորդող Վռամ թագաւորին հետ բարեկամութիւնն հաստատ պահել և նորա հրամանին համեմատ վարուիլ. Այնպէս որ Վռամ ոչ միայն Խոսրովը Անյուշ բերդէն հանելով իր որդունիքը պահեց ու պատուեց, այլ և Վռամշապուհին յանձնեց որ Միջագետաց յոյն և պարսիկ զօրաց մէջ ծագած կռիւը դադրեցունէ, ինչպէս որ հայ թագաւորն իր իմաստութեամբ ամեն բան խաղաղեցուց, և կերպով մ՚երկու հին թշնամին ա-րաւթեանց մէջ իրաւարար եղաւ։

Երբոր խաղաղութիւնն ամեն տեղ տիրեց, Վռամշապուհ սկսաւ Հայաստանի ժողովուրդը կրթելու միջոցները մտածել, քաջ գիտնալով որ հայքենեաց կրած բոլոր աղէտքն ու տառապանքը տգիտութեան ու նախապաշարումներու արդիւնք էին։ Եւ արդարև Հայաստանի բարոյական և մտաւորական կենաց վերանորոգիչն եղաւ Վռամշապուհ և նոյնպէս օգնեց Ս. Սահակին և Մեսրոպին պէս վսեմախոհ, արթուն և իմաստուն վարդապետներուն՝ որպէս զի ազգային վերաշինութեան գործը գլուխ հանեն։

Ս. Սահակ և Մեսրոպ. Հայկական նշանագրեր. — Վռամշապուհ Պարսից թագաւորին կիսաթեւանքը ներքեն կաթողիկոսութեան աթոռը հանեց Սահակ Պարթեւ, որ իրեն մեծ խորհուրդներուն արժանի աջակից մը գտեր էր, այս է Ս. Մեսրոպ։ Սահակ, Մեծն Ներսեսի որդին, իր կրթութիւնն Բիւզանդիոն առած էր և հմուտ էր Ս. Գրոց ու Հելլենական դպրութեան։ Իսկ Մեսրոպ՝ Տարօնի Հացեկաց գիւղը ծնած էր, արքունիքէն գրագրի պաշտօն կ՚վարէր, վանն մը շատ քաջ գիտէր յունարէն, ասորերէն և պարսկերէն լեզուները։ Ետքը սուրբ այս աշխատնքը փափաքելէն եւս՝ կ՚հրամայէր վարդապետ կ՚ըլլար ու Գողթն ու Սիւնեաց գաւառները գնալով՝ կը ջանայ ժողովուրդը կրթել։ Աշակերտներ կը ժողվէ և Ս. Գրոց մէջ վարժեցնել հոն կ՚առնի։ Բայց որովհետև Ս. Գիրքն ասորի ու յոյն լեզուով գրուած էր և հայերէն տառեր չկային որպէս զի թարգմանութիւն, Մեսրոպ շատ դժուարութիւններ կ՚քաշէր միկնելու համար և սասանիկ կ՚որոնէր։ Ուստի միտքը կ՚դնէ հայերէն գրեր գտնել։ Վռամշապուհ կ՚երթայ և Ս. Սահակին հաղորդելով իր միտքը, կ՚առնէ որ նա և նոյն խորհուրդն ու փափաքն ունի։ Ուստի Ս. Հայրապետն եկեղեցականներ և աշխարհականներ ՚ի ժողով կ՚գումարէ, ուր ներկայ կ՚գտնուի և Վռամշապուհ թագաւորն, ու այդ գաշէն խորհուրդը նոյն կ՚յայտնէ։ Այն ատեն թագաւորը կ՚պատմէ թէ Միջագետաց գտնուած ատենը՝ Հաբէլ անուն քահանայ մ՚իրեն ըսեր է թէ ասորի Դանիէլ եպիսկոպոսին քով հայերէն

նշանագրեր կ'գտնուին ։ Ժողովին խնդրանօք՝ Թագաւորը Վահրիճ անուն իշխանը կ'ուղարկէ Միջագետք, ուսկից Հաբէլ քահանան առնլով Վահրիճ Դանիէլը գտնելու կ'երթայ ։ Իրօք Դանիէլ կ'տայ նոցա քսան երկու Հայ նշանագրերն, որ փիւնիկեան լեզուի այբուբենէ քաղուած էին, և Վահրիճ Հայաստան կ'դառնայ ։ Անմիջապէս Ս. Սահակ և Ս. Մեսրոպ աշակերտներ կ'ժողվեն որ նոյն գրերը սորվեցնեն. բայց տեսնելով որ Հայերէն լեզուի հնչումներուն չեն յարմարիր, Մեսրոպ կ'ելնէ անձամբ կ'երթայ Դանիէլի մօտ, քանի մ'աշակերտներ միասին առնլով ։ Սակայն անօգուտ տեղը կ'աշխատի, չյաջողիր ։ Եդեսիա կ'անցնի, ուր Պղատոն անուն ճարտարամիտ դիտուն մը կ'գտնուէր, որպէս զի նորա խորհուրդն առնու ։ Մեսրոպի ջանքը նորէն ապարդիւն կ'մնայ, Պղատոնէն լոյս մը չկրնար ստանալ, և ուրիշ մի քանի տեղ երթալէն ետև՝ կ'դառնայ Հայրենիքն, յոյսը բոլորովին Աստուծոյ օգնութեան վրայ դնելով ։ Եւ իրօք՝ կ'պատմուի թէ՝ Մեսրոպ տեսիլքի մը մէջ տեսաւ ուզած տառերն, և ապա գրի առնելով Հռոփանոս անուն դպրին հետ նոցա ձևերն որոշեց և այսպէս Հայերէն նշանագրերը գըտնուեցան ։ Ս. Մեսրոպ այս նոր գիրերով Սողոմոնի Առակաց գիրքն առաջին անգամ թարգմանեց ։

Այնուհետև Թագաւորն հրամայեց Ս. Սահակին ու Մեսրոպին խորհրդով որ վարժարաններ հաստատեն ամեն տեղ և Հայ մանկտին Հայերէն նորագիւտ գիրերու վարժեցընեն, նոյնպէս

յունարէն և ասորերէն գրուած գիրքերը Հայերէնի թարգմանեն։ Միայն յոյները չթողուցին որ իրենց մասին մէջ Ս. Մեսրոպ վարժատուններ բանայ, վասն զի կ՚ուզէին որ Հայերը միայն յունարէն լեզուն ունին։ Ս. Մեսրոպ Վրաց ու Աղուանից համար ալ գիրեր հնարեց։ Քիչ ատենի մէջ՝ Հայաստան ուսման ու գրականութեան մէջ ծաղկելով՝ իր ոսկեդարը ունեցաւ՝ շնորհիւ Ս. Սահակին ու Մեսրոպին՝ որ իրենց աշակերտներով Հայաստանի բարոյական ու մտաւոր յառաջադիմութեան անդուլ աշխատեցան։

Խոսրով Գ. Շապուհ պարսիկ. — Երբոր Վռամշապուհ մեռաւ՝ իր որդին անչափահաս ըլլալուն՝ Ս. Սահակ Պարթև Յազկերտ թագաւորին գնաց և աղաչեց որ կալանաւոր Խոսրովը Հայոց վրայ թագաւոր կարգէ։ Յազկերտ Ս. Սահակին խնդիրը կատարեց, բայց Խոսրով հազիւ թէ տարի մը թագաւորելէն ետև՝ մեռաւ, և վերստին սկսան անիշխանութիւն և խառնակութիւն (421)։

Այն ատեն Յազկերտ իր որդին Շապուհը Հայոց վրայ թագաւոր կարգեց՝ փոխանակ արշակունի իշխանի մը, որպէս զի կարող լինի Հայերն արևապաշտութեան որսալ։ Երբ Նախարարներն այս բանս իմացան, ուզեցին Շապուհի դէմ դնել, բայց որովհետև Համազասպ Մամիկոնեան սպարապետը մեռած էր և ազդու առաջնորդ մը չունէին՝ Յազկերտի որդին Հայաստան մտաւ անարգել և սկսաւ պարսկական հանդէսներ ու տօներ կատարել որպէս զի քիչ քիչ

Պարսից աղանդը մտցընէ Հայոց մէջ: Սակայն նախարարները դժգոհ էին և Շապուհին հետ արհամարհանքով կ՚վարուէին:

Շապուհ Պարսկաստան կ՚դառնայ. — Նախարարներն ամեն պարագայի մէջ Շապուհը վիրաւորելու կ՚ջանային: Օր մը Շապուհ նոցա հետ որսի կ՚երթայ: Հեռուէն վայրի էշերու երամակ մը կ՚տեսնեն և կ՚սկսին նորա ետևէն իյնալ: Վայրի կենդանիներն իրենց ոտքերը կը քաշուին քարուտ ու ժայռուտ տեղերէ ելնելով: Նախարարները կ՚վազեն անվեհեր ժայռերէն վեր, երբ Աշոտ Մոկացի քաջ նախարարն՝ դիտելով որ Շապուհ վախէն մէկդի կ՚քաշուի, նախատանօք կ՚ըսէ թագաւորին. «Դու Պարսից աստուածորդի, ինչու համար կ՚վախնաս, եթէ սիրտ ունիս՝ դու ալ մեզի հետ արշաւէ»: Շապուհ կ՚պատասխանէ. «Սատանաները միայն այդ քարոտ տեղերէն վեր կրնան ելնել և ոչ թէ մարդիկ»: Այսպէս Շապուհ նախարարները սատանայ անուանելուն՝ Աշոտ կ՚բարկանայ և յարմար առթի մը կ՚սպասէ որ ոխն առնու: Ուստի երբ ուրիշ անգամ կինձ որսալու կ՚ելնեն՝ եղէգնուտին կրակ կ՚տան: Շապուհ չկրնալով անկից դուրս ելնել՝ կրակը չորս դին պատեց: Այն ատեն Աշոտ Շապուհին կ՚մօտենայ՝ և ծաղր ընելով կ՚ըսէ. «Ահա քու հայրդ ու աստուածդ, ինչու համար կ՚վախնաս»: Շապուհ կ՚պատասխանէ. «Կատակ ընելու ժամանակ չէ. ազատէ զիս այս դժոխքէն»: Աշոտ ըսաւ. «Չափդ գիտցիր և մի հպարտանար. եթէ դու մոկացիները

[illegible] օրգի կ'անուանես, ես ալ Պարսիկները կնամարդի ու վատ կ'կոչեմ»։ Այս ըսելով՝ Աշոտ կրակէն անցաւ և Շապուհէն ազատեց։

Շապուհ տեսնելով որ նախարարներն իրեն հետ համաձայն չեն և իր հայրն ալ հիւանդ է, Տիզբոն կ'դառնայ։ Ճամբայ ելնելու առեն կը հրամայէ իր տեղակալին որ Հայոց նախարարները բռնէ և իր ետևէն Պարսկաստան ուղարկէ։ Սակայն Շապուհ իր փափաքին չհասնիր. իր հօրը մահուանէ ետք՝ ինքն ալ կ'սպաննուի և Վռամ Ե Պարսից գահը կ'ելնէ։

Երբոր նախարարները Շապուհին անիրաւ հրամանը կ'լսեն, Ներսէս Ճճնրակոյն իշխանն զօրապետ կարգելով՝ պարսիկ զօրաց դէմ կ'յարձակին և սաստիկ ջարդ մը տալով Հայաստանէն կ'վռնտեն։ Սակայն վերջէն Վռամին բարկութենէ վախնալով՝ իրենց ամուր բերդերը քաշուեցան և ժողովուրդն անպաշտպան թողուցին։

Իրօք՝ Վռամ վրէժը լուծելու համար զօրք ղրկեց Հայաստան և ամեն կողմն աւերեց։ Ս. Սահակ այս աղէտից դարման չկրնալով տանիլ մտածեց որ Յունաց մասն երթայ բնակի և այն կողմի Հայերը Ս. Մեսրոպին հետ կրթէ։ Բայց երբոր այն տեղ լաւ ընդունելութիւն չգտաւ Յունաց կողմէ, յաջողեցաւ Ս. Մեսրոպը կայսեր ուղարկելով՝ հրովարտակ մը բերել տալ, որով կայսրը կ'հրամայէր իր կուսակալներուն որ թոյլ տան Ս. Սահակին դպրոցներ բանալու և հայերէն ուսումը տարածելու։

Արտաշիր Դ կամ Արտաշէս ։ — Թէոդոսէն Հայաստան

տան մնայէր ու անպաշտպան՝ պատերազմի դաշտ մը դարձեր էր, մանաւանդ քանի որ նախարարներն իրենց անառիկ բերդերուն մէջ ամրացած ատեն ատեն Պարսից դէմ կ՚յարձակէին, Վռամ տեսաւ որ պիտի չկրնայ բոլորովին տիրել մեր Հայրենեաց և ոչ սովորական հարկերը հաւաքել տալ։ Ուստի մարդ ղրկեց Սմբատ Բագրատունիին և հաշտութիւն առաջարկեց։ Այն ատեն նախարարները Ս. Սահակին դիմեցին որպէս զի նախ իրենց մէջ միութիւն հաստատէ և Պարսից դրան հետ խաղաղութիւն խօսի։ Ս. Սահակ նորէն Արտաշատ դարձաւ, բոլոր նախարարները գումարեց և Սմբատին հետ իր թոռը՝ Վարդան սպարապետը՝ Տիզբոն ուղարկեց որ Պարսից թագաւորին հետ հաշտութեան պայմաններուն վրայ խօսին։ Ի վերջէ Վռամ յանձն առաւ՝ Վռամշապուհին 18 տարեկան որդին Արտաշէսը Հայոց թագաւոր դնել և անունն ալ փոխելով՝ Արտաշիր անուանեց։

Այս խաղաղութեան վրայ Հայաստան նորէն հանգիստ առաւ. Ս. Մեսրոպ Յունաց մասին այլ և այլ գաւառներուն մէջ իր աշակերտներէն ուսուցիչներ թողլով Ս. Սահակին մօտ դարձաւ, և նորա հետ դարձեալ Հայաստանը ծաղկեցընելու ձեռք զարկաւ։ Մի շատ աշակերտներ Բիւզանդիոն, Աղեքսանդրիա, Աթենք, Եդեսիա ուղարկեցին որպէս զի իրենց ուսմունքը կատարելագործեն և գան մեր Հայրենիքը լուսաւորեն։

Բայց դժբաղդաբար այս խաղաղութիւնը երկար չտեւեց։ Հայաստան իր քաղաքական իշխանութիւնն ու անկախութիւնը պիտի կորսնցնէր

և թագաւորական արիւնին պէտք ցուցընէր։ Վասն զի նորէն սկսաւ երկպառակութիւնն նախարարներու ու Թագաւորին մէջ։ Արտաշիր՝ անկարգ, մոլի կեանք մը վարելով՝ տէրութեան գործերուն հոգ չէր տաներ և բոլոր նախարարներուն ատելի եղեր էր։ Պարապ տեղը Ս. Սահակ ու Ս. Մեսրոպ կ՚խրատէին անխոհեմ Թագաւորն որ իր ընթացքը շտկէ և զգաստանայ, պարապ տեղը կ՚յորդորէին նախարարներն որ Թագաւորին դէմ չշարժին և զանի պաշտպանեն։ Թագաւոր ու նախարար անսաստ մնացին ու թէ իրենց և թէ Հայաստանի կործանման պատճառ եղան։

**Նախարարները կ՚ամբաստանեն Թագաւորը։** —Նախարարները մոլորեր էին։ Գացին Ս. Սահակին և առաջարկեցին որ երթան Պարսից Թագաւորին առաջարկեն որ Արտաշիրը աթոռէն ձգէ և նորա տեղ պարսիկ իշխան մը դնէ։ Սահակ Պարթև բնաւ չհաւանիր այս ազգակործան առաջարկութեան և բոլոր ճիգը կ՚թափէ այս ընթացքին աղետալի հետեւանքը ցոյց տալու համար։ Նախարարներն անհամոզելի կ՚մնան։ Ս. Սահակ կ՚ըսէ. «Երբէք չեմ հաճիր իմ մոլորեալ ոչխարս գայլերուն մատնել, հիւանդը գահավէժ նետել, փոխանակ դարմանելու։ Կարելի՞ է իմ ախտաւոր ոչխարս տալ և առողջ գազան մը նորա տեղն առնուլ, որու առողջութիւնը մեզի համար մեծ պատուհաս մ՚է»։

Բայց նախարարներն այս իմաստուն խօսքը քանի տեղ չդրին, մանաւանդ այնպէս կարծե-

ցին որ Ս. Սահակ կամովին կ՚երկարաձգէ գործը որպէս զի Թագաւորին ժամանակ տայ զօրք ժողվելու և իրենցմէ վրէժ լուծելու։ Ուստի խորհուրդ կ՚ընեն կ՚միաբանին չէ թէ արտաքին թշնամւոյ՝ այլ Հայաստանի քաղաքական ու հոգևոր աթոռներու դէմ և կ՚որոշեն Թագաւորութեան հետ Լուսաւորչի տան հայրապետութեան վերջ տալ։ Կ՚առնեն իրենց հետ Արծկէցի Սուրմակ անուն քահանան և Վռամին երթալով՝ նորա առջև կ՚ամբաստանեն թէ Ս. Սահակը և թէ Թագաւորն, որպէս թէ սա միացեր է Յունաց հետ և միտք ունի Արեաց Թագաւորէն ապստամբիլ։

Այն ատեն՝ Վռամ՝ նախարարներուն ամբաստանութեան յօժարակամ հաւատաց. Արտաշիր Թագաւորն ու Ս. Սահակ հայրապետը Տիզբոն կանչեց դատաստանի, սակայն առանց ամբաստանեալները մտիկ ընելու, դատապարտեց։ Վռամ ջնջեց Հայոց Թագաւորութիւնը, ինչպէս որ կ՚փափաքէր, առաւ կաթողիկոսութիւնը Ս. Սահակին ձեռքէն, և Հայաստան մարզպանութիւն դարձուց։ Թագաւորին տեղ՝ Վեհ-Միհրշապուհ անուն պարսիկ մը Հայաստանի վրայ մարզպան կարգեց, Սուրմակին կաթողիկոսութիւնը տուաւ և նախարարներուն շատ պարգևներ շնորհելով՝ ամենքը Հայաստան ուղարկեց, արգիլելով երանելի Ս. Սահակն ու դահընկեց Արտաշէսն, որ վեց տարի իշխանութիւն վարեց։ Այսպէս վերջացաւ Արշակունեաց Թագաւորութիւնը 580 տարիի չափ անկէ ետև։

# ՀԱՅՈՑ ՔԱՂԱՔԱԿՐԹՈՒԹԻՒՆԸ

ԻՆՉՊԷՍ ամեն ազգ՝ Հայերն ալ 'ի սկզբան՝ որսորդութեամբ, հողագործութեամբ և խաշնարածութեամբ կ'զբաղէին։ Խաղաղասէր էին 'ի բնէ և վայրագ։ Հայկազուն ցեղերն՝ ահագին լեռներով անջատ բլուրներու ու ձորերու մէջ քաշուած՝ հազիւ իրարու հետ կ'հաղորդակցէին. և որովհետև շատ քիչ պիտոյք ունէին իւրաքանչիւր ցեղ իր ներքին բերքով գոհ կ'լինէր։ Հայաստանի ցուրտ, բուռն ու ձիւնոտ կլիմային, տեղ տեղ ժայռուտ ու խոպան հողին բնութիւնէ Հայերը տոկուն, կորովի, չարքաշ մարդիկ դարձեր էին և անխոնջ աշխատողներ, մանաւանդ լեռնցիներն, որ զէնք շարժելու, կրակոտ ու արարշաւ նժոյգներ վարելու և ապառաժներ հալածելու մասին շատ քաջավարժ ու ճարտար էին։ Սովորաբար անմեղ ու հանդարտ՝ Հայերն կատաղի առիւծներ կ'դառնային երբ իրենց ընտանեկան ու տանտիրական պատւոյն և ստացուածոց դէմ թշնամիներ տեսնէին և իրենց այս բնական առոյգութիւնն ու արիութիւնը ճարակ կ'գտնէին այն երկրին մէջ ուր բնական դժուարութեանց և վայրի կենդանիներու դէմ մաքառելու պարտաւոր էին՝ որպէս զի իրենց օրապահիկը ճարեն, միայն թէ այս աշխատութեան պայքարը մղելու համար իրենց ունեցած գործիները կոշտ էին և անոպայ, վասն զի սկզբնական արուեստներու ու ճարտարութեան անհմուտ էին։

Արամին և առաջին Տիգրանին ժամանակ՝ Հայերն այս կէս վայրենի վիճակէն ելան և սկսան օտար երկիրներու հետ առուտուր ընել, մանաւանդ Աղուանից, Մարաց, Ասորեստանցւոց և Փիւնիկեցւոց հետ, և արուեստներ սորվիլ։ Արշակունեաց տիրապետութիւնը գլխովին փոխեց առջի նահապետական պարզ ու անշուք վիճակը և Հայոց գործունէութիւնն ու պատերազմական եռանդը գրգռեց, որով ոչ միայն Հայաստանի հին սահմաններն ընդարձակեցին այլ և ուրիշ աւելի բարեկիրթ ազգերու

հետ հաղորդակցելով՝ նոցա ընտանեկան և ընկերական սովորութիւններին առին, նոյնպէս քիչ մ'ալ ուսման և արուեստներու ճաշակը։ Հետևապէս Հայաստանի մէջ ալ նոր նոր պէտոյքներ ծնան, մանաւանդ երբոր օտար երկիրներէ եկող պաղթականներ քաղաքակրթութեան և երբեմն երկպառակութեան ու օտարասիրութեան նոր սաբերք բերին իրենց հետ։ Փոքր առ փոքր հողերն աւելի լաւ մշակուեցան, բնական բերքերն առատացան և օտար փոխանակութեան առիթ եղան. գիւղեր, աւաններ ու քաղաքներ շատցան, հաղորդակցութեան միջոցներն աւելցան ու այլ և այլ հեռաւոր գաւառներու հայ բնակիչներն իրարու և օտարներու հետ հաղորդակցելու դիւրութիւններ ստանալով՝ զիրար ճանչնալու և շատ պարագաներու մէջ միաբան և միակամ շարժելու կարող եղան. մէկ խօսքով հայաստանցին աւելի բարեկեցիկ, անդորր ու անկախ վիճակ մը վայելեց. Հայ վիպասաններ սկսան երգել հին դիւցազանց և թագաւորներու արարքը, տաճարներ ու մեհեաններ շինուեցան՝ ուր քուրմերը քաղդէական գիտութեանց հմտանալու ջանացին։ Այսպէս թէև երկրագործութիւնը, վաճառականութիւնը, ճարտարապետութիւնը, կարևոր արուեստները, բանաստեղծութիւնն ու երաժշտութիւնը նոր քայլեր առին Հայաստանի մէջ, սակայն այս յառաջադիմութիւնն ընդհանրապէս նիւթական էր։ Ժողովրդեան սիրտն ու միտքը դեռ անմշակ էին, մանաւանդ շինականները տգիտութեան և ստրկութեան մէջ կ'տառապէին։ Նախարար ու ազնուական, որ նոյն թանձր խաւարին մէջ էին, ասոնք իրենց իշխանութեան ներքև գտնուող հայ ցեղերը կը հարստահարէին և ատեն ատեն արքունի հրամաններուն կ'անսաստէին։ Արտաշէս Բ, այս մեծաշէն ու ժողովրդասէր թագաւորը՝ ջանաց Հայաստանի այլ և այլ կողմեցեղերն իրարու կապել լուսաւորութեամբ և առատուրով և ազնուական դասուն զօրութիւնը կոտրելով՝ իրեն հպատակեցընել։ Ուստի հաղորդակցութեան միջոցներն աւելցուց, վարժարաններ, արուեստանոցներ ու գործարաններ բացաւ և՝ հայ պատմագիրներուն նայելով՝

մեր Հայրենիքը ծաղկեցաւ և պտղալից պարտէզ մը դարձաւ, ուր մեծ ու պզտիկ առատութեան և բարօրութեան մէջ կ'ապրէին։ Սակայն իր գործը շարունակող չգտնուեցաւ։ Բարոյական ու մտաւոր յառաջդիմութեան համար թափած սերմերն արմատ չբռնեցին ժողովրդեան մէջ և իր յաջորդներուն թոյլ, անկարող ու խռովայոյզ ընթացքը ջնջեցին իր լաւ կարգադրութիւններն և Հայաստանը ներքին ու արտաքին պատերազմներու ասպարէզ մը դարձուցին, ուր կարելի չէր որ լուսաւորութիւնը մուտ գտնէ, մինչև որ քրիստոնէութիւնը գալով՝ Հայոց ընկերական կենաց նոր լուսաւոր ուղղութիւն մը տուաւ, քաղաքական իշխանութիւնը դժուարին վիճակի մը մէջ թողլով։

Կառավարութիւն. — Արշակունեաց ժամանակը կառավարութեան ձևը միապետական էր։ Թագաւորը յատուկ խորհուրդ կամ ժողով մը չունէր, միայն ծանրակշիռ պարագաներու մէջ ուաշ նախարարներուն հետ կը խորհրդակցէր և տէրութեան ընդհանուր գործերը կ'անօրինէր։ Սակայն Տրդատ Թագաւորին ժամանակէն սկսելով՝ երբ քրիստոնէութիւնը վճռապէս Հայաստան մտաւ Ս. Գրիգոր Լուսաւորչի շնորհիւ, կաթողիկոսական իշխանութիւնն ալ սկսաւ ներգործել ոչ միայն հոգևոր այլ քաղաքական գործերու վրայ, այնպէս որ շատ անգամ կաթողիկոսներն իրաւարարի պաշտօն կ'վարէին թէ՛ ներքին և թէ արտաքին թշնամիներու մէջ և Տիզբոնի ու Բիւզանդիոնի արքունեաց հետ կ'բանակցէին։ Այս իրաւ է որ Արտաշէսի, Մեծն Խոսրովի և Տրդատի օրով միայն Հայաստան ներքին կատարեալ անկախութիւն վայելեց և տէրութիւնը նախարարներու ու օտար ազդերու վրայ մեծ իշխանութիւն բանեցուց, սակայն Տրդատին մահուանէ ետք՝ երբ Աւետարանը մտաւ Հայաստան Հայոց քաղաքականութիւնն ալ փոխուեցաւ և երկգլխի, անկայուն և չփոթ ճամբայ մը բռնեց։ Արշակունի թագաւորներն երկար ժամանակ Պարթևաց դաշնակից ու բարեկամ մնացին, իբրև ազգակից և դրացի իշխանութիւններ և կարող ե-

ղան մինչև անգամ Հռոմէականին այն հզօր պետութեան սարսափ ազդել, բայց երբ անկարգ, անքաղաքագէտ քրիստոնեայ թագաւորներ գահն ելան, իրենց աչքը Բիւզանդիոն դարձուցին՝ կարծելով թէ քրիստոնեայ կայսերաց կողմէ աւելի բարեկամութիւն ու պաշտպանութիւն պիտի կրնան գտնել, քան թէ արևապաշտ Պարսից կողմէ, որ թէև սաստիկ զայրացեր էին Հայոց կրօնափոխութեան վրայ և զայն նորէն որսալու փորձեր կ'ընէին, բայց կարելի էր միաբան գործելով՝ նոցա հետ հաշտ ապրիլ։

Այս անխոհեմ և անքաղաքագէտ ընթացքը շատ սուղի նստաւ Հայոց։ Վասն զի ոչ միայն Պարսից տէրութիւնն աւելի եւս զայրացուցին իրենց դէմ, այլ և յունական կայսրութենէ ակնկալած ձեռնտուութիւնը չգտան։ Պարսից թշնամութիւնը կրկին շարժառիթ ունէր. կրօնական ու քաղաքական։ Յունաց ներքին նպատակը Հայաստանի տիրապետել ու յունացընել էր։ Տիզբոն՝ Բիւզանդիոնի վաղեմի թշնամին՝ չէր կրնար հանդուրժել որ Հայք կրօնապէս իր թշնամեայն հետ միաբանելէն ետև՝ քաղաքականապէս ալ նորա հետ դաշնակցին և մնայուն վտանգ մը դառնան իրեն դէմ։ Այն ատեն սկսան այն մեծ պայքարները որ Արշակունեաց տէրութեան կործանումը բերին։ Հայք երկու կրակի մէջ մնացին. երբեմն պարսկական մոլեռանդ սուրին ճարակ ընկան, երբեմն յունական խորամանկութեան թակարդը գլորեցան։ Տիրանին օրէն սկսեալ ալ ազատ և բուն հայկական իշխանութիւն չմնաց, Հայաստանի բաղդը խաղալիկ էր դարձեր երկու հզօր տէրութեանց մէջ, այս է Յունաց և Պարսից, որ անդադար երկպառակութիւն կ'հանէին Հայոց մէջ՝ որպէս զի խառնուէին նոցա թագաւորական գործերուն, երբեմն նախարարներու և երբեմն կաթողիկոսներու խնդրանօք, և այս վերջինները թագաւորներէն աւելի մեծ և անկախ իշխանութիւն մը վարելու չափ զօրացան ատեն մը։

Եթէ մէկ կողմէ Ս. Հայրապետներ Հայոց հոգեւոր և քաղաքական վերաշինութեան համար կ'ճգնէին և նոցա բարոյական արիութիւն կ'ազդէին Աւետարանի զօրութեամբ, միւս կողմէ նախարարներն՝ անսանձ և անդադար

---

## ՎՐԻՊԱԿ

| Երես | Տող | Սխալ | Ուղիղ |
|---|---|---|---|
| 92 | 25 | Բանակին օգնելու. | Մարտնչելով բանակին օգնելու. |